ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄՃԸ.

# ՏԱՅՔ, ԴՐԱՑԻՔ ԵՒ ԽՈՏՈՐՋՈՒՐ

## ՊԱՏՄԱԿԱՆ-ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ՀԱՏՈՐ Բ.

ԳՐԵՑ

Հ. Յ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1980

# TAYK', NACHBARLÄNDER UND KHOTORJ̌UR

## HISTORISCH-GEOGRAPHISCHE STUDIEN

BAND II

VON

P. J. DASHIAN

MECHITHARIST

WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1980

# ՏԱՅՔ, ԴՐԱՑԻՔ ԵՒ ԽՈՏՈՐՋՈՒՐ

## ՊԱՏՄԱԿԱՆ-ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ՀԱՏՈՐ Բ.

ԳՐԵՑ
Հ. Յ. ՏԱՃԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1980

ԱՐՏԱՏՊՈՒԹԻՒՆ

“ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ„Է

1971, Թ. 10—12, էջ 399—438, 1972, Թ. 1—3, էջ 23—58, Թ. 4—6, էջ 155—184, Թ. 7—9, էջ 273—302, Թ. 10—12, էջ 415—438, 1973, Թ. 1—3, էջ 23—50, Թ. 4—6, էջ 155—184, Թ. 7—9, էջ 287—310, Թ. 10—12, էջ 423—458

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՏԱՅՔ, ԴՐԱՅԻՔ ԵՒ ԽՈՏՈՐՋՈՒՐ
## ՊԱՏՄԱԿԱՆ-ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

## ՍԵՒ ԳԵՏ ԵՒ ՀԱՄՇԷՆ

§ 1. *Հայ-վրական տարրին մահմետականացումէն ետքը բնական էր որ կարգը գար Հայոց ալ: ԺԸ դարն եղած է այս տխուր շրջանը, որ մահմետականացուցած է ընդարձակ տարածութիւններ, այստեղ մեզի համար հետաքրքրող այն երկրամասն՝ որ Պոնտական բարձր լեռնաշղթային երկու երեսներուն վրայ տարածուած էր, ասդին՝ չհաշուելով Սպեր՝ Տայոց մասը եւ առանձնապէս Բերդագրակի գաւառը, անդին՝ Խաղտեաց մասը, առանձնապէս Համշէն եւ Սեւ Գետ (Կարադերէ): Ս. Հայկունի, որ անձամբ այցելած է մանաւանդ Սեւ Գետ (ի Թորուլի 1867—68, ի Փերվանէ 1878) նկարագրած է այս աշխարհները, թէեւ դժբախտաբար Համշէնի նկարագրութիւնը թերի մնացած է, եւ տեղւոյն վրայ քաղած է իւր տեղեկութիւնքն*[1]:

[1] Ս. Հայկունի, *«Կորած ու մոռցուած Հայեր: Տրապիզոնի հայ-մահմետական գիւղերն եւ նրանց աւանդութիւնները»*. Սեւ Գետացիք, *ԱՐՐՏ*, 1895, *էջ* 239—243 *եւ* 293—297. («Համշէն»՝ *էջ* 295—297, *որ «շարունակելի» մնացած է*):

Համշէն կը տարածուի Քաջքարի եւ Պարխարի (որ պահած է հին Պարխար լերանց անունը) սարորոտը, բռնելով բոլոր լեռնամասն եւ դէպ ի ծով իջնող այլեւայլ ձորերու վերնամասերը, որոնց այլեւայլ ջրերը կ'երթան դէպ ի Ցուրթունայ գետը, որ Համշէնի ջրերու գլխաւոր հաւաքիչն է եւ ծով կը թափուի Աթինայի արեւելակողմը: Համշէն կը տարածուի գլխաւորաբար Աթինայէ սկսեալ մինչեւ ի Րիզէի (հին՝ Հռիզէոն) կռնակը, եւ աւելի անդին ալ, հասնելով ի վեր մինչեւ բարձրաբերձ լեռնագիծը: Բայց պարունակելով դոնէ նաեւ Ճեմիլի շրջանը՝ կը պարունակէ այն աղբերականց մասը, որոնք ուրիշ մեծ գետի մը վերին աջ օժանդակները կը կազմեն, այսինքն՝ Կալոպոտամոս («Գեղեցիկ-Գետ») գետին, որուն գլխաւոր ընթացքը Օֆի (հին՝ Օփիս) շրջանակին կը վերաբերի, բայց Օֆէ արեւելք ծով կը թափուի: Ինչպէս այս մեծ գետին վերին ակերը մինչեւ Պարխարի կամ Պոնտական բարձրագիծը կը հասնին, նոյնպէս բուն Օֆի քով թափուող համանուն աւելի նուազաջուր գետին վերին օժանդակներն ու ակունքները այն բարձրագծէն կ'իջնեն: Արդ ճիշդ այս վերջին վերին լեռնամասը, Ճեմիլի շրջանի արեւմտակողմէն մինչեւ Մաքուր-լեռ եւ բուն Սեւ Գետ, Համշէնի կ'ընծայէ Ս. Հայկունի, եւ անոր համար Օֆի յունախօս-մահմետական գաւառի հարաւակողմն ու բարձր լեռ-

Նամասը կը դնէ Համշէնի մաս՝ հայ–մահ–մետականներով, ուստի եւ Համշէն եւ Սեւ Գետ սահմանակից գաւառներ[2]: Ուրիշներն այն վերին մասն այլազգ կը նշանակեն: Քոխ երկրախոյզը, որուն 1843/44 տարւոյ ըրած ուղեւորութեան գիրքը յաճախ պիտի յիշենք, չէ այցելած անձամբ Սեւ–Գետ եւ Օֆի հովիտը, այլ Ռիզէէ եկած է Համշէն ու Ճեմիլէ անցած Ճապանց ու Սպեր[3]: Բայց ինքը, որ գրեթէ միշտ հիւր եղած է տեղեաց վարիչներու, այն ժամանակի այն կէս անկախ եւ տակաւին ժառանգական գաւառատեարց — ի՛նչ տիտղոս ալ կրեն (Համշէնինը եւ Սպերինը «վոյվոտ» կը կոչուէին) — քաղած է տեղեկութիւններ նաեւ մերձակայ տեղեաց, զորոնք այցելել չէ կրցած: Այսպէս՝ օրինակի համար՝ կը թուէ կարգաւ Սեւ–Գետի բուն ձորի գիւղերը, նշանակելով թէ այնուհետեւ ինչպէս ուղին կը շարունակուի դէպ

---

[2] Անդ, էջ 240, 295, եւ այլուր յընթացս գրութեան:

[3] *Dr. Karl Koch*, Wanderungen im Oriente. II. *Reise im Pontischen Gebirge und Türkischen Armenien*, Weimar 1846, $8^{0}$, pp. XVI + 468. Եւ մեծ քարտէս մը: Յաջորդիւս կը յիշենք միշտ պարզ Քոխ անուամբ այս երկը: Ռիզէ – Համշէն – Սպեր՝ անդ, էջ 1—40: Քոխ բաց ի ուղեգրութենէ՝ առանձին մատղիր եղած է երկրաբանութեան եւ մանաւանդ բուսաբանութեան, եւ իր նկարագրութիւնը միշտ լի է այս երկու ճիւղի վերաբերեալ դիտողութիւններով:

ի Բաբերդ[4]: Ինչպէս իւր ուղեգրութեան մէջ մանաւոր խնամքով խօսած է Պոնտական եզերաց՝ բայց նաեւ Տայոց աշխարհի ամէն այս գաւառաց վրայ, նշանակելով թէ ո՛ւր կը սկսի ու կը տարածուի իւրաքանչիւր աւատառու «գաւառատիրութիւն» կամ «ձո-րապետութիւն», նոյնպէս ընդարձակ քար-տէսին վրայ ջանացած է գծել այս գաւառ-ներն, որոնց սահմաններն այն ժամանակի օսմանեան գաւառներու («սանճակ») սահ-մաններն էին միանգամայն:

Արդ մեր խնդրոյ մասը Քոխ կը նշանակէ հետեւեալ կերպով: Համշէն շատ ընդարձակ ու լայն գծուած է արեւելեան կողմը: Աթի-նայի շատ մօտ կը սկսի սահմանը՝ պարու-նակելով Մարմանատ, — որուն համար կ՚ըսէ թէ Համշէնի իշխանին ներքեւ ուրոյն գաւառակի կեդրոն է[5], — (եւ Վիժէ) — այլ

---

[4] Քոխ, էջ 5: Ընդհանուր համառօտ նկարագրու-թիւնը կը համաձայնի Ս. Հայկունւոյ նկարագրա-ծին հետ:

[5] Քոխ, էջ 24 կ՚ըսէ թէ բացի Համշէնի բուն իշխանէ, որ «վոյվոտ» տիտղոսը կը կրէր, մինչ միւս գաւառատեարք «միւթէսէլլիմ» (տեղակալ) կը յոր-ջորջուէին, ի Համշէն կային «տակաւին երեք ժա-ռանգական ձորապետներ, որոնք այժմ ա՛յան (աւագ, գաւառակալ) տիտղոսն առած են. եւ անոնցմէ էր իմ ասպնջական հիւրընկալս (Ճեմիլի տէրը): Երկրորդը կը բնակի Սենեձորի մէջ («Սէնէս–դէրէ»: Միջին գիւղը («Օրթաքէօյ») եւ երրորդը՝ ծովէն ոչ հեռու

նաեւ անոնցմէ վեր Խալա[6] եւ Արտա տեղերէն դէպ ի արեւելք բաւական մաս մը, այնպէս որ Ցորթունայ գետը՝ բացի ծովեզերաց մասէն՝ ամբողջովին Համշէնի մէջ կ՚իյնայ։ Առ հասարակ Աթինայի եւ Ռիզէի մօտերը Համշէնի սահմանը ծովուն շատ մօտ է. ասոր փոխարէն Ռիզէի գաւառապետու-թիւնը՝ Ասփերոս գլխաւոր հովտով նեղ է՝ բայց երկար է դէպ ի վեր, հասնելով մինչեւ

---

Մարմանատ գիւղը՝ իրր $2^1/_2$ ժամ հեռու Աթինայէ»։ Ինճիճեան (տես յաջորդը, էջ 396) կը գրէ «Տէրու-թիւն երկրին է ի ձեռս երկուց ազգայից, յորոց մին դարձեալ է ի Հայոց»։ Կ՚երեւայ յետոյ աւելի բաժ-նուած է։

[6] Ինճիճեան Նոր Հայաստանի նկարագրութեան մէջ (Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն Չորից մասանց աշխարհի. Մասն Ա. Ասիա. Հրտ. Ա. Վենետիկ 1806. էջք 424)։ Համշէնի բաժնին մէջ կը գրէ (էջ 397) «Խալա, որ է վիճակ, յորում են զանա-զան գիւղօրէք տաճկաց, յորս յառաջագոյն գտանէին Հայք, այլ այժմ սպառեցան առ սակաւ սակաւ դառ-նալով ի դէն այլազգեաց» եւն։ Վիժէ կը բաժնէ «Վերի Վիժա եւ Ներքին Վիժա, ուր նոյնպէս չկան այլեւս Հայք (քրիստոնեայք)։ — Ինճիճեան առ հա-սարակ ամէն մահմետականք այս եւ այլ կողմանց կը կոչէ «Տաճիկք»՝ հակադրութեամբ քրիստոնէից Հայք, Վիրք, Յոյնք եւն։ — Յաջորդիւս այս գործը կը հաս-կընանք, ուր պարզ «Ինճիճեան» կը յիշենք։ Նշանա-ւոր հեղինակին միւս գործը («Ստորագրութիւն Հին Հայաստանեայց. Մեծ Հայք». Վենետիկ 1822, էջք 553) կը յիշենք՝ ուր պէտք է՝ ուրոյն «Հին Հայ». հա-մառօտութեամբ։ Իւր եռահատոր «Հնախօսութիւն» քիչ անգամ առիթ պիտի ունենանք յիշելու։

Զարանթաշ, որմէ վեր մինչեւ Պոնտական բարձրագիծը նեղ կը մնայ Համշէնի Ճեմիլի շրջանը։ Այս շրջանին մէջ կ՚իյնան Կալոպոտամոսի երկու աջ օժանդակները, Եէդի–Զուխուր (Եօթ–վոս[7]) եւ Ճեմիլի ջուրը։ Բայց անկից արեւմուտք, ուստի Կալոպոտամոսի միւս ամբողջ ճիւղերն եւ Օֆի ջրոյն ալ ամբողջ ընթացքը Օֆի գաւառապետութեան կ՚ընծայէ, որ նոյնպէս նեղ՝ բայց շատ

---

[7] Ըստ երեւութին այս հովիտն է, որու մասին կը խօսի Ս․ Հայկունի (անդ, էջ 296)․ «Բուն Համշէն կը սկսի (— «արեւմտքէն» առնելով) «Եօթը–փարայ գիւղից, որ Իրիզէից 24 ժամ բարձր։ Եօթը–փարայ․ գիւղից 8 ժամ բարձր է Գարատերէն որ Կալոպոտամոսի կը խառնուի․ (— Հայկունի կը գրէ միշտ «Կալոպատամուզ» հնչմամբ)։ Այս «Գարատէրէի մասին կը գիտէ քիչ մը յառաջ թէ «Գարատէրէ ասուածն երկուք է․ մին՝ բուն Գարատերէն որ Սեւ–Գետացւոց երկիրն է․ երկրորդն է Իրիզէի մօտ գտնուած գետի մը անունն Եգերացւոց մէջ»։ — Հ․ Մինաս վ․ Բժշկեան ալ Պոնտոսի եզերաց մասին ընդարձակ գործին մէջ («Պատմութիւն Պոնտոսի որ է Սեւ Ծով», Վենետիկ 1819) յստուկ չի յիշեր նոյն իսկ Սիւրմենէի Սեւ–Գետերը նաեւ իւր ընդարձակ քարտէսին վրայ․ բայց անդին՝ Կալոպոտամոսէ եաքը եւ Ռիզէէ յառաջ կը դնէ «Գետ Գարատերէ» որ ծով կը թափուի «Ասպէթ»ի քով։ — Կիպերտի Նորագոյն ընդարձակ քարտէսը (թերթ՝ Տրապիզոն) ճիշդ այս երկրորդ «Գարատերէի» ընթացքը գծած է կիտագրեալ՝ իբր անորոշ տակաւին, առանց անուան։ Բայց կը նշանակէ ուրիշ տեղ մը փոքր «Գարա–տերէ» որ Տոնիկ–ջրոյ խառնուելով՝ ի միասին Կալոպոտամոս կը թափուին՝ անոր աջ կողմէն․ միայն թէ այս շատ վար է՝ Համշէնի մէջ ըլլալու համար։

աւելի երկար է, հասնելով մինչեւ Պոնտա-կան ամենաբարձր շղթային եւ անով սահմանակցելով Սպերի հետ: Ուստի այս սահմանին համեմատ Օֆի գաւառը կը բաժնէ Համշէնը Սեւ-Գետէն՝ միջանկեալ ըլլալով: Օֆի գաւառէն կը բաժնուի Սեւ-Գետ կամ Սիւրմենէ գաւառը՝ Մաքուր եւ Օֆ լեռնագծով: Սեւ-Գետ գաւառն ալ՝ ծովեզերքը նեղ է, բայց բարձրերը լայն՝ կրկին գլխաւոր ձորով, եւ կը հասնի մինչեւ Պոնտական լեռնագիծը՝ սահմանակցելով Բաբերդի: Սեւ-Գետէ արեւմուտք է Եսմուրա գաւառը՝ մինչեւ Տրապիզոնի մօտերը: Բայց արդ կայ մտադրութեան կէտ մը: Մինչ Սեւ Գետի եւ Բաբերդի գաւառաց միջեւ Պոնտական բարձրագոյն լեռնագիծը Նաչիկլէրի կը կոչուի, Օֆի եւ Սպերի միջեւ՝ վերնոյն շարունակութիւնը մինչեւ Քաչքար կը նշանակուի «ՀԷՄՇԻՆ» լերինք, ուստի Համշէնի անունը կը կրէ: Արդ եթէ ուրեմն այս լերինք Համշէնի անուամբ կը յորջորջէին, նշան է թէ հոս ալ վերին լեռնամասն երբեմն գրաւած էր Համշէն, ինչ ալ եղած են յետոյ գաւառաց սահմաններու փոփոխութիւնքն: Արդէն նոյնիսկ Քոխ այս կողման գոնէ մէկ մասին համար կասկածանօք կը խօսի. ինչպէս կը ցուցնէ իւր նկարագրութիւնն Համշէնի երկրին, որ ընդհանրապէս իւր գծած քարտէսին համեմատ է [8]: Հոս նշանակուած են նաեւ այս

[8] Ասոր համեմատ է Քոխի նկարագրութիւնը. (անդ, էջ 23—24) «Համշէն կը տարածուի կալօպո-

ընդարձակ երկրին գետերը, որոնց ամէնն ալ՝ բայց ի միոյն՝ արդի Թուրքական անուն—

---

տամոսի աղբերակունքներէն, Պոնտական լերանց հիւսակողմը, դէպ ի արեւելք մինչեւ Ցուրթունայի ականց երկրամասը: Կը դրաւէ բարձրաբերձ լերինքն ու անոնց կոնակէն դէպ ի հիւսիս կը ձգի մինչեւ գիծ մը, որ ծովէն 2—3 ժամ հեռուէն արեւմուտքէն արեւելք կ՚ընթանայ: Սակայն Կալոպոտամոսէ իրեն կը վերաբերի միայն աղբերականց մասը, թերեւս միայն անոր արեւելեան մասը, եւ գետը հոս անուանեցին գլխաւոր գիւղին Ճեմիլ անուամբ, ուր կը գտնուիմ, Ճեմիլ—սու: Յաջորդ արեւելեան գետոյն՝ Ասփերոսի՝ ընթացքը, որուն հետեւած էինք դէպ ի վեր, կը վերաբերի Ռիզէի որ ուրոյն գաւառ է ինչպէս նաեւ անոր յաջորդող Կանլը—դէրէ՝ «Արեանձոր» կոչուած հաւանօրէն կարմիր պորփիւրին եւ անկէ ծագած կարմրեկի (Sinople) նման հողին. պատճառաւ: Յաջորդող Սէնէս—դէրէ ձորէն միայն ամէնէն վարի մասը Ռիզէի կը վերաբերի, մնացեալ ամբողջը՝ Համշէնի: Ծովեզերքը անկէ ետքը կը սկսի արդի Լազիստան եւ դէպ ի արեւելք կը տարածուի ծործորէն ալ անդին. բայց աննշան Սուխա—դէրէի եւ մեծ Ցուրթունայի միայն ծովեզերեայ մասը Լազիստանի կը վերաբերի, մնացեալ ամբողջ երկիրը դարձեալ Համշէնի է: Մեծ Ցուրթունայ Կալոպոտամոսէ ամենեւին նուազ չէ եւ երեք գլխաւոր ակերէ կը կազմուի, որոնք նախ գետ կ՚ըլլան ճոխանալով՝ տակաւին իրարու չմիացած: Ասոնց ամէնէն արեւմտեանն եւ մեծագոյնը «Բէօյիւկդէրէ»՝ այսինքն Մեծձոր կը յորձորձուի եւ կը բղխի արտաքին երեսէն այն կիսաբոլորակին, որուն մէջ հոն ի Ճեմիլ կը գտնուինք: Միջինը կը ծագի Պոնտական լերանց բարձրագոյն լեռնէն՝ Քաջքարէ, եւ անոր համար կը կոչուի Քաջքարջուր: Վերջապէս ամէնէն արեւելեան •ժանդակը, (զոր յետոյ ընդարձակ պիտի նկարագրեմ) սովորաբար Ցորթունա կը կոչուի, բայց նաեւ անոր վրայ գտնուող մեծ գիւղի մ՚անուամբ՝ Խալա—ջուր»:

ներ կը կրեն, բայց ընդհանուր կերպով կը համապատասխանեն այն Հայկականաց, զորոնք կրցած էր արդէն Ինճիճեան՝ իրեն հասած տեղեկութեանց համեմատ՝ նշանակել[9]: Ս. Հայկունի ալ կը նշանակէ շարք մը գետեր, որոնց բաւական մէկ մասը չենք կրնար գտնել Կիպերտի ընդարձակագոյն քարտէսի վրայ, որչափ արդէն գծուած է. որովհետեւ այս քարտէսը ճիշդ Համշէնը տակաւին անծանօթ երկիր՝ մը ներկայացուցած է՝ մեծ սպիտակ թողուած մակերեւութով: Քանի որ յաջորդ պատմութեան համար երկիրը կարելւոյն չափ լաւ ճանչնալ պէտք է, դնենք Ս. Հայկունւոյ բաածներն ալ[10]:

§ 2. Նախ կը յիշէ երկու լճեր. «Խաչավանք սարից Թերեւիթ սարի երեսն անցնելու

---

[9] Հմմտ. Ինճիճեան (էջ 396—98) «ընդ մէջ երկրին անցանէն ջուրք կրկին՝ Եվոդիւտի (= Եղիովիտ) գետ եւ խաչէվանայ գետ, որք ի ծայր գեղջ (— այսինքն՝ առհասարակ Համշէնէ) միանան երկոքին: — «Խաչեվանայ» գետոյ հետ նոյն ըլլալու է ջուրն Պաշհամշէնի «Ընդ մէջ աւանիս անցանէ ջուր կոչեցեալ Պաշհամշէնու գետ, որոյ առաջի Տափ գեղջ ի մի խառնեալ ընդ Եվոդիւտի գետ, գեղու ի Սեւ-ծով». (Տափի համար կ'ըսէ թէ «տաճիկք կոչեն Չարթ»): — Համշէնի ուրոյն դաւառակ կը յիշուի Բալովիտ. «է սա եալյա խալացւոց, անցանէ ի Բալովիտ ջուր յանուն իւր անուանեալ, որ խառնի ի Համշէնի գետն»: Նկարագրութենէն կը տեսնուի՝ ասոնց ամէնն ալ արդի Ֆուրթունայի օժանդակներն են, եւ անով Սեւ ծով կ'իջնան:

[10] ԱՐՐՏ, 1895, էջ 296:

համար մի լճակի եղերից պիտի անցնենք, որ ձկներով առատ է, եւ որի շրջապատը կարելի է կտրել 20 վայրկեանում: Քէօղցեր լերան վերայ եւս լիճ մի կայ, Այղր կէօլ անունով»: Արդ «այս լճերն երկու գետերի սկզբնաւորութիւն են, մին 6 ժամու ճանապարհ Սպերի կողմն հոսելով Ճորոխ կը խառնուի»: — Այս անանուն գետն ուրեմն Պարխարի հարաւակողմն է, եւ յատուկ մտօք Համշէնի չէ: Կ'երեւայ սակայն թէ Համշէն երբեմն պոնտական չղթային հարաւային երեսն ալ կ'իջնար: Այս՝ Ինճիճեան նաեւ Խեւակը Համշէնի մէջ դրած է[11]. որ սակայն Բերդագրակի գաւառի կը վերաբերէր գոնէ Քոխի անցած օրերէն ի վեր, հաւանօրէն անկէ յառաջ ալ:

«Ծեմիլ գետն, կ'ըսէ, արեւմտեան կողմն հոսելով կ'իջնայ՝ աջ կողից Կալոպոտամոսի կը խառնուի: Ծեմիլ գետին ակներուն մօտ կան Վանէ եւ Կաւկամէ երկու գիւղեր, որոնց միջավայրէն մի ջուր կը հոսի. այս ջրի մէկ մասը կը քարանայ[12]. միւս մասն Իրիզէի Կարադերէն կը հոսի, որ քիչ միջոցի մէջ Կալոպոտամոսի կը խառնուի[13]»:

[11] Ինճիճեան, էջ 397: Խեւակի մասին յետոյ առիթ կ'ըլլայ խօսելու, նաեւ քիչ մ'ետքն ալ:

[12] Տպուած է «քարանայ». միտքն է անշուշտ թէ ջուրն աներեւոյթ կ'ըլլայ ստորերկրեայ անցք մը մտնելով:

[13] Հմմտ. վերը Կիպերտի քարտէսի «Գարատերէն»՝ որ Կալոպոտամոս կը մտնէ Տոնիկի ջրոյն հետ: Բայց այս շատ վարի կողմն է, ծովեզերքի

Գրչի վրիպակ մը կ՚երեւայ յաջորդը. «Կալոպոտամող կը խառնուին նաեւ Խալափուրթունայ եւՍենճեզօր գետակները» : Խալա եւ Փուրթունայ անուանք ինքնին պիտի ցուցնէին ըստ ինքեան թէ Կալոպոտամոս, գրչի սխալ է. նաեւ «Սենեզոր»՝ կամ Սենեճոր եթէ Սէնէս–տէրէ ըլլայ՝ այն գետէն մեծ լեռնագծով բաժնուած է : Հայկունի կ՚երեւայ երկու ուրիշ գետակ կ՚ուզէ նշանակել, որոնց անուանք չփոթուած ըլլալու են, եթէ կրկին նմանաձայնութիւնք չեն հոս ալ : Իրօք ալ Կիպերտի քարտէսը Ճեմիլ Ջրէ վար կը նշանակէ «Շինի–գարու» մը : Կը մնայ ուրեմն քննել թէ ի՛նչ էր «Խալա–Փորթունայ» այս կողմը : Խօսքը չարունակութեան մէջ ալ իրօք Կալոպոտամոսի վրայ է, «որուն ափին վրայ կայ Մանլի գիւղն. սորա մօտերն երեւան ելաւ (1861ի) մի հինաւուրց չէնք» ելն : Մանլի կայ Կիպերտի քարտէսի վրայ Ճեմիլ–Ջրոյ Կալոպոտամոս թափուելու կէտին մօտ, դիմացի կողմը, այն Գեղեցիկ – գետին ձախ ափին՝ Manile ձեւով : — Անկէ ալ յայտնի է որ Հայկունի ամբողջ այս վերնագաւառը Համշէնի կ՚ընծայէ, որով՝ Սեւ Գետի սահմանակից :

---

մօտերը գրեթէ. մինչ Հայկունի Գարատերէն Եօթըփարայ գիւղէ 8 ժամ բարձր կը դնէր : Ինչպէս վերը յիշուեցաւ : — Եէտի–Զուքուրի չարունակութիւնը, որ Կալապոտամոս կը թափուի, «Ատունա–դերէ» կը կոչէ Կիպերտի նոր քարտէսը :

«Մափաւրի գետն եւս կը հոսի Սեւ Ծով՝ Իրիղէից 4 ժամ յարեւելս, որն եւս Համշէնի լեռներէն կ՚իջնայ, Զուղայ գետոյն հետ միանալով՝ ծովը կը թափի, անցնելով Պատառս գիւղից[14]»։

«Վերին-Կալէ գետակն 2 ժամ ընթացքէ յետոյ՝ արեւելեան եզրից փուրթունայ (Բուք) գետին կը խառնուի՝ Զաթփոսի[15] մօտ՝ Թերեւիթի հովտէն անցնելով։ Ֆուրթունան խաչավանքի սարէն կ՚իջնայ, Արտաշէնից կ՚անցնի եւ Աղինայէ 2 ժամ յարեւելս Սեւ Ծով կը թափի։ Այս գետը խիստ խոր աւազան ունի. ջուրը միշտ առատ է. շատ անգամ աւազանից դուրս կը թափի, շրջականերուն կը վնասէ. թերեւս այս աւերմանց պատճառաւ Ֆուրթունայ ասուած է» են[16]։

---

14 Կիպերտի քարտէսը կրկին Mapavri ունի, նախ ուրոյն գետ մը, զոր կը նոյնացնէ հին Adienus կամ Odinius գետոյն հետ։ Անկէ արեւելք ուրիշ անանուն գետակ մը կը նշանակէ եւ ասոր վրայ՝ ծովու մերձ՝ կը դնէ Mapavri տեղը։ Գետակը թերեւս ուրեմն Զուղայ ըլլայ։ Բայց ո՛չ այս անունը եւ ո՛չ Պատառս նշանակուած են։ Ս. Հայկունի կը կը յաւելու դիտողութիւնս. «Զուղայ Լազի լեզուով ծով կը նշանակէ եւ լազուտ (եգիպտոցորեն). Թերեւս լազուտի բոյսի առատութեան համար Զուղայ ասուած է»։

15 Հմմտ. վերը Ինճիճեանի Տափ գիւղը, զոր «Տաճիկք կոչեն Զաթ»։

16 «Ֆուրթունայ» աղաւաղում է հին Pordanis կամ Prytanis անուան, ինչպէս նշանակած է Կիպերտ ալ. որ սակայն գետոյս ծով թափուելու տեղն իբր անորոշ կէտերով նշանակած է։

§ 3. Խաչավանքը քիչ մ'եռքը յիշելու առիթ կ'ունենանք: Հայկունեաց այս Արտաշէն նոյն չի կրնար ըլլալ համանուն ծովեզերեայ տեղւոյն հետ[17]. բայց կրնա՞յ ըլլալ այն՝ զոր քարտէսները այժմ Artä ձեւով կը նշանակեն, բայց Քոխ այս՝ լոկ ամարանոց մը կը նկարագրէ, ինչպէս պիտի տեսնենք: Մօտերը կրնայ սակայն Խալայէն վեր, —շէն վերջաւորութեան իյնալով. հին բերդ մ'ըլլայ, ինչպէս Հայկունեաց լսած եւ պատմած գեղեցիկ զրոյցը կը ցուցնէ[18]: Բնական է որ այսպիսի աշխարհ մը լի ըլլայ հին բերդերով, որոնք այժմ ի հարկէ աւերակ են ընդհանրապէս: Պաշհամշէնու բերդն Ինճիճեանի տուած տեղեկութեանց օրով տակաւին բնակելի էր, որովհետեւ կ'ըսէ «Պաշհամշէն. գլխաւոր աւան ...ընդ մէջ աւանիս անցանէ ջուր կոչեցեալ Պաշհամշէնու գետ, որոյ առաջի Տափ գեղջ ի մի խառնեալ ընդ

---

[17] Ցուրթունայէ արեւելք ուրոյն գետակի վրայ եւ ծովեզերքը կը նշանակուի Artashen գիւղը, որմէ արեւելք գետակէ մ'ալ վերջը՝ Armene հրուանդանը:

[18] Հայկունեաց պատմած են հետեւեալ զրոյցը. «Ըստ աւանդութեան թագաւորական ցեղէ երկու անուանի մարդ կը լինին Համշէնի մէջ՝ Գրիգոր եւ Մարտիրոս: Մարտիրոս Գրիգորի աղջիկը կ'ուզէ իւր որդւոյն Արտաշէնի համար: Գրիգոր չի յօժարիր տալ: Մարտիրոս զինու զօրութեամբ Գրիգորի երկիրը կը մտնէ, կը պատերազմի, կը յաղթէ, կ'առնէ աղջիկը, կը պսակէ Արտաշէնի վրայ: Արտաշէն Գրիգորի երկրին մէջ, Համշէնի մեծ գետի վերի ակերուն մօտ՝ մի հսկայ բերդ կը կառուցանէ որ այսօր ևս Արտաշէն կ'ասուի:

Եվդոկիայի գետ, գեղու ի Սեւ ծով... Ունի ամրոց փոքրիկ այլ զօրաւոր՝ ի գլուխ ապառաժուտ զառիթափ լերին՝ յորում են եւ բնակութիւնք[19]»: Ուրիշ բերդերէն մեր հեղի–

---

[19] Ինճիճեան, էջ 396: Հայկունույ նախընթաց տեղեկութեամբ կը ցուցնէ թէ «Համշէն–Գալէ» կամ Համշէնի բերդը նոյն ըլլալու է Արտաշէն բերդի հետ: Հայկունի առանձնապէս չի յիշեր «Պաշհամշէն» ուրոյն բերդը, թէեւ կ՚ըսէ ընդհանրապէս թէ Համշէնցիք «ափպուած են այլեւայլ լեռներու գլուխներն բերդեր կառուցանել եւ դիմադրել թշնամւոյն». եւ թէ «արդէն շատ մը բերդերու բեկորներ կը տեսնուին»: Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան («Տեղագիր Հայոց Մեծաց», Վենետիկ 1855, § 49, էջ 39) կը գրէ. «Կիսաւուրր ի հիւսիսոյ Համշինու կան մնացորդք Համշէն–Գալէսի բերդի, որ թերեւս իցէ հինն Տամբուր»: Այս Տամբուր կը յիշուի Համամայ պատմութեան մէջ, զոր յետոյ կը տեսնենք: Անկէ յառաջ կ՚ըսէ «Գլխաւոր աւանն Համշէն որ եւ Պաշհամշէն կայ ի ստորոտս Դէմիրտաղ լերին» եւն: Կիպերտի քարտէսը կը զանազանէ՝ Համշին Դէմիրտաղի հիւսիս–արեւելեան ստորոտը՝ Մոզորնիէ եկած գետոյն վրայ. անկէ հազիւ «կիսաւուրր» հեռու՝ Դէմիրտաղի ճիշդ հարաւային ստորոտը կը նշանակէ քովէ քով գիւղերս՝ Պաշ–քէօյ, Օրթա–քէօյ (— անկէ տարբեր է շատ վերը ի հիւսիս՝ Սեննեճորի մերձ Օրթաքէօյ գիւղն ու շրջանը —) եւ Աշաղ–քէօյ, ուստի Վերին, Միջին եւ Ներքին գիւղեր Համշէնի: Եւ գծուածն այնպէս է որ ասոնց ջրերն ըստ երեւութին (վերջին մասը կիտադրեալ) դէպի Ճեմիլ–ջուր կ՚երթան: Բերդն՝ «կիսաւուրր ի հիւսիսոյ Համշինու» չի նշանակեր քարտէսն, որ արդէն այն կողմն իրր անծանօթ աշխարհ թողուցած է: Բուն գիւղն Համշէնն է ի հարկէ, եւ ա՛յս է Ինճիճեանի Պաշհամշէն՝ գետովն, Քոխ (էջ 111) ի Համշէն կ՚ըսէ «նախանիստ բերդ (Stammschloß) Համշէնի իշխանաց»:

նակները միարան կը յիշեն Զիլգալէ, որուն տեղը կ՚երեւայ թէ կրնանք՝ մեր ներկայ անբաւական ծանօթութեամբք իսկ՝ ճշդրտել: Ասոր մասին կը գրէ Ինճիճեան. «բերդ փոքր լքեալ եւ ամայի կամ աշտարակ մեծ, միօրեայ հեռի ի Պաշհամշինէ, կառուցեալ ի վերայ Կըչանի. յայս անուն կոչեն հայկազուն բնակիչք զամենայն մեծամեծ ապառաժս[20]: Ի բերդին երեւին պէսպէս կամարակապ շինուածք ի վաղուց մնացեալք.

---

[20] Ինճիճեան, էջ 397: Այս մեկնութիւնը կը ցուցնէ որ Կըչանն կապ չունի նմանահնչիւն Կօշանն ցեղի անուան հետ, զոր կը յիշէ Հայկունի եւ այն՝ իբր յոյն–թուրք, Սեւ–Գետի մէջ, ինչպէս կը պատմէ Թրէձորցի մը (— «Թրէձոր գիւղն, որ այժմ Ծիմլա կ՚ասուի», հայախօս) թէ «Աշանցիք որք Հայէ դարձած են եւ Կօշանցիք՝ որ յոյնէ դարձած թուրքեր են, իրար աղջիկ չեն տար եւ առներ»: — Միւս կողմանէ Կչանն իբր բառ «ապառաժ» իմաստով չունին ո՛չ Հ. Աճառեան (ՀԱԳԲ), թէեւ իր գործոյն մէջ առատ են Համշէնցւոց բառերը. եւ ոչ Ս. Ամատունի (ՍԱՀԲ, ունի Կչի, Կեչի՝ ծառը): Այս Կչանն բառն ունին Խոտրջուրցիք, բայց տարբեր իմաստով (երկաթէ կամ փայտէ ճանկ): Թերեւս նախնաբար կապ ունէր Համշէնցւոց բառը բնաձայնական շարք մը բառերուն հետ, որոնք ծանօթ են այլ գաւառականներու: Խոտրջրցիք ունին կչկալ (կացնի, մուրճի հեռուէն ձայն գալ). մինչ կոչկոչալ ի Հարկէ նոյն է գոչալ, գոչգոչալ (Կարին) բառերուն հետ, ի վերջոյ հին՝ գոչել: Բառերուս նաեւ իբր տեղւոյ անուն գործածուիլը (ինչպէս Համշէնցւոց Կչանն)՝ ընդհանուր կամ որոշ առմամբ ալ, բնական էր: Այսպիսի է Կարնոյ Ս. Լուսաւորչի մօտիկ ժայռոտ ալ Գոչգոչանն կամ Կոչկոչանը՝ փոքր ջրոյ անկումէն առնուած:

սորին ծայր ապառաժին հասանէ ի ջուրն որ է Պաշհամշէնու գետ. եւ ի վերայ ապառաժին են եւ այլ մարտկոցք շինուածք վաղընջականք»։ Այս տեղեկութեան համեմատ է Բժշկեանի ալ գրածը, որ կը յիշէ Ցուրթունա գետը՝ լի բերդերով[21]։ Ս. Հայկունի ալ լսած է այս բերդի մասին, բայց տեղը այլազգ նշանակած ըստ երեւութին... որովհետեւ կը գրէ «Համշէնի եւ Սեւ Գետի միջավայր կայ՝ բարձր գիրքի վրայ Զիլգալէ անունով բերդ մի, որի ականատեսք կ՚ասեն թէ 50 կանգուն բարձրութիւն ունի սորա պարիսպները (— ասկէ թերեւս «աշտարակ մեծ» —), որ սրբատաշ քարով հիւսուած է։ Այս բերդի գլխից ներքնուղի մի բացուած է երկու ժամ ճանապարհ մինչեւ լերան ստորոտը[22]»։ Երկու ժամը կրնայ պատմողներուն չափազանցութիւնն ըլլալ. բայց ժայռի մէջ փորուած ներքնուղի՝ ջրոյ համար գլխաւորաբար՝ ունին գրեթէ բոլոր հին բերդերը,

---

[21] Հ. Մինաս վ. Բժշկեան, Պատմ. Պոնտոսի, էջ 97. Համշէն «Ունի հին բերդ ապառաժի վրա շինած, որ կ՚ըսվի Զիլգալէ. մէջը կայ զարմանալի կամարաւոր շէնքեր հին ատենէն մնացած, եւ մեծ աշտարակ. վարի ծայրը կը հասնի մինչեւ Ցուրթունա գետը. ուր կան ուրիշ բերդեր, հին եկեղեցիներ, եւ մատուռներ լեռներուն վրայ, նաեւ փլած տեղեր»։ Որչափ ալ խօսքը միայար է. վերջին մասը («վարի ծայրը կը հասնի մինչեւ Ցուրթունայ գետը» եւն) ընդհանուր Համշէնի համար է։ — Այս մօտ է Ինճիճեանի ալ ըսածը թէ ժայռոտ լերան («Կչան») շարունակութիւնը կը հասնէր մինչեւ Պաշ-Համշէնու գետը։

[22] ԱՐՐՏ, 1895, էջ 296, (սիւն բ)։

ինչպէս Պոնտոսի եւ մերձակայ աշխարհաց մէջ, նոյնպէս ի Հայս եւ առանձնապէս ի Տայս։ Հայկունւոյ խօսելու կերպը կը ցուցնէ թէ ինքը բերդն անձամբ տեսած չէ. եւ անոր համար «Համշէնի եւ Սեւ-Գետի միջավայր» դիրքն ընդհանուր է, քանի որ ինքն արդէն երկու գաւառներս ալ ընդարձակագոյն տարածութեամբ կ՚առնու։ Իւր խօսքը կամ իրեն տրուած տեղեկութիւնը կրնայ առնուիլ այն մտօք ալ որ Պոնտական բարձր լեռնաշղթային՝ ուր Սեւ Գետէ մինչեւ Համշէնի ծայրը կ՚երկարի, իբր միջավայրի վրայ էր՝ բերդը՝ «բարձր դիրքի վրայ»։ Աստր եւ դարձեալ Ինճիճեանի տուած տեղեկութեանց կը համաձայնի լինիլն այն «բերդ»ը, զոր Կիպերտ նշանակած է — Քոխի ուղւոյն համեմատ —, Պարխար դագաթնագծին անմիջական ստորոտը, ըստ Քոխի իբր 2000 մետր բարձրութեան վրայ, Կարնէն քիչ աւելի բարձր, կրելով — առ ի չգոյէ բուն անուան — դարձեալ Ճեմիլի անունը՝ «բերդ-Ճեմիլ» Գիրքը Ճեմիլի գրեթէ արեւելքը կ՚իյնայ, Համշէնի Պաշ գիւղի հարաւը, երկուքէն ալ գրեթէ հաւասար հեռու»։ Իւր լեռը ստուգիւ կ՚իջնայ դէպի Պաշ Համշէն։ Դիրքը կը ցուցնէ թէ այս էր լեռնագծին գլխաւոր անցքը՝ հին Ռիզէ-Համշէն-Սպեր լեռնուղւոյն, որուն պահպանութեան համար պէտք էր բերդ մը թէեւ իբր 1000 մետր վար բուն գագաթէն. Կիպերտ այս տեղւոյ գագաթնագծին բարձրութիւնը կը դնէ





3108 մետր, եւ լեռնագիծը կը կոչէ Tsa-pants–դաղ (լեռ), ուստի անկէ վար սկսող եւ դէպ ի Սպեր իջնող արեւմտեան ձորոյն առաջին Ճապանց գիւղի անուամբ, ինչպէս որ անոր արեւմտեան բարձրացող ամենաբարձր կատարը՝ Խոտորջրոյ ալ հիւսիսարեւմուտքը՝ կը կոչէ Թուրքերէն յորջորջանօքս Sogorni jailanun bashi, այսինքն՝ (Համշէնի) «Սոգորնի գիւղի ամարանոցի գլուխը», ինչպէս լսած էր արդէն Քոխ, աւելի ընդարձակ մտօք ալ, պարունակելով ըստ երեւութին նաեւ այն «Ճապանց» լեռ բաժինը[23]: Ասոնք յատուկ մտօք լեռան անուններ չեն, ինչպէս ինքնին յայտնի է· մինչեւ այս Ճապանց լեռան շարունակութիւնը դէպ ի արեւմուտք, Ճեմիլի գիւղի ճիշդ կռնակը բարձրացող գագաթնագիծը նշանակուած է Kara Gtur-Dagh, որուն սկզբան բառն որչափ ալ Թրքական «Գարա» (Սեւ) բառի կերպարանքն ունենայ, Հայերէն է, ուստի ամբողջը՝ Քարակտուր լեռ: Այս կը հասկնանք իբր լեռի անուն: Անոր համար կարծենք թէ, — եթէ ոչ լեռնագծին միւս բաժինը (Ճապանց–լեռ), — գոնէ եւ մանաւանդ այն բարձր գագաթն, որ այնպէս անյատուկ «Սոգորնի ամարանոցի գլուխ» կը նշանակուի, կը կոչուէր յատուկ անուամբ Կչան: Եւ այս Կչանի (Սոգորնի) ուղիղ ստորոտն է ինչպէս Բաչ–Քէօյ եւ

23 Քոխ, էջ 25: Տես քիչ մ'ետքը:

անկէ վեր ուղիղ հիւսիսակողմը կ՚իյնայ բուն Համշէն ալ. եւ իր կողերէն կը ըղխի Համշէնի գետը՝ անցնելով նախ Սողորնի եւ անկէ Համշէն, որոնք իրարմէ շատ հեռու ալ չեն: Անոր համար կարծենք այս կէտերու վրայ փնտռելու է Զիլգալէ, եթէ չէ իսկ այս «բերդ ձեմիլ»:

Մեր կասկածը չէ «ձեմիլ» անունէն: Այս՝ նոր անուն մըն է՝ նորագոյն թրքացման ժամանակի. (արաբ. ճէմիլ՝ գեղեցկա-տեսիլ): Անշուշտ «Զիլգալէ» որ շատ հին անուն չէ. բայց պրս. զիլ (սուր, բարձր) արդէն բաւական հին փոխառութիւն է, եւ կրնար վերջին դարերուն սովորական անունն ըլլալ՝ երկրին թրքացմանէն շատ եւ շատ յառաջ: Մեր կասկածն անկէ է որ Քոխ եղած է այստեղ, եւ բնակած է այն չէնքին մէջ, զոր «բերդ» ալ կը կոչէ, եւ ուր ամառը կը բնակէր Համշէնի այն երկրորդական ժառանգական իշխաններէն մին, որ «ա՛յան» տիտղոսը կը կրէր, եւ որուն մականունը զարմանալի ձեւ մ՚ունի՝ գոնէ Քոխի գրածին համեմատ, այսինքն՝ Kumpusarowaի (— ուրիշ տեղ մը էջ 116 կը գրէ Kumpus-Arowa). Սուլման աղա, եւ զոր կը նկարագրէ «հայ տիպարով», «իւր երակաց մէջ գլխաւորաբար հայ արիւնը կը զեռար», եւ թէ «թերեւս կը վերաբերէր այն ընտանիքին, որ իրեն գլխաւորին՝ Համամի՝ առաջնորդութեամբ կանուխէն մտաւ բռնեց

բարձր լեռնակողմը՝ բայց դէպ ի ծովի կողմ, եւ դրաւեց աշխարհ մը՝ որ իւր անուամբ Համամաշէն կոչուեցաւ, յետոյ Համշէն աղաւաղելով[24]» :

Ներուի մեզի նախ դիտել թէ զարմանալի անուանս թերեւս մատնանիշ ընէ այն շրջանին ուր ձեմիլ կը գտնուի, տեղւոյ մ'անունը : Անուանս մէջ յայտնի է վերջինը —ովայ, այսինքն՝ հովիտ. (տճ. օվայ՝ դաշտ, մարգ եւն) : Տեղւոյ անունն էր ուրեմն «Կոմբոսար», կամ լաւ եւս Գոմբու—սար, որուն հովտին տէր եւ էր այս իշխանը՝ որուն իշխանութեան շրջանին կեդրոնը կը համարուէր այն ժամանակ ձեմիլ եւ այս համանուն բերդը, ուստի թերեւս ուղղակի «ձեմիլ»ի հովտին անունն էր : Այս իշխանն, որ այնպէս լաւ հիւրընկալութիւն ըրած է Քոխի, բաւական արկածալից կեանք մ'ունեցած էր ինչպէս յետոյ լսած է Քոխ, երբեմն նշանաւոր աւազակապետ մ'եղած, բռնուած, բայց նաեւ կրկին իր լեռները փախչելով՝ ազատ եւ դոնէ կիսանկախ ապրելով այնուհետեւ ալ : Այս պատմութիւնը շատ հրահանգիչ է, ցուցնելով այն վիճակը՝ որ կը տիրէր այս կողմերը, բայց նաեւ այլուր, նաեւ ԺԹ դարու կիսուն մօտ[25] :

---

24 Քոխ, էջ 23 :

25 Քոխ, էջ 31—32. «Նախ քան Տրապիզոնի Օսման-փաշայի Պոնտական ձորապետաց աւազակութեանց վերջ տալը, կ'ըսէ թէ ձեմիլի այս իշխանը «նշանաւոր հանդխացած կ'ըսուի՝ իւր վարած ամէն

Արդ դառնալով մեր խնդրոյն՝ Քոխ կը նկարագրէ այս «բերդ»ը իբր բարձր, որուն տամալիէն կը տեսնէր այն անդնդախոր վհերը՝ որոնց վրայէն անցած էր՝ ճեմիլէ հոս գալու եւ այն՝ մթին ատեն։ Բարձր կիսաբոլորակ լեռ մը կը պատէր տեղս, եւ

---

յանկարծական յարձակմանց ատեն՝ իրեն յանդգնութեամբն ու քաջասրտութեամբն։ Եւ ոչ միայն հարուստ կարաւաններն իր մտադրութիւնը կը գրաւէին, այլ նաեւ միւս՝ գլխաւորաբար ծովեզերեայ եւ մանաւանդ Լազիստանի՝ ձորապետներն իրմէ շատ կը նեղուէին։ Իր այս ալպեան բնակութիւնը գրեթէ ամէն կողմէ պաշտպանուած էր բարձրաբերձ լեռներով, եւ այսպէս նաեւ իր բազմաթիւ թշնամիները չէին համարձակեր յարձակիլ անոր վրայ իր որջին մէջ։ Խորամանկ Օսման-փաշայ կրցաւ սակայն երբեմն Թակարդի մէջ ձգել զինքն ու բռնել։ Ի Կ. Պոլիս իր մթին բանտին մէջ մաշեցաւ քանի մը տարի, մինչեւ որ վերջապէս յաջողեցաւ կաշառքով իր բանտէն փախչիլ եւ աւստրիական նաւ մ'ապաստանիլ։ Կ'ուզէր նաւով Աւստրիա անցնիլ՝ հոն խաղաղութեամբ իր հարստութիւնը վայելելու համար... կը ցաւէր շատ որ այն ժամանակ իր ծրագիրը չէր յաջողած։ Իր փախուստը մատնուած էր եւ արդէն ի Զմիւռնիա տաճկական կառավարութիւնը պահանջեց զինքը։ Երկար բանակցութիւններէ ետքն, եւ երբ աւստրիական հիւպատոսը համոզուեցաւ որ իր պաշտպանեալ փախստականն իրօք աւազակապետ մ'եղած է եւ յուղկահարութեան մ'ալ թիւ դերի բռնուած, յանձնեց զինքը։ Բայց նոր եւ աւելի ազդեցիկ կաշառքներ երկրորդ անգամ ի գլուխ հանեցին իր փախուստը եւ յաջողեցաւ այս անգամ իր լեռները հասնիլ։ Խոստացաւ այսուհետեւ իր հին վարքէն հրաժարիլ եւ այսպէս իր իշխանութիւնը վայելել իրեն երաշխաւորուեցաւ»։

էր այն Սողորնի–ամարանոցի լեռը։ Բայց շրջակայքը կը նկարագրէ իբր «դրախտ մը» այս բարձրութեան մէջ, դալարուտ եւ ծաղկաւէտ ա՛յնչափ, տեղ մ'այսչափ բուսոց պէսպիսութիւն չէ տեսած[26]։ Այս շատ չի յարմարիր Զիլդալէի ապառաժին հետ՝ որ

26 Անդ, էջ 25—27. «Տակաւին յիշողութիւնս լի է, կ'ըսէ, այն մեծագործ ու իմ մտացս վրայ հզօրապէս ազդող տպաւորութեամբ, որ սերտ տպաւորեցաւ յիս, երբ բարձր դիտարանէն վար նայեցայ մերձաւոր շրջակայքս։ Մեծ լեռ մը կիսաբոլորակ կը պատէր իմ բոլորս եւ իւր գագաթը հոս հոն կը ցուցնէն ձեան բծեր։ Առատօրէն ծածկուած այլեւայլ ծաղիկներով որոնց կանաչ տերեւները նուազ տեսանելի էին, տիրող գոյն մը չունէր։ Այլեւայլ տեղեր յաճախ մթագոյն, իբր թէ՝ ինչպէս յիրականութեան՝ նաեւ հոս խառնուրդ ըլլայ ամենագեղի գոյներու, եւ կը ներդաշնակէր սիրուն եւ աղբերաշատ մարգին հետ, որուն կանաչ գորգը կարծես գունագոյն զարդերով ասեղնագործուած էր։ Այս կիսաբոլորակ լերան անունը տուին «Սողորնի ամարանոցին — գլուխը»։ Հաւանականօրէն որովհետեւ Սողորնի գիւղի ամառնոցին բնակութիւնք ասոր վրայ են»։ — «Իբր բնապատում այսպիսի դրախտանման տեղ մը գեղեցիկ բաց երկնից տակ անմիջապէս չգտնուիլ՝ ոճիր մ'երեւցաւ ինձի, եւ դիմեցի դուրսը եւ գրեթէ ամբողջ օրը հոն մնացի, ցորչափ արեւու լոյսը կը լուսաւորէր եւ մարմինս քիչ հանգստի պէտք չունենար։ Իմ յաջորդ ճամբորդութեանս մէջ տեղ մ'ալ այսչափ առատ հունձք չըրի՝ ինչպէս հոս. եւ իմ օրագիրս կը նշանակէ 200 թիւ, որոնց մէջ միեւնոյն տեսակը սուղիւ քիչ միայն կայ, ծանրաչափական չափերս ցուցուցին գրեթէ 6000 ոտք բարձրութիւն Սեւ-ծովու երեսէն վեր. ուստի ճեմիլ քիչ մ'աւելի բարձր է քան Կարին, հայ աշխարհին գլխաւոր քաղաքը, որ 5,735 ոտք բարձր կը հաշուի. եւ

կը շարունակուէր մինչեւ Համշէն՝ ըստ Ինճիճեանի: Միւս կողմանէ վերջնոյս կը մօտենայ այն դիտողութիւնը թէ տեղւոյս քարը նոյնը սիէնաքարն էր, զոր արդէն տեսած էի Երկաթալերան վրայ. (— Համշէնի «Դէմիրդաղ»՝ զոր անցած էր՝ հոս պալու համար) : — Լեռներու կողերուն վրայ յաճախ կը կազմէր փուլեր, եւ այսպէս ձորոյն ընդարձակ տեղեր կը ծածկէր չորս մատնաչափէ մինչեւ բազմաթիւ ոտք դրամագծով կտորներով: Յաճախ փխրած էր, եւ աստով դժուարին էր լեռներ շրջիլը: Ժայռ որմեր տեղ մը չտեսայ[27]»: — Ճէնքը կը

---

սակայն հոս ինծի այնպէս ալպեան (բարձրալեռնեան) կ'երեւար, մինչ հոն ինքզինքս խոր դաշտի մէջ կը կարծէի»: Կը յաջորդէ երկար ցանկ մը Թփոց ու բուսոց:

[27] Անդ, էջ 27: — Նոյնպէս կը նկարագրէ (էջ 20—21) ձեմիլէ հոս գալը 1 ժամէն, գիշերը մութին. մեզմէ վար, կ'ըսէ, կը գտար ջուր մը՝ ժայռերու եւ քարերու վրայէն անցնելով: Մէկ կողմը սեպ բարձրացող լեռ, միւս կողմը աւելի սեպ. ինկող վիհ, մ'որուն մէջէն առուակ մը կը թաւալէր, եւ ասոնց մէջ արահետ մը՝ միայն այնչափ լայն, որ մարդ մը միայն կրնար քալել: Բայց շնորհակալ ըլլալու եմ մթութեան, շնորհակալ՝ լիակատար անզգայութեան՝ որ տիրած էր մեր վրայ (յոգնածութեամբ), վերջապէս շնորհակալ՝ անդէտ ըլլալուս այս վտանգաւոր ճամբուս մասին, ուր սխալ քայլ մը ձի ու հեծեալն խորավիհ անդունդ մը նետած կ'ըլլար: Երբ երկրորդ օրը ի մերձուստ քննեցի այն տեղն՝ ուսկից վեր ելած էինք ձիով, պայծառ արեւու լուսով՝ սարսռացի տեսնելով այլեւայլ տեղեր այն խորութիւնն, ուր փրփրացող առուակը կը նշմարուէր»:

նկարագրուի թէ արեւելքի լաւագոյններէն էր եւ ունէր «հաստ, հաստատուն պատերով գետնայարկ մը որուն բաժինները յատկացուած էին երկրագործական եւ տնտեսական պիտոյից: Ուրոյն սանդղամասի մէջ սանդուղ մը կը հանէր նոյնպէս քարակերտ առաջին յարկը, որ բուն բնակութիւնն էր: Տան դրան կողմն էր հոս մեծ եւ ընդարձակ սենեակ մը՝ հիւրերու ընդունելութեան, ուստի «կոնակ» կը կոչուէր»․ Սենեկին կազմածն արեւելեան էր[28]: Պատուհանները արարկաձեւ կտրուած տախտակներով դրուագուած էին․ բայց ապակին Պոնտական լերանց վրայ տակաւին անծանօթ շռայլութիւն մըն էր»: Ընտանեաց եւ յատկապէս կանանց բնակարանները չէ տեսած, բայց միայն «փոքր խուց մը»: Ասոր «դրան դիմացը կար 3 ոտքէ աւելի բարձրութիւն մը, եւ դրսի որմին մէջ կային պատուհաններ, բայց շատ վերը, փոքրիկ ու բոլորշի լուսամուտներ»: —

28 Անդ, էջ 27—28: «Դռնէն չորս ոտք լայն անցք մը կար դէպի դիմացի պատի կրակետղը․ սենեկի երկու կողմերը իբր 7 ոտք լայն եւ 2 ոտք բարձր բարձրութիւններ (— «մինդէր» կը կոչէ, արեւելեան՝ երկար բազմոցները —) որոնք գեղեցիկ գորգերով ծածկուած էին: Իրիկուան ասոնց վրայ կը փռուէր անկողինն ու քննանալու միւս կարեւոր իրերը»: — Էջ 29—30 կը դնէ կերակուրներու շարք մը՝ որով հիւրասիրուած էր: Ասոնց անունները տաճկերէն են, եւ ծանօթ կերակուրներ: Անսովոր ձեւ մըն է՝ «Etgamissi՝ ոչխարի միս, խիստ համեմուած»:

Այս՝ կրնար յարմարիլ «աչտարակի» մը՝ ինչպէս կը յիշուի, կամ բերդակի մ'որ բնակարան էր տակաւին: Այս ամէնը նկատելով այս խնդիրը թէ այն ըլլայ Ջիլդալէ՝ կը մնայ երկրայական:

§ 4. Ի լրումն յիշենք կէտ մը, քանի որ խօսքն այս լեռնանցքի վրայ է: Քոխ այսուհետեւ ելած է լեռնադաշտը, ձեմիլ սուփ մէկ կողմնակի ձորէն չիտակ հարաւ՝ դժուարին ճամբով եւ Օգոստոս 1ի ալ ձիւնադաշտերով: Գագաթն իբր 9000 ոտք կ'ըսէ. (Համմտ. Կիպերտի 3180 մետր). Անկէ իջած է քանի մը ժամէ ձապանց գիւղի (գոր 40 տուն կ'ըսէ) ձորը, որուն վերնամասը, կ'ըսէ, դէչ համբաւ ունի եւ ասոր համար «Սատանի-ձոր» («Շէյթան-դէրէ») կը կոչուի: Այս ձորը կարճ ճամբան է դէպ ի Սպեր: Շարունակութիւնը հոս աւելորդ է: Արդ ասոր արեւելքն անմիջական ձորը՝ Մոդորնի գլխուն ճիշդ տակը՝ կը սկսի երկրորդ ձորը, որ՝ իւր ջրերով կ'իջնայ ի Տափոր եւ ի վերջոյ կը հասնի Ճորոխ, Սպերէ վար, Հունուտի եւ Խոտորջրոյ աւելի մօտ: Արդ այս ձորիս ճիշդ վերին ականց վրայ, բարձրադադաթան ճիշդ ստորոտը քարտէսն արժան տեսած է նշանակել «եայլա Tülü oglu»: — Այս անունը դառն յիշատակներ կ'արթնցնէ ամէն Խոտորջուրցւոց: Հոս ուրեմն յաւերժացած է նշանաւոր յուղկահարի մ'անունը, որուն բուն բնակութիւնը Թիգէի մօտերն էր: Այս «Թոյլօղլի» կամ «Թուլ-

օղլի», ինչպէս կ՚ըսէ Խոտորջուրցին, մեր մօտ օրերուն իսկ երկար ժամանակ սարսափ էր Խոտորջրոյ իւր յելուզակային արշաւախմբով, իւր հարստահարութեամբք եւ կողոպուտներով, մինչեւ որ քաջ երիտասարդ մը՝ Քերոբէ Ոսկանեան՝ վերջ դրաւ այն յուղկահարութեանց, զնդակահար ընելով աւազակը: Թէեւ զոհուեցաւ ինքն ալ (1886): Այս ամէնուն յիշատակը տակաւին թարմ է [29]: Մեր հայրենեաց վերջին շրջաններուս տիրող տխուր վիճակին լաւ օրինակ մըն է այն պարագան, որ իրեն հասած ծանօթութեանց շնորհիւ նշանաւոր քարտոխագիրը կրնար քանի մ՚ողորմելի խղճկներու խումբ մը հեռաւորնակ աւազակի մ՚անուամբ յաւերժացնել, մինչ անդին սպիտակ բծերով լի են իւր քարտէսները՝ նաեւ կարեւոր կէտերու համար: Այս մեր ուսումնասիրած քարտէսին վրայ, ինչպէս արդէն ըսինք, խոշոր սպիտակ բիծ մըն է ամբողջ Համշէն: Բացի բարձր լեռնագծէն եւ ծովեզերքէն՝ նշանակել կրնար միայն այն գծերը, զորոնք Քոխ նկարագրած էր: Արեւելեան բաժնին մէջ միայն Արտա–Խալախին գիծը գծուած է, որմէ արեւելք երկար միջոց մը սպիտակ է: Այս գծէն արեւմուտք շատ աւելի մեծ սպիտակ մըն է՝ մինչեւ Սինեձոր–Համշէն–Սոգորնի գիծը: Պարխարի հարաւակողմը մեծ սպի–

[29] Դէպքին մանրամասնութիւնները տես տաղի մը մէջ, զոր յօրինած է ինքն Հ. Մ. Հ. Գաւառացի, «Երգեր եւն Խոտորջրոյ», Տփղիս 1903, էջ 74—80:

տակ բիծ մըն է Խեւակի ձորի շարունակութիւնն ու Բերդագրակի գաւառի վերնակողմերը մինչեւ Պարխալ, այն մասը՝ զոր Քոխ չէր տեսած եւ նկարագրած, եւ Քոխէ ետքը չէ եղած ուղեւոր մ'որ այս թերին լեցնէր: Այս սխալը կը հասնի մինչեւ Մոխրկուտ ու Խոտորջուր: Վերջնոյս ալ միայն այս անուանք կան, ինչպէս «Խոտորջուր-դաղ» մը, եւ գիւղի տեղեր նշանակուած՝ առանց որեւէ անուան: Որովհետեւ Քոխ, որ անցած է ասկէ, անուն չէր տուած: Խոտորջրոյ բաց ի վարի մասէն, որ իբր վերջնական գծուած է, այն ալ՝ ուղիղ միայն կապանը· բոլոր վերնամասն՝ մինչեւ բարձր Սողորնի-Քաջքար գիծն իբր առժամանակեայ եւ անորոշ նշանակուած է, ինչպէս ձորերուն՝ այսպէս գետակաց ընթացքը միայն կիտադրեալ է, եւ իրապէս ո՛չ համապատասխան իրականին, ինչպէս ո՛չ նաեւ այն եօթն գիւղերու իբր նշան բոլորակաց տեղերուն բաւական մէկ մասը: Պատճառը Քոխն է, որ բոլորովին անորոշ խօսած է. եւ նոյնիսկ տեղերուս հմուտ մ'իւր նկարագրութենէն դիւրաւ չի կրնար գտնել թէ իւր ուղին ի՛նչ եղած է: Թողունք այս կէտը, որուն պիտի անդրադառնանք: Բայց որոշ է, թէ Քոխ Մոխրկուտէ եկած էր Կրմանայ ձորը: Բնական ճամբան էր՝ անկէ իջնալ Ծիճապաղ, Խոտորջրոյ կեդրոնը, եւ ձորերուն միացման կէտը, անկէ Սունինց-Բեղուտ գլխաւոր ձորէն ելլել Քաջքարի ոտքը: Անշուշտ այս գիծն անցած է

Քոխ։ Բայց իր նկարագրութիւնն ա՛յնպէս է որ կարծես Քոխ ուրիշ ճամբայ մ՚ըրած ըլլայ։ Յամենայն դէպս Խոտորջրոյ միւս գլխաւոր ձորը՝ իր գիւղերով, զորոնք չէր կրնար այլեւս տեսնել. անգամ մ՚որ աճապարանօք մտած էր Սունինցի ճամբան, ամենեւին չի յիշուիր։ Իր քարտէսին վրայ կայ այն ձորը, եւ նոյնը գրած է Կիպերտ, բայց բոլորովին երկրայական ջրոյ ընթացքով, եւ ամբողջը՝ շատ կարճ, եւ առանց գիւղի նշանի։ Ամբողջն ուրեմն՝ տակաւին լիակատար անապահով, եւ իրականին՝ մանաւանդ գիւղերու դիրքը՝ անճիշդ։

Այս կէտը շեշտեցինք ցուցնելու համար թէ ո՛րչափ զգուշութիւն պէտք է քարտէսներուս գործածութեան ատեն՝ նաեւ այլ ամենայն մասանց նկատմամբ։ Եւ այս ամէնը յերեւան կու գայ մանաւանդ, երբ քարտէսէ քարտէս համեմատութեան առնունք, օրինակի համար նորագոյն եւ լաւագոյններէն՝ Լինչի քարտէսը[30]։ Այս ի հարկէ փոքր չափով եւ ընդհանուր քարտէս մըն է եւ մանրամասնութեանց մէջ չի կրնար համեմատուիլ Կիպերտի նոր քարտէսին հետ։ Բայց թէ նոյն իսկ ընդհանուր գծուածք ո՛րչափ իրարմէ տարբեր են, առնունք հոն զմեզ հետաքրքրող միւս գաւառը՝ Սեւ-Գետ։ Անոր գլխաւոր երկար ձորը՝ իր ձորակներով՝

---

[30] Կից իր նշանաւոր գործոյն՝ *H. F. B. Lynch*, Armenia. Travels and Studies, London 1901.

սկսելով բարձրաբերձ լեռնագծէն կ'իջնայ Միւրմենէ: Այս ձորին արեւելքը գծուած է շատ լայնանիստ լեռնակող մը՝ Կեմերէնդաղ անուամբ, որմէ այլեւայլ ձորեր կ'իջնան: Ասոր արեւելքէն կ'իջնայ եւ կը բոլորի երկրորդ Սեւ–Գետ մը (Կարադերէ) որ կը միանայ առաջնոյն՝ Միւրմէնէէ քիչ յառաջ: Կիպերտ աւելի մանրամասն ունի այս լեռն որ այնպէս լայնանիստ չէ· միակ համեմատաբար լայնանիստ մասն է Մատուռ լեռան մասը: Ասոր եւ Մաքուր–լեռան միջեւ իջնող ձորս գրեթէ շիտակ հարաւէն հիւսիս մինչեւ ծով կ'երկարի, եւ անով նաեւ այս երկրորդ ձորն իւր ջրով նոյն ընթացքը կ'ընէ եւ անկախ ծով կը թափուի, ուր նշանակուած է անունը յունական–տաճկական ձեւով «Մոնակոսսու»: Այս՝ ուրեմն անկախ ձոր մըն է, թէեւ բնականապէս կը վերաբերի Սեւ–Գետ շրջանին, ինչպէս անոր կը վերաբերին ուրիշ մասեր ալ: Լինչ (— Հայկունւոյ համաձայն —) «Կարադերէ Գաղայ»ի կ'ընծայէ նաեւ Եամպօլու գետոյ մասը, Կիպերտի քով լաւ նշանակուած է առաջի գլխաւոր ձորը, որ բազմաթիւ անուններ կը կրէ: Բայց շատ տկար է երկրորդը, որուն սկիզբը՝ ծովու մօտերը միայն՝ քանի մը գիւղի անուններ կան: Անկէ անդին յաճախ պարզ բոլորակներ են՝ քովը «գիւղ» նշանակուած, առանց անուան: Այսպէս է նաեւ գրեթէ ամէն քայլափոխին, մանաւանդ միւս քարտէսներու

*համեմատութեամբ։ Այս ամէնն ի հարկէ ո՛չ քարտախագրաց թերութիւնն է, որ աւելի աղբիւրներ չունէին, ո՛չ ուղեւորաց, որ կրցածնին ըրած եւ անկոխ երկիրներէս յաճախ անգամ մ'անցնիլ կարենալով՝ ամէն նեղութեամբք։ Եթէ չըլլար Քոխի ուղեւորութիւնը՝ կարծենք Բերդագրակ-Խոտորջուր եւ ուրիշ մասեր ալ պարզ սպիտակ բծեր պիտի երեւային։ Թերին լրացնել բուն տեղացւոց գործն էր։ Բայց ինչ կրնար ընել թէեւ ազատ շրջելու կարող՝ երկու դարէ վեր մահմետական եղած Համշէնցին կամ Սեւ Գետացին՝ գիտութեան համար, որուն մասին գաղափար չունի։ Պարտքը մերն էր. բայց ի՞նչ կրնար ընել նաեւ Հայն այն պարագաներու մէջ, որոնք կը տիրէին եւ կը տիրեն տակաւին, եւ զորոնք մանրամասնել պէտք չկայ։ Վերջին քառասնեկին մէջ, երբ մեր ալ զարգացումն հասած էր այն կէտին որ օգտակար հետախուզութիւններ կարելի էին, տիրող ծանօթ հանգամանքներու շնորհիւ եւ ո՛չ կարելի էր մտածել ուսումնական ուղեւորութեանց եւ հետազօտութեանց մասին մանաւանդ այս կողմերը։ Մեզի համար օրհասական այս վերջին պատերազմը անշուշտ պիտի բերէ գոնէ աշխարհագրական ճշգրիտ տեղեկութիւններ։*

**§ 5. Սեւ Գետոյ եւ Համշէնի բնակչութիւն։** — *Տայք եւ Սպեր՝ իրենց աշխարհագրական սահմանաւ՝ հասած էին Պարխարի կամ Պոնտական շղթային բարձրադիր*

գիծը, բայց չէին անցած անդին դէպ ի ծով: Սակայն բնական էր որ հայ ժողովուրդը շատոնց անդին ալ անցած էր եւ այլեւայլ կէտերու վրայ նաեւ ծով հասած, թէեւ ծովեզերեայց վրայ տիրող տարր մը չէ եղած: Եթէ չունենայինք ալ Համամի եւ Համամաշէնի պատմութիւնը՝ կանուխէն իսկ, նոյնը կրնայինք մակաբերել նոյնիսկ հայ տարրին յետոյ այս կողմանց այն հոծութենէն դատելով: Բայց սատի արդէն հին պատմութիւնը կը ցուցնէ նոյնը: Շատ հին ժամանակ իսկ ունեցած ենք սոր համար խառնուրդներ պոնտական ժողովրդոց հետ, ինչպէս «Հայ-Խաղտիք»: Մեր տոհմային պատմութեան մէջ անտեսուած Փոքր-Հայք իրապէս հասաւ այն կողմը մինչեւ ծովեզերք, եւ այն կողմն է որ Հայք տիրած են ծովեզերքին, թէեւ այս ամէնն երկար չեղաւ: Աւելի անագանագոյն շրջանի բիւզանդական հսկայ Հայկական բանակաթեմը կը պարունակէր ամբողջ ծովեզերքն՝ Ճորոխի ծովախառնուրդքէն մինչեւ Սինոպ: Ասկէ աւելի ուշ բաժնուած Խաղտիք բանակաթեմը, որուն կենդրոնը Տրապիզոն էր, ինչպէս վարը կը հասնէր մինչեւ Եկեղեաց եւ Խողան, միջոցը՝ Բաբերդ ու Սպերը, վերնակողմը կը պարունակէր ամբողջ արեւելեան ծովեզերքն, ուստի Հոփէոնէ (Ռիզէ) մինչեւ Ճորոխի բերանը[31]: Այս ժամանա–

[31] Հոս հարեւանցի ակնարկուած կէտերս այլուր առիթ պիտի ըլլայ նկատողութեան առնելու,

կամիջոցն ալ է հայ նաեւ մեծ գաղթականութեամբք դէպ ի այս ամէն կողմերը, որոնց յետոյ՝ ԺԱ դարուն՝ յաջորդեցին հսկայ գաղթականութիւններ Վասպուրականի, Կարնոյ եւն: Այս կէտն, որուն այլեւայլ մասանց վրայ խօսիլ առիթ պիտի ըլլայ, յիշեցինք հոս այն պատճառաւ թէ չատ մեծ կարեւորութիւն տալու չէ այն աւանդութեան, իբր թէ Համշէնցիք միայն Անւոյ գաղթական ըլլան:

Այս աւանդութիւնը կը յիշէ — ինչպէս կանխաւ Ինճիճեան եւ Բժշկեան, — յատկապէս Հայկունի. «Որպէս կ՚աւանդեն, Անւոյ անկումից յետոյ փախստականաց մէկ մասն ապաստանած է Համշէն, որ աշխարհի տեղծմանէ ի վեր մարդու երես չէր տեսած: Հսկայ լեռներով եւ խիտ անտառներով պատած, այստեղ ապաստանած են հարուստ Հայեր. ...երկար միջոց անյայտ են մնացած, անտառներն են կտրած եւ շինութիւններ են շինած»: Անոր համար կը կարծէ Հայկունի թէ «Անիի յիշատակներն որոնողները թող մտնեն այս ընդարձակ եւ անտառաշատ երկիրը. մեծ պաշար պիտի հայթայթեն[32]»: — Թէ այս ակնկալութիւնն որչափ արդա—

---

Բիւզանդեան թանակաթեմեր.ւս մասին հմմտ. Հ. Գելցէր, «Սկզբնաւորութիւնք բիւզանդեան թանակաթեմերու դրութեան», թրգմ. Հ. Գարեգին Գարանֆիլեան, Վիեննա 1903. էջք + 83 (եւ քարտեսիկ). յատկապէս՝ էջ 54—58, եւն՝

[32] ԱՐՐՏ, 1895, էջ 296, 297:

րանալի է՝ չենք գիտեր: Բայց թէ երկիրն անբնակ էր եւ Անւոյ գաղթականք նախ շէնցուցին, այն՝ ճիշդ չէ, ինչպէս ըսինք: Անւոյ Բագրատունեաց անկումը, Սելճուգեան-Մոնղոլական եւն աշխարհակործան արշաւանաց դարերն, որ ամայի ըրին մեր Հայրենիքն, ի հարկէ ստիպած ըլլալու են փախստականաց մասի մ'ապաստանարան փնտռելու հնուց իբր ապաստանի ծանօթ Տայոց լեռներն ու Պոնտական լերանց վերին ձորերը, բնականապէս ո՛չ Անեցին միայն: Այլուստ Անւոյ յիշատակն այնպէս վառ էր Հայոց մէջ որ շատ ուրիշ տեղեր ալ միեւնոյն աւանդութիւնը տարածուած է: Քիչ շատ ամէն ոք Անեցի ուզած է ըլլալ: Նոյն աւանդութիւնը կայ նաեւ Խոտորջուր, բայց ոչ ընդհանուր տարածուած[33]: Իսկ Կարնոյ Կանցին ինք-

[33] Այսպէս կը նշանակէ Ս. Գ. «Խոտորջուր» թըղթակցութեան հեղինակն ի «Նոր–Դար» 1890, Թ. 73. «Ժողովուրդն աւանդութեամբ կը պատմէ թէ Անի քաղաքի կործանումէ յետոյ այս կողմերն փախստական եկած են 7 տուն Հայեր եւ պահուըտած անմատչելի տեղեր»: Այս եօթ տնէ կ'ըլլայ ի հարկէ եօթը գիւղ, եւն: Այն կէտը թէ ԺԵ—ԺԶ դարու Մուշէ ու Վանէ ալ 3 տուն եկած ըլլան, եւ ասոնց սերունդն ըլլայ ուրեմն Խոտորջրոյ մէկ մասը՝ տարբեր խնդիր մըն է, զոր յետոյ կը շօշափենք: Նաեւ «Բնաշխ. Բառ.» (Հ. Ս. Էփրիկեան, «Բնաշխարհիկ Բառարան», Հատոր Ա. Վենետիկ 1903. Հատ. Բ, 1907) կը նշանակէ (Բ, էջ 201). «Ծերունի թղթակից քահանայի մը գրութեան համեմատ՝ տեղւոյս բնակչաց մաս մը եկած է Անի քաղաքէն»: Սակայն Խոտորջրոյ մասին հնագոյն գրողը, որմէ չապէս քաղուած է նախընթաց

զինքն Հարազատ Անեցի կ'ըսէ[34]: Ասոնք՝ իբր օրինակ: Ասոնց եւ նմանեաց մէջ կայ

---

գործոյն «Խոտրջուր» յօդուածը, չի յիշեր Անւոյ գաղթականութեան խնդիրն ու աւանդութիւնը, այլ՝ պէսպէս տեղերէ գաղթած կ'ենթադրէ· (հմմտ. Հ. Ա. Պ. «Տեղագրութիւն Խոտրջրոյ» ի ԲԶՄ. 1875, էջ 225—229, 333—337, եւ 1876, էջ 193—198): Ուստի ըստ երեւութին: Անւոյ աւանդութիւնը համեմատաբար նոր է:

34 Տարածուած է գաղթականութեան աւանդութիւնս այսօր՝ ինչպէս նոյն գիւղի մէջ, նոյնպէս ի Կարին: Նոյնը կը յիշէ Յովհ. քհ. Ալաշկերտցի («Ճանապարհորդութիւն Տ. Յովհաննէս քահանայի Վաղարշակերտցւոյ ի Սահմանս Բարձր Հայոց», Ա. Կ. Պոլիս 1879. էջ 9): Կան գիւղի համար գրելով, «յորում են տունք Հայոց 270 եւ Տաճկաց 70. Հայկազուն բնակիչք այսր գեղջ վաղու խմն աւանդութեամբ ասեն լինել գաղթեալք ի քաղաքամօրս մեր յԱնւոյ մեծի» են: Աւելի լաւագոյն է Մ. Կ. Միրախորեանի յիշածը («Նկարագրական Ուղեւորութիւն ի Հայաբնակ գաւառս» եւն. Մասն Գ. Կ. Պ. 1885, էջ 157) «Տեղւոյս մերայնոց մասին կ'աւանդեն թէ «Շիրակայ մեծ քաղաքէն (Անի) գաղթած են». եւ չկարծեմ որ այն լակոնական խօսքն ստուգութենէ հեռի լինի»: Ըստ ինքեան ուրեմն աւանդութիւնը Շիրակայ քաղաքի մը մասին է. «Անի» հետեւութիւն է անկէ: Միրախորեանի քով բնակութեան թուերը նուազ են: Թէեւ մեծագոյն գիւղ է Կարնոյ», զոր կրնամք «Գիւղաքաղաք կամ Մայր–գիւղ սեպել», բնակութեանց թիւն է 280, որմէ 200 Արմենական են եւ 80 մահմետական». աշակերտք դպրոցին միայն՝ 120: Ըստ այսմ՝ համեմատութեամբ Յովհաննու Վաղարշակերտցւոյ՝ Հայք պակաս են 78 տնով: Բայց աւելի Վաղարշակերտցւոյ համեմատ ունի Ա—Դ.0 («Վանի, Բիթլիսի եւ Էրզրումի վիլայէթները», Երեւան 1912, էջ 174) այսինքն՝ 200 տուն Հայ եւ 100 տուն մահմետական վեր–

*թերեւս մասամբ հիմ մը, եթէ մանաւանդ «Անեցի» նեղ իմաստով՝ իբր բնիկ Անւոյ քաղաքացի չառնունք, այլ իբր մայրաքաղաքին ենթարկեալ ամբողջ երկրին: Այլապէս՝ օրինակի համար՝ դժուար է ըմբռնել թէ Անւոյ քաղաքացիք Կարնոյ քով գիւղ մը հիմնելու ձեռնարկած ըլլան, այն տեղն եւ այն շրջանին, ուր եւ երբ Կարին արդէն սաստիկ զգալած էր նոյն իսկ Սելճուկեան աւերմունքն (Արծնի աւերումն եւն) եւ երբ քա—*

---

*ջինքս յամենայն դէպս աճած են: «Բնաշ. Բառարան», Բ (Վենետիկ 1907) ունի «Կան» անուան ներքեւ (— ուր կը գրուի նաեւ «Կեան», էջ 34 մինչեւ անգամ «Քիան» անսովոր ձեւերս —) նախ «400 տան բնակիչ, որոնց 300ը Հայոց եւ 100ը մահմետականաց». աշակերտք՝ 170. հոս մոռցուած չէ ի հարկէ «Կանի Հայոց նախնիք գաղթական կը համարուին Անւոյ»: Տարբեր թիւ կը ներկայացնէ Կարնոյ գիւղերու «աշխարհագիր»ն, որ յօրինուած կ'ըսուի 1880ի (էջ 301): Հոս Կան ունի բնակիչ (անձն) «Հայ 2242. Թուրք՝ 312»: Հոս Թուրք տուն գլուխ 3 հաշուելով 100 տուն կ'ըլլայ, հայ տուն՝ գրեթէ 8 անձ հաշուելու է 290 տան մօտ ստանալու համար: Թիւս ուրեմն շատ թուեր է: Կան՝ արդէն Ցակոբայ Կարնեցւոյ օրով 300 տուն էր (տես քիչ մ'ետքը). ժէ. դարէ մինչեւ այսօր նոյն է թիւը, որուն պատճառք յայտնի են: — Կան քաղաքի մերձաւորագոյն գիւղն տուած էր իւր անունը Կարնոյ բերդաքաղաքի դռներէն միոյն, զոր կը յիշէ արդէն* Ցակոբ Կարնեցի *որ պատմելով Միհրան Ս. Աստուածածին եկեղեցւոյ սպասուց գողութիւնը, գողերու բռնուիլը եւ պատժուիլը, կը դրէ թէ Կարնոյ փաշան «զՊարմաղօրն եւ մօլլայ Շապանն ի* Կանայ դուռն յանդիման եկե*ղեցւոյն ի ցից եհան» (էջ 589): Դուռը շատոնց չկայ. բայց անունը կայ տակաւին:*

ղաքն արդէն որջ մ'եղած էր Սելճուկ էմիր-ներու եւ անոնց նմանօրինակ յաջորդներու։ Կանի պատմութեան համար կարեւոր է Վենետկոյ Թ. 150 Թղթեայ եւ ընտիր բոլորգիր Աւետարանը, որ ՉԼԲ (= 1283) թուին գրուած է ի Կան՝ Յովհաննէս երիցուէ։ Ընդարձակ յիշատակարանը կը յիշէ բազմաթիւ երիցունք, Երեմիայ քահանայի ձեռօք նոյն տարին «վկայարան» շինուիլը, եւն։ Հոս խօսք մը չկայ Անւոյ կամ ընդհանրապէս գաղթականութեան մասին[35]։ Նոյնպէս Յա-

---

[35] Ձեռագրիս մասին տես Հ. Բարսեղ Վ. Սարգսեան, «Ցուցակ» եւն, սիւն 640—46։ Ընդարձակ Յիշատակարանը (Թղ. 3ա) որուն սկիզբը թերի է, կը գրէ «...ի յայսմ ժամանակի քահանայ ոմն Երեմիաս իմաստուն ...ստացաւ զսա յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց եւ ազգականաց. եւ ոչ այսքան, այլ սա շինեաց վկայարան եւ կատարեաց ի յայսմ ամի (= 1283) եւ բազում ընչիւք ծախուորեցաւ ի նմա...։ Եւ արդ աղաչեմ... յիշելոյ արժանի առնէք... զԵրեմիա քհ. եւ զհայր իւր զՏիրատուր ...եւ զմայր իւր զՄայրտիկին զփոխեալն ի Քրիստոս եւ զմիւս սնուցանող մայր սորա զՏիրանցն...։ Ընդ նմին յիշեսջիք եւ զկենակից սորա զԹագուհի եւ զծնողսն իւր՝ զՅովաննէս քհ. եւ զեղբայրսն իւր զՍարգիս եւ զԱստուրն եւ զքոյր սոցին զՄարգրիտ եւ զԳրիգոր երէց ...յիշեցէք եւ զՅովաննէս որ ի մէջ երկոցունց շնորհեալ է կնիք լուսաւորութեան սուրբ աւազանին, եւ զկենակիցն զՏիկնացն եւ զքուրն իւր զԹուլթերն...։ Եւս առաւել Յովաննէս քահանայի ուսուցանողի եւ վարդապետի ...եւ սա կազմեաց զսուրբ Աւետարանս... եւ զԸնձեր նկարիչ սորա (= ծաղկող) յիշեսջիք աղաչեմ։ Եւ զիս զանարհեստ եւ զանարժան գրողս զՅոհաննէս երէցն... զհայր իմ վարդապետ

կոր Կարնեցի Կանայ գիւղի իւր գաւառանութեան մէջ որեւէ ակնարկութիւն չունի

---

անուն եւ զմայր իմ զՄամատիկին... ։ Գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառիս Կարնոյ, որ կոչի Թէաւդեպաւլիս, ի Կան գեղ, ընդ հովանեաւ Սրբոյ Զաւրավարիս (Սարգսի) եւ Սրբոյն Սիոնի եւ Սրբոյն Գէորգայ»։ Գրութեան թուականը Մարկոսի Աւետարանի վերջն է՝ «ի Թուականութեան Հայոց ՁԼԲ. գրեցաւ տիեզերաքարոզ... աւետարանս ձեռամբ անարհեստ եւ անարժանի՝ Յոհաննէս երիցու» եւն։ Միւս յիշատակարաններէն, որ նոր ստացչաց կողմանէ են (Թղ. 216ա կցելով բուն գրչի յիշատակարանին ալ) որոշ թիւ ունի այն, ուր կ՚ըսուի թէ «Ես Պրն. Ղազարոս որդի ամիր Գրիգորի որ առի սուրբ աւետարանս յիմ հալալ արդեանցս եւ դվի յիր տէրն յիշատակ ինձ եւ կենակցին իմոյ Աւհլի խաթունին» եւն, եւ այն՝ «թվին ՊՀԳ» (= 1424)։ — Ուստի յափշտակուած էր աւետարանս, ինչպէս ասկէ ետքը կրկին յափշտակած են «Վրաց ազգ»ն, որմէ գնուած է հեռու տեղ մը՝ ի Կիսկիմ 1512ին։ Այս վերջին յիշատակարանը յետոյ կը յիշենք (§ 29)։ — Կան գիւղի հռչակաւոր եւ յարգուած երկաթագիր Աւետարանը մը 1045 թուէն՝ Կարապետ արքեպ. Կարնոյ գաղթին հետը տարած էր։ Ասոր յիշատակարանն հրատարակուած էր արդէն ի թերթին «Հայաստան» 1851, Թ. 51. (տես եւ Զարբհ. «Մատենադարան, Հայկական Թարգմանութեանց». Վենետիկ 1889, էջ 159)։ Այժմ յէջմիածին է (Զոգր. Գէորգ. 23/3723, հմմտ. Յովսէփեան, Քարտէզ հայ հնագրութեան», էջ 26, Տխտ. ԼԴ, 49)։ Գրուած է «ձեռամբ Յուսկան մեղաւոր եւ անարժան քահանայի եւ յետին գրչի, ի կաթողիկոսութեան Տեառն Պետրոս Հայոց վերադիտողի), ի Թուականութեան Հայոց» ՆՂԴ (= 1045)» եւն։ Ղուկ. Աւետ. վերջն եղած յիշատակարանն կը նշանակէ ստացիչը «... զԿոստանդին եւ զծնողսն իւր յիշեսջիք» եւն։ Գրչութիւն տեղին չի յիշուիր։

գաղթականութեան մը մասին[36]։ Համ-
շէնի (նաեւ Խոտորջրոյ) համար որեւէ
տեղէ եկող նորեկները կրնային յաւելում
մը տալ ժողովրդեան, բայց բուն ժողո-
վուրդն հոն արդէն շատ հին էր՝ Անւոյ ան-
կումէն շատ յառաջ։ Անոր համար Համշէն-
ցին կը խօսէր իւր բարբառը, Խոտորջուրցին
իրենը. եւ Կանցին՝ ուրիշ մը, Տրապիզոնցին
ալ իրենը, որ նայնպէս Անւոյ գաղթական
կ՚ըսուի։ Բարբառներու կարեւոր կէտն այս
խնդրոյ մէջ միշտ նկատի առնելու է։ Նոյնը
նկատելու է մանաւանդ այն պարագային,
երբ օրինակի համար Ինճիճեան (էջ 387) կը
հաստատէ ընդհանրապէս թէ Տրապիզոնի
«Հայք եկին յայս քաղաք ի Համշինէ. իսկ ի

[36] Յակ. Կարնեցի, էջ 38. «...տուեալ ի վերայ
աւրհնեալ գիւղին Կանայ. որ անդ բնակեալ կան
երեքհարիւր տուն Հայք, եւ ունին գեղեցկաշէն եկե-
ղեցի մի, անուն սրբոյ Կուսին Վառվառեայ կառու-
ցեալ, որ տապաստ եւ ծաղկեալ տղաքն տանին ի
դուռն, առժամայն չորանայ եւ ազատի շնորհօքն
Քրիստոսի եւ սուրբ կուսին Վառվառեայ. եւ կան
քահանայք տասն եւ սարկաւագունք յարաժամ փառա-
բանութիւն Աստուծոյ. Եւ ունի գիւղս այս եւ դաշտս
սեան եւ պտղաբեր հողս, որ դարի եւ ցորեան
եւ կտաւատ բազում լինի, որ բոլոր շրջակայ
գաւառներն սոքա լնուն ձիթով, որ տասներկու նուկի
ձէթն երկու դրամ արծաթոյ կուտան։ Եւ լինի գիւղս
այս դոմէշ մեծ եւ անճոռնի, եւ գեղեցիկ եղինք
ախորժք տեսողացն. եւ է այժմ շրջակայ գիւղքս եւ
գաւառխս ամենայն Հայաստան եւ ողորմութեամբն
Աստուծոյ քան զամենայն երկիր հանդարտ եւ խաղա-
ղութիւն» եւն։ — Իսկ ի՞նչ այժմ։

Համշէն եկեալ ասեն ի յԱնի քաղաքէն» եւ թէ քաղաքացւոց քով կ'ըսեն թէ կը գըտ–նուին «Թուղթք ազգաբանութեան իւրեաց գրեալք ի յԱնի» եւն։ Մինչ Բժշկեան, որ իր տեղացի կը գրէ, կը զանազանէ. թէ Գիւղա–ցիք «Համշէնէն եկած են. բայց քաղաքացիք Անի քաղաքէն են», եւ անոր համար — եւ այս ճիշդ է — «գեղացուց լեզուն եւ հնչմունք շատ տարբեր է քաղաքացիներէն», կը յա–ւելու թէ «սակայն քաղաքին մէջ ալ կան Համշէնէն եկած հին տներ», որ բնական բան էր՝ կենդրոնին համար (էջ 82)։ Յետոյ առիթ պիտի ըլլայ այս երկու Հեղինա–կաց խօսքերն ամբողջովին յառաջ բերելու (տես § 21)։

Նորեկներու եւ փախստականաց մէջ անշուշտ ամէն կարգի անձ կար, ինչպէս գիւղացին, որ բնականապէս մեծամասնու–թիւնն էր, նոյնպէս «հարուստ»ն ու ի վերջոյ նաեւ իշխանական տներէ։ Այս միջոցին իշ–խանական տուն չափազանց չէր Հայոց մէջ, ինչպէս էր հին՝ ազատաց ու նախարարաց շրջանին։ Ասոր փոխարէն Բագրատունեաց շրջանին եւ ի՞նչ առատութիւն եղած է թա–գաւորական կամ արքունի տանց, — Բագ–րատունիք Անւոյ, Կարուց, Արտանուչի, Ափ–խազաց–Վրաց, Սոմխէթի, եւն, չհաշուելով ալ Վասպուրականի, Սիւնեաց եւն տները։ Բագրատունիք, ինչպէս ի Սպեր, նոյնպէս մանաւանդ ի Տայս, թէեւ վերջնոյս պատ–մութիւնն ընդհանրապէս կը համընթանայ

Արտանուջի Բագրատունեաց պատմութեան հետ. ի Տայս մանաւանդ առատ եղած կ՚երեւան «արքայ» տիտղոս կրողները. եւ վրական Տարեգիրք Տայոց մեծագոյն իշխողին՝ Դաւթի Մեծի Կիւրապաղատի օրով կ՚ըսէ թէ այս «հզօրագոյն էր քան զամենայն արքայս Տայոց[37]»։ Եւ վերջին խմբագրիչը Վախուշտ իւր Սամցխեաց պատմութեան մէջ կը դնէ[38]. թէ «Բագրատունի արքայից, կիւրապաղատաց, իշխանաց – իշխաններու (երեսթաւք երեսթաւաց) կամ պարզ իշխանաց (երեսթաւք) մասին, որոնց վրայ խօսեցանք եւ անունները ծանուցինք, ցուցուցինք թէ անոնցմէ ոմանք ո՛ւր կ՚իշխէին. ուրիշները կ՚ապրէին ի Տայս, ի Կղարջս, Սպեր, Ճաւչէթ եւ Արտահան. «բայց կ՚ըսէ դերագանցապէս վրական արքայք կը կոչէին այն շրջանին անոնք որ Վերին-Քարթլեաց կամ տէր էին եւ կալուածներ ալ ունէին այն ամէն աշխարհաց մէջ։ Ինչպէս մեր՝ նոյնպէս եւ շատ աւելի ալ՝ լի են վրական աղբիւրները Բագրատունեաց այլեւայլ ճիւղերու անուաներով, բայց բնականապէս նաեւ ո՛չ ամէն կողմնական եւ պատմութեան համար աննշան ճիւղ նշանակուած է անպատճառ։ Ուստի հալածանաց շրջանէն շատ յառաջ ալ նաեւ Բագրատունի ճիւղերէ որեւէ մէկը

[37] *M. Brosset*, Histoire de la Géorgie, I, Pétersb. 1858, p. 292. —

[38] *Brosset*, II, 1, p. 204—205.

կրնար դառնալ ի Համշէն ալ։ Թողունք ուրիշ տներու խնդիրները։ Մեր պատմութիւնը կը նշանակէ թէ ի՛նչպէս Բագրատունեաց եւ Արծրունեաց իշխող տանց շառաւիղները ընաջինջ եղան Հոռոմոց ջանիւք, (— արդէն Բիւզանդիոն եղած է հնուց ի վեր մեր իշխող տանց գերեզմանը այս կամ այն ձեւի տակ —) նոյնը կը նշանակէ Վրական Պատմութիւնն Արտանուչի տանց համար, զոր՝ իւր միացեալ զանձն ամրապնդելու համար՝ սպառել ձեռնարկեց Բագարատ Գ.[39]։ Բայց ընականապէս պատմութիւնը չի նշանակեր թէ ի՛նչ եղան ի վերջոյ այլեւայլ կողմնական ճղերու սերունդները, ինչպէս որ մեր պատմութիւնը կը լռէ թէ ի՛նչպէս անհետ եղաւ օրինակի համար Սենեքերիմայ հետ գաղթող իշխաններու սերունդները։ Միով բանիւ ի Համշէն կրնային դառնալ այսպիսի տներ եւ նաեւ իշխող եղած կամ այս կամ այն տունը, քանի որ ապահովութիւն չունինք, ինչպէս վերը յիշուած խօսքին մէջ ենթադրաբար կ՚ըսէ Քոխ նաեւ իւր ժամանակի «վոյվոտ»ի մասին[40], թէ Համամի տան ցեղէն շարունակուած ըլլայ։ Բայց այս ամէնը լոկ կարելիութիւն է. որոշ կռուան չունինք պատմութենէ, քանի որ արդէն Համշէնի, — նոյնն ըսելու ենք Խոտորջրոյ համար ալ — ամբողջ պատմութիւնը մթութեամբ պատած է՝ քանի մը

---

[39] Brosset, I, 1, p. 302, եւ այլուր։

[40] Քոխ, էջ 23, ինչպէս վերը յառաջ բերինք։

*կէտեր ի բաց առեալ, եւ աստնց պատմական բախտը կարելի է իմանալ ընդհանուր հայ եւ վրական պատմութեան ընթացքէն եւ անոնց պատահարար յիշած դէպքերէն: Համչէն ունեցած է նշանաւոր անձեր եւ դրիչներ ալ, բայց պատմագիր մը՝ որ հայրենեաց դէպքերը գրի առնուր՝ չէ ունեցած ո՛չ Համչէն, ինչպէս չեն ունեցած նաեւ Տայք, գոնէ չեն ծանօթացած մինչեւ ցայժմ:*

§ **6.** Յովհաննէս Համշէնցի եւ Կապոսի վանքը: *Միակ կէտն, որ սախպեց զմեզ նախընթաց խորհրդածութեանց, է այն մեկնութիւնը որ կը տրուի նշանաւոր Յովհաննու Համչէնցւոյ սերնդեան մասին: Համչէն, որչափ ալ դժուարամատոյց եւ միւս հայ աշխարհներէն տարւոյ մեծ մասը ձիւնապատ լեռնադծով բաժնուած, ունեցած է միշտ յարաբերութիւն հայ աշխարհի հետ: Իւր որդիքը կ՚երթային հայ վանքերն ուսանելու, վարդապետանալու եւ կրօնաւորելու: Գրչութիւնը հոս ծաղկած էր՝ իւր Ս. Խաչիկ վանքին մէջ, ինչպէս պիտի տեսնենք: Անոր համար ձեռագիր յիշատակարանաց մէջ ցանցառ չէ Համչէնցի տեղանունը, ինչպէս մօտերը, նոյնպէս նոյն իսկ շատ հեռուները*[41]*:*

---

[41] *Ծատանանք մերձաւորներէն յիշել Մովսէս Համչէնցի, որմէ գրուած է Բրիտ. Թանգարանի Յայսմաւուրքն* (*Conybeare*, Catalogue of the Armenian Mss. London 1913, p. 165—180, Nr. 66 = Or. 6555) *ի խնդրոյ Ներսէս քահանայի՝ ՋԼԸ* (= 1489) *թուին. են կը խնդրէ յիշել* «զՆերսէս Մալազն *որ*

Նշանաւոր է մանաւանդ Յովհաննէս վարդապետ Համշէնցի, որ իւր ժամանակակիցք եւ բնականապէս գլխաւորաբար իւր աշակերտք ամենամեծ գովութեամբք կը յիշեն։ Զարմանալի ալ չէ այս. վասն զի Սեպուհ լերան վարդապետարանաց վերջին նշանաւոր ներկայացուցիչներէն է, գործելով թէ՛ յԱւագս եւ թէ՛ Կապոսի կամ Կայիփոսի վանքին։ Կարապետ եպ. հրատարակած է գեղեցիկ ուսումնասիրութիւն մ'Երզնկայի այս վարդապետարանաց մասին, ծանօթացնելով էջմիածնի մատենադարանի ձեռագրաց այլեւայլ յիշատակարաններ, ի մաս-

---

բազումս աշխատեցաւ ի կոկել թղթին եւ ագնական եղեւ ի գրել գրոցս... բայց գրեցաւ սա ձեռամբ... գրչի Մովսէս աբեղի ի գաւառս Խախտեաց, որ այժմ ասի Բարբերդ, ի յանապատս որ կոչի Բերդակ» եւն (թղ. 721)։ — Իսկ թղ. 78 Մովսէս կը կոչէ զինքը Համշէնցի, յիշելով իւր ծնողքն։ Դժբախտաբար Կոնիբիր յառաջ չէ բերած այս վերջին յիշատակարանի բնագիրը։ — Հեռաւորներէն՝ Լեհահայոց Ստանիսլաւի եկեղեցւոյ Յայսմաւուրքը գրած է Խաչերես Համշէնցին ՌԻԸ (= 1579) թուին ի Կամենից, ինչպէս կը ցուցնէ իւր յիշատակարանը՝ «Ով հանդեպ աչք ի յայս բուրաստանիս, Մի՛ մեղադրէք դուք յայս գրիս, Թուղթս ցած էր ի յայսմ երկրիս, Սիրտ տրտում մեղաւորիս. վասն այս լաւ քրիստոնէիցս՝ ծանուցիս զսէր սրտիս, խաչերես գրիչս Համշէնցիս։ Գրեցաւ գիրս Հայոց թվին ՌԻԸեկիս, Յուլիս ամսոյ Ը ու Ժեկիս, Սուրբ Գրիգոր Լուսաւորչին յետեւ՝ Յերկրորդումն չարաթին, ի Թագաւորութեան Իլախաց Գլուլ Ստեփանոսի, ի Կամենից քաղաքի». (Հմմտ. Գր. Իւթիւճեան, ի «Բիւզանդիոն» 1912, թ. 4825)։

*Նաւորի Ստեփաննոս դրչի կարեւոր յիշատակարանը*[42]: *Այս ծաղկեալ դրչութեան վայրերէն բաւական թուով ձեռագիր կայ յէջմիածին, եւ «բոլոր այս ձեռագիրները գրուած են շատ կոկ, համաչափ սիրուն բոլորգրով, իրենց ութածալ դիրքովն ու կաշէ կազմովն էլ իրար նման են» եւն*[43]: *Արդ այս Ստեփաննոս դրիչ գրած է Դիոնիսիոսի Արիսպագացւոյ Աստուածաբանականքն* (*էջմ.* *Հ.* 66) *ի սուրբ ուխտս ի* յԱւաք վանքն *...առ ոտս սուրբ եւ հրաշալի վարդապետիս ... ի թուականիս ՋԺԳ»* (= 1464). *եւ ընդարձակ յիշատակարանը՝ բաց ի ժամանակին պատմական դէպքերէ* (*Կ. Պոլսոյ եւ Տրապիզոնի առումն, Դարանաղեաց «գաւառի գերուիլը. Երզնկայի մեծ երկրաշարժն եւն*) *կը յիշէ մի առ մի եղբարքն «որ կան ի* յայս լսարանիս»: *Կը յիշատակէ «նախ* զգլուխն *ամենայնի... գքաջ րաբունին մեր բաղձալի, որ Ամլորդան անուամբ կոչի*

---

[42] Կարապետ եպ. *«Մահմետական լուծը եւ նորաբռնութեան ներքոյ ծաղկող հայ վարդապետարաններ»*՝ *ԱՐՐՏ*, 1913, *թ.* 6—7, *էջ* 586—604. *Ստեփաննոսի «Յիշատակարան գրոցս»*՝ *անդ էջ* 600—604:

[43] *Անդ, էջ* 598: — *Կը ծանուցանէ թէ* Գարեգին վրդ. *հաւաքած է «նոյն շրջանի եւ յաջորդ դարերից հետաքրքրական յիշատակարաններ եւ տեղեկութիւններ, որ լոյս պիտի տեսնեն: ԺԶ. դարու օսմանեան-պարսկական անվերջ պատերազմունք այլեւս չէին թողուր վարդապետարանաց ծաղկելու. «Ուստի, կ'ըսէ, զարմանալի չէ որ յատկապէս այդ կողմերից այլեւս նոր Ջեռագիր մեր ձեռքը չի հասել* (*յէջմ.*):

(= Յովհ.)»․ եւ կը կցէ իր երկրորդ՝ «Եւ ընդ սմին հանդունակի զՏէր Յովանէս քաջ բաբունի, որ գաւառաւ Համշենացի, պետ եւ գլուխ՝ Պարոնորդի»։ Այնուհետեւ կու գան Աստուածատուր վրդ. Ջերմացի, Տէր Սարգիս եպ․ «վերադիտող Եզնկայի եւ Եկեղեաց գաւառի», են — մեծ չարք մ'անուանց վարդապետաց, սարկաւագաց, «մանկունք առադաստի... ոմանք ի սպաս սրբոյ բանի եւ այլք ի վարուսն երաժշտի» են, ամէն կողմերէ, ինչպէս՝ Սեբաստ–Տիրեկեցի, Պոնտացի, Հաղբատեցի, Կաֆայեցի են տեղանունանք կը ցուցնեն։ Նոյն իսկ յիշատակագիրս Ստեփանոս տարահայ մըն է, ինչպէս կը յիշէ («զհայրն իմ սարի... Կաւրէլ անուամբն յորջորջի»... զմայրն իմ հայազգի» են)։ Իւր ծննդեան տեղը չի յիշուիր․ բայց կարծենք նոյն է Ստեփանոս Զմշկածակցի, որ նոյն 1464 տարին գրած է Պետերբուրգի հաւաքման Թ. 6 Գիրք լուծմանց եւ ձեռագիրը նոյն Աւագ վանքն՝ «յիշատակ անձին իմոյ բազմամեղի... այլ եւ երջանիկ բաբունապետին մերոյ Յովանէս քաջ հռետորի, եւ այլ ամենայն եղբարցս որ կան յայսմ համալսարանի»[44] են։ Այս Յովհաննէսը Համշէնցին էր, որուն «քաջ հռետոր, տիտղոսը (— որ կը տրուի բնականա–

[44] Տես ընդարձակ ցուցակագրուած Ն. Մառ, «Հայկական Ձեռագիրք ճեմարանի Արեւելեան Լեզուաց «ի Պետերբուրգ»՝ ՀԱ. 1892, էջ 45 եւն. ձեռագիրս՝ էջ 114—117։

պէս ուրիշներուն ալ —) կը կրկնուի այլուր ալ, բացի մեր Թ. 119 Ոսկեփորիկի անծանօթ գրչէն: Իւր աշակերտը Մովսէս արեղայ նոյն յորջորջանքն կու տայ ձեռագրի մը յիշատակարանի մէջ, որուն այժմ ուր ըլլալը մեզի անծանօթ է, Յովհաննու Երզնկացւոյ Մեկնութիւն Մատթէի աւետարանի, գրուած ՋԻԵ (= 1476) տարին՝ իրեն Յովհաննու Համշէնցւոյ համար[45]: Կ՚ենթադրենք թէ

---

[45] Մեր Թ. 119 ձեռագրին (Ոսկեփորիկ Տաթեւացւոյ («տես «Ցուցակ», էջ 400—402) յիշատակարանը կիսատ է, որով չկայ գրչի, եւ տեղւոյ անունն ու որոշ ժամանակը. բայց գրուած է Յովհ. Համշէնցւոյս համար (հմմտ. «փափագող այսմ տառի եւ ծաղկաւէտ բուրաստանի, քաջ հռետորն Համշէնցի, որ ցանկացաւ այս մատենի» եւն): Կասկած յայտնած էինք թէ Համշէ՞ն արդեօք գրուած ըլլայ. բայց ըստ երեւութին Սեպուհ լերան կամ Աւագ վանքս կամ Կայխոս գրուած ըլլալու է: — Միւս ձեռագրին մասին տեղեկութիւն կու տայ հին թերթ մը, որ այժմ անգիտ է, «Հայաստան» 1851, Թ. 60: Բոլորգիր ձեռագիրս Տփղեաց Կարապետ եպիսկոպոսի էր (ուստի Կարնոյ գաղթէն բերուած), որուն այլ ձեռագիրք այժմ էջմիածնի հաւաքման մէջ են. ուստի թերեւս նաեւ այս: Հոս կ՚ըսուի. «Զհեզահոգի եւ զանյաղթ փիլիսոփայն եւ զմեծ հռետորն Յովհաննէս Ծործորեցի, որ զսուրբ մատեանս մեկնեալ շնորհեաց բանասիրաց մանկանց Սիոնի, յիշեսջիք ի Տէր: Ընդ նմին եւ զստացող աստուածաշունչ սուրբ մատենիս, զարի եւ զքաջ հռետորն զհեզահոգի ամենայն առաքինութեամբ զարդարեալն զՅովհաննէս զարհի եւ զմեծ բարունին զՀամշինեցի (տպ. «Համշինեցի») աղաչեմ յիշել ի Տէր, եւ զգծող սմին զախրասնունդ զաշակերտն իւր զՄովսէս արեղայն առնել արժանի յիշման, ի Թուին ՋԻԵ» (= 1476):

ինքն է «երջանիկ րաբունապետը»՝ զոր կը յիշէ Առաքել դրիչ Աւետարանի մը Աւազ վանս՝ ՋԼԳ (= 1484) թուով[46]: Աւելի կարեւոր են յիշատակարանք այն ձեռագրին, զոր գրած է Համշէնցւոյ ուրիշ մէկ աշակերտը՝ Մաղաքիա վարդապետ Բաբերդցի, եւ այն՝ ի Կապոսի (Կայիփոսի) վանս. ուր կը գործէր Համշէնցի իբր ղեկավար ուրոյն դպրոցի մ՚ալ: Մեզի համար կարեւոր կէտերը հրատարակած է Կարապետ եպ.: Մաղաքիա 1494ի կը գրէր (Ձողր. Էջմ. Հ. 656) «առ ոտս սուրբ վարդապետի՝ մեծ րաբունւոյն Յովանիսի, ի ժամանակին որ անբարի, սա լոյս ծագի մէջ աշխարհի, լուսաւորող սա համայնի, Հայոցս տառապեալ ազգի, ուսուցանող սա միշտ լինի՝ ի տուէ եւ ի գիշերի, զխորք-նածածուկ բանս մատենի՝ յայտնէ մանկանցս Սիովնի. գրանս տանու սա ի մտի՝ իբր կերակուր ի բերանի, ծաակէ ծամէ ի խորհրդի, կակղցէ զիմաստ բանի, լաւ ի միտս լուղայ՝ աշակերտացն որպէս տղի» եւն: Նոյն Կապոսի կամ Կայիփոսի վանքը 1497ի գրուած ուրիշ ձեռագրի մը յիշատակարանը կը ծանուցանէ Համշէնցւոյ

[46] Գ. Վ. Սրուանձտեանց, «Թորոս Աղբար», Բ (Կ. Պոլիս 1884), էջ 302 Կամախի Ս. Թադէոս առաքելոյ վանաց ձեռագրաց մէջ կը յիշէ. «Աւետարան մը» ...գրեալ յԱւազ վանս... ի Թվ. ՋԼԳ, առուրս երջանիկ րաբունապետին Յոհաննէս վարդապետի, եղեալ յիշատակ ի Ս. անապատիս, յիշեսջիք զառաջնորդ ս. ուխտիս զՊաւղոս հայրպետն... եւ զԱռաքել գրչակս...»:

նոյն տարին պատահած մահը՝ երկար դովութեամբք[47]: Աւելի կարեւոր է սակայն Էջմիածնի ուրիշ ձեռագիր մը (Գ, 6). գրուած նախընթաց տարին 1496ի, ուր Համշէնցւոյ եւ իր դպրոցին համար կ'ըսուի... «ի համալսարանս երից երջանկի եւ տիեզերալոյս Յովհաննէս քաջ հռետորի, որ է աշխարհաւ Համշէնցի, ի ցեղէ թագաւորական»: Նոյն 1496 տարին գրող Հայրապետ «առ ոտս քաջ րաբունապետին՝ կը յիշէ թէ ուխտին «մխեղէն» եղբարք «քան զերեսունն են աւելի», իսկ առաջնորդն էր Տէր Ներ–

---

47 Կ'ըսէ գրիչը յիշել «նաեւ զերից երանելին զՅովհաննէս րաբունն արին որ այսմ ամի հանգեաւ ի Քրիստոս Յիսուս... Աւա՜ղ, աւա՜ղ, ուրախութեամբ սկիզբն առի. եւ տրտմութեամբ յաւարտ հասի. քանզի ժամանեաց րաբունն արի, բացայայտող այսմ տառի, ակն պայծառ եւ հրաշալի, աստուածաբան հիանալի, վեհ, իմաստուն եւ գովելի. այսաւր մահու նա պարուրի՝ աղբիւր քաղցր, ախորժելի, զովացընէր զպապաքեալ հոգի, ցամաքեցաւ նա յայսմ ամի, որ եւ ընաւ ոչ երեւի. արեգական նմանի, զլոյսն պայծառ յինքն ունի, էջ ի ներքին կխաղընդին, խաւարեցոյց զմեզ եղկելի» եւն. — Թէ սակայն ինչ դժուարին դիրք ունէին արդէն վանքերը՝ կը ցուցնէ ի միջի անթիւ այլոց՝ Էջմիածնի այն Գ. 6 (1496ի) ուրիշ ձեռքէ կցուած յիշատակարանը. «Նաեւ զանարժան ծառայս ծառայից Աստուծոյ զԿարապետ ուստանուն արեղայս Բաղիշեցին յիշեցէք ի բարին Քրիստոս, որ զայս վեց տետր ու կէսս գրեցի. զգիրքն նոր էր գրած եւ յահէ սըմբակաց հեծելոց կայր ի պահեստի ի ծերպս վիմաց, եւ յիջմանէ անձրեւաց ապականեալ էր» եւն:

սէս[48]: Կը թողունք ուրիշ յիշատակութիւնքն, քանի որ մեր խնդրոյ համար կը բաւէ այսչափն ալ:

§ 7. — Ուրեմն Յովհաննէս Համշէնցի կը կոչուի՝ «գլուխ եւ պետ Պարոնորդի» եւ նաեւ «ի ցեղէ թագաւորական»: Կարապետ եպ. իրաւամբ կը յաւելու թէ այս վերջին տեղեկութիւնս ի՛նչ հիմ ունենալն անյայտ է: Բայց կը յիշէ Հայկունւոյ տուած վերոյիշեալ աւանդութիւնն՝ Համշէնի Անւոյ գաղթականութիւն մ'ըլլալու, եւ միւս աւանդութիւնն՝ «Թագաւորական ցեղէ» Գրիգորի եւ Մարտիրոսի կռիւն՝ Արտաշէնը փեսայացնելու համար, ինչպէս յիշեցինք (§ 3). Անոր համար կը կարծէ թէ քանի որ Բագրատունեաց բնադաւառը Սպեր ալ սահմանակից է եւ Անւոյ քաղաքի անկումէն յետոյ փախստականներ հոս ալ եկած ըլլալու են, ըստ աւանդութեան «Թագաւորական ցե–

[48] Սրուանձտեանց, «Թորոս Աղբար» Բ, 305 (Սաղմոս մգղթ. Ս. Թադէոս առաքելոց–վանաց). «Գրեցաւ ի թվականին Հայկազնի, ի Յոբելեան տասն եւ ութի, ի Դ. Ժ. եւ հինգն աւելի (= 1496), ի յԵկեղեաց գաւառի, ի վանքն այս որ Կայիփոսի (— Սրուանձտեանց տպագրէ «Կայ–ի–փոսի»), ի դրունքս այս գովելի, Ս. Յակոբի եւ Սիոնի, առ ոտս մեծ րաբունապետի Յովանիսի քաջ հռետորի, ի յառաջնորդութեան այս սուրբ ուխտի Տեառն Ներսիսի մաքրամտի, եւ միեղէն եղբայրս բարի, բոլոր վանիցս աբեղայի, որ քան զերեսուն են աւելի, համօրական ծառայք բարի. այլ եւ գտացող այս սուրբ կտակի Տէր Կիրակոս հեզահոգի... ձեռամբ իմով դծագրեցի եւ Հայրապետս մեղաւքս ի լի» եւն եւն:

դից իշխաններ էլ եղել են նոցա մէջ», ուստի կը կարծէ. թէ երեւի այս Յովհաննէս (Համշէնցի) վարդապետն եւս Բագրատունեաց տան հետ էր կապում իւր նախնեաց յիշատակը»: Այս ամէնն, ինչպէս ըսինք, կրնայ ըլլալ. սակայն անհրաժեշտ հարկ մ'ալ չկայ այնպէս ընդունելու: Այն աւանդութիւնն՝ Գրիգորի եւ Մարտիրոսի եւ Արտաշէնի մասին, եթէ որեւէ իրական հիմ կայ, կը մեկնուի միայն տեղական իշխանաց իրարու դէմ ունեցած խնդիրներով: Համշէնի մէջ եթէ մեր օրերն իսկ բացի գլխաւոր իշխանէն («վոյվոտ»էն) կային գաւառակալ իշխաններ, հին ժամանակներն անոնք աւելի իսկ ըլլալու էին: Անոնք անշուշտ ունէին աւանդութիւններ իրենց սերնդեան մասին, եւ զարմանք չէր ըլլար եթէ կը կապէին որեւէ հին տան մը հետ (Համամի հետ իսկ թերեւս, եւն): Արդ Յովհաննէս Համշէնցի յամենայն դէպս Համշէնի ԺԶ դարու այս կամ այլ կողման իշխող ընտանիքէ մըն էր: Եւ այս կը ցուցնէ իւր Պարոնորդի տիտղոսը, որմէ կ'երեւայ թէ այս իշխանք ալ «Պարոն» (= «Պատրոն») յորջորջանքը կը կրէին, ինչպէս Հայք նոյն տիտղոսը կու տան շատերու որ նման դիրք մ'ունէին, օրինակի համար Սպերու իշխանին, ինչպէս նաեւ Ախալցխայի աթաբեկներուն[49], թէեւ վերջինքս բնակա-

---

[49] Հմմտ. Ջուղր. Վենետիկ Թ. 150, յշտկր. Թղ. 1բ (գնող. ի Կիսկիմ 1512ին. «պարոն Կիտէվանին»). — *Brosset*, II, 1, p. 213, n. 2 («ընդ պա-

նապէս շատ աւելի բարձր դիրք ունէին քան նախընթացները, բայց «թագաւոր» տիտղոսը չեն կրած: Այս «պարոն» բառը յետոյ առիթ կ'ունենանք կրկին տեսնելու եւ դիտողութիւններ ընելու: Հոս աւելցնենք թէ այսպիսի տնէ կրնայ ըլլալ՝ իրր կէս դար եւքը՝ ճիշդ նոյն Կապոս կամ Կայիփոս վանքի առաջնորդ «Պարոն Տէր Մկրտիչ», որ՝ ինչպէս կը գրէ Պետերբուրգի Թ. 2 Քարոզագրոց հնագոյն մասին գրիչն Ալեքսիանոս (§ 27 = 1534 թուին) սիրով հիւրընկալեց զԱրապիոն վրդ. Մոկացի՝ իւր աշակերտաց խմբովին ալ, որոնք յանուանէ կը յիշուին[50]:

տրոնութեամբ Մզէ–ճապուկին», աթարեկ). — «Նոտարք» Թ. 36 (բաղում անձինք). Թ. 118 (ի պարոնութեան տեղւոյս եւ նահանգիս Լոռոյ՝ մեծափառ եւ աստուածասէր իշխանաց իշխանին պարոն Բէչքէնին՝ յազգէ Օրբելեանց») եւ ուրիշներ:

[50] Ընդարձակ ցուցակագրուած՝ Ն. Մառ, էջ 11—19 (= ՀԱ. 1892, էջ 46—54) երկար յիշատակարանը (Թղ. 247—251) կ'ըսէ թէ Սրապիոն վրդ. «եկն ի գաւառ յՍկեղեաց ի յՍզընկան: Եւ բնակեցաւ ի վանքն Կայիփոսիս: Եւ առաջնորդ վանիցս Պարոն Տէր Մկրտիչ մեծարանօք պատուեաց զվարդունին մեր՝ հանդերձ աշակերտօք եւ հանգոյց զմեզ...: Արդ ես անարժան Ալեքսիանոս ծառայ բանունապետին մերոյ Սրապիոնի սկիզբն արարի քարոզագրոցս եւ ...աւարտեցի ի թվականիս ՋՁԳ (= 1534) յիշատակ վարդապետիս մերոյ եւ ծնողաց նորին» եւն: Կը յիշուին Սրապիոնի աշակերտք (Տէր Մկրտիչ Մեծոփեցի, Տէր Յովհ. Մշեցի, Ղազար Երզնկացի, Պետրոս Ոստհայեցի, Տիրատուր Կարմիր վանցի, Յակոբ Կամախեցի, եւն եւն): Չէր կրնար՝ պատերազմաց այս շրջանին՝ մոռցուիլ պատերազմն «Թագաւորացն առ

Անկարելի չէ որ սա ալ Համչէնի տներէն ըլլայ, թէեւ չէ յորջորջուած իր ծննդավայրը կամ սերունդը: Եւ թերեւս տխրօրէն առելի կարդալու ենք «Պարոնտէր», յորջորջանք մը՝ զոր սկսած էին կրել եպիսկոպոսունք: Միւս կողմանէ կրնայինք՝ նման պարագայ մը յառաջ բերելու համար՝ յիշել նաեւ նոյն վանքը գրուած Աւետարանը, որ այժմ Բինկյոլ գիւղի Ս. Հրեշտակապետ եկեղեցին կը գտնուի, եւ որուն յիշատակարանը յառաջ բերած է Սրուանձտեանց: Անոր գրիչը՝ Մեսրոպ՝ իւր տաղաձեւ յիշատակարանին մէջ՝ կը յիշատակէ «Տէր Ներսէս առաջնորդի, ազնուական ի մեծ տոհմի», որմէ բնականապէս չենք կրնար որոշել՝ թէ ինչ կարգի «ազնուական մեծ տոհմ» կ՚ակնարկուի: Յիշատակարանս կարեւոր է այնու որ կը յիշէ 1499ին (— այսպէս մեկնելու է թուականը՝ փխ. 1519 —), ուստի Համշէնցւոյ մահուանէ երկու տարի ետքը՝ ուսման գործը կը շարունակէր «քաջ հռետորն մեր բարի, որ Ստեփաննոս միշտ յորջորջի»[51] եւն: Բայց այդ «Տէր Ներսէս

միմեանս պշահին եւ գլխոնդքարին» եւ աւերմունքն ու գերութիւնք վանաց, «Ղլաթայ», Բաղիշոյ, եւն. Թէ Օսմանեանք «ի Հալպայ եւ ի Սեբաստիոյ մինչեւ ի Տարօն ի Նօղուլ եւ ի հարկապահանջութիւն ի բուն առեալ կղթեցին» եւն:

[51] Սրուանձտեանց, «Թորոս Աղբար», Բ, 328—329. «Գրեցաւ ձեռամբ քարտուղարի եւ յողնամեղ պիտակ գրչի... Մեսրոպ անուն բանասիրի... ի Հայկազեան Հայոց սեռի, ի թվականին Ջ.Ի (— ո՛չ

*առաջնորդ անշուշտ է եպ. Տէր Ներսէս, որ գրել տուած է Կարնոյ Արծնեան վարժարանի (Թ. 826) Մաշտոցը նոյն վանքին մէջ, եւ այն՝ Համշէնցւոյ կենդանութեան օրով իսկ՝ 1496ի: Հոս Ներսիսի ծնողքը կը յիշուին՝ Ղուկաս քահանայ եւն*[52]*: Հետաքրքիր*

---

*ՋԻ.») չորեքտասանեք* (= *Խ*) *եւ Ը թուի* (= 1499) *մայիս ամսոյ ի մայրաքաղաքս Երզնկայի, որ Եկեղեաց գաւառ կոչի*, մեծահռչակ վանք Կայփոսի, *որ կայ ի լեառն Սեպուհի, եւ* Տէր Ներսէս առաջնորդի, ազնուական ի մեծ տոհմի, *սուրբ եւ մաքուր յոյժ գովելի, որ հրեշտակաց է բաղձալի: Եւ* քաջ հռետորն մեր *բարի, որ* Ստեփաննոս *միշտ յորջորջի*, վարժէ զմանկունս յիմաստ բանի, *որք են յակճիռս անհրհելի: Այլեւս զնադաչն զովելի՝ զՏէր* Սիմէոնն խաքերդցի, *որ զարդարեաց ծաղկաւք ի լի, զոյնզգունով զարմանալի» եւն: Կը խնդրէ յիշել «զգրչակ Մեսրոպս Երզնկացի, այլեւ զհայրն իմ բաղձալի, զԱմիրդովլաթն նազելի», իւր եղբայրը՝ Մանկաւագ եւ զաւակունքն: Միւս յիշատակարանց մէջ՝ անթիւ է այն յիշատակարանն, ուր կ'ըսուի թէ Խորանները Մուրատ եւ որդին Ղազարոս եւ կինը՝ Նանա խաթուն «զնեցին զսուրբ աւետարանս յիշատակ ի Հերապաւլիս* (= *Ձմշկածագ*) *եւ ի գիւղն՝ որ կոչի* Բիճկա, *ուր էր Սրուանձտեանցի օրով:*

52 *Արծնեան Վարժարանի մէջ պահուած ձեռագրաց Հաւաքումն ցուցակագրած է Հ.* Յակոբ Վ. Քոսեան (*տակաւին անտիպ*). *այժմ տպուած Վիեննա* 1964: *Այս Ցուցակի Թ.* 29 (= 826) *Մաշտոցի յիշատակարանն է.* «(1) *«Զառածեալ մեղաւք զԱւետիք պիտակ անուն վրդ. զգրող սորին յիշել ի Տէր եւ զհայրն իմ զՍամուէլ եւ զմայրն իմ զԳոհարն».* (2) *«Փառք... Արդ գրեցաւ սուրբ տառս որ կոչի Քահանայաթաղ եւ Քահանայաւրհնէք եւ եկեղեցաւրհնէք,* ի սուրբ անապատ որ կոչի Կայիփոսի, *ընդ հովանեաւ*

*պարագայ մըն է որ հոս Համչէնցի չէ յի-չուած, թերեւս անոր համար որ ձեռագիրս վանքին համար չէր։ Գրուած է ուրիշ եկե-ղեցւոյ մը համար, «յիշատակ ի դուռն* Ս. Գէորգայ», *որ անուամբ ի հարկէ շատ բազմաթիւ են եկեղեցիք եւ նաեւ վանքեր, (օր. Բալախոսին ի Բաբերդ), բայց նաեւ մօտերը*[53]*։ Ջխարդ եւ իցէ՝ այս յիշատա–*

---

*Ս. Յակոբայ Սքանչելագործի, ձեռամբ տխմար* գծագրողի Նգէկիէլի, *ի վայելումն սուրբ եւ ընտրեալ* եպիսկոպոսի Տէր Ներսէսի։ *Յիշատակ իւր նախնեաց։ իւր հաւրն* Ղուկաս քահանային *եւ մաւրն* Գոհար-մելիքին *եւ եղբաւրն Աստուածատրին եւ հաւրեղ-բաւր Սարգսին, եւ իւր որդւոյն Ամիրշաքէ եւ Յե-սուսին, եւ այլ ամենայն արեան մերձաւորաց կենդա-նեաց եւ ննջեցելոց. ամէն։ Եւ եդ յիշատակ ի* դուռն Ս. Գէորգայ Ջինաւորին. *խնամողք ուրհնին յԱս-տուծոյ եւ Ս. Գէորգայ. ի թվին ՋԽԵ»* (= 1496)։

[53] Տրդատ եպ. Պալեան (*տե՛ս*, *«Բիւզանդիոն»* 1902, *Թ.* 1644, 1680 *ուր կը յիշէ երեք վանքեր՝ մերձակայ գիւղերու անուամբ որոշելով* (*Թ.* 22) «Երկանայ *Ս. Գէորգ*» — (*Թ.* 28) «Ոտնի *Ս. Գէորգ*» *եւ* (*Թ.* 29) «Արմտանայ *Ս. Գէորգ*»։ — *չհաշուելով հեռաւորները։ Երզնկայի Երկան գիւղի եւ անոր Ս. Գէորգի վանքի մասին հմմտ. նաեւ տեղեկագրու-թիւնս* Յ. Տ. Թովմասեան, *«Երզնկայի Երկան գիւղը»՝ ի «Բիւզանդիոն»* 1897, *Թ.* 336։ *Այս տեղ գրուած է Վեննայի Թ.* 19 *Աստուածաշունչը (տես «Ցուցակ»* Հ. Բարսղի Վ. Սարգսեան, *Վենետիկ* 1914, *էջեր* 155—160), *որ գրուած է «ի գաւառն Եկեղեաց*, ի վանսն *որ* կոչի Երկայնի, *որում է մեծ եւ հոչակաւոր Կիրակոս... ի մեծի թուաբերութեան ՉՀԷ* (= 1328) *եւ ստացաւ զայս տառս իւրն»։ — Տարբեր է Խոզատի «Երկանի», աւելի* «Երկայնընկուզի» *վանքը, ուր նորոգուած է եւ կազմուած Վեննայի Թ.* 146 *Աւե–*

կուածներէն այլ կը տեսնուի թէ Համշէնցիք, որոնք բնականապէս կը յաճախէին մանաւանդ դրացի գաւառաց՝ Բաբերդի, Սպերի եւ Կարնոյ վանքերը, կը յաճախէին մանաւանդ Սեպուհ լերան վանքերը, ի հարկէ այն շրջանին, երբ ատոնք կենդրոն եղան ուսման[54] :

---

տարանը («կապեցաւ ի վանքն Երկայնըընկուզեց ի դուռն Ս. Կարապետին եւ Ս. Աստուածածնին») եւն: Արուանձտեանց, «Թորոս Աղբար», Բ, 152—153, որ յառաջ կը բերէ տաճարին դրան ճակատին արձանագրութիւնը, ուր կը յիշուի Մխիթար եւ թէ զխորանս շինեցի ի թվին ՆԻԴ, (= 975) : — Յիշենք վերջապէս որ Ս. Գէորգ գիւղ կը յիշուի Թուրիգու Թ. (Ա) 41 ձեռագրին մէջ (տ. Հր. Աճառեան, «Յուցակ» եւն, Վիեննա, 1910, էջ 32—33) : Մագաղաթեայ բոլորգիր Խաչատեր, գրուած «ի գաւառս Եկեղեց, ի գիւղս որ կոչի Սուրբ Գէորգ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս, ձեռամբ մեղապարտ քահանայի Մաթէոսի, եւ այն «ի թվիս ՉԽԹ» (= 1300), զոր յայսմ ամի եղեւ սով սաստիկ ընդ ամենայն աշխարհս», եւ առաւ Դամասկոս» եւն: — Բաբերդի նշանաւոր Ս. Գէորգը յետոյ կը տեսնենք:

54 Այսպէս նաեւ Սեպուհ լերան Ս. Լուսաւորիչ վանաց Աւետարանի յիշատակագիրը՝ Յովհաննէս աբեղայ ՊՂԴ (= 1444) թուին կը գրէ «յառաջնորդութեան Ս. Ուխտիս՝ Բարսղի (եպ.ի) եւ ի վարդապետութեան քաջ րաբունւոյն Յովհաննէսի, եւ գրոց աշակերտաց նորին Տէր Աբրահամին եւ Մարտիրոսին եւ Աստուածատրին եւ Աւետիքին. եւ գալեօք պատեալ ծերունին զՏէր Թորոսն եւ Յովհաննէս փակակալն, զՍարգիս Ապահունեցին, «զԳրիգոր Համշէնցին եւ զՀայրապետն» եւն («Նոտարք», Թ. 148, էջ 138) : Նոյն վանաց Սաղմոսարանը ՊՂԱ (= 1442) թուին չունի այս անունը ինչպէս առհասարակ չկար

§ 8 — Այս վանքերու մէջ — Աւագ վանքէն ետքը․ — միշտ նշանաւոր եղած էր Կապոսի վանքը, արդէն կանուխէն, եւ ուր գործած են նշանաւոր անձինք: Վանքին անունը հնագոյն յիշատակարանաց մէջ այս «Կապոս» (ինքնին կրճատեալ) ձեւով կ'երեւայ: Այսպէս արդէն մեր մատենադարանի Թ․ 173 Ճարակնոցի յիշատակարանին մէջ, զոր գրած է Ներսէս սարկաւագ «ընդ հովանեաւ Սրբոյ Յակոբայ Կապոսի» ՉՂԲ (= 1343) թուին ուր կը խնդրէ յիշել «զհեղահոգի վարպետն եմ զՅովաննէս փիլիսոփայն եւ զկրաւնաւոր եղբայր իւր զՄովսէս ծաղ—

---

հոն տակաւին «վարդապետութիւն քաջ րաբունւոյն Յովհաննէսի», այլ «դաստավար» էր Աբրահամ աբեղայ, որով կը տարբերին շատ անուանքն ալ: Այս միջոցին էր «ի յաշակերտութիւն սուրբ ուխտիս Տէր Բարսեղ եպիսկոպոսի, եւ զմիաբան եղբայրութեան սուրբ ուխտիս զՅովհաննէս աբեղայն զփակակալն, եւ Թորոս աբեղայն զօրինակին շնորհողն, եւ զՄարտիրոս աբեղայն զծաղկողն եւ զԱբրահամ աբեղայն զդաստավարն (տպ․ «զդաստավայրն»), եւ զԱւետիք աբեղայն, եւ զՄեղետոն աբեղայն եւ զայլ միաբան ս․ ուխտիս» են («Նօտարք», Թ․ 139, էջ 129): (անդ, Թ․ 139, էջ 138): Թողունք նմանները: — Վանքերուս մասին հմմտ․ Տրդատ եպ․ Պալեան, «Հայ Վանօրայք․ (Ժէ—ԻԲ) Երզնկայի, Քէմախի եւ Դերջանայ հայ վանքերը»՝ ի «Բիւզանդիոն» 1901, Թ․ 1538 եւն, անդ՝ 1902, Թ․ 1614, 1644, 1680, 1720, 1831, եւն: — Նոյն՝ Բաբերդի հայ վանքերը» (ԺԴ)՝ անդ, 1901, Թ․ 1500—1502 (հմմտ․ 1900, Թ․ 1043, 1060, 1127, եւն): — «Կարնոյ հայ վանքերը» (ԺԳ)՝ անդ, 1901, Թ․ 1447—1448, եւն:

կօղն» են[55]: Այս ձեռով կը գրէ նաեւ նշանաւոր Յակոբ Ղրիմեցի, որ հոս գրած է Սեւանայ Թ. 85 ձեռագիրը նոյն իսկ Գէորգայ Երզնկացւոյ համար: Հետաքրքրական յիշատակարանս է. «Արդ ես Յակոբ Ղրիմեցիս... գրեցի զերեքեան գիրքս զայս իմով ձեռամբ. առաջին զՀոգոյ եւ զզաւրութեանց նորին. երկրորդ՝ Առաքինութեանց հոգոյն. երրորդ «վասն բնութեան հրեշտակացն, ի թուականութեանս Հայոց մեծ թուականութեան ՊԼԸ (= 1389), եւ փոքրն ՅՁ, ի գաւառիս Եկեղեաց, ի հռչակաւոր վանքս որ կոչի Կապոսի, ի ստորոտս լերինս Սեպուհու, ընդ հովանեաւ կենաց բարեխաւսին Սրբոյն Յակոբի: Եւ ետու զսա Աբրահամ աբեղին բանի սպասաւորի եւ գրոց աշակերտի քաջ հռետորին Եզնկացւոյ Գէորգ վարդապետին»[56] են: «Կափոս» կը գրէ Փիրղալեմեան 1416 տարւոյ ներքեւ յիշելով ձեռագիր մ'որուն յիշատակարանը չէր

---

[55] Տես մանրամասն մեր «Ցուցակ», էջ 488—89:

[56] *Н. Марръ*, Списокъ рукописей Севанскаго Монастырь (Ն. Մառ, Ցուցակ համառօտ Ձեռագրաց վանաց Սեւանայ), Մոսկուա 1892, էջք 59: — Հմմտ. Թ. 85, անդ՝ էջ 40: — «Նօտարք», էջ 47. «Գրիգոր գրիչ ի մենաստանին Կափոսի ընդ հովանեաւ Սրբոյն Յակոբայ Սքանչելագործի հայրապետի, գրէ զՔարոզգիրս մեծին Տաթեւացւոյն»: Կը յաջորդեն ուրիշ տեղեկութիւնք, որոնց ներքեւ նշանակուած է իր տեղի, ուսկից քաղուած են, «յէջմիածին»: Հոն ըլլալու է ձեռագիրս ալ:

կրնար հաղորդել[57]: Կրկին «Կապոսու վանք» է այն երկար եւ կարեւոր յիշատակարանին մէջ, որ գրած է Աւետիք Դարանաղեցի՝ ի

---

[57] «Նօտարք», էջ 79—80. (Թ. 81 Աստուածաշունչ)... տարտամս եւ տառապեալս ոգւով Աւետիք աշակերտ բանի՝ ի Դարանաղեաց գաւառէ, ի վաղուց հետէ փափագեալ ըղձայի այսմ վայելուչ... Աստուածաշունչ հին եւ նոր կտակարանաց». իսկ ի վախճանել հոգեւոր եւ տիեզերահռչակ մեծ բաբունապետին իմոյ եւ վարժապետին (= Գէորգ Երզնկացի) ժառանգեաց զսա եղբօր որդի նորա Եզեկիէլ սարկաւագ, եւ կամեցեալ նորա վաճառել, որ եւ ես անձեռնհաս էի եւ անարժան, կամակցութեամբ եւ օժանդակութեամբ բազմերախտ հօրս իմոյ հոգեւորի, Տէր Սահակ կրօնաւորի բանասիրի եւ երաժշտապետի... վաճառեալ զամենայն ինչս մեր՝ զոր ունէաք ի նախնեաց եւ յազգականաց, եւ խնդութեամբ ստացաք զայս լուսատու մարգարիտս» եւն: Կը խնդրէ յիշել «զերջանիկ վարժապետն իմ զԳէորգ լուսաւոր հոգին, եւ զուսուցիչն իմ զՏէր Սահակ եւ զարեամբ նահատակեալ հայրն իւր զՄեղրեստրոս քահանայն»: Ապա կը շարունակէ. «Եւ ստացաք զամենայնով Աստուածաշունչս ի Թուականիս Հայոց ՊՀԴ (= 1425), ի դառն եւ ի դժնեայ ժամանակիս. զի մեծ պատուհաս պատահեցաւ Եկեղեաց գաւառիս, քանզի ի նոյն ամի՝ յորում փոխեցաւ առ Քրիստոս հռչակեալ րաբունապետն մեր Գէորգ, եկն տէրն Ամթայ ի վերայ Եզնկիս, եւ... հրդեհեաց զգեղաւանին առհասարակ եւ զվանօրայս, ընդ որ եւ հռչակեալ մենաստանս մեր Կապոսու վանքն հրդեհեալ աւերեցաւ: Եւ երեք ամ ի խաւար պահեաց զքաղաքն, եւ առեալ՝ ապա խաղաղացոյց. եւ խնամօքն Աստուծոյ սկիզբն եղեւ շինութեան գաւառիս, որ եւ մեք ողորմութեամբն Աստուծոյ նորոգեցաք զսուրբ անապատս զպակաս շինուածով առաւել քան զառաջինս, զժամատունն եւ զխցերն եւ տնտեսատունն եւ զայլ ամենայն շինուածն,

վերջ Աստուածաշունչ մատենի մը, որ իւր վարժապետի՝ «մեծ րաբունապետի» Գէորգայ Երզնկացւոյ էր, զոր արդէն կանուխէն հոն տեսանք, եւ որ նաեւ յետոյ Սիւնեաց աշխարհէն ստիպուած էր իւր աշակերտօք ապաստանիլ Աւագ վանքը։ Հոս ըլլալով ալ իւր գործունէութեան կեդրոնը՝ խնամող էր նաեւ Կապոսի վանաց։ Իւր մահուան տարին հրդեհած աւերած էր վանքը տէրն «Ամթայ», որ երեք տարի պաշարեց զԵրզնկայ։ Ասկէ ետքը սակայն շինուեցաւ վանքը «պայծառ շինուածով առաւել քան զառաջինն». եւ շինութիւնն աւարտած էր ՊՀԴ (= 1425) տարին։ Յիշատակարանիս գրութեան ոճն այնպէս է որ հաւանական է թէ նորոգողն

որ է խնամօք բարեբարին Աստուծոյ՝ մնացէ սա անխախտ ի վայելումն սրբազան կրօնաւորաց, եւ յիշատակ մեզ անարժանիցս եւ ամենայն աշխատաւորաց ի սմա ամէն»։ — Ըստ այսմ ՊՀԴ (= 1425) թուին վանքն արդէն վերաշինուած աւարտած էր։ Փիրղալեմեան (անդ) Երզնկայի երեքամեայ պաշարումը կը դնէ ՊԿԵ—Ը (= 1416—19) տարիները, առումն ըստ այսմ վերջին տարիս պիտի ըլլայ. Ջամչեան ալ (Գ. 459) Երզնկայի առումն իրր 1418/19. կը դնէ։ Վանացս հրդեհումն եւ Գէորգայ Երզնկացւոյ մահն այս հաշուով կ՚ըլլայ 1416։ Սակայն Փիրղալեմեան ալ կը յիշէ այլուր (անդ, էջ 50) Թովմայի Մեծոփեցւոյ տեղեկութիւնը (Փարիզ 1860, էջ 78), որ ՊԿԵ (= 1416) տարիէն ետքը կ՚ըսէ «ի միւս ամին (= 1417) Օթմանն՝ տէրն Ամթայ, էառ զԵրզնկայ եւ զՓիր.-Օմարն չարաչար սատակեաց»։ Այս վերջին հաշուով նախընթացներն ալ քիչ մ՚աւելի կանուխ դնել հարկ կ՚ըլլայ։ Տրդատ եպ. Պալեան (անդ) ալ վանացս հրդեհումը կը դնէ 1416ի։

է ինքն Աւետիք Դարանաղեցի, որ՝ ինչպէս կ՚ենթադրէ Փիրղալեմեան Գէորգայ Երզնկացւոյ յաջորդն ըլլալու է իբր վանահայրը: Համչէնցւոյ փայլման շրջանին վանացս ձեռագրաց յիշատակարանքն ամբողջովին չէ հրատարակած Կարապետ եպ., այլ՝ քաղուածաբար միայն, ինչպէս յառաջ բերինք: Ինքը կը գրէ միշտ Կայիփոս ձեւն, որ կրնար ձեռագրաց մէջն ալ ըլլալ. որովհետեւ այն ձեւն ունի՝ ինչպէս տեսանք՝ Արծնեան վարժարանի ձեռագիրը 1496ի: Այս ձեւոյս իբր նախորդ կրնանք նկատել Կայփոս ձեւը, զոր կը գրէր Մեսրոպ գրիչն, ինչպէս յիշեցինք, 1499ի, ի վանքս Կայիփոսիս, կը գրէր Աղեքսիանոս 1534ի, երբ իւր վարդապետին՝ Սրապիոն Մոկացւոյն հետ եկաւ բնակելու վանքս: Այս միջոցին ուրեմն արդէն տարածուած էր Կայիփոս ձեւն, որ այնուհետեւ տիրող կ՚ըլլայ: Վանքիս մնացեալ պատմութիւնը հոս մեզի համար կարեւոր չէ[58]: Երբ Կայփոս եւ մանաւանդ Կայիփոս ձեւն ընդհանրացան բնա-

---

[58] Տրդատ եպ. Պալեան («Բիւզանդիոն» 1902, թ. 1644) կը նշանակէ մեծ նորոգութիւն մ՚ալ որ եղած է 1684ի Եւդոկիացի Աւետիք Պատրիարքի ձեռօք, որ յառաջ հոն վանահայր էր: Վանքը կը դնէ Երզնկայ 3—4 ժամ հեռու, Սեպուհ լերան, ստորոտը, չորս կողմը լեռներով, փոքրիկ գետակի մ՚եզերքը, քարաշէն եւ հաստատուն պարիսպով: Դիրքը գեղեցիկ կը նկարագրեն ամէնքը, օդը հիանալի, ջուրը՝ վճիտ: Ապա անշքացած կ՚ըսէ, իսկ այժմ՝ գրեթէ անխնամ եւ ամայացեալ: Տես յաջորդները:

կան էր որ արդէն սկսուած ըլլար անուանս մէջ կայ եւ փոս հայ բառերը միանալ, եւ տեղական աւանդութիւն մը կրնար այս ժողովրդական մեկնութեան նպաստել, ինչպէս կը յիշէ Սրուանձտեանց, որ ուղղակի «կայ ի փոս Ս. Յակոբայ վանք» կը մեկնէ [59]: Այսպիսի մեկնութիւն մ'ի հարկէ խնդրէ դուրս է: Կապոս հին ձեւը հաւանօրէն ինքնին իսկ մատնանիշ կ'ընէ թէ վանքս նախնաբար շատ հին է, եւ նուիրուած կամ յանուն Սրբոյն, որուն անունն աղաւաղուած կամ կրճատուած է, այսինքն՝ Ս. Կալիպոսի: Արդէն Սրբոյն անուանս այս համեմատաբար ուղիղ ձեւն ունին մեր վկայաբանութիւնքն (= Կալլիոպոս, Καλλιόπος), բայց նաեւ «Կալիպոս» [60]:

---

[59] Սրուանձտեանց, «Թորոս Աղբար», Բ, 51. «Կը թողունք (Երզնկայի) դաշտը ու բարձրանալով հասած ենք լերան մը սկաւառակի վրայ, յորում է կայ ի փոսի Ս. Յակոբայ վանք. ջուրն, օդն, արօտն հիանալի եւ սառն». գեղեցկակերտ է Տաճարս, յորում կայ փոս մը ջրհորի ձեւով, ուր կը ճգնէր՝ եղեր Ս. Յակոբ» ևն: «Իսկ դրսի շէնքերը աննշան են»: Տրդատ եպ. Պալեան ալ կը յիշէ այս փոսն ու աւանդութիւնը: Բայց իրաւամբ «Կայ-ի-փոսի» մեկնութիւնն դրից համար՝ անճիշդ կը համարի, թէեւ անծանօթ կը մնայ, կ'ըսէ, թէ ինչ ըլլայ «Գարոս — Կարոս — Կապոս» անունը: Վանքը, կ'ըսէ, ունի արօտներ եւ 40 արտավար հող: Տաճարի մասին քիչ մ'ետքը:

[60] Ձեռագիր Յայսմաւուրք թէեւ աւելի «Կալիս-պոս» ձեւը կը գրեն, բայց պահած են նաեւ «Կալի-պոս» ձեւը, ինչպէս նաեւ տպագրութիւնք (Կ. Պ.

*Այս պարագայիս անկարելի չէ որ «Կալիպոսի» վանքս կապ ունենայ այն համանուն «Կալլիպոս» վանքին հետ, ուր վրացի (կամ վրահայ) Յովհան դրած էր Ս. Բասոսի վարքը, եւ որ հոն բերուած էր արդէն Թորթումի Խախուայ վանքէն, ինչպէս կ՚ըսէ այն վկայաբանութեան յիշատակարանին մէջ: Այս վանքին տեղն ի զուր կը փնտռեն բանասէրք, որոնք ի հարկէ նոյնն՝ իբր վրական վանք՝ կը փնտռէին ի Պաղեստին եւ այլ տեղեր*[61]*: Շատ բնական էր որ Տայք հնուց ալ կը յաճախէին նաեւ այս կող-*

1834, *էջ* 149): *Համմտ. մեր «Ցուցակ», էջ* 1049. *P. Peeters, քիչ մ՚ետքը յիշելի յօդուածը, իւր* Bibliotheca Hagiographica Orientalis, Bruxelles 1900, p. 45, *եւն:*

[61] *Վրական կարճ յիշատակարանս տես Ն. Մառի հրատարակած* «Գրիգորի խանձտեցւոյ *վարուց» Ներածութեան մէջ (Н. Марръ, Георгій Мерчуль* Житіе Св. Грегорія Хандзтійскаго, Petersb. 1911, p. LXX + 151 + 216 *բազմաթիւ պատկերներով, արձանագրութեամբք, ձեռագրաց յիշատակարանք եւն): Յիշատակարանս՝* p. XLI. *Խնդրոյս եւ տեղւոյս հարցի մասին համմտ. P. Peeters,* յAnalecta Bollandiana, XXXI, p. 262—263: *Կը յիշէ թէ* Tzagareli *բանասէրն ի զուր փնտռած է վանացս տեղւոյ մասին որեւէ տեղեկութիւն. իւր յօդուածն՝ Ռուսական Պաղեստինեան Ընկերութեան» Հաւաքածոյի մէջ,* Դ, 1888, *էջ* 31—31): *Կը յաւելու թէ, քանի որ Ս. Կալլիոպոս վկայած է ի Պոմպէոպոլիս Կիլիկիոյ՝ «այս պարագան կրնար մատնանիշ մ՚ըլլար տեղւոյն՝ ուր էր վանքը»: Այս խնդիրն աւելի մանրամասնել մեր նպատակէն դուրս է:*

*մանց վանքերն, որոնք արդէն երկար ժա–մանակ՝ իրենց պէս՝ Յունական իշխանու–թեան ներքեւ էին: Դժբախտաբար ճիշդ այս հին ժամանակները մութ են եւ մեր ունեցած ծանօթութեամբք այսպիսի մանրամասնու–թիւններ չեն կրնար որոշուիլ: Մեր պատմա–գիրք Յունական բաժնին, ինչպէս Վրական իշխանութեան ներքեւ անցած կողմերուն մասին միայն պատահաբար տեղեկութիւն–ներ կու տան: Յամենայն դէպս եթէ չէ նոյն վանքը, դոնէ համանուն վանք մըն էր այս այլ: Որեւէ հին աւերման եւ յաջորդող նորո–գութեան աւեն տաճարաց մին նուիրուած է* Ս. Յակոբայ, *որ անուամբ նաեւ կից նա–խընթացին այնուհետեւ կը յիշուի, (Հմմտ. «ընդ. Հովանեաւ* Սրբոյ Յակոբայ Կապոսի», *ևն) երբ ձեռագիրք կը սկսին յաճախել եւ տեղեկութիւններ մատակարարել*[62]: *Հին*

---

[62] Տրդատ եպ. Պալեան, (*անդ*) *կ'ըսէ* երկու *տաճարք, քարաշէն եւ գեղեցկակերտ, մին՝* Ս. Յա–կոբ, *որով՝ «Կապոսի Ս. Յակոբ վանք»: Ս. Յակոբայ տաճարին մէջն էր յիշեալ ջրհորը: Սրուանձտեանց (անդ) վերջինս միայն կը յիշէ՝ «Գեղեցկակերտ է Ս. Տաճարն, յորում կայ փոս մը... յաջմէ խորանին՝ առիւծ, եւ ի ձախմէ՝ եղն: Քարակոփ խոյակաց վրայ»: Դժբախտաբար այս տաճարն իսկ մանրամասն չէ ուսումնասիրուած, որ ըստ Բորէի հին ըլլալու է: Վերջինս այցելած էր վանքս, եւ տաճարի մասին կ'ըսէ.* (*Eugène Boré*, Correspondance et Mémoires d'un Voyageur en Orient, Paris 1840, II, p. 33). *«Հասանք Ս. Յակոբայ վանքը, որուն համար կ'ըսեն թէ Տրդատայ դարու հասնող շինութիւն մ'ըլ–*

անունն ուրեմն մնացած է կրճատուելով Կապոս: Այս է՝ կարծենք՝ անուանս լաւագոյն մեկնութիւնը:

§ 9. Համշէնի Ս. Խաչիկ վանքը: — Համշէնցին ո՛չ միայն մասնակից էր Հայոց գրական շարժման՝ դրացի վանքերում մէջ, այլ ունէր նաեւ սեպհական վանք մ՚ուր գրչութիւնը ծաղկած էր: Վանքին անունն է անապատ «Ս. Խաչիկ հաւրն հոգեւորի», եւ բացի Ս. Աստուածածին ու Ս. Սիոն տաճարներէն՝ միշտ յիշատակութիւն կ՚ըլլայ «Ցշխարաց Սրբոց Վարդանանցն որ աստ կան հաւաքեալ»: Վանքիս հիմնարկութեան ժամանակը մեզի անյայտ է: Մեր ձեռքն հասած եւ ցայժմ ծանօթացած ձեռագիրք ու յիշատակարանք ԺԵ եւ ԺԶ դարում են, եւ ո՛չ ալ շատ բազմաթիւ, բայց յամենայն դէպս կարեւոր ճիշդ այս շրջանին համար, երբ մահմետականութիւնը կը սկսէր մուտք գտնել արդէն ծովեզերքները, որմէ եկած է վտանգն այս կողման քրիստոնէութեան:

---

լայ: Ստոյգ է թէ եկեղեցւոյս ճարտարապետութիւնը, թէեւ այնպէս նշանաւոր չէ ինչպէս Անւոյ եկեղեցեացն, ունի հին ոճ մը (style antique), որուն ձեւերն ու նկարագիրը՝ գեղեցկագոյն չափակցութեամբք՝ կը գտնենք Բագրատունեաց մայրաքաղաքին մէջ: Եկեղեցւոյն նաւը (nef) վեր կը բռնեն չորս սիւներ, որոնց մէջ գտանք տապանագիր մը՝ բաւական հին Թուականաւ»: Կը յաւելու թէ սիրալիր ասպընջականութիւն մ՚ըրած են երկու կանայք, որոնց արք՝ վանացս (պահապան եւ խնամող) երիցունք, Երզնկայ գացած էին:

Մեր Մատենադարանի Թ. 119 ձեռագիրն, ինչպէս ըսինք, հաւանօրէն Համշէն չէ գրուած, թէեւ Յովհաննու Համշէնցւոյ համար: Բայց Թ. 170 Ոսկեփորիկը գրուած է «ձեռամբ մեղսամերկ եւ անարժան Կարապետի՝ ի յաճապատս խաչիկ հոգեւորի, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի եւ Ս. Վարդանանցս»: Կարապետ երէց, որ իւր անձին համար գրած է, երկու թուական կու տայ, նախ ՋԽԹ (= 1500), եւ վերջը՝ ՋՀԳ (= 1524): Հետաքրքրական տեղեկութիւն մ'ունի տեղական արկածի մը մասին, որ սովորական էր այս լեռնաշխարհի մէջ, ձեան մեծ հիւսի մ'ըրած վնասներն, նոյն ՋԽԹ (= 1500) թուին, Փետր. ԻԸ օրը կը գրէ. «աստուածասաստ բարկութիւն տեղ(ե)աց ի վերայ գեղջիս մերոյ Եղնովտա, գաւառիս Ս. խաչիկ հաւըրն մերոյ, զի եկն Ջվկայձորն հուսի եւ աւար եհար զեկեղեցին Ս. Սիոն ժամատունովն, եւ զԹըրստադենց կալն սարդովն եւ մարագովն եւ զհացն եւ զանակն ամենայն ցիր եւ ցան արար» եւն, նոյնպէս «զՊատրիկ Թաւաքալին սարպինն հացովն եւ ջրտունն եւ զգոմն տավրովն եւ զկինն դ. տղովն ի վայր էառ», եւն: Վնասուողներու մէջ կայ նաեւ «Պատրիկ Թաւաքալ» եւ «Հոռոմ Ստեփանոսն» իւր ընտանեօք: Ս. Խաչիկ վանքի անունն ուրեմն արդէն տեսակ մը գաւառի անուն եղած էր, որուն կը վերաբերի Եղնովիտ գիւղը: Կարապետ երէց կը

յիշէ իւր ծնողքը՝ Տէր Յովսէփ[63] եւն: Յիշատակարանիս մէջ քանի մ՚անգամ գործածուած «սարպին» բառը նաեւ այսօր սովորական է Խոտորջրոյ բարբառին, եւ մին այն բազմաթիւ տարրներէն, զոր հասարակաց ունին երկու դրացի բարբառներս: Պոնտական լերանց երկու երեսն ալ շատ տարածուած է այս շինուածը, որ նաեւ իբր ինքնակաց տնիկ ալ կրնայ կը գործածուիլ՝ եւ Խոտորջրոյ հին մատուռներուն մէկ քանին իրենց շինութեան կերպով աւելի սարպին մ՚էին[64]:

---

[63] Տես մեր «Ցուցակ», էջ 483—486:

[64] ՀԱԳԲ չունի բառս. ՍԱՀԲ, 585 կը նշանակէ «Սարբի» համբար մեծ, ցորենոյ կամ ալեր. «ամպար»՝ առնելով Հայկազն. Բառագրոց Յաւելուածէն (Բ, 1066): Սարպինը հաստատուն միակտուր փայտակերտ մըն է՝ սենեակի պէս, դռնով, բայց առանց պատուհանի, տան մէջ կամ առջեւը՝ աւելի իբր շտեմարան կերակրեղինաց, բայց նաեւ հանդերձներ եւն դնելու, եւ կը գործածուի ալ իբր ննջելու սենեակ, մանաւանդ բացօթեայ տեղեր ու ամարոցները՝ իբր բնակարան: ՍԱՀԲ (անդ) յիշած Մոկաց Սարբոտ ուրիշ մտօք է (այն է վագ, զոր Խոտորջուրցին ալ կը գործածէ մերձաւոր իմաստով): Բառս սակայն նախնաբար օտար փոխառութիւն մը կ՚երեւայ: — Տրապիզոնի շրջակայ համշէնցի գիւղացւոց Սարբինը նկարագրած է Ս. Հայկունի (ԱՐՏՏ, 1905, էջ 934—937) մանրամասն ստորագրելով «կորոպ»ը, որ 5—6 կանգուն բարձր, հաստ 4—6 սիւներու վրայ հաստատուած» փայտակերտ շինութիւն է (շտեմարան լազունի, կաղնւոյ եւն) «առաջին երկու սիւներու վրայ հաստ տախտակներով յատակուած». սուֆայի (— որ 3—4

Թուականի կարգաւ կու գան երկու ուրիշ ձեռագիրներ, երկուքն ալ գրուած նոյն Կարապետ երիցուէ: Ասոնք յԱրգուլին կը գտնուին եւ առանձնականաց սեպհականութիւն են, եւ ցուցակագրած է Հ. Ներսէս Վ. Ակինեան: Ասոնցմէ մին Տօնացոյց եւ Աւետարանացոյց է (Թուղթք 238, մեծ. 9.5 × 7.5) բոլորգիր, մագաղաթեայ: Բազմաթիւ յիշատակարանաց մին է (Թղ. 118ա—119ա). «...Գծագրեցաւ Տաւնացոյցս եւ Աւ[ետարան]ացոյցս թվին. ՋԾԳ (= 1504) ձեռամբ անիմա եւ մեղսամած Կարապետ երիցու, ի խնդրոյ մաքրամիտ քահանային Գրիգորի Քուշիվեցոյ ի վայելումն անձին իւրոյ եւ ամենայն արեան մերձաւորաց...: Արդ գրեցաւ սա ի յերկիրս Համշինու, ի գիւղս Եղնովտա, ի յանապատս Սբ. Խաչիկ հաւրն հոգեւորի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի եւ Սուրբ Սիոնի եւ նշխարաց Սրբոց Վարդանանցն որ աստ կան հաւաքեալ ի

կանգուն լայնութիւն կ'ունենայ —) մի անկիւնը ամբարի ձեւով հաստ տախտակներով կորոլի տախտակորմի ձեւով քառակուսի կը բարձրացնէ 2—3 մետր երկայնութիւն կամ լայնութիւն ունեցող սարքինը, փականքով դուռ կը կախէ վրան, ուր տեղ կը զետեղէ ձմրան համար պատրաստուած մրգեղէնը կամ վաճառուելիք կաղինը, խնձորը, տանձը եւն, այն բաները՝ որ մկներուն կեր չլինեն, եւն: Տան եւ Ծինութեան այլեւայլ մանրամասնութիւնք՝ զորոնք Հայկունի կը նկարագրէ, հետաքրքրական են, եւ ընդհանրապէս համեմատ Խոտորջրոյ եւն հին գիւղական տանց, քորքերու եւն:

պահպանութիւն երկրին մերոյ» են։ Ուրիշ յիշատակարան մ'ալ գրեթէ նոյն բառերով է, բայց վերջը հետաքրքրական յաւելուածի մէջ մաղթանք մ'ունի՝ Տրապիզոնի առման, առթիւ[65]. — Ձեռագրիս 119 եւ 120 թղթերուն միջեւ թուղթ մը փրցուած հանուած է. կ'ըսուի թէ եկեղեցւոյ մը մանրանկարն ըլլար։ Եթէ ճիշդ է վերջինս, շատ ցաւալի է, Համշէնի եկեղեցւոյ մը պատկերին անհետանալով։ Երկրորդը՝ Ճարակնոց մըն է, բոլորգիր, նոյնպէս մագաղաթեայ, եւ ծաղկեալ. (Թուղթք 300, մեծ. 14 × 9.5)։ Գլխաւոր յիշատակարանն է (Թղ. 292բ).

---

65 Թղ. 235ա—236բ «Փառք... Գծագրեցաւ սուրբ աղաւթամատոյցս ձեռամբ անիմաստ եւ մեղսամած գրչի Կարապետ երիցու ի լաւ եւ ընտիր աւրինակէ, ի թվին ՋԾԳ նոյեմբեր ԺԳ, եւ կենդանակերպն ձուկն է. ի վայելումն մաքրամիտ եւ հեզահոգի Գրիգոր քահանային Քուշիկեցոյ եւ ամենայն արեան մերձաւորաց իւրոց եւ յիշատակ ծնողաց իւրոց ամէն։ Արդ գրեցաւ ի յերկիրս Համշէնի, ի գիւղս Եղնովտի եւ յանապատս խաչիկ հաւրն հոգեւորի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի եւ սուրբ Սիոնի եւ Նշխարաց սրբոց Վարդանանցս որ աստ կան հաւաքեալ ի պահպանութիւն երկրիս եւ գաւառի մերոյ ամէն։ Ի սուլտանութեանն Հոռոմոց Պայազիտ բակին եւ իւր որդուն Սալիմշահ սուլթանին որ տիրէր ի Տրապիզոն եւ Հայսն ի Կոստանդինուպաւլիս, եւ ի Թաւրէզ Սոփիշահ Իսմայիլն. աւաղ բազում մեղաց մերոց եւ կորստեան քրիստոնէից թագաւորութեան, զոր Տէր Աստուած ամենակալն զգիւտ նոցին շուտով արասցէ եւ քաղցրութեամբ ի տառապեալքն հայեսցի, ամէն եւ եղիցի»։ — Գիւղն Քուշիկա կը յիշէ Ինճիճեան «Գուշիկա» ուղղագրութեամբ։

«Փառք... գրել զսա մեղսամած գրչի, որ Կարապետ երէց անուն կոչի... գրել զսա յերկիրս Համշէնի, ի գիւղս Եղնովտի մերձ յանապատս խաչիկ հաւրն հոգեւորի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի եւ Սուրբ Սիոնի եւ նշխարաց սրբոց Վարդանանցն, որ աստ կան հաւաքեալ... ի լաւ եւ ընտիր աւրինակէ Խլկցոյ, թվ. ՋԾԴ (= 1505)· ի խոյն կենդանակերպի, ապրիլի Իթ. եւ Քրիստոսի փառք, եւն[66]:

Կարապետ երիցուէ ունինք չորրորդ ձեռագիր մ'ալ 1527ի, այս անգամ՝ Բրիտանական Թանգարանի մէջ, Կոնիբիրի Ցուցակի Թ. 32, բոլորգիր, աղնիւ թղթեայ Մաշտոց մը[67]: Յիշատակարանը թերի է· բայց կան գոնէ կարեւոր կէտերը, այսպէս· «Փառք... գծագրեցաւ սուրբ Հայր Մաշտոցս ձեռամբ Կարապետ երիցուն ի լաւ եւ ընտիր աւրինակէ, ի յանապատս Սուրբ խաչիկ հաւրս ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին եւ Սրբոց Վարդանանցն որ աստ կան հանգուցեալ ի պահպանութիւն գեղիս Եղովտայ եւ երկրիս մերոյ Համշինոյ, ի թվին ՋՀԶ (= 1527)· ի վայելումն —» (թերի):

Այս թերին նոյն իսկ գրչէն թողուած է,

---

66 Ձեռագրացս առաջինը Պր. Գ. Փիլոյեանի (Արդուին), երկրորդս՝ Պր. Փ. Պետրոսեանի սեփհականութիւն է:

67 Մանրամասն տես Conybeare, Catalogue, p. 67, No. 32 (= Բրիտ. Թանգ. Or. 2612):

էջին կէսէն վար: Յայտնի է թէ պիտի յաւելուր ստացողին անունն, երբ մէկն ուզէր ստանալ մատեանս: Այս է պատճառ որ երբեմն ձեռագրաց մէջ թերթներ կան այսպիսի տեղեր, իսկ նոր ստացիչք յաճախ ջնջել կուտան նախորդ ստացչաց անունը, իրենցը դնելու համար: Այսպիսի պարագայ մ'ունի մեր Մատ. Թ. 431 Կիւրղիանոս գիրքն ու Ուրբաթագիր որ նոյնպէս Համշէն գրուած է՝ Յովհաննէս գրչէ մ'որուն Մալազ յորջորջանքը լուսանցքի վրայ աւելցուած է՝ նոյն գրչէն, անոր տեղ ջնջելով բառ մ'որ չենք գիտեր՝ ինչ էր: Իսկ ստացողի անունն ամէն տեղ դատարկ թողուած էր, եւ ապա լրացուած է (ուրիշ գրով) Ստեփաննոս սարկաւագ: Ներկայ գրից մէջ գլխաւոր յիշատակարանը կը ներկայանայ այսպէս. «Գրեցաւ սուրբ բժշկարանս ի թվին ՋԿԶ (= 1517). խոյն կենդանակերպի, մայիսի ԺԲ, ի լաւ եւ ընտիր աւրինակէ, ձեռամբ Յովհաննէս Մալզի անարժանի, ի յերկիրս Համշինի, ի յանապատս Ս. Խաչիկ հաւրն հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Սրբոց Վարդանանցս, ի խնդրոյ Ստեփաննոս սարկաւագի Վերին Համշինցոյ, ի վայելումն իւր եւ յիշատակ իւր ծնողացն Դաւթի եւ Եղիսաբեթին ի պահպանութիւն անձանց եւ զաւակաց իւրոց» են: Բնականապէս նաեւ ծնողաց անուանքը նոր գրչէ աւելցուած են[68]:

---

[68] Տես մեր «Ցուցակ», էջ 882—883:

*Նոյնպէս — ստացող մը գտած չըլլալուն — նոյն Յովհաննէս գրիչ դատարկ թողուցեր է 4 տող՝ յետոյ գրելու համար, Վենետիկոյ Թ. 114 ձեռագրին մէջ։ Այս՝ Աւետարան մըն է, նուրբ մագաղաթեայ, բոլորգիր «ցածագիր եւ անկինմաւոր»։ Գլխաւոր յիշատակարանն է. «Գրեցաւ սուրբ Աւետարանս ի յերկիրս* Համամաշինի, *ի յանապատս* Սբ. Խաչիկ *հաւրն հոգեւորի, ընդհովանեաւ Սբ. Աստուածածնի եւ Սբ. Սիոնի եւ Նշխարաց սրբոց Վարդանանցս որ աստ կան հաւաքեալ, ի պահպանութիւն երկրիս եւ գաւառիս մերոյ. ամէն. ի թուաբերութեան Հայոց ՋՀԲ* (= 1523). *ամին. ի կենդանակերպն Կոյսն, Յունիս Լ. եղեւ աւարտ սորին, ի լաւ եւ ընտիր աւրինակէ, ձեռամբ անարժան եւ մեղսաթաթախ* Յոհաննէս աբեղայի, *հրամանաւն Աստուծոյ, ի վայելումն եւ յիշատակ* — (4 տող դատարկ)։ *Արդ խնդրեմք ի ձեզնէ... յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զանարժան* (— 2 բառ ճերուած) Յոհանէս Մաղազս *եւ զմայրն իմ» եւն*[69]։ — *Հոս ուրեմն՝* «Համամաշէն» *հին ձեւը գործածուած է։*

---

[69] *Յովհ. Մաղազ գրիչ կը յիշէ «զմայրն իմ զխալումն եւ զհայր իմ զՏէր Աստուածատուրն, եւ ըզՄաւստանէս եւ զկողակիցն իւր զՃղխարեթն, եւ յետին՝ զՄարեամն, եւ զամենայն արեան զմերձաւորս իմ» եւն։ Իւր անունն ուրիշ տեղ մը կը գրէ «գրիչս զՈհանէս Մալազս» եւն։ — Գլխաւոր յիշատակարանի ընդարձակ յառաջաբանականին մէջ, որ գովութիւն է Աւե–*

Մեղի ծանօթ ամէնէն վերջին՝ բայց նաեւ չատ հետաքրքրական ձեռագիրը գրուած է 1630ի, եւ այն՝ Ջուղայեցւոյ մը ձեռօք: Սա՝ ինչպէս կը պատմէ, կաթողիկոսի անհնազանդ գտնուած, փախած ապաստանած էր վանքս, ուր ի հարկէ կրնար անծանօթ մնալ կաթուղիկոսէն յէջմիածին: Թ. 52 Սաղմոսարանը, Թղթեայ եւ բոլորգիր, կը պարունակէ այս յիշատակարանս. «Փառք... իսկ ես անարժան եւ անպիտանս Կարապետ Ջուղայեցի, այսինքն՝ աշակերտ Ազարիա վարդապետի եւ դհոգեւոր հայրն իմ Մկրտիչ վարդապետն Խարբերդցոյ, զգաւազան զոր առեալ եմ ի նմանէ. եւ անկեա ի ձեռն քաջ ռխտոր Մովսէս կաթողիկոսի եւ մերկացուց զիս եւ եդ ի մէջ նզովաւորաց բազում պատուիրաւք եթէ նիստ ի մէջ էջմիածնոյ, վերջն բազում հոգեւոր ընչից տիրանաս. եւ ես ոչ հնազանդեցայ նմա, եւ ելայ ի նմանէ անգիտակ՝ բազում տառապանօք եւ եկայ ի Համշէն: Ահա հանդիպեցայ ընտիր աւրինակի Սաղմոսարանի Յովաննէս Գառնեցւոյ, որոյ յիշատակարանն գրած էր այսպէս. ես Յովանէս Գառնեցի գնացի ի սուրբ ուխտն Հաղբատ...: Արդ ես ի սրտէ

տարանի, նշանակենք տողս՝ «հաւատացելոց հաստատութիւն, թերահաւատից՝ հաւատք եւ ուղղափառութիւն, եւ ի վերայ եկելոց թշնամեաց աւտարաց» վանումն եւ հերքումն. եւ քրիստոնէից ի Քրիստոսէ Աստուծոյ խաղաղութիւն եւ փրկութիւն ամէն»: — Տես Հ. Բարսեղ Վ. Սարգսեան, «Մայր Ցուցակ»ին, սիւն 503—508:

խոցեալս զԿարապետ վարդապետս գրեցի զսա ըստ իմում կարի, թէպէտ եւ անվարժ էի, այլ իմով տկարութեամբ ուղղեցի որ նոյն աւրինակն եղեւ... դրանն ուղղեցի կրկին եւ երեքկին: Եւ արդ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՌՀԹ (= 1630), ի յերկիրն Համշէն, ի վիճակս խաչեքարայ, եւ յատեննանստեալն էջմիածնայ Մովսէս կաթողիկոս եւ սրբասնեալ աշակերտօք հան-դերձ» են: Ծաղկողը գրած է յիշատակարան մ'ալ եւ ինք զինքը կը կոչէ Գրիգոր, աշա-կերտ «Պոնտացի Տէր Աւետիս եպիսկո-պոսի [70]»:

§ 10. Հոս ունինք արդէն խաչեքար անունը, Ս. Խաչիկ հաւր վանքի անունն ար-դէն կանուխ գտանք տարածուած նաեւ իբր գաւառի (Հմմտ. «գեղջիս մերոյ Եղնոտա գաւառին Ս. Խաչիկ հաւրն): Ս. Խաչիկ անունէն բնական էր պարզ խաչ բառն առ-նուլ, եւ այնուհետեւ ինչպէս վանքը՝ խաչա-վանք, նոյնպէս գետը՝ խաչավանայ գետ, լերը՝ «խաչավանք սար» անուանել. (Հմմտ. (§ 2): Բայց վերջնոյս համար լաւագոյն անունն էր այնուհետեւ խաչեքար յորջոր-ջումն, եւ այս անունն՝ ընդհանուր կերպով

[70] Թղ. 73բ «Զնկարող սաղմոսարանիս զԳրիգոր մեղաց գերիս... եւ ի վերայ անարժանիս՝ բազում ջանիւք աշխատողիս, զՊոնտացի Տէր Աւետիս, առա-քելանման եպիսկոպոսիս, անփորձ կենաց ի յաշխար-հիս, զվայելող սաղմոսարանիս, աւր ըստ աւրէ յիշէ գիս՝ զզեղկելի Գրիգորիս» են: — Տես Հ. Բ. Սարգ-սեանն, «Ցուցակ», սիւն 262—266:

կը տրուի այժմ նաեւ Բաչքարի, որուն նպաստած է ի հարկէ երկու անուանց մեր-ձաւոր նմանութիւնը:

Խաչեքարի միճակի յիշատակութիւնս դարձեալ կը ցուցնէ թէ Ս. Խաչիկ վանքը համանուն լերան ստորոտն ըլլալու է, ըստ ձեռագրաց ո՛չ շատ հեռի Եղնովիտ գիւղէն (հմմտ. «ի գիւղս Եղնովիտ մերձ յանապատս Խաչիկ հաւրն» եւն): Եղնովիտ՝ Ինճիճեանի «Եվողիւտ կամ Եղխովիտ» գրածն է, որու անունը կը կրէր նաեւ համանուն գետը մը, որ Խաչեվանայ գետի հետ կը միանար «ի ծայր գեղջ»: Ուրիշ անուամբ յիշուած Համ-շէնու գետն ալ «առաջի Տափ գեղջ ի մի խառ-նեալ ընդ Եվողիւտի գետ», Սեւ ծով կ'իջ-նար (§ 2): Բայց այս ամէնը — եթէ երեք գետ ընդունինք — դժուարին կ'ընէ որոշել թէ ճշգիւ ո՛ւր կ'իյնար Ս. Խաչիկ վանքն եւ ո՛ւր նոյն իսկ Եղնովիտ գիւղը: Նոյն իսկ Բաչքար կամ Խաչեքար անունն աւելի տա-րածուած է: Ասոր համար բուն Բաչքարը՝ Համշէնի, Խոտորջրոյ եւ Խեւակի միջեւ բարձ-րացող Պոնտական լերանց ամենայաղթ կա-տարը՝ որոշուելու համար՝ կը կոչուի նաեւ Վարսամբէկ, որ իբր թէ հետեւութեամբ աւանդութեան մ'ալ զոր քիչ մ'ետքը կը յի-շենք, հայերէն Վարշամակ ըլլայ, Կիպերտ կընար դնէ լեռնագիծս լաւագոյն դծել, քանի որ Քոխ իւր երկրորդ ելքն Խեւակի կողմէն ըրած է՝ դէպի «Մատոյ», Արտա եւ Խալա, կամ Կալա առանց դժբախտաբար

ուրիշ գիւղեր հանդիպելու՝ անկոխ լեռնագծով եւ կուսական անտառի մէջէն: Քոխի նկարագրութեան մէջ սակայն, որչափ կը տեսնենք, գետախառնուրդներն եւ ըստ այսմ մէկ երկու յիշուած գետերու անունները բոլորովին չեն համաձայնիր Կիպերտի գծմանց հետ: Վերջինս բուն Քաջքարէ սկսեալ, — որուն անմիջական ստորոտէն կը բղխեն Համշէնի գետը (= կ՚երեւայ «Խաչեվանայ գետ, (դէպի Սոգորնի եւ Համշէն) եւ «Քաջքար–Ջուր» (= կ՚երեւայ «Եղնովլիտ» գետը —) դէպի արեւելեան հիւսիս երկար ձգուող բարձր լեռնագիծը Պալխար կը կոչէ: Ասոր ստորոտէն բղխած կը նշանակուին երկու անանուն գետակներ, որոնք «Մատոյ» գիւղէն վար կը միանան Քաջքար–Ջրոյ հետ Քոխ (էջ 106) առաջինը, ասոնց գլխաւորը կը համարի, որ վարը՝ Կալայի անուամբ Խալայ–ջուր կը կոչուի, իսկ Քաջքար–Ջուր՝ անոր օժանդակը կը դնէ: — Հոս բարձր լեռնագիծը նախ դէպի հիւսիս յետոյ կրկին հիւսիս–արեւելք չեղում կ՚ընէ. եւ այս գետակաց միացման կէտին կռնակը կը նշանակուի բարձր լեռ մը, որ լազերէն անունս կը կրէ Mta Tskaro: Այս՝ որչափ գիտենք, լազերէն կը նշանակէ «Ջրոյ–լեռ», բայց չենք գիտեր ի՛նչու՝ կը յիշեցնէ վերը յիշուած յիշատակարանին «Ձվկայձոր»ն, որ անշուշտ կրնայ բուն Ձկվար–ձոր ըլլալ, քանի որ Համշէնի բարբառն ալ բ տառին յ հնչուիլն ունի՝ Խոտոր–

Ջրոյ նման՝ որոշ պայմաններու մէջ[71]: Ձորիս հիւսն էր որ Համշէնի Ս. Սիոն ժամատունն կործանեց 1500ի, եւ որ միշտ կից կը յիշուի Ս. Խաչիկ վանքին միւս տաճարաց հետ, զորոնք հարկ չկայ անմիջական քովէքով նկատել: Արդ այս Tskaroի անմիջապէս քովը կը նշանակէ Կիպերտ երկրորդ Քաչքար (Katshqar) լեռ մը, 3080 մետր բարձր, քիչ մը վարը նշանակելով 2400 մետր բարձրութիւն մը, եւ աւելի վարը (Արտայ արեւելքը) «Ամարանոց (եայլա) Քաջքար»՝ 1340 մետր բարձր: Երկրորդ Քաջքարէս կը բղխէ նախ անանուն գետակ մը, որուն վրայ է այս Ամարանոցը. եւ որ կը միանայ վերը յիշուած «Քաջքար–Ջրոյ» հետ: Արեւելեան ստորոտէն բղխած կը նշանակուին բազմաթիւ գետակներ, որոնք «Ցորթունա» գետը կը կազմեն, եւ այս կը միանայ «Քաջքար–Ջրոյ» հետ (որ բոլոր վերոյիշեալ գետակները նախ ընդունած է) Խալայի քով: Այս միացեալ գետերն (ուստի Ինճիճեանի՝ Խաչեվանայ եւ Եվոդիտ գետերը վարը կը միանան Համշէնի գետի հետ տեղ մը, որուն մօտերն են՝ տակաւին չմիացած ընթացքին վրայ Kavak գիւղը (Ինճիճեան «Խապագ» եւ միանալէն քիչ ետքը՝ Vidja (Ինճիճեան՝ «Վերի Վիժա եւ Ներքին Վիժա»): Համշէն–գետի եւ Եվոդիտ–գետի միացման կէտը՝ Ինճիճեան Տափ

---

[71] Հմմտ. Հր. Աճառեան, «Հայ Բարբառագիտութիւն» (Մոսկուա 1911) էջ 186 «դայդագ», («դարտակ»՝ դատարկ) չիւյս (չորս) են:

գիւղը կ'ըսէ, որ Ձաթ ալ կը կոչուի, Հայկունի Վերին-Կալա ջրոյ Ցորթունայ խառնուելու տեղը Ձաթփոս (§ 2) ։

Այս ամէնը կը ցուցնէ թէ Ս. Խաչիկ վանքի եւ տաճարայ տեղերն այժմ ճշդրտել դժուար է, քանի որ աւելի մասնաւոր տեղեկութիւններ կը պակսին ։ Ըստ ինքեան Խաչքար՝ կրնայ ինչպէս բուն Քաջքարն ըլլալ, կրնայ հաւասարապէս միւս երկրորդ Քաջքարն ըլլալ, որ ճշդիւ Պալխար գիւղի թիկունքն է, մինչ բուն Քաջքարը՝ Խոտորջրոյ եւ Խեւակի ։ — Դէպի հարաւ թէ՛ այն Tskaroէ եւ թէ՛ այս երկրորդ Քաջքարէ կ'իջնան բազմաթիւ օժանդակներ Պալխար ջրոյ, միանալով Խեւակէ դէպ ի այս կողմ հոսող Խեւակի-ջրոյ հետ ։ — Այսու հանդերձ յիշեցինք Հայկունւոյ տուած տեղեկութիւնը թէ Արտաշէն բերդը (= Համշէնի բերդը), որու մասին կայ գեղեցիկ աւանդութիւնը. «Համշէնի մեծ գետի վերի ակերուն մօտ. — «մի հսկայ բերդ» էր. եւ թէ «Ցորթունան (հմմտ. § 10 Քոխի տուած մեկնութիւնը անուանս) խաչավանքի սարից կ'իջնայ, Արտաշէնից կ'անցնի» եւն. (տես § 4) ։ Այս տեղ Սողորնիկի եւ բուն Քաջքարի միջեւ եղած ստորոտի վրայ է խօսքը, ընդհանուր կերպով ուրեմն բուն Քաջքարի ։ Այս՝ որոշ է նաեւ երբ արդ Ինճիճեանի նկարագրածը (տես § 2) եւ Քոխի նկարագրութիւնը, զոր պիտի տեսնենք, իրարու համեմատենք ։ Ըստ այնմ կ'երեւայ թէ «Խաչավանայ գետը»

Համշէնի բուն գետն է, որ վարը «Մեծ ձորի ջուր» կ՚ըսուէր: «Եւռղիտի գետը» կամ Եղնովտի-ջուրը հարկ է որ արդի «Բաչքար-ջուր»ն ըլլայ, իսկ սոր օժանդակը, զոր Քոխ կը նկարագրէ «Խալայի-ջուր» անուամբ՝ Ինճիճեանի Բալովիտ է իւր համանուն ջրով. «Եայլա Խալայոյ»: Ըստ այսմ Խաչիկ վանք եւ Եղովիտ հեռու չէին, Քաջքարի ստորոտէ մինչեւ Սոդորնի ոտքը:

§ 11. Երկրին մահմետականացման հետ բնականապէս աւերման դատապարտուած վանքն ու այլ եկեղեցիք, թէեւ յարդուած տակաւին տեղացիներէ, այլեւս օտար հիւրեր չէին կրնար ապնջակալել, ո՛չ ալ նոր ձեռագիրներ գրուիլ, որոնք կրնային աւելի տեղեկութիւն տալ, եւ ո՛ գիտէ՝ ո՛րչափ յիշատակարանք անդիւտ փճացած են[72]: Ասով այսօր ամենայն ինչ մթութեան մէջ կը մնայ՝ մանաւանդ այս անցուդարձէ հեռու կողմերը: Ինճիճեան, թէեւ կը յիշէ Խաչեվանայ գետը, բայց բուն վանքին մասին բառ մ՚ալ չունի: Հ. Մինաս Վ. Բժշկեան կը յիշէ «Խաչիքար վանքը» եւ թէ ուխտատեղի է մահմետականաց ալ, մինչեւ անդամ «արջու

[72] Հայկունի (ԱՐՐՏ, 1895, էջ 297) կ՚ըսէ. «Ընկուզի կոճղ հաւաքելու համար այս երկիրը (Համշէն) մտնող Հայք կը հաւատացնեն թէ բազմաթիւ տներու մէջ տեսած են եկեղեցական հին անօթներ, որք իբր նուիրական կամ սրբութիւն մը պահուած են, այլ եւ ուրիշ հնութիւններ, ձեռագիրներ եւն. որ ինձ շատ հաւատալի է, նորա համար որ հաւատարիմ անձերէ լսած եմ»:

*գերեզման» մը յիշելով, բայց տեղւոյ մասին բան մը չենք իմանար*[73]*»: Առաջին անգամ Հ. Ղ. Վ. Ալիշան կը գրէ. «Համշէն, որ եւ Պաշ–Համշէն (տես § 4, ծան.) կայ ի ստո–րոտս Տէմիրդաղ լերին. առ որով եւ* Խաչէ–քար *լեառն (= բուն* Քաջքար)[74], *յորում* մենաստան հին, *ուր պահէին նշխարք* Վար–դանանց (*հմմտ. Ս. Խաչիկ վանքը*), *եւ ի* գագաթան *նորին աւանդի պահիլ Վարշամա–կին Քրիստոսի, վասն որոյ եւ լեառն* Վար–շամակ *կոչեցաւ եւ ի ռամկաց* Վարսամ–պէկ»[75]: *Թէ ի՛նչ հիմ ունի Վարշամակի այս աւանդութիւնն եւ նաեւ ի՛նչ աղբիւրէ քա–ղուած է տեղեկութիւնս, մեզի անծանօթ*

---

[73] *«Պատ. Պոնտոսի», էջ 97. «Խաչիքար վանքը մեծ ուխտատեղի է Հայոց եւ այլազգեաց. այս վանքին քով դրան մեծ զանգակ մի. ուր կայ մեծ գերեզման արջու, վրան գրած է թէ այս հաւատարիմ ծառայու–թիւն ըրեր է վանքին տասներկու տարի, հայ եւ տա–ճիկ վրան ուխտ կ'երթան մինչեւ հիմա անմոռու–թեամբ, եւ սատկած օրը վրան կ'երթան աղօթք կ'ընեն»: — Եթէ ճիշդ էր այս ամէնը, «Արջ» կամ նման յորջորջանք մը կրնար անձի մ'անուն ըլլալ, որմէ ծագած ըլլայ այս արջու գերեզմանի պատ–մութիւնը:*

[74] Ալիշան *«Խաչըքար լեառն» բուն Քաջքարը կը հասկնայ, յիշելով իր գործոյն («Տեղագիր» եւն)* § 5, *ուր կը գրուի «մեր Խաղտեաց կամ Պոնտական լերանց» շարքին մէջ՝ «ի հիւսիսակողման պարուս են լերինք* Պարխարայ, *յորս բարձրն* խաչաքար *կամ* Վարսամպէկ (*որ է* Վարշամակ) *իբրեւ* 12.000′ (*բարձր՝ ոտնաչափ*) *ի կողմանս Համշինու» եւն:*

[75] *Ա. «Տեղագիր» եւն*, § 49, *էջ* 39:

է [76]: Ալիշան ըստ այսմ հոս կը դնէ Ս. Խաչիկ վանքն, եւ երկրորդ՝ գոնէ ուխտատեղի մը՝ Քաջքարի կամ Վարսամբէկի գագաթը [77]: Վերջնոյս մասին լսած է Քոխ ալ, որ նոյնը կը նկարագրէ այսպէս. «(Խոտորջուրէ) ուղիղ գծով լեռն անցնիլ կարելի չէր անոր համար որ ձեան գծէ շատ վեր բարձրացող Քաջքար անյաղթելի արգելք մըն էր. Պոնտական լեռանց այս ամենակարեւոր լեռը, զոր Ճորոխի հարաւային ափէն շատ անգամ տեսած էի իւր սպիտակափառ գագաթով, եւ որուն մասին այնչափ պատմած էին արդէն ի

---

[76] «Վարսամ իրօք «Վարշամա՞կ» է, կարելի է գոնէ կասկածիլ: Բայց անկէ որ իբր անկախ անուն՝ որեւէ այժմ մեզի անծանօթ պատճառաւ կրնար կապուած ըլլալ լերանս հետ, կարելի է նոյնիսկ որ «Վարսամ» այլակերպութիւն մ'ըլլայ «Վարդան» անուան, այլակերպութիւն մ'որ ըմբռնելի էր երկրին մահմետականացմանէն ետքն, երբ Ս. Վարդանանց յիշատակն, որոնցմով կը պարծէր Համշէն, պէտք էր որ անհետանար կամ տեղի տար ուրիշ անուան մը: Համշէնցիք կրնային Քաջերու-քարը նուիրագործած ըլլալ քաջին Վարդանայ կամ եւ քաջաց Վարդանանց յիշատակին, զորոնք ա՛յնչափ յիշուած գտանք յիշատակարանաց մէջ: Այս ամէնն ի հարկէ լոկ ենթադրութիւն է: Միւս կողմանէ «Քրիստոսի Վարշամակի աւանդութիւնը չի կրնար հին ըլլալ այս տեղւոյ համար:

[77] Նաեւ Տրդատ եպ. Պալեան, Բաբերդի շրջանի վանաց շարքին ծայրը կը կցէ՝ «կը յիշատակուին նաեւ խաչաքար լեռի եւ Վարշամակ կամ Վարսապիկ անուն երկու վանքեր ալ», առանց ուրիշ տեղեկութիւն մը տուած ըլլալու. (Հմմտ. «Բիւզանդիոն» 1901, թ. 1502):

ձեմիլ, անտարակոյս այսպէս ըսուած լեռնաբուն մը կը կազմէ, որմէ բազմաթիւ լեռնաբազուկներ կը տարածուին դէպ ի հիւսիս ու հարաւ եւ որմէ բազմաթիւ առուներ եւ գետեր կը բղխեն։ Հարաւային երեսէն կը բղխեն Ճորոխի՝ Աճարայի-Ջրէն ետքը՝ առանց երկբայութեան կարեւորագոյն օժանդակներ՝ Խոտորջուր եւ Պալխար-ջուր, իսկ դէպ ի ծով՝ բազմութիւն մը գետակաց, որոնք Ցորթունեան կը կազմեն. այս հսկայ լեռնէն կ'առնուն մեծաւ մասամբ իրենց սնունդը։ Ինչպէս Արեւելից միւս ամէն բարձր լերինք հարուստ են գրոյցներով, նոյնպէս է Քաջքար ալ (նաեւ Քաջքալ կոչուած), եւ Պոնտական լերանց բնակիչք կը պնդեն թէ միայն Աղրի-Տաղ (Արարատ) անկէ աւելի բարձր է[78]։ Ասոր ստորոտը կամ վրան[79] կը գտնուին որմեր, որոնք չորեք-

[78] Քոխ, էջ 90—91։ Զարմանալի չէ որ Կիպերտ չէ կրցած նշանակել բոլոր Պոնտական լեռնաշղթային այս բարձրագոյն կէտին ճիշդ բարձրութիւնը։ Ասոր գագաթն, որ հեռուէն վիթխարի բերդանման ապառաժ մը կ'երեւայ, ելլող գիտնական մը չէ եղած։ Ուստի տրուած չափերը համեմատական միայն են։ Ալիշան, ինչպէս տեսանք, 12.000 ոտք կը դնէ, իբր 4000 մետր։ Արդէն լեռնաշղթային այս կողմն ընդհանրապէս գոնէ 3000 մետր կը հասնի. իսկ բազմաթիւ կէտերը, որոնց մաս մը նշանակեցինք. անկէ շատ աւելի ալ վեր կը բարձրանան։

[79] Գերմ. բացատրութիւնն անորոշ կ'ուզէ ըսել՝ (an oder auf ihm) կա՛մ լերան վրայ ընդհանրապէս կա՛մ անոր բուն վրան՝ գագաթը կամ գագաթան մօտ։

կուսի քակ մը կը պատեն եւ նախնական եկեղեցւոյ մը հետքերը։ Թէ՛ Քրիստոնեայք եւ թէ՛ մահմետականք լեռս ու մանաւանդ այս տեղը սուրբ կը համարին, եւ նեղութեան օրերուն կ՚ելլեն բարձունքը՝ հանդիսական ուխտ մ՚ընելու համար․ Մեծ քարի մը վրայ դրամ մը կը դնեն եւ կ՚երթան։ Թէեւ այսպէս յընթացս ժամանակաց կարեւոր գանձեր հաւաքուած են, ո՛չ ոք կը համարձակի՝ զանոնք կողոպտել․ որովհետեւ ըստ հասարակաց կարծեաց՝ անմիջապէս կը գօսանայ այն թեւն, որ կ՚երկարի զայն յափշտակելու[80]»։ — Հոս ալ գրոյցը խառնուած է։ Եթէ ո՛չ բուն Համշէնցիք, գոնէ Ռիզէի եւ լազ աւազակները շատ փոյթ չէին ըներ բան մը թողլու, ուր դրամի հոտք մ՚իսկ ըլլար։ Այս՝ անորոշ գրիւք ուխտատեղին՝ յամենայն դէպս չէ բուն վանքը, եթէ այս տակաւին որեւէ կերպով կանգուն է։ Մահմետականացմանէ ետքն ամէն կողմ եկեղեցիք ու մանաւանդ վանքեր աւերուած են, եւ այս մասին եղած են առանձնապէս մոլեռանդներ ալ[80a]։ Նոյն երեւոյթն է ամէն կողմը։ Ազատած են (օրինակի համար նշանաւորները ի Թորթում)

---

80 Քոխ, էջ 91։

80a Օրինակի համար՝ Հայկունի կը յիշէ Թրէձորի կամ Ծիմլայի եկեղեցին, որ 1850ի մարագ էր տակաւին, եւ որուն «հսկայ շինութիւնը մարդու վրայ մեծ տպաւորութիւն կը թողու»։ Բայց «մոլեռանդ Համի Մահմուտ, որպէս այլուր, այս տեղ եւս եկեղեցին քանդել կուտայ»։ (ԱՐՐՏ, 1895, էջ 243)։

միայն այն եկեղեցիք, որոնք մզկիթի փոխուած էին, բայց ատոնք բացառիկ դէպքեր են. իսկ վանքերն ամէն տեղ լիովին աւերակ են: — Անցողակի նշանակենք հետաքրքրական պարագայ մը: Համշէնցիք՝ ստիպուած գաղթելու իրենց երկրին մահմետականացմամբ՝ ընտրած են ի միջի այլոց Կանոյ քով փոքր գիւղ մ՚ալ, որուն վանքն իրենց Հայրենի վանքին անուանակից էր, կոչուած այսօր ալ Խաչկավանք[80b] ժողովրդական յորջորջանք, թէեւ կառուցուած յանուն Սուրբ Խաչի եւ կապուած Խաչափայտ կոչուած Եփրատայ ականց աւանդութեան հետ, որ մին է այն բազմաթիւ զրոյցներէն որոնք կապուած են Հերակղի ձեռօք Խաչափայտի գերեդարձութեան հետ եւ որուն մասերը շատ վանքեր ու եկեղեցիներ կ՚ըսեն ունենալ, արդէն Հերակղի օրով բաշխուած: Արդի աւանդութիւնը նոյն իսկ Եփրատայ այն նշանաւոր ականց բղխումը կ՚ըսէ Հերակղի Խաչի այն տեղ հանդուցանելէն, եւ յամենայն դէպս ծանօթ էր արդէն Յակոբայ Կարնեցւոյ[80c]:

---

80b «Ժամանակագրութիւն Տ. Յովհաննէս Քահանայի Վաղարշապատեցւոյ, ի սահմանս Բարձր-Հայոց» (Հար. Ա. Կ. Պոլիս 1870, էջ 24—25. «Վանք Խաչի... շուրջ զպարսպօքն բոլորեալ են տունք եւ կայանք գիւղականաց, յորոց 25 են Տաճկաց, եւ 7՝ Հայոց որք գաղթեալ են ի Համամաշէն գիւղէն. վասն զի Համամ Իշխան Բագրատունի շինեալ է զայն, յոյր անուն ցարդ եւ գիւղն անուանի» եւն:

80c Յակ. Կարնեցի, էջ 45. «Եւ միւս վանքն է ի կողմն հիւսիսոյ, որ յանուն Ս. Խաչի է շինեալ եւ

§ 12. «Վարդանանք» եւ «անլոյս աշխարհ»: — *Զրոյցներ անկարելի է որ պակսէին որեւէ հայ աշխարհի մէջ, եւ հոս՝ իրր*

---

*կառուցեալ· զոր փոքր ի շատէ ծանուցից քեզ· եւ թէ* խաչափայտին *գրովանդակ պատմութիւնն հարցանիցես, լիակատար գրեալ կայ ի Կիրակոս պատմագիրն եւ այլ ուրեք»: Դժբախտաբար շարունակութիւնը չէ հրատարակած Կոստանեանց իրր աւելորդ, քանի որ, կ՚ըսէ «կրկնութիւն է Սերէոսի եւ ուրիշներէ հաղորդած ծանօթ պատմութեան»: Խնդիրը սակայն Հերակլի խաչի պատմութեան վրայ չէ, այլ տեղական զունաւորմանց, օրինակ՝ Հացունեաց խաչը եւ նմանք· (Հմմտ. ի միջի այլոց մեր «Ցուցակ», էջ 1096): Մեր Թ. 224 ճառընտիրը, գրուած ՊՀԷ (= 1428) թուին, կ՚ակնարկէ Կարնոյ զրոյցը՝ «Պատմութիւն Ս. Խաչին թէ որպէս դարձաւ ի Թավրեզոյ եւ բերաւ յԱրզրումն եւ Կարնոյ քաղաք Թէոդուպոլիս: Իսկ արքայն Հերակլ··· առեալ սուրբ* խաչափայտն տարաւ յԱրզրումն *եւ ետ ցորդին իւր եւն (Ցուցակ, էջ 582) առանց ուրիշ բան յիշելու: Այս եւ նման պատմութիւնք էապէս կան այն հատածին մէջ, զոր տեսած է Յակոբ Կարնեցի «ի Կիրակոս պատմագիրն»: Տպագրութեան մէջ (Կիրակոս Վ. Գանձակեցի, Վենետիկ 1865) եւ Ձեռագրաց մէջ այս Պատմագրութեանս սկիզբը կամ անկէ յառաջ կան այլեւայլ գլուխներ: Այսպէս մեր Մատ. Թ. 574 ունի Ա—Է գլուխներ (Թղ. 9ա—36բ), որոնց մէջ (Թղ. 11բ եւն) «Պատմութիւն յաղագս սրբոյ Խաչին, որ Հա*ցունեաց *կոչի· եւ որպէս դարձաւ ի Պարսից աշխարհէն» եւն: Ասոր մէջ ալ կ՚ըսուի «իսկ Հերակլ առեալ զնշան խաչին,* եկն ի Կարնո քաղաք· *եւ տուեալ զսուրբ փայտն Քրիստոսի ի Կոստանդին եւ ի Թադէոս (Թ. 224՝ Թէոդոս) որդիս իւր, եւ զկնի նոցա չարս բազումս, եւ ասէ՝ Գնացէք դուք ի քաղաքն յԵրուսաղէմ, եւ տարեալ զնշան խաչին դիք ի Գողգոթա» եւն (Թղ. 17ա): Հացունեաց խաչի Պատմութիւնս կայ այլեւայլ խմբագրութեամբք (Հմմտ. «Ցու-*

անմատոյց երկիր մը՝ իրեն դրացեաց քով՝ իր մասին: Քաջքար անունն ինքնին կը յիշեցնէ թէ Հայն անցնելով այս լեռնաշխարհներն, իր «քաջ»երու աւանդութիւնն ալ հետը տարած է: Բայց մենք չէինք ուզեր պարզ զրոյցի կարգը դասել (— անշուշտ նորագոյն «Վարշամակ»ի պէս —) նաեւ այն պնդումը թէ Ս. Խաչիկ վանքը կամ ընդհանրապէս Համշէն ունէր «Վարդանանց» նշխարներ՝ որ «անդ կան հաւաքեալ ի պահպանութիւն երկրիս եւ գաւառիս մերոյ», ինչպէս այս կամ նման բառերով յաճախ տեսանք: Այս աւանդութիւնը կրնար հիմնաւոր ըլլալ: Որովհետեւ, ինչպէս յետոյ մանրամասն պիտի ապացուցանենք, Վարդանանց պատերազմի շարունակութեան մասնակցած են Համշէնէ մինչեւ Ճորոխ եղած այս լեռնաշխարհները: Եթէ Եղիշէ կ՚ըսէ թէ «ի յազգէ ի մեծ նախարարաց» մաս մը, եղբարք, որդւովք եւ դստերովք կ՚ապաստանէին «յանկոյս երկրին Խաղտեաց» (ուստի Համշէն եւ Պոնտական լեռնադիծս) Փարպեցի՝ որ Հմայեկայ Մամիկոնենոյ եւ ընկերաց նահատակութիւնն աւելի կը մանրամասնէ, նահատակութեան տեղը դնելով զՈրջնհաղ, ուր

---

պակ», 191—192, 582, եւն): Աւելորդ կը համարինք նշանակել ուրիշները, որոնց մէջ զարդացածներէն մին է Վարագայ Ս. Խաչի աւանդութիւնը, որ կրած է Պատրոնիկեայ Հռիփսիմեանց խաչի եւն աւանդութիւնքն՝ ի վերջոյ Թոդիկ ճգնաւորի տեսլեամբ յայտնուիլն եւն (հմմտ. «Ցուցակ», 11, 38, 77 եւն. Ալիշան, «Տեղագիր», էջ 52, եւն եւն):

*իջած էին «ի յամրոցացն լերինն Պարխարայ» եւ «մերձ առ սահմանակցութիւնն Խաղտեաց», կը ցուցնէ թէ այս դիպաց վայրերն են՝ Համշէն ու Քաջքար, Խոտորջրոյ շրջակայքն մինչեւ Որջնհաղ, — այս տեղեաց ամրութեան եւ ամրոցաց վրայ վստահացած: Ուստի իրապէս այս կողմերը Հմայեկայ եւ ընկերաց նշխարքներէն կրնային գտնուիլ, — եւ հաւանական է թէ գտնուէին ի Համշէն ալ: Անոր համար նշխարք «Վարդանանց»՝ լոկ գրոց մը նկատելու պէտք չկայ:*

*Սակայն ի՞նչ է «*յանլոյս *աշխարհն Խաղտեաց»: Եղիշէի քով այս՝ բացատրութիւնը կրնայ բնական իմաստով ըլլալ, ո՛չ գրոցի մը հնութեամբ՝ որ յետոյ կ'աւանդուի: Անոր համար «*անլոյս*» երկիրս արգելք մը չէ որ նախարարք իրենց ընտանեօք հոն ապաստանին, — մտադրութեան արժանի պարագայ մը, Համամի պատմութենէն դարեր ալ յառաջ: Հ. Ղ. Ալիշան այս բացատրութիւնը կը մեկնէ. անով որ «Պոնտոսի լեռան արեւելակողմը շատ հեղ թանձր մէգ կ'ըլլայ», յիշելով ալ Հեթմոյ յիշածը Համշէնի համար թէ «երեք օրուան ճամբու տեղ մառախլապատ մութ» էր[81]: Իրապէս այսօր ալ Թիղէ — Խոտորջուր կամ Սպեր դիծ ընողները կը յիշեն թէ մշուշ եւ յաջորդող անձրեւ յաճախադէպ է: Քոխ ալ թէ՝ ելքին եւ թէ՝ էջքին ատեն*

---

[81] *«Հայապատում»* (*Վենետիկ* 1901, *մեծադիր*) *էջ* 174, *ծն.* 1 (§ 141) *Գործս կայ փոքրադիր հրատարակութեամբ ալ:*

նշանակած է մշուշախառն անձրեւ, որ յաճախ կ'արգիլէր գեղեցիկ տեսարաններ : Սեւ ծովու ափանց զուգընթաց այս լերինք արդէն գրեթէ ծովէն կը սկսին բարձրանալ, եւ հետզհետէ — եւ կարճ անջրպետութեան մէջ՝ օդային գծով — կը հասնին մեծամեծ բարձրութեանց մինչեւ ամենաբարձր Ջրաբաշխ գագաթնագիծը՝ միջին 3000 մետր բարձրութեամբ, որմէ վեր տակաւին կը բարձրանան այլեւայլ ձիւնապատ գագաթներ : Ծովէն ուղղակի երկնաբերձ պարսպի մը տպաւորութիւնը կ'ընեն լերինքս, ըստ տարուայն եղանակին ընդարձակ կամ նուազ սպիտակ չերտերով ձեւան : Ուղեւորն որ քիչ ժամանակի մէջ կ'ելլէ մեծ բարձունք մը, կ'իջնայ ձոր մը՝ աւելի երկնաբերձ բարձունք մ'ելլելու համար, նախ ամպոց շրջանին ներքեւ կը դառնուի, ելլելով կը մտնէ ամպերու ու մշուշի մէջ, եւ աւելի վեր ելլելով՝ վերը պայծառ իսկ արեւ կը տեսնէ ու կապոյտ երկինք, եւ իրմէ վար՝ մշուշ ու ամպ այնպէս որ մինչ լերանց բարձունքները պարզ են՝ վարը կը լողան ամպերը[82] :

---

[82] Այսպէս կը նկարագրէ Քոխ՝ Զարան-թաշի լեռը (էջ 18) : Հոս իսկ (տակաւին միայն 7000 ոտք բարձր) յուլիսին քանի մը խորոց մէջ ձիւն կը գտնէր, նաեւ 400 ոտք աւելի վարը, մինչ վերը գեղեցիկ մարգեր կային, ուր նախիրն եկած էր ամառն արածելու : Յաջորդ Դէմիրդաղ (8000 ոտք) յիշելու համար ալ «ձորի խորոց ամպերէն վեր բարձունքն ելլել պէտք էր․ բայց հոս՝ աւելի բարձր ալ ըլլալով, տեղ մ'ալ ձիւն չկար (էջ 19—20) : Մինչեւ Ճեմիլ երթալու

Պոնտական հսկայ լեռնագիծը անանցանելի պատուար մըն է, եւ ծովու գոլորշիք չեն կրնար անցնիլ անդին, որով — մինչդեռ դէպ ի հարաւ միշտ չափազանց պարզ է տեսքը, — այդին ծովակողմը ամպերը կը տիրեն, եւ ծովը քիչ անգամ կ'երեւայ [83]: Նաեւ ամառը

---

համար՝ վերի լեռնէն իջած ատեն, ամպերը վեր բարձրացան եւ քիչ մ'ետքը բարակ անձրեւ մը պատեց զմեզ» (էջ 20): Ճեմիլ բերդէ բուն գագաթն ելլելու ատեն «գեղեցիկ կապոյտ երկինք մը դարձեալ կը տարածուէր մեր վերեւ, բայց վարը՝ գահավէժ իջնող ձորին վրայ ամպերու ծով մը կը փոթորկէր. ի Ճեմիլ մեր կեցած երկու օրն ալ, երբ արեգակն լերանց ետեւը մար կը մտնէր, ամպոց դէզերը վեր կը բարձրանային եւ քիչ մ'ետքը ամբողջ այս աղբերականց շրջանը բարակ մշուշով մը կը պատէին. բայց երբ միւս առտուն արեւը կը ծագէր, ամպերը նորէն դէպ ի վար խորունկ ձորերը կ'իջնային» (էջ 32): Այսպէս կը նկարագրէ նաեւ իր էջքը դէպ ի ծով՝ Խեւակէ դէպի գագաթնագիծն ելլելով (էջ 100 եւն): Հոս ալ բարձունքէն ձոր մ'իջնալով՝ մշուշ–ամպեր կը պատեն եւ մշուշը կամաց կամաց սաստիկ բարակ անձրեւի մը կը փոխուի որ քիչ ժամանակի մէջ մինչեւ ոսկրները կը թափանցէ, եւն:

[83] Քոխ (էջ 33—34) գեղեցիկ կը նկարագրէ Ճեմիլ–բերդէ գալով Ճապանց–լերան գագաթն հանելով ներկայացած տեսարանը. «Այնպիսի տեսարան մը բացուեցաւ որ մինչեւ այն ատեն չէր տեսնուած:... Դժբախտաբար դէպի հիւսիս (ծով) անընդհատ ծփացող ամպերը կը ծածկէին լերան ցածագոյն շարերը. միայն քանի մը գագաթներ անկէ աւելի վեր կը բարձրանային: Պատմեցին թէ տարւոյն մէջ քիչ որ կ'ըլլայ որ աւկէ ընդարձակ ծովն ամբողջ մեծութեամբը կրնայ տեսնուիլ. որովհետեւ սովորաբար այսօրուան նման են պարագաները լեռն ըստ կողմ–

շատ տեղ մշտնջենաւոր ձիւն ունեցող լեռները ու այլեւայլ անմերջ ձիւնահալքի մէջ են. եւ այս՝ նուազ պատճառ չէ սամպ կամ

---

նացուցին՝ ճիշդ արեւմուտքէ արեւելք կ'երկարէր։ — Բայց դէպի հարաւ՝ աչքը կը տեսնէր, ցորչափ որ կը զօրէր, ոչ ուրիշ բան՝ բայց եթէ լեռներ։ Պոնտական լերանց գրեթէ հեռազուգական կ'երկարէին երկու մեծ շղթաներ, արեւելային արեւելեան-հարաւէ դէպի արեւմտային արեւմտեան-հիւսիս. ասոնց յետնակացն շատ աւելի երկնաբերձ էր քան առջեւինը։ Անտարակոյս շղթան ծորոխի եւ Եփրատայ ջրաբաշխն է, Քոփլեան՝ Կարնոյ հիւսիսը գտնուող Կեաւուր-Դաղի շարունակութիւնը, եւ երկրորդը՝ Բիւրակնի (Բինգէօլ) հետ կապուած լեռնադիծը։ Բայց ինծի այնպէս կ'երեւար թէ այս երկրորդին կռնակն անդին ալ կը կանգնէին այլեւայլ գագաթներ, որոնց աւելի լրթագոյն ծիրերն աւելի մեծ հեռաւորութիւն կը ցուցնէին մանաւանդ կար լայն, թանձր-կոնաձեւ սար մը, որ իմ կեցած տեղւոյս ճիշդ հարաւը կ'իյնար։ Բինգէօլ չէր կրնար ըլլալ, որովհետեւ այն աւելի դէպ ի արեւելք կ'իյնայ. ուստի ըլլալու է Քէօշմէր-Դաղ, բարձրագոյն կատարն Բինգէօլէ դէպ ի արեւմուտք երկարող Տուժիկ-շղթային, եթէ չուզենք աւելի հեռու Արածանւոյ անդին ալ տարածուող Նպատական լեռնադիծը համարիլ»։ — Էջքի կէտն այսպէս մեծ հեռապատկեր չունէր։ Այս մասին կը գրէ Քոխ (էջ 100—101). «Սառուցեալ հով մը կը փչէր, երբ վերջապէս երկրորդ անգամ Պոնտական լերանց բարձունքն հասանք. Խեւակի լերան բարձունքն այնտեղն, ուրկէ երէկ անցած էինք, մեր ներքեւը կ'իյնար տակաւին. մեզմէ վեր կը բարձրանային միայն սեւագորշ, փլածներէ կազմուած քարակոյտներ եւ կամ յաղթ, մեծագանգուած յաւիտենական թանձր սառոյցով ու ձիւնով ծածկուած սարագլուխներ, Հելուետիոյ կատարներուն ոչ աննման։ Հազիւ 100 ոտք վերը կը սկսէր

մշուշ դոյացնելու: Անոր համար կը դիտէ Քոխ՝ Խալայի վրայ խօսած ատեն[84]. Թէ «կէսօրէ ետքն օդը դարձեալ աննպաստ էր. որովհետեւ մշուշ, ամպեր իջան վար եւ բաւական անձրեւ մը դալ սկսաւ: Պոնտական լեռանց ծովակողման յատուկ բան մըն է որ,

---

ձեան շրջանակը, ուր բիւրաւոր դարերէ վեր սառած ջրոյն իւր ծորելի կերպարանը նորէն տալ չի կրնար արեւու որեւէ ճառագայթ: Որչափ ալ մերթ ընդ մերթ ցրտութեան սարսուռ մը դողացնէր մարմինս, ելայ մագլելով բարձունք մ՚ալ, եւ արդէն ցանցառ բուսականութիւնը յանկարծ դադրեցաւ: Ձախ կողմ կ՚իյնար լայն Քաջքար, որուն կատարը չէի կրնար տեսնել՝ մօտ ըլլալուն. եւ աջ կողմն անկէ թերեւս քիչ մ՚աւելի ցած լեռ մը Սեւ ծովու եւ Ճորոխի միջեւ ջրաբաշխ եղող այս յաղթ լերան թիկանց վրայ կը հանգչէր: Առջեւս, ոտքերուս տակը խորունկ կեցած էին ամպերը, որոնցմէ միայն քանի մը գագաթներ աւելի վեր կը բարձրանային: Այսպէս նաեւ այս անգամ բախտ չունեցայ՝ ուղղակի ճամբով թերեւս հազիւ 8 ժամ միայն հեռու ծովը տեսնել: Բայց կոնակի կողմը՝ Ճորոխի շրջանին մէջ պայծառ էր, եւ դէպի մութ-լրթագոյն երկինք կ՚ամբառնային այն երկու յաղթ լեռնաբազուկներն, որ Պալխար-Ջուրը կը պարփակեն, բայց անոնց հարաւ-արեւելեան եւ յետոյ՝ ինչպէս կ՚երեւար՝ զուտ արեւելեան ուղղութիւնն արգելք կ՚ըլլար որեւէ հեռաւոր տեսարանի: Մեծաւ մասամբ ձիւնապատ էին. բայց այս շլացուցիչ սպիտակութեան մէջ յաճախ գորշ-կարմիր ժայռոմներ կ՚երկարէին ընդարձակ տարածութեամբ» եւն. «Երկու հսկայից միջեւ եղած լեռնանցքին»՝ ուսկից անցած է, մերձաւոր բարձրութիւնը կը համարի իբր 10.000 ոտք: «Լերանս ողը կը բաժնէ Բերդագրակի ուստադաւառը՝ Համշէնէ, ուր կը մտնենք այժմ»:

84 Քոխ, էջ 109:

երբ արեւը զենիթին հասնի, մխլամած ամպեր մեծաւ մասամբ կ՚իջնան ձորերը եւ հոն կը մնան մինչեւ միւս առտուն կանուխ: Սովորաբար կէսօրէ յառաջ դեղեցիկ է: Տեղացիք ալ մերձակայ ծովը կը համարին ասոր պատճառը, եւ ինձի պատմեցին թէ տարին հազիւ 30 մինչեւ 40 օր կ՚ունենան որ առտուընէ մինչեւ իրիկուն մշուշէ ազատ ըլլայ»:

Բնական երեւոյթս, որուն վրայ աւելցնելու ենք երբեմն աւելի տարածուած կուսական անտառները, որոնք կան ինչպէս ի Սեւ-Գետ, նոյնպէս Համշէն, նսեմատուեր թանձրութեամբ, Համշէնի մասին կազմել տուած են իրական զրոյց մը, — կարծես արեւելեան զրուցաց «մութ աշխարհն»ն հոս ըլլայ, կամ ըստ Խոստրջուրցւոց աւանդութեան՝ «կուրկուր» աշխարհքը:

§ 13. Մեր Հեթում Պատմիչն է որ Համշէնի մասին այս զրոյցը կը նկարագրէ: Հեթում, Կոռիկոսի տէրը, ինչպէս ծանօթ է, երկար ուղեւորութիւններ ըրած է՝ երթալով մեծ Խանին դեսպանութեամբ, իւր տեսած աշխարհաց մասին տեղեկութիւններ կու տայ մատենին մէջ, որուն սկզբնագիրը հայերէնն, եթէ կար ալ, երեւան չէ ելած: Յետոյ կրօնաւորեցաւ (Կիպրոսի de Lapois աբբայարանի մէջ) Պրեմոնստրատեանց կրօնի ուխտին առնլով 1305ին: Անցած է այնուհետեւ ի Գաղղիա (Poitiers), ուր գրած է իւր «Գիրք (կամ Ծաղիկ Պատմութեանց կողմանց

արեւելքից» (Liber կամ Flos historiarum partium Orientis), որուն վերջին մասը՝ Պաղեստինի եւ Ս. Տեղեաց մասին գրած է Կղեմայ Ե. քահանայապետի խնդրանօք, որուն ներկայացուցած է գիրքը 1307ին օգոստ. ամսոյն: Լատիներէն խմբագրութեան գրեթէ ժամանակակից է հին գաղղիերէն խմբագրութիւնը: Աւելորդ է աւելի մանրամասնութեանց մէջ մտնել. քանի որ Հեթմոյ (Hayton) գործոյն այս խմբագրութիւնք հսկայ եւ փառայեղ հատորի մը մէջ հրատարակուած են՝ ձեռագրաց համեմատութեամբք եւ ընդարձակ ներածութեամբ Հեթմոյ կենաց, մատեններին, խմբագրութեանց եւ ձեռագրաց բազմաթիւ հին ու նոր թարգմանութեանց այլեւայլ լեզուներով եւ հրատարակութեանց մասին, աշխատասիրութեամբ Ք. Կոհլէրի, Գաղղիոյ ճեմարանի կողմանէ հրատարակութեանց Խաչակրաց պատմութեան Հաւաքման մէջ, եւ այն՝ «Հայկական Յիշատակարանք» բաժնին իբր երկրորդ մաս, «Լատին եւ Գաղղիայի յիշատակարանք Հայաստանի մասին[85]»: Հատորիս բաւական մէկ մասը՝ Դարտէլի ժամանակագրութենէ ետքը՝ կը գրաւէ

---

[85] *Recueil des Historiens des Croisades,* publié par les soins de l'Académie des Inscriptions et Belles-lettres. — *Documents Arméniens.* Tome II: Documents latins et français relatifs à l'Arménie. Paris 1906, 1⁰, pp. CCXLIV + 1038.

Հեթմոյ գործը[86]։ Հին լատին բնագրի մը վրայէն հայերէնի թարգմանած է բազմարդիւն Հ. Մկրտիչ Վ. Աւգերեան, կցելով վերջը հայերէն գտնուած «Ժամանակագրութիւնք» փոքր գրուածքը[87]։

Արդ Հեթում Պատմիչ գլուխ մ'ունի «Յաղագս Թագաւորութեան Վրաց[88]», ուր

---

[86] Հեթմոյ կենաց եւ գործոյն մասին հմմտ. անդ Ch. Kohler, Introduction, II: Hayton, p. XXIII—CXLII, բնագիրը՝ նախ գաղղիականը (La Flor des estoires de la terre d'orient), անդ՝ էջ 111—253 (չորս գրքի բաժնուած). — լատինականը՝ (Flor historiarium terre orientis), անդ՝ p. 255—363։ Ըստ Հրատարակչին քննութեան բնագիրը թէեւ նախնաբար գաղղիերէն էր (— Հեթում իւր գործը թելադրած եւ գրել տուած էր Nicolas Falconի —). բայց այս նախնականը ճշդիւ չկայ այժմ այլ ամէն ձեռագիր խոտորում ունի արդի գաղղիականին Դ գիրքը լատինականէն թարգմանուած է։ Լատիներէնը, կ'ըսէ, Ա—Գ գրքերու համար՝ թարգմանութիւն է գաղղիականէն, մինչ Դ գիրքը սկզբնագիր է այն Նիկողայոսէ)։ Գաղղիերէն թարգմանութիւն հրատարակեց, կ'ըսէ, Jean d'Ypres, կոչուած Le Long, 1351ի, եւն։ Տարբերութիւնք երբեմն բաւական մեծ են, մանաւանդ Դ գրոց մէջ։

[87] «Հեթում Պատմիչ Թաթարաց, յեղեալ ի լատին օրինակէ ի հայ բարբառ ի ձեռն Հ. Մկրտիչ աթոռակալ վարդապետի Աւգերեան, Վենետիկ 1842, $8^0$, էջք 90. — Հեթմոյ գործն (էջ 5—76) միայարիր է, բաժնուած ամբողջը՝ Ա—ԾԴ գլխոց, բաւական չեղող բնագրէ մը՝ մանաւանդ վերջերը՝ թարգմանուած. — էջ 77—86 «Ժամանակագրութիւնք» Հեթմոյ։

[88] Հեթում, էջ 14—16 = գաղղ. էջ 129—130 (գիրք Ա, գլ. Զ. Du royaume de Jorgie) եւ լատ. 268—269 (De regno Jorgie)։

Վրաց, Ափխազաց եւ Աղուանից վրայ մի քանի տող միայն կը գրուի: Մնացեալ ամբողջ գլուխը Համշէնի մասին, որ անձամբ տեսած կ'ըսէ: Այս հետաքրքրական կտորն — ըստ թարգմանութեան Աւգերեանի՝ համեմատութեամբ նոր հրատարակութեան բնագրին — այսպէս է. «ի թագաւորութեան աստ Վրաց տեսանի սխրալի ինն տեսիլ այլանդակ[89], որ չիշխէի ասել կամ հաւատալ, եթէ չտեսանէի աչօք իմովք. այլ քանզի անձամբ եղէ անդ եւ տեսի, ասեմ: Զի ի կողմանսն յայնոսիկ է գաւառ իմն որ կոչի Համշէն[90], եւ շրջապատ նորա երեքօրեայ[91] եւ որչափ տարածի գաւառն այն, տեղին այն ա՚յնչափ մառախլապատ է եւ խաւարչուտ այնպիսի նսեմութեամբ[92], զի ոչ ոք է՝ որ կարիցէ նշմարել ինչ անդ. եւ ոչ ոք է՝ որ համարձակեսցի մտանել յայն երկիր զի ոչ

---

89 Այսպէս լատ., իսկ գղ. «մեծ զարմանալիք»:

90 Աւգ. «Համշէն», Kohler ալ բնագրի մէջ կը դնէ հոս Hanisem, մինչ գաղղիականին Hamsen (երեք Զ. Amsen). լատինական ձեռագիրք հոս չափազանց պէսպէս կը գրեն (Ainsen, Anisen, Ansem, *Hamsem*, քիչ մ'եռքն ալ՝ Ainsom, *Hamssem*, *Hinsem*, Amsem, եւ Hamsem):

91 Լատ. «երեք օր լի կ'ըսէ (*bene*... tres dietas). գաղղ. ալ նման է (bien trois journées environ):

92 Գաղ. միայն «ամէն ուրեք այնպիսի մեծ խաւար է, զի...» (grand oscurité):

գտանէ շաւիղ գնալոյ (= դառնալոյ)[93] ընդ այն։ Բնակիչք կողմանցն այնոցիկ (= այնր աշխարհի[94] ասեն թէ բազում անգամ լուեալ իցէ նոցա զձայն գոչման մարդկան, զխօսել հաւու հաւախօսի[95], զխնջիւն երիվարաց յանտառի, եւ զխոխոջիւն գետոյ իրիք՝ որ անտի ելանէ, այս ամենայն նշանք հաւաս–տիք երեւին անդ թէ իցէ (արդարեւ)[96] բնա–կութիւն ազգի անդանօր։ Սոյգ է՝ թէ ըն–թերցեալ գտանի ի Պատմութիւնս թագա–ւորութեանց Հայոց եւ Վրաց, թէ (էր) ոմն ինքնակալ չարավատթար Շաւորէոս[97] (= Շապուհ անուն) կռապարիշտ եւ անագորոյն հալածիչ քրիստոնէից։ Յաւուր միում հրա–

---

[93] Աւգ. թարգմանած է «գնալոյ ընդ այն», բայց բնագիրը կ'ըսէ «զշաւիղ դառնալոյ անգիտանայ» (ad redeundum tramitem ignoravit». աւելի որոշ՝ գղ. ոչ կարէ դառնալ յետս (retourner arrière)։

[94] Ուստի Համշէնի բնակիչք եւ պատմողները։ Լատ. habitatores *illius patrie*. գղ. les habitans de *cette terre* (այսր երկրի)։

[95] Լա. cantus galli, գղ. chant de coq։

[96] «Արդարեւ»՝ ճշմարտիւ կը յաւելու գղ. (il y a gens habitans verroiement)։

[97] Այսպէս անունս «Շապուհ» ունի միայն լատ. գրելով «էր ոմն չարագոյն ինքնակալ Պարսից (imperator Persarum), որ կոչէր Սաւորէոս անուն (qui nuncupatatur proprie nomine *Savorens*»). պաշ–տէր նա զկուռս եւ անգթութեամբ հալածէր զՔրիս–տոնեայս» եւն։ Բայց անունս նախնական չ'երեւար։ Գաղ. ունի պարզապէս. «էր անագորոյն ինքնակալ (un cruen empereor), որ պաշտէր զկուռս, եւ ան–գթութեամբ հալածէր զՔրիստոնեայս»։

մամն եհան, զի ամենայն բնակիչք Ասիոյ[98] եկեսցեն եւ երկիր պագցեն կռոց եւ որ միանգամ անսաստ դացի հրամանի նորա, հրով այրեսցի: Ուստի դէպ եղեւ, զի ոմանք ի քրիստոնէից ընտրեցին զմարտիրոսութիւն՝ քան պաշտել զկուռս: Այլք առ ժամանակեան երկիւղի երկիր պագին կռոց, զի մի՛ զրկեսցին ի ժամանակեան իրաց: Իսկ այլք դիմեցին ի լերինս եւ ի գերեզմանս (յայրս) եւ անդ երեւելապէս (= քաջութեամբ) պահեցին զանձինս. (= փախեան յերեսաց հալածչին)[99]: Իսկ զարմն քրիստոնէից լաւաց[100]՝ որ բնակէին ի դաշտն Մողանի[101], խորհեցան լքանել զինչս

98 Լտ. Asye, գղ. Aise. լտ. կ'ըսէ «...կռոց իւրոց». բայց գղ. չունի «իւրոց»:

99 Աւելերեանի թարգմանութիւնը՝ չորս ձեռագրաց այլակերպ ընթերցուածին համեմատ է (...mortes et munimenta et viriliter in illis testarunt contra potenciam inimici) (...քաջութեամբ պահեցին զանձինս ընդդէմ զօրութեան թշնամւոյն). ). բայց Kohlerի ընտրած բնագիրն է «Իսկ այլք դիմեցին ի լերինս եւ յայրս եւ փախեան յերեսաց հալածչին» (...mortes et *cavernas* եւն). Գղ. պարզապէս կ'ըսէ. «Իսկ այլք փախեան ի լերինս»:

100 Լատ. եւ գղ. «ոմանք ի քրիստոնէից լաւաց» եւն:

101 Աւգ. «Մողոն» Kohler դրած է լտ. Mogan (այլ ընթերցուածք Magan, *Molgam* եւ Megam). — Գղ. (ընտրած է Kohler) ձեւս Mongan, բայց ձեռագիրք չափազանց պէսպէս են (Mogan, Morgan, Morgant, Mogan, Margan): Հրատարակիչը կը կարծէ թէ Մուղանի դաշտն ըլլայ տեղս՝ կասպից ծովուն եզերքը:

իւրեանց, եւ անցանել յաշխարհն Յունաց: Մինչդեռ նոքա յայս միտս էին, ընդ առաջ ել նոցա ինքնակալն [ի դաշտին Համշինոյ՝ որ յիշեցաւ][102]: Հրաման տուեալ, զի ամենեքին՝ ոյք չկամիցին զոհել յօշյօշ կտրատեսցին, իսկ նոցա գոչեալ առ տէր Յիսուս Քրիստոս՝ [խաւար մշտնջենաւոր կուրացոյց զաչս անօրինաց եւ քրիստոնեայք] ընդ ուղիղ շաւիղ գնացեալ ապրեցան: Բայց անօրէնքն յայն ձոր աղջամղջին մինչեւ ցայժմ նստեալ կան, եւ պարտին նստել մինչեւ ի կատարած աշխարհի. որպէս առ ամենեսին հաւատացեալ լինի եւ պատմի[103]»:

---

[102] Համշէնի անուն ունին Լատ. եւ Գղ.: Ամբողջ խօսքն այսպէս է լտ. «բայց ոմանք ի լաւաց քրիստոնէից բնակէին ի դաշտին, որ առհասարակ (vulgaliter, նաեւ՝ ռամկօրէն) կոչի Մոգան, եւ զի չկամէին ամենեւին զոհել կռոց, խորհեցան փախչել, լքեալ զինչս ժամանակեանս: Եւ իբրեւ կարծէին անցանել ի կողմանս Յունաց (...ad partes Grecie), ինքնակալն, որդին անօրէնութեան թշուառական բանակաւ իւրով ել ընդ առաջ քրիստոնէիցն, յորժամ փախչէին, այսինքն յայնմ դաշտին Համշինի որ ի վեր անդր յիշեցաւ (in illa videlicet Hemsem planicie superias nominata). — Գղ. տես յաջորդը:

[103] Ամբողջ վերջաւորութիւնն այսպէս է Գղ. «Յայսմ ժամանակի ոմանք ի լաւաց քրիստոնէից բնակէին յաշխարհի որ կոչի Մոնգան (contrée que est appellée Mongan եւն). որք լքին զամենայն ինչս իւրեանց, եւ կամէին փախչել ի Յոյնս (fuir vers Grèce). Եւ յորժամ էին յայսմ երկրի Համշէն՝ որ յիշեցաւ (et quant ils furent en *cette contrée de Hamsen* dessus nomée), ընդ առաջ ել նոյն այս չար ինքնակալ, եւ հրաման ետ, զի ամենայն քրիստոնեայք

*Այս չափազանց հետաքրքրական գլխուն մէջ նախ պէտք է բաժնել այն մասը, զոր գրական որեւէ աղբիւրէ քաղած է Հեթում, այն մասն՝ որ «ի Պատմութիւնս» Հայոց ու Վրաց կարդացած կ'ըսէ. Ցապուհ անուան՝ կարծենք՝ կարեւորութիւն տալու չէ: Քանի որ արեւելից հալածչի մը վրայ էր խօսքը, նաեւ Հայոց ծանօթ բազմաթիւ «Արեւելեան» վկայաբանութեանց մէջ կը կարդացուէր նոյն*

---

*յօշեցին. յայնժամ գոչեցին Քրիստոնեայք «ողորմութիւն ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ» եւ* վաղվաղակի եկն այս խաւար մեծ (cela grand oscurité) *որ կուրացոյց (խաւարեցոյց) զինքնակալն եւ զարս նորա: Քրիստոնեայք զերծան. եւ սոքա* մնացին յայսմ խաւարի *եւ* մնասցեն (մնան անդ տակաւին) մինչեւ ի կատարած աշխարհի, *որպէս հաւատան* եւ պատմեն (selon que l'on croit et raconte). — *Նոյնպէս լատ. այս ձեւով ունի մնացեալ վերջը. «Իբրեւ հրամանաւ ինքնակալին հարկ էր քրիստոնէից այնոցիկ առհասարակ յօշեալ կոտորել* (detruncari, *զզ.* tranchées par pièces) *աղաղակեցին առ Տէր Յիսուս Քրիստոս, այն խաւար մշտնջենաւոր խաւարեցոյց զաչս ամբարշտացն* (continuo illa tenebrositas perfidorum lumina offuscavit, *զզ.* aveugla *«կուրացոյց», ձեռագիր մը* anubla *պատեաց միգաւ»), եւ Քրիստոնեայք զերծան ընդ ուղիղ չաւիղ: Բայց անօրէնքն պարտին նստել* (residere) *եւ նստին* (resident) յայնմ ձորի խաւարի (in illa tenebrositatis valle). *մինչեւ ի կատարած աշխարհի, որպէս յամենեցունց հաւատացեալ լինի եւ պատմի* (ab omnibus creditur et narratur). — *Աւգերեանի թարգմանութեան մէջ չկան □ փակագծեալք, բայց կարեւոր են, մանաւանդ Համշէնի երկրորդ յիշատակութիւնը, որուն անունն՝ ինչպէս ըսինք, հոս ալ պէսպէս ունին ձեռագիրք:*

անունը։ Բայց սատի քանի որ դդ. բնագիրը չունի, նախնական ըլլալն ալ խնդրական է։ Մնացեալը կրնայ յարմարիլ ինչպէս Վարդանանց օրերուն, նոյնպէս մանաւանդ Համամի պատմութեան, որ նոյնպէս ի վերջոյ հալածանաց պատմութիւն է։ Թէեւ Վրաց Թագաւորի առաջնորդութեամբ՝ Պարսից զօրքն է որ քահանայք կը կոտորէ, Մագնոս եպիսկոպոսը կը զենու խորանին վրայ. եւն։ Վերջաւորութիւնը հոն ի հարկէ գրուցախառն եղած է, բայց առիթն արդէն հոն կար։ Մագնոսի անէծքը կը կատարուի, «ճայթեալ ամպոց երկնից, հրայրեաց արարին, զՎազգէն, եւ «երեքհազար այր ի միում գիշերի սատակեցան» եւն։ Ուստի այս մասը կապ ունի Համամայ պատմութեան հետ։ Որովհետեւ նոյնը յետոյ ընդարձակ յիշելու առիթ պիտի ըլլայ, կը շատանանք հոս այս դիտողութեամբ։

Վերջաբանը թէ անօրէն արքայ մ'իւր զօրօք «խաւարին ձորի» մէջ պիտի մնայ մինչեւ աշխարհիս կատարածը, զրոյցի մը մաս է, որ հոս ագուցուած է։ Այնպէս, կ'ըսէ, առհասարակ կը պատմէին տեղացիք։ Ասոր մասին մատնանիշ կ'ընէ Կոհլէր նման օտար զրոյցներ[104]։ Նման զրոյց կար արդէն

[104] Introd. p. XXIV, (ծան.) կ'առաքէ գործոյս՝ *Alfred Bassermann*, Veltro, Gross-Chan und Kaisersage, ի Neue Heidelberger Jahrbücher, XI, 1901, էջ 33. — Գոնէ դերմ. կայսերական զրոյցը ննջել՝ մինչեւ որ արթննայ եւ Գերմանիոյ նոր դա-

Հայ հողի վրայ ալ: Որչափ ալ ուրիշ զրոյց ըլլայ Արտաւազդն, որուն մանրամասնութիւնք աւելի չեշտուած են Ճխղարի զրուցի մէջ, էական կէտը հոն ալ նոյն է: Քաջերը զինքը կը տանին «յազատն ի վեր ի Մասիս» կը փակեն մութ աշխարհի մէջ, որ լոյս պիտի չտեսնէ («եւ զլոյս մի՛ տեսցես») մինչեւ աշխարհքիս կատարածը: Քաջերու լերանց կրկին (Քաջքար) այս երկրին մէջ անծանօթ չէր կրնար ըլլալ այս արքային զրոյցը: Ինչպէս անծանօթ չէին նաեւ նախնաբար աւելի օտար «մութ» աշխարհի հեքեաթները, որոնք այսօր ալ ա՛յնչափ տարածուած են ամէն կողմը: Անոր համար կարծենք թէ Հեթում է որ այս զրոյցը կապած է քրիստոնէից հալածանաց եւ հետեւաբար Համամի պատմութեան հետ: Կրնանք դուշակել թէ տեղացիք Հեթմոյ պատմած էին նախ անծանօթ «խաւար» աշխարհի մը մասին, որ ի Համշէն էր, եւ թէ այն բնակեալ էր՝ անշուշտ Քաջերով, եւ յատկապէս Քաջով մը, որ բնականապէս մինչեւ աշխարհիս կատարածը պիտի ապրէր իւր Քաջաց հետ: Հէքեաթներու մութ աշխարհն ալ տեսակ մը քաջաց բնակարան է, իւր թագաւորներով, բայց նաեւ դեւերով, թռչող ու «լոյս աշխարհ» հանող հաւքերով, եւն[105]. «Թախ

---

րաշրջան մը սկսի) շատ կապ ունենալու չէ ասոր հետ: Կարծենք այս խնդիրը պրպտել աւելորդ է հոս:

105 Հմմտ. ի միջի այլոց մեր «Ցուցակ», էջ 25: Հիմն է՝ Խոր. Բ, կա. երկու բաժնով: Առաջինը՝ (թէ

աշխարհքիս վերջ» քնացող ալ կայ, որուն «պահապանք կակնած են հոն դեռ, տեսնուն թէ ե՞րբ պարթի որ աշխարհքիս վերջ գայ[106]»: «Բաջքարու դեւ»[107] գիտէ Խոտորջուրցին նաեւ այսօր: Այս ամէնը զարմանալի չէ արդէն հնոց համար այս «անլոյս» աշխարհի նկատմամբ, որ սակայն արդեւք մը չէր՝ որ ապաստանէին հայ նախարարք իրենց ընտանեօք՝ Վարդանանց օրով, ըստ Եղիշէի:

§14. Մնացեալ մասը կէս զրուցախառն, կէս տեղագրական ու իրական է, եւ մեծ մասամբ այնպէս լսած: Ո՞ր գծով անցած կրնայ ըլլալ Հեթում, — եթէ իրօք անցած էր, — որ այսպիսի «կուրկուր» աշխարհ մը կրնար հաւատալ եւ գրել: Հեթում կ՚ըսէ «աչօք խմովք» տեսած երկիրը, եւ «անձամբ եղէ անդ»: Չենք ուզեր կասկածիլ այս մասին, թէեւ զարմանալի երեւայ թէ այն ատեն ի՛նչպէս կրնար գրել Հեթում թէ այս՝ «խաւարին» երկիր մըն է ուր մարդ բան մը տես-

«զքեղ կալցին քաջք, տարցին յազատ ի վեր ի Մասիս «եւ երդիչքն Գողթան առասպելաբանեն», — երկրորդը («կապեալ երկաթի շղթայիւք», «երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն» եւն) «զրուցեն... պատուունք»:

106 Հմմտ. ի մէջի բազմաթիւ այլոց՝ «Հին աւանդական հէքեաթներ Խոտորջրոյ», էջ 22—27:

107 Հմմտ. անդ, էջ 5—7. — Հմմտ. դարձեալ տողերս՝ «Արի՛ պառաւ քեզի կու գովեմ, դու Բաջքարու դեւ լմանիս» եւն («Երգեր եւն Խոտորջրոյ» էջ 62):

նել չի կրնար։ Որչափ ալ մառախլապատ ընդունինք զՀամշէն, որչափ ալ շատ աւելի եւ թերեւս տակաւին մեծաւ մասամբ թաւ անտառախիտ, անկոխ ու նսեմաստուեր անտառներով, անդնաց ու անչաւիղ, բայց վերջապէս այս աշխարհն առասպելեալ երկիր մը չէր այն ատեն ալ, այլ իրական երկիր մը, որ՝ ինչպէս տեսանք՝ դրախտանման մասեր ալ ունի եւ ունէր։ Հեթում ալ գոնէ բնակեալ մասեր կ՚ընդունի. որովհետեւ այն անծանօթ բաժնին մասին իրեն պատմած են, ինչպէս բնագիրը որոշ կ՚ըսէ, «բնակիչք այնր աշխարհի» կամ «գաւառի»։ Կարծենք թէ պարզ մեկնութիւնն ա՛յն է թէ Հեթում անցած էր գծէ մը, ուր կրնար ըսել թէ Համշէն եղած ըլլայ, անոր շատ մօտ ըլլալով, թերեւս տեսած անոր մէկ դոյզն մասը, եւ հոն լսած զրոյցներ եւ տեղեկութիւնս։ Համշէն մինչեւ ծովու մօտերը կը տարածուէր, եւ այս վարին գրեթէ ծովեզերեայ մասերը բնականապէս աւելի ծանօթ էին ու դիւրանց քան վերին՝ լեռնամասն, որ մեծաւ մասամբ այսօր ալ անծանօթ է մեզի։ Հեթում կրնար այս ծովագծէն անցած ըլլալ, տեսած նաեւ այն մասին գիւղերը։ Հոս իրեն ցուցած կրնան ըլլալ այն երկնաբերձ Քաջերու-լերանց շղթան, եւ անոր ստորոտն այն մշուշապատ եւ նոյն իսկ այսօր գոնէ մասամբ կուսական անտառներով խոր ձորաշխարհը։ Այն պարագան թէ այս մասին բնակեալ ըլլալու նշաններէն է «Խոխոջիւն գետոյն՝ որ անտի

եղանէ», կը ցուցնէ կարծենք նոյնպէս այս ծովեզերեայ մասը: Ջրոյցներէ իրականութեան իջնալով՝ այս միակ գետը արդի Ցորթումեան է, որ Համշէնի բոլոր ջրերն ընդունելէն ետքը միայն իրր միակ գետ կը ներկայանայ: Վիժայէ եւ մանաւանդ Գորտայէ վար (— ուր Ցուրթունայի ուրիշ ճիւղ մ'ալ կը միանայ —) կարճ ընթացք մ'ունի մինչեւ ծով, — սակայն այս մասն արդէն Համշէնէ դուրս է:

Հեթմոյ նկարագրութենէն կրնար հետեւցուիլ թէ Համշէնի վերնամասն ունէր նաեւ տեղացւոց համար անծանօթ բաժին մը, կամ դոնէ Հեթում այսպէս հասկցեր է: Եթէ տեղացիք, ինչպէս կը պատմէ, այն անտառին մէջ ո'չ միայն մարդու ձայն ու ձիու խխնջիւն, այլ նոյն իսկ աքաղաղի խօսիլը կը լսէին, կը ցուցնէ թէ այն անտառամուխ գիւղերէն մաս մը պատմողներէն շատ հեռու ալ չէր կրնար ըլլալ: Ամբողջ պատմուածին դոյնը յետոյ քիչ մը խտացուցած է Հեթում, իր ժամանակի ոգւոյն համեմատ, որ «զարմանալիք»ներ կ'ուզէր լսել մանաւանդ հեռաւոր աշխարհաց մասին, եւ արդէն ամբողջը գրուցախառն եղած է: Բայց էական մասը, թէ Համշէնի մէջ նաեւ տեղացւոց անծանօթ վայրեր կային յատկապէս վերին լեռնամասն եւ անկոխ անտառները, (հմմտ. այն նշան բնակութեան «յանտառի» —) այս բնական բան մըն էր, մասամբ նաեւ այսօր: Եթէ Հեթմոյ օրով ըլովին անծանօթ իսկ

ըլլար բուն Համշէն, եւ հետեւաբար գրուցաց նիւթ՝ մերձաւոր դրացեաց համար, զարմանալի բան մը չէր այս, մինչ մեզի այսօր ալ ճիշդ այս մասն անծանօթ երկիր մը կը մնայ, քարտէսներու վրայ՝ ինչպէս տեսանք, խոշոր սպիտակ բծերով միայն ներկայացած (տես § 4) : Բայց աստի այս անկոխ անտառի մէջ, դրացեաց ալ քիչ ծանօթ՝ բնակչութիւնը, — թողլով գրուցախառն մասը. — բաւական համեմատ է արդի աւանդութեան ալ, որ՝ ինչպէս տեսանք, «Անւոյ» գաղթականութեան համար կ'ըսէ թէ երկար ապրած ըլլայ անտառաց մէջ անյայտ (§ 5) :

Միւս կողմանէ այս տեսակ անծանօթ գաւառաց մասին նման զրոյցներ պակաս չեն այսօր ալ : Տողերուս գրողը նման բան մը — Խոտորջրոյ «գտնուիլը» — լսած է նոյն իսկ դրացի այժմ մահմետականացածներու բերնէ, որոնք բնականապէս իբր իրողութիւն կը պատմէին՝ պատահած երբեմն «ժամանակին» իբր թէ Խոտորջուր անծանօթ տեղ մըն էր : Ծորոխէ ամէն անցնող կը տեսնէր անոր մեծ ջուրը, բայց նեղ կապանէ մ'ելած, մտածել չէր տար թէ անկէ ներս ընդարձակ ձորաշխարհ մը կրնայ ըլլալ : Սակայն օրին մէկը գետը՝ գետայարոյցքին՝ կը բերէր ամբողջ իսկ ծառեր, եւ այն ատեն Ծորոխէն անցնողք իմացած են թէ ներսն ընդարձակ անտառներ ըլլալու են : Օր մ'ալ վերջապէս գետին հեղեղը կը բերէ նոյն իսկ գերաններ, տան ու գոմի փայտեայ

մասեր։ Եւ այն ատեն կ'իմացուի թէ ներսը բնակութիւն ալ կայ։ Կը մտնեն երկար կապանէն, եւ վերջապէս կը գտնեն փոքր գիւղ մը, քանի մը տուն, որ հոն անծանօթ կ'ապրէին։ Եւ տեղը հաւնելով՝ Ճորոխի շրջակայ բնակիչք հետզհետէ կու գան եւ Խոտորջուր կը սկսի մեծ գիւղ ըլլալ։ Այս զրոյցը տեղւոյ դրից համեմատ յօրինուած բան մըն է. Խոտորջրոյ ձորդուռը հասնողը ստուգիւ չի կարծեր թէ այս նեղ կրճէն ներս վնտռելու բան մ'ըլլայ։

Սակայն գոնէ Խոտորջուր «գտնուելու» պէտք չունէր։ Ճորոխի ձախ ափը, որ անցնելու լաւագոյն ալ գիծ մըն էր, Կարմիրքի բարձրադարը եղողը զԽոտորջուր՝ իբր ի հայելւոջ աչքի առջեւ ունէր գրեթէ ամբողջութեամբ։ Ասկէ վեհ ալ է տեսարանը։ Խոտորջուր գետն ամբողջ կապանով ճիշդ առջեւն է եւ տեսանելի լիակատար, ի բաց առեալ միայն Խանդաձորն, որ գրեթէ մինչեւ Արդուին իջնող լեռնագծին ետեւը թագուն կը մնայ, բոլոր միւս ձորերն իրենց գիւղերով են լիակատար պայծառութեամբ կ'երեւան, բայց մանաւանդ ամբողջ մեծ լեռն մինչեւ վեր հովայ լեռնագիծը, ուր ի մասնաւորի Քաջքար իւր կատարեալ վսեմութեամբն ամբողջովին կը գրաւէ աչքը։ Այս կէտէն դէպ ի ձախ ընդարձակ է տեսարանը, եւ Հունուտի ձորի ամբողջ վերնամասը կարելի է ամենայն ճշդութեամբ գծել։ Դէպ ի աջ անո՛վ նուազ է հեռու պատ-

կերն որ հոս դիմացը կանգնած է Երանոսող՝ համեմատութեամբ Կարմիրքի բարձունքի՝ իբր շատ բարձր եւ յաղթանիստ լեռ մը, մէջքին վրայ ունենալով զԱրեգի: Ասիկա անցողակի իբր օրինակ նման պատմուածքներու, որ կ'աւանդուին այսօր ալ:

Հեթմոյ աւանդածներու մէջ՝ դարձեալ կան կէտեր ալ, որոնք ճիշդ են լիովին: Համշէնի երեքօրեայ տարածութիւնը քիչ շատ նոյն է այսօր ալ, ճամբու օրն հաշուելով արեւելեան ուղեւորութեանց ոճով: Թէ այդ տեղ մտնել — բնականապէս մանաւանդ օտար մը — ոչ ոք կը համարձակէր, վասն զի ելլելու շաւիղ չէր գտներ, ա'յս ալ համեմատ է օրինակի համար Քոխի իսկ տուած նկարագրութեան՝ Պոնտական լեռնադծէն մինչեւ իսկ Խալա եղած մասին: Եթէ «անտառ» կը չեշտուի, որով ի հարկէ անանցանելի կուսական անտառ հասկնալու ենք, այս ալ կայ մասամբ նաեւ այսօր: Հայկունի նոյնը կ'ըսէ Սեւ Գետոյ համար նսեմաստուեր խտութեամբ[108] եւ Համշէնի համար՝ Քոխ կը նկարագրէ նոյնպիսի անտառ՝ հսկայ ծառերով, ուր կացին չէ դիպած եր-

[108] ԱՐՐՏ, 1895, էջ 239 «Այս Սեւ-Գետոյ երկիրն անհուն անտառներով պատած է. հինաւուրց անտառներու խտացած ծառներն արեգական ճառագայթներն անթափանցելի դարձուցած են»: — Համշէնի մասին «հազարաւոր տարեկան ծառեր» կ'ըսէ Հայկունի (տես քիչ մ'ետքը):

*րեք*[109] *: Առ հասարակ Քոխի այս մասին նկարագրութիւնն ունի դծեր, որ Հեթմոյ բամծներուն կը համաձայնին: Քոխի նկարագրութիւնը շատ ընդարձակ է, այնպէս որ կարելի չէ ամբողջը յառաջ բերել*[110] *: Բաց աստի կը պարունակէ երկար՝ թէեւ հետաքրքրական՝ դիտողութիւններ Պոնտական մեղրի մասին*[111]*, զոր հինք՝ հետեւելով*

---

[109] Քոխ, էջ 105: *Քիչ մ'ետքը յառաջ կը բերենք իւր խօսքը: Ինճիճեան արդէն կը գրէր (էջ 396) «Ունի անտառս մեծամեծս թաւացեալս բազմատեսակ ծառովք, զուարճարան մերոց տնկարանից սակս զանազանութեան տեսակաց եւ սակս* սեփհականեալ հայկական անուանց՝ *ի նախնեաց ժամանակաց մնացելոց ի ժողովուրդս երկրին. յորս լինի եւ տօսախ զարմանալի, մինչեւ ի միոյ եւեթ բնոյ գործել մխատանի խան մեծ»: — Համչէնի եւ Եղնովտի համար ալ կ'ըսէ* (էջ 397) *«Լի են ի վերայ լերանց սեաւ մայրի (շամ) ծառատունք որք բերեն* կիւ *պատուական, որով կոչեն Հայկազունք զազրդ»:*

[110] *Հմմտ.* Քոխ, էջ 101—118:

[111] *Անդ,* էջ 111—115: *Ինքը թէ նախընթաց ուղեւորութեան ի Կողքիս եւ թէ այս անգամ Պոնտոսի լերանց ամէն կողմը կերած է մեղր, առանց որեւէ վնասակար ազդեցութիւն զգալու: Միայն ի Վիժա մեղրը քիչ մը լեղի համ ունէր, եւ այս առիթ կու տայ այս խնդրոյն եւ Քսենոփոնէ սկսեալ տարածուած կարծեաց վրայ խօսելու: Մեղր, կ'ըսէ, սովորական եւ շատ յաճախ գործածուած սնունդ է հոս այս ամէն կողմերը, եւ նաեւ կ'արտածուի որ կարելի չէր, եթէ այն թունաւոր յատկութիւնն ունենար: Իւր կարծիքն է թէ ապականած մեղրը միայն կրնայ նոյնպիսի ազդեցութիւն ունենալ, եւ այս ըլլալու է պատճառ այս կարծեաց տարածման, թէեւ չ'ուզեր վերջնական վճռել, եւն: Կը բերէ օրինակներ թէ*

Քսենոփոնի պատմածին, կը նկարագրեն իբր գինովցնող եւ նաեւ թունաւոր, զոր նաեւ նորք կը կրկնեն, մինչ Քոխ անհաւանական կը գտնէ: Ս. Հայկունի ի Սեւ Գետ եւ Համշէն անհուն առատութիւն կ'ըսէ վայրի մեղրի, եւ թէ աւանդութիւնը մեղուաց մայրն, Սեւ Գետէ Համշէն անցած կ'ըսէ[112]:

---

սխալ կարծիքներ որչափ երկարակեաց կ'ըլլան, նաեւ դարերով՝ կրկնուելով միշտ:

[112] ԱՐՐՏ, 1895, էջ 296· «Համշէնի անտառներու մէջ հազարաւոր տարեկան ծառերու եւ փապարներու մէջ հարիւրաւոր տարուան մեղր կայ իրարու վրայ դիզուած եւ բիւրեղացած, զորս առատօրէն տակառներով կը բերեն Տրապիզոն կը վաճառեն, եւ ուրագով կամ կացնով հազիւ հազ կը կարողանան մաս մաս բաժնել»: — Անդ, էջ 342 Սեւ Գետոյ Թրէձոր (այժմ Ծիմլա) գիւղացի մը կը պատմէր թէ «Մեղուներու մերուտը առաջ իրենց երկիրն էր. յետոյ անցած է Համշէն»: Մերուտ՝ մայր է մեղուաց. եւ կը հաւատան թէ աշխարհիս ամբողջ մեղուներու մի մայր կայ, նա եւս Համշէն է, ուստի մեղուները կը տարածուին աշխարհիս այլեւայլ կողմեր եւ թէ «մեղուն այնչափ շատ էր (յառաջ), որ արեւին լոյսը կը խափանէր»: — «Ի Սեւ Գետ, մի քարայր կայ, ուստի միայն տարին ութ ջորու բեռ մեղր կը հանեն»: — Համշէնի համար արդէն Ինճիճեան կը գրէր (էջ 396)· «բերէ մեղրամոմ առատ, յորմէ ամի ամի տայ յարքունիս իբր ի հարկ 2000 օխայ, բայց ոչ լինի ի սմա ցորեան» եւն: Ինճիճեան (էջ 396—397) կ'ըսէ թէ Պաշհամշէնցիք «ի ձմերայնի սաստիկ դոլով թանձրութեան ձեանց՝ ըստ մեծի մասին փոխադրեալ իջանեն առ ծովեզերին Սեւ ծովու, որ երկօրեայ հեռի է աստի. քանզի սահմանս աւանիս որպէս եւ Եվողիւտի գետոյն՝ է ձորավայր խոր առ ստորոտով բարձր ապառաժոտ լերանց որ թաղի ընդ ձեամբք. լի են ի

Ասոնք Փոխի ծանօթ չէին : — Ցիշենք քանի մը մասեր՝ Համշէնի այս գրուցախառն կողմանց բնութեան մասին :

§ 15. Խեւակէ բարձր դաղաթնադիծն եղեւէն եռքը, զոր յիշեցինք (§ 11)․ «էջքը, կ'ըսէ, չափազանց տաժանալից էր, եւ նոյն խիկ անգամ մը կոխուած որեւէ արահետի հետք կը պակսէր» : Ստիպուած էր բուն ուղղութենէ յաճախ շեղիլ, եւ միայն «անկիրթ ադդերու բնազդը» ուղիղ առաջնորդելով ի վերջոյ նպատակակէտին հասաւ․ «Ով որ ան–գամ մ'այս կողմերը մոլորի, անշուշտ ա'յլ եւս ելք մը չի գտներ անկէ ելլելու»․ — Ճիշդ Հեթմոյ բածը : Ստիպուած էր «մերթ ստուար փուլերու (փլած քարակոյրներ)․ շուրջը դառնալով անցնիլ, մերթ խորանդունդ վիհ մ'արգելք կ'ըլլար յառաջ երթալու, մերթ ուղղաբերձ կանգնած ժայռորմը սարսռացուցիչ խորութիւն մը կը ցուցնէր, եւ մերթ ոտքով ու ձեռքով կը մագլցէինք ընդարձակ սառնադաշտերու վրայէ : Անգամ մը ստիպուած էինք՝ մեր ջորիները ճոպաններով վար իջեցնել, մինչ մենք

վրայ լերանց սեւ մայրի ծառաստանք» են : — Բժշկեան (էջ 96—97) մինչեւ անգամ կը կարծէ․ Պաղ–Համշէն, որուն մէջէն գետ կ'անցնի եւ լեռան գլուխը փոքր բերդ կայ․ այս լերան վրայ սաստիկ ձիւն կու գայ․ երբեմն ճամբորդները չեն կրնար անցնիլ, կը թաղեն զիրենք ձեան մէջ եւ օրերով ողջ կը մնան, զի տաք է ձիւնին տակը, որոնք յետոյ անփաս կ'ելլեն» :

ժայռակոյտներու եւ տառոյցներու վրայէն դժուարութեամբ իջանք։ Այն թէ ծովէն մունչելով մինչեւ հոս սուրացած մրրիկ-ներն ո՛րչափ յաճախ կը մոլեգնին այս բար-ձանց վրայ, յայտնի է անկէ որ ձիւնը քշուած դիզուած էր ճիշդ ամենասեպ ժայռորմերու վրայ, զորոնք մեծ թանձրութեամբ կը ծած-կէր[113]»։ — Համշէնի եւ Եղնովիտ խոր ձորե-րուն ալ սաստիկ ձիւն ու հիւսք կը նկարա-գրեն Ինճիճեան եւ Բժշկեան։

Իջնալով բաւական լայն ձոր մը, մշուշի եւ անձրեւի տակ, կը հանդիպի շատ խղիկ-ներու, որոնք սակայն բնակարան չէին, այլ անասնոց քորքեր, այս միջոցին ամէնքն ալ դատարկ։ Բայց կը գտնէ չափազանց հե-տաքրքրական պարագայ մը, որ կը յիշեցնէ Հերակղի Ասդիասի գոմը մաքրելու կերպը, — դիւցաբանական պարագայ մը Համշէնի[114]

113 Քոխ, էջ 101—102։

114 Այս հետաքրքրական կէտն այսպէս կը նկա-րագրէ (էջ 102—103)։ «Ամէն գոմերը շատ գեղեցիկ սալարկուած էին եւ մաքուր քարերը լիովին կը փայլէին։ Այս կէտի մը մասին սահմանափակ մաքրա-սիրութիւնը շուտով մեկնուեցաւ ինձի։ Այսինքն՝ քորքերու չորս կողմը դարւոյ արտեր կային, որոնց բոյսերը տակաւին նոր սկսած էին հասկ կապել։ Ար-տերս կապուած էին գոմերուն հետ կորիներով։ Արդ ամէն երեք կամ չորս օրն անգամ մը մերձակայ առուակէն ջուրը կը թողուէր դէպի գոմերը, եւ սա-լարկուած կորիները ամէն աղբը կը քշէին կը տանէին դէպի արտերը։ Այս ոճով դարին կ՚ըսեն թէ չափա-զանց շատ կ՚աճի, սակայն եւ այնպէս ամէն տարի չի ալ հասուննար։ Հաւանօրէն այս մասին աղբին տա-

մէջ: Այս տեղը կամ ամառանոցը կը կոչուի Մաթոյ (Mäto)․ ժամ մը վարը կը սկսի ծառոց բուսականութիւնը: Նախ հանդիպեցան տխեղծ եղեւիններ, փեկոններ, եւ սնիք, որոնք յետոյ թփուտանման սկսան շարունակուիլ: Բայց երբ պոնտական մրտավարդն սկսաւ երեւալ, թփուտները սկսան անտառանման դառնալ, եւ ամէն մէկ քառորդ ժամ անդին ծառերը, յատկապէս փեկոնները, կը բարձրանային աւելի վեհաչուք: Ժամ մ՚ետքը վերջիններս այնպիսի մեծութեամբ սկսան երեւալ որ յաճախ 20—24 ոտք շրջապատ ունէին: Հոս ալ ընդհանրապէս նոճւոյ ձեւ ունէին, եւ իրենց հոյակապ բարձրութեամբ ալ ստուգիւ վեհ տեսք ունէին: Ցանցառ չէին նոյնպէս եղեւիններ 12—16 ոտք շրջապատով: Կը գտնուէի այնպիսի թաւ անտառի մէջ, որպիսի տեսած չէի Տրապիզոնէ մինչեւ հոս․ եւ որչափ ձորն ի վար կ՚իջնայինք՝ ա՛յնչափ մեծագործ կ՚ըլլար․ Միւս բոյսերն ալ անտառիս համեմատ էին... Յետոյ սկսաւ երեւալ լաստենին, եւ անով մշտադալար թփերն ալ տիրող եղան: Ի վերջոյ աւելցան տօսախն ու շագանակը»:

Հիանալի է ձորին ստորագրութիւնը,

---

քութիւնն աւելի ազդեցութիւն ունի քան սննդական հիւթերով առատ զանգուածը: Ասկէ կը տեսնուի թէ այն կերպն, որով Հերակղէս Աւգիասի ախոռը մաքրեց՝ միակ եւ ինքնագիւտ բան մը չէ, այլ թէ այս կերպը հին ազգաց նոյնչափ ծանօթ ըլլալու էր, որչափ Արեւելքի արդի բնակչացս»:

որ կը նկարագրուի իրր լիովին նկարչագեղ, իւր ջրովը, որ վարը գտնուած Խալա կամ Կալա գիւղի համար՝ Խալայի-Ջուր կը կոչուի: Այս, կ՚ըսէ, մերթ լայն անկողնոյ մը մէջ կը հոսի, եւ իւր վճիտ ջուրը կը նետէ՝ յատակը տեսնելու. մերթ օձի պէս կը դալարի սուր ապառաժներու միջեւ, զորոնք դարնան փոթորիկը վար գլորած բերած է. մերթ սաստիկ մռնչելով կը բախի կարծր ժայռին դէմ, սպիտակ փրփուրով պատելով: Ուրիշ տեղ մ՚այնպիսի խոր անկողին մը փորած է, որ իւր մեզի անտեսանելի ջուրն ականջին իբր մեղմ մրմունջ մը կը լսուէր: Ուրիշ անգամ մը ստիպուած էինք ձորը նեղցնող ժայռերու վրայէն մագլցիլ անցնիլ, մինչ մեզմէ հարիւրաւոր ոտք վար ալիքները դոչդոչելով կ՚անցնէին: Մերթ աջ եւ մերթ ձախ ափն էինք. եւ երբեմն իբր կամուրջ կը ծառայէր փուտ ծառաբուն մը՝ զոր ժամանակը կամ մրրիկը գետին վրայ առ ի չեղ նետած էր: Ջրվէժներ աւելի առատ կ՚երեւէին աչքին քան Բեռնի վերնագաւառի մէջ. եւ այնու աւելի գրաւիչ՝ որ ծառոց այլեւայլ երփնով կանաչը պատկերն աւելի կենդանի կ՚ընէր: Մէկէ աւելի անգամ տեսայ որ 8—10 ոտք լայն առուակներ բարձր ժայռի գլխէն հարիւրաւոր ոտք վար կը թափէին, իրենց ջուրը յատակի կարծր քարի վրայ ճերմակ փոշի մը դարձնելով[115]»:

---

[115] Անդ, էջ 104—105:

Այսպիսի կուսական անտառի մէջ Հեթմոյ խաւարն ալ կայ բայց բնականապէս գիշերը: Ահա ինչ կը գրէ Քոխ[116]. «Այս մեծագործ ձորոյն իւր ցանցառապէս գեղեցկութեամբքն ըրած տպաւորութիւններն ա՛յնչափ հզօր էին, որ երբեմն երբեմն կը մոռնայինք անօթութիւնն ու յոգնութիւնը. բայց տակաւ հասաւ խաւարչուտ գիշերը եւ մեր գիրքը չափազանց վտանգաւոր եղաւ: Կը գտնուէինք անտառի մը մէջ, զոր մարդու կացինն երբեք անօրացուցած չէ, եւ այս այնչափ աւելի վտանգաւոր էր՝ որչափ ծառոց դաղարթանց սօսափիւնը չէր թողուր որ լսէինք մեղմէ վար խորունկէն դէպ ի ծով սուրացող գետը: Խաւար մը կը պատէր մեր չորս դին, ուր եւ ո՛չ մերձակայ առարկայ մը ճանչնալ կրնայինք[117]. եւ ճամբան ալ ա՛յն-

---

[116] Անդ, էջ 105—106:

[117] Քոխ ուրիշ տեղեր ալ կողմանցս գիշերուան սաստիկ մթութիւնը կը յիշէ: Այսպէս՝ ձեմիլէ ի ձեմիլ-բերդ երթալու ատենն ալ կ՚ըսէ. Զարհուրելի մթութիւն մը կը պատէր մեր չորս դին, այնպէս որ հազիւ անորոշ գծերով կրնայինք տեսնել առջեւէն դացողը» եւն (էջ 20): — Առ հասարակ ծանօթ են մեր հայրենեաց գիշերները, որոնք աւելի մութ են այնու որ ո՛չ եւրոպական հիւսիսակողմանց պէս ո՛չ հիւսիսայգ ունէին եւ ո՛չ երկար մթնշաղ: Պայծառ օդով հիանալի է, թողլով իսկ լուսնկան, աստեղաց զմայլեցուցիչ փայլփլիւնը. բայց դոյզն ամպամած մը կամ թեթեւ մշուշ մը շատ աւելի սաստիկ խաւարային կ՚ընէ գիշերները: Այս տարբերութիւնը զգալի է այն իսկ մեզի համար, երբ երկար յԵւրոպա ապրելէ ետքը՝ կ՚այցելենք մեր հայրենիքը:

պէս հարթուած չէր որ անկարելի ըլլար վրիպիլ: Թէեւ անկարելի էր ձորէս դուրս ելլել, բայց շատ դիւրութեամբ կրնայինք իյնալ այն բազմաթիւ վիհերու մէջ, որոնք ճամբան կը կտրէին եւ որոնք յաճախ քանի մը գերաններով ծածկուած էին»: Բայց վերջապէս կը հասնին Արտա (Artä) ամարանոցը որ Խալայի կը վերաբերէր եւ Խալայէ 2½ ժամ հեռու էր, եւ «մասամբ նոր շինուած էր եւ տակաւին քանի մը գործաւորներ կային»:

Մնացեալը մեզի համար կարեւոր չէ, մանաւանդ որ Խալայի մօտերը ձորը կը կորսնցնէ, ինչպէս կը նկարագրէ Քոխ, իր այս վերին աստիճանի նկարագեղ երեւոյթը, «եւ անտառը դադրեցաւ ընդհանրապէս թաւախիտ անտառ մ՚ըլլալէ»: Բայց կէտ մը պէտք ենք նշանակել որ կը ցուցնէ թէ գոնէ Հեթմոյ օրերէ ետքն ո՛րչափ զարգացած էր երկիրս հաղորդակցութեան միջոցներու մասին: Եթէ Քոխ արդէն վերը այն թաւ անտառին մէջ ալ կ՚ակնարկէր «հարթուած ճամբայ» եւ վհերու անցանելի ըլլալը՝ վրան ձգուած գերաններով, վարն իրերը շատ աւելի լաւագոյն վիճակի մէջ կը նկարագրէ: Այս մասին կը գրէ Քոխ[118]: Ժամէ մը հասանք խալայ-ջրոյ մէկ օժանդակին, որ ուղղակի Քաջքարէ կու գայ եւ անոր համար Քաջքար-ջուր կը կոչուի: Քարաշէն, բարձր

[118] Անդ, էջ 106—107:

մէկ կամարով կամուրջէ *մը միւս կողմն անցանք: Այժմ արեւելքի մէջ կամուրջները ցանցառ են. եւ եթէ* հնագոյն եւ լաւագոյն ժամանակ մ'իւր (*արդի*) սերնդոց համար հոգացած չըլլար, *շատ մը գաւառներու մէջ հաղորդակցութիւնը շատ աւելի յաճախ ընդհատուած պիտի ըլլար քան որ այժմս է: Այս մասին* գովելի զարտուղութիւն *մը կը կազմեն երկու լեռնաշխարհներս, Համշէն եւ Լազիստան, որովհետեւ տեղ մը փոփոխ հաղորդակցութեան եւ հասարակաց օգտի համար ընդհանրապէս աւելի հոգացուած չէր քան հոս: Թէեւ ճամբաները չէին շինուած մեր կառաց ու դեսպակաց համար, բայց գոնէ այնչափ լայն էին որ երկու ձի հանդիպած կրնային քովէքով երթալ: Ամէն կողմ ճամբան հարթուած էր, եւ ոչ ցանցառ անգամ կարծր ժայռի մէջէն կտրուած բացուած: Զառիթափները ու կողերն այլեւայլ տեղեր պաշտպանուած էին ձողերով եւ փոքր վիհերն ու պատառուածքները ծածկուած մեծ ծառաքներով: Ուր այս կերպը կարելի չէր, շինուած էին* կամուրջներ *եւ* գրեթէ ամէն առուակի վրայ կամուրջ մը կար: *Կամուրջները սովորաբար շինուած էին այնպիսի բարձրութեամբ, որ անցանելի են նաեւ գետայարոյցքին եւ ամենակատաղի ալեաց ալ կը դիմանան: Ուր լաւ ջուր մ'իբր ակնաղբիւր երկրէն կը բղխէ, կազմուած է աղբիւր մը եւ դուռ մը դրուած: Բարի մարդիկ*

մինչեւ անգամ փայտեայ թաս մը դրած էին հոն, եւ խմողը՝ թասը կը լեցնէր յաջորդ ուղեւորին համար» եւն: — Քոխ այս եւ նման երեւոյթներու լաւ մեկնութիւնը կու տայ, տեղականն՝ այս կամ այն ձեւի տակ՝ վարչութիւնը, որ տակաւին կար, եւ մինչդեռ ուղղակի օսմանեան պաշտօնէից ներքեւ եղած տեղերը տարբեր երեւոյթ կը ցուցնեն[119]:

Խալայէ վար նորէն նկարչագեղ կը դառնայ ձորը[120]: Անցողակի նշանակենք որ ըստ

---

119 Քոխ, էջ 116. «Եթէ արդէն Բերդագրակ եւ Համշէն արեւելից համար շատ մեծագոյն բարեկեցութիւն մ'ունին, նոյնն աւելի կ'արժէ Լազիստանի համար: Այս ուրախալի վիճակին պատճառը յայնմ կը տեսնեմ որ բաց ի սեպհական, իրենց իշխանութեան մէջ ընդհանրապէս սահմանափակուած ձորապետներէ («տէրէպէյի») ուրիշ օսմ. պաշտօնեայք չկան ամբողջ երկրին մէջ: Յանուցիր սփռուած տները հեռուէն իսկ կը ցուցնեն թէ անոնց բնակիչք չեն ապրիր այն թշուառութեան եւ աղքատութեան մէջ, որու մէջ կ'ապրին իրենց հաւատակիցք. եւ մանաւանդ քրիստոնեայք, որոնք ուղղակի տաճկ. վարչութեան ներքեւ են» եւն եւն: — Հետաքրքրական են տանց շինութիւններու, մշակութեան եւն մասին լանձները, բայց ատոնք մեր ծրագրէն դուրս են. «Նաեւ կանայք հոս ա'յնպէս մեկուսացած չեն երեւար, եւ ոչ ալ այնպէս ծածկուած օտարներու առջեւ, ինչպէս արեւելից միւս կողմերը, եւն:

120 Քոխ, էջ 108—110. Կալա կամ Խալա, կ'ըսէ, Համշէնի կը վերաբերի, «եւ կը բաղկանայ ինչպէս Պոնտական լերանց ծովակողման գրեթէ ամէն գիւղերը անտառի մէջ ցրուած բազմաթիւ տներէ»: — (Գիւղին տարածութիւնը քանի մը ժամ տեւելու է:

Քոխի Խալայ-Ջրոյ եւ Ցորթունայի միանալէն քիչ յառաջ «գեղեցիկ քարաշէն կամուրջ մ'այս (վերջին) ջրէն կ'անցնէ» եւ թէ «Ֆոր-թունա այս անունը կը դրէ սովորաբար Խալայ-Ջրոյ միանալէն ետքը, մինչ առկէ վերը սովորաբար կը կոչուի Մեծաձորի-ջուր («Բէօյիւք-դերէ-սու»)։ Ասոր վրայ երեք ժամ աւելի վերը, կ'իյնայ այս աշխարհիս հին իշխանաց նախնական բուն դղեակը, որ՝ երկրին պէս՝ Համշէն անունը կը կրէ[121]։ Քոխ ըստ այսմ Համշէնի գետը կը համարի բուն Ցորթունան կամ անոր գլխաւոր ջուրը (հմմտ. § 10)։ Այնուհետեւ Վիժայի, Մարմանատի աւերակաց եւ՝ Համշէնի վեր-ջին գիւղի» ծինդիտի վրայէ իջած է Աթինա[122]։

---

Թէեւ անոր գլխաւոր մասը կ'իյնայ ուրիշ՝ աննշան օժանդակի մը, Դաշեհ ձորի (Dascheh-Dereh) ջրոյ գետախառնունքի վրայ, բայց Խալա-Ջրոյ անդին եղած բարձանց վրայ տները դէպի շատ վեր կը տարա-ծուէին»։ Երկու քարաշէն կամուրջ կար, մին՝ Խալա-ջրոյ եւ միւսը Դաշեձորի վրայ. առաջինը Թուրքերէն արձանագիր մ'ունէր, որուն համեմատ «Tuna Nar Մուսթաֆա աղա, որդի Մահմետի, շինած է այս Tulidscha կամուրջը 1212 տարին» (Հիճրայի = 1796/97») — Խալայէ ետքը ձորը շատ կը նեղնայ, լի սեպ ժայռորմերով, կրճերով ու ջրվէժներով, եւ ձորը չափազանց օձապտոյտ, եւն։

121 Անդ, էջ 110—111։

122 Քոխ, էջ 115—118։ Ուստի Քոխ չէ շարու-նակած ճամբան գետոյն ընթացքին հետեւելով. այլ Վիժա գիւղէ ելած է «բարձունքն այն լեռնաբազկին, որ կը տարածուի Ցորթունայի եւ Սուխա-ձորի միջեւ

§ 16. Այս է ուրեմն Հեթմոյ եւ գրուցաց խաւար ու կուրկուր աշխարհը։ Զարմանալի եղանակաւ ճիշդ Քոխի այս նկարագրած ձորն է Բալովիտ[123], որուն արդէն անունը (հին՝ բալ «մշուշ, մէգ») գրուցացս ալ յարմար էր։ Բայց արդ այս գրոյցը Համշէնի մասին՝ Հեթմոյ ալ սեպհական չ'երեւար. այլ ըստ երեւոյթին այն միջոցին տարածուած էր, իմէ յառաջ ու ետքը։ Հեթմոյ հրատարակիչը (Ք. Կոհլէր) կը նշանակէ այլեւայլ հեղինակներ, որ խօսած ըլլան «Hampasi կամ Hamsen» «խաւարի երկրի» մասին,

որուն վերջնոյս բերանը կ'իյնայ Աթինա»։ Լեռնադիծս յետոյ կը բաժնուի երկու թեւի, որոնց միջէն ան-նշան առուակ մը դէպ ի ծով կ'երթայ։ Ասոր վրայ մեզմէ շատ վարը կ'իյնան Մսրմանատի ո՛չ աննշան աւերակները, որ յառաջ ձորապետի մը բնակավայրն էր եւ որ Համշէնու երկրին երրորդ առաջնորդ («ա՞յան») է, «Պատմած են թէ վերը յիշուած (§ 3) Ճեմիլի ձորապետն՝ «Գոմրուսարովայ» աղան՝ քանի մը տարի յառաջ կանոնաւոր կռուով իւր թշնամւոյն այս ամրոցն աւերած էր։ — Շարունակելով ճամբան լեռնադծին աջակողման թեւի վրայ, կը հանդիպի Ճինգիդ (Tschingid) «Համշէնի վերջին գիւղը»։ «Կէս ժամէ ետքը վտտահամբաւ Լազիստանի մէջ կը գտնուէինք, որ նեղ՝ հազիւ 2—3 ժամ լայնութեամբ՝ ծովեզերքէ կը բաղկանայ»։ Կ'իջնայ «Սուխա-ձորի մէկ կողմնական ձորն, որ Սկապա-ձոր կը կոչուի»։ Առաջին գիւղն էր Lamghro անուն, ուսկից 3 ժամէ կը հասնի Աթինա։

[123] Թէ այս ձորն է Բալովիտ, յայտնի կը տեսնուի Ինճիճեանի գրածէն (էջ 397) որ նոյնն իբր ուրոյն վիճակի պէս դրեր է Խեւակէ ալ (զոր Համշէնի մաս կը դնէ) ետքը. «Բալովիտ. հովիտ անտառախիտ

Նախ Նշանաւոր վենետացի ուղեւորն Մարկոյ Պօլոյ: Ասոր հռչակաւոր ուղեգրութիւնը գրուած է Հեթմոյ գործէն քիչ մը յառաջ (1298ին). եւ կը խօսի իրօք «խաւարի երկրի» մը մասին: Բայց՝ դոնէ մեր ձեռքն եղած հրատարակութեանն համեմատ կարծենք[124] թէ հոս Համշէնի մասին չէ խօսքը եւ չի կրնար ըլլալ: Մարկոյ Պօլոյ կը նկարագրէ «գաւառ մը, որ կը կոչուի խաւար (la Oscurité), որովհետեւ ամէն ժամանակ հոն խաւար է, ո՛չ արեւ կայ, ո՛չ լուսին եւ ո՛չ աստղ, այլ ամէն ատեն ա՛յնպէս մութ է՝ ինչպէս մեր քով կէս գիշերը»: Աշխարհին «մարդիկ տէր (իշխան) չունին. կ'ապրին

---

Ն երէովք եւ գազանօք յորում գտանի վայրի այծ, որ աճէ մինչ ի չափ որթու. յամին երիցս փոխէ զմորթ իւր, ի ձմեռայնի ի սեաւ գոյն, ի գարնան ի կարմիր եւ յաշնան ի սեաւ. գտանի ի նմա եւ արջ, է սա Հայլա խալացոց. անցանէ ի Բաւոլխա ջուր յանուն իւր անուանեալ, որ խառնի ի Համշէնի գետն»:

[124] «Recueil» etc. p. XXIX, 129 եւ 269. Հմմտ. նաեւ էջ 981:

Le livre de *Marco Polo* cfr. ed. *G. Panthier* (Paris 1865), II, p. 752 (cap. CCXVII). — Ճիշդ այս հրատարակութեանն եւ այս տեղը կը նշանակէ Ք. Կոհլէր ալ, յաւելով դարձեալ հրատարակութեան՝ ed. *Yules*, liv. IV, c. XXI, tom. II, p. 483—486.

Կը յիշուի հրատարակութիւնս Voyages cfr. publiés par *C. Defrémery* et *R. Sanguinetti*, II (Paris 1854), p. 399—401.

Ի վերջոյ կը նշանակէ իբր Համշէնի մասին խօսող նաեւ գործս, *Mandeville*, ed. J. O. Halliwell, London 1839, cap. XXVIII, p. 280 ff.

*անասնոց պէս․ ուրիշ իշխանի տակ ալ չեն»։ Բայց արդ այս երկիրը Թաթարաց աշխարհի սահմանակից էր, ուր կը մտնէին մատակ ձիերով, մտրուկները դուրս թողլով, որպէս զի դարձին մատակները ճամբան գտնեն դէպ ի մտրուկները։ Աշխարհին մարդիկ «ամէնն ալ որսորդ են», եւ «ամենամեծ քանակութեամբ» մորթեղէն ու կաշի ունին եւ կը փոխանակեն, որոնց այլեւայլ տեսակները կը յիշուին (սամոյր եւն)։ Եւ վերջապէս՝ միւս կողմէն սահմանակից էր* (Rosée *եւ* Rosie)։ *Այս՝ ուրեմն բոլորովին հիւսիսային երկիր մըն է, ուր մութն ալ՝ ըստ եղանակաց՝ մեկնուելու պէտք չունի։*

*Կը ցուցինք որ առձեռն չունինք միւս ուղեգրութիւնը, այս անգամ Իբն Բատուտահի, որ Հեթմոյ գործէն ետքը գրուած է։ Ափրիկեցի այս ուղեւորս, որչափ մեզի ծանօթ է* 1333*ին ուղեւորած է՝ Ասորիքէ եւ կտրելով Փոքր Ասիան այլեւայլ ուղղութեամբ, հասած է Սինոպ, եւ անկէ նաւով անցած Խրիմ։ Արդ աստ* «խաւար երկիրը» *իրօք Համշէնն ըլլալու է, ուր սակայն մտած չէ՝ ճամբու դժուարութեանց պատճառաւ։ Այսու հանդերձ՝ կարծենք՝ զրոյց մ'աւելի կամ պակաս Համշէնի մասին, աւելի բան մը չ'աւելցներ մեր գիտութեան համար․ եւ անոր համար կը թողունք այս ամէնը։*

**§ 17.** Սեւ Գետոյ եւ Համշէնի բռնի մահմետականացումն։ — *Եթէ Սեւ Գետի մասին ձեռագիր վկայութիւն չունինք (բայց հմմտ․*

վարը «Ս. Թորոս»), Համշէնի մասին տեսանք ձեռագիր մինչեւ 1630 ալ: Արդէն «ընդհանրապէս քրիստոնեայ էին այս երկու գաւառաց ցեղակից մանաւանդ թէ նոյն ժողովուրդը մինչեւ ԺԸ. դարու սկիզբները: Այս ժողովուրդը միւս հայ գաւառներէն կտրուած էր այն բարձր լեռնագծով, որ տարւոյն մեծ մասն անանցանելի է, եւ կրնայ դուշակուիլ թէ կրօնական խնամքն ալ շատ թերութիւններ ունենալու էր՝ այս կղզիացման պատճառաւ ալ: Թէպէտ եւ ի Համշէն, նոյն իսկ վանքին դրութեամբ, լաւագոյն պայմաններ ըլլալու էին, տխուր եղած կ'երեւան ի Սեւ Գետ. ի Սեւ Գետ եւ շրջակայք ալ կը յիշուին վանքեր, բայց թերեւս շատոնց ամայի էին. իսկ Հայկունի կ'աւանդէ թէ իրր հարիւր գիւղերու մէջ հազիւ 4—5 քահանայ կար, 36 գիւղի՝ մէկ քահանայ[125]: Անդին

[125] ԱՐՐՏ, 1895, էջ 240 եւն. Հայկունի ամբողջ Սեւ–Գետի եւ Համշէնի մէջ 4—5 քահանայ եղած կ'ըսէ, «առաջնորդներից, նոյն իսկ կաթողիկոսներից մոռացուած, քահանայից զրկուած, ալեկոծեալ» ժողովուրդ մը: Հմմտ. 1630 տարւոյ ձեռագրին յիշատակարանը: — Տրդատ եպ. Պալեան («Տրապիզոնի հայ վանքերը»՝ ի «Բիւզանդիոն» 1901, թիւ 1386, հմմտ. թիւ 1027, 1103 եւն). կը յիշէ «Սրբոցն Վարդանանց վանք. Տրապիզոնի Սիւրմենէ գիւղին մէջ հին աւուրց վանք մը» եւ «Ս(ահակ) վ. վանք, Տրապիզոնի Սիւրմենէ անուն գիւղին մէջ, հինցած, փակեալ եւ ամայի»: — Դարձեալ «Ս. Խաչ վանք Ասամուտի մէջ»: Այս՝ խնդիր չկայ՝ է Արսումատ, «մատուրից մէկ ժամ հարաւ, որու գաղաթն եւս ուխտատեղի կայ, ուր թաղուած է, կ'ասեն Սեւ Գետացիք, մի սուրբ

ծովեզերքն, որուն հետ գլխաւոր յարաբերութիւն ունէին երկիրները, փոթորիկը պատրաստ էր արդէն: Վերնաձորերը Հայ տարրն որջացած էր դժուարամուտ ձորերու մէջ. բայց ծովեզերքը տիրող տարրն էր յոյն (կամ Նախկին Լազ յունացած) Տրապիզոնէ մինչեւ Ռիզէի մօտերը, անկէ անդին՝ Լազեր եւ աւելի անդին՝ Վրացի: Արդ այս ժողովուրդը շատոնց մահմետականացած էր, Օսմանեանց Տրապիզոնի իշխանութեան վերջ տալէն ետքը (1461էն սկսեալ): Ամէնէն կատաղի եւ մոլեռանդ, հնուց ալ իբր «գող եւ աւազակ» նկարագրուած Սիւրմէնեցիք էին, ինքնին դարձած յոյնէ եւ մասամբ միայն հայէ, որոնք՝ ինչպէս նաեւ Օֆեցի աւազակները ցամաքի ամէն հաղորդակցութիւն անկարելի կ՚ընէին: Իսկ ծովու ճամբան ալ խեղճ ու կրակ նաւակներով էր, մինչեւ Քոլխի այցելած օրերը[126]: Վերջիններս կամ

մարդու մատը» — (Հայկունի, անդ, էջ 294): — Կան ուրիշ ուխտատեղիք ալ:

[126] Հմմտ. Ինճիճեան (էջ 396) Համշէնի համար. «միօրեայ հեռի է սա ի Խոտրջրոյ, հինգօրեայ կամ ութօրեայ ի Դրապզունոյ ընդ ծով գնալով. զի ընդ ցամաք չէ ճանապարհ առ ահի աւազակաց Օփայ եւ Սիւրմէնէի»: — Օֆեցիք Ինճիճեանի ատեն ալ «գրեթէ ինքնագլուխ են եւ ապստամբ ի փաշայէն Դրապզունոյ, աւազակեն զանցաւորս, եւ ի ծածուկ հատանեն նաեւ դրամս արծաթիս» եւն (էջ 393—94). — Սիւրմենեցիք՝ «եւ յոյնք եւ տաճիկք, որք ապստամբք են եւ աւազակօղ» եւն (էջ 393): — Հայկունւոյ նկարագիրը՝ ԱՐՐՏ, էջ 240: — Ինչպէս Բժշկեանի ամբողջ գործը, նոյնպէս Քոլխի ծովեզերեայ մասին վերա-

Օֆի բնակիչք յոյն էին նոյնպէս, եւ յունախօս նաեւ այսօր, բայց — քանի որ — նոյն ժամանակի հաղորդակցութեանց դժուարութեան պատճառաւ յոյն եկեղեցին ալ կարող չեղաւ հոն վառ պահել քրիստոնէական ոգին, — մահմետականալէ ետքը չափազանց մոլեռանդ քարոզիչներ դարձած էին։ Եթէ Հայկունի կ'ըսէ թէ ամէն Օֆեցի «մեծ ու փոքր մօլլա են, ուրիշ գործ չունին, այլեւայլ գիւղեր կը տարածուին, կրօնական արարողութիւն կը կատարեն, եւ կը քարոզեն հեռուներն ալ, թէեւ չէնք շնորհք թուրքերէն ալ խօսիլ չեն կրնար[127], այս «մօլլայութիւնն» արդէն բաւական հին է[128]։ Անշուշտ առանց ազդեցութեան չէ մնացած — գոնէ բռնի մահմետականացման աւելի արիւնալին կերպարանք տուած — երկու գաւառներուս (Օֆ, Համշէն եւն) բնակչաց նախաւոր կամ ցեղական ատելութիւնը,

---

բերեալն այսպիսի նաւակով ճամբորդութեան նկարագրութիւն է։ Քոխ՝ զՍիւրմենէ Տրապիզոնէ 8 ժամ հեռու կ'ըսէ, թէեւ ինքը 5 ժամէ հասեր էր (էջ 2)· անկէ՝ 4 ժամէ Օֆ հասած, Սիւրմէնէէ մինչեւ Ռիզէ՝ 10—11 ժամ» (էջ 6)» եւն։

[127] Հայկունի, անդ, էջ 240, 242, 296—97։

[128] Ինճիճեան, էջ 393 կ'ըսէ թէ շատ Օֆեցիք «սփռեալ կան աստ եւ անդ, մանաւանդ ի Կ. Պ. ուր շինօղք եւ վաճառօղք չուանաց եւ առասանաց ըստ մեծի մասին են Օֆցիք, նաեւ բազումք յիւլէմայից կոստանդնուպօլսոյ, որոց ուսեալ ի մեարէսէս Բիւզանդիոյ յառաջանան ի մօնլայութիւն եւ յայլ աստի–

*ինչպէս կը համարի Հայկունի: Յունական եւ հայ ցեղերու այս հին անհամակրութիւնը կը շարունակուի այսօր ալ, երբ երկու դարէ ի վեր արդէն կրօնակից եղած են երկուքն ալ, — թէեւ ոչ լեզուակից, —: «Թուրքացած յոյները Համշէնցուոց «սկասա Արմէն» (բիրտ, կոշտ Հայ), իսկ հայ–մահմետականք յոյն–մահմետականաց «Զարոխ ուստող Հոռոմներ» կ'ասեն եւ միմեանց աղջիկ չեն տար եւ առներ»: Յիշեցինք հայ Աշանցւոց եւ յոյն Կօշանցւոց նման յարաբերութիւնն իրարու հետ, եւ ընդհանրապէս վրացի, լազ ու յոյն մահմետականք «հայթուրքերու աղջիկ չեն տար»: Ասոնց մէջ ցեղական եւ նկարագրի տարբերութիւնը մեծ դեր կը խաղայ, եւ բնական է թէ Համշէնցին եւ Օֆեցին երկու շատ տարբեր նկարագիրներ կը ներկայացնեն*[129]*:*

*Այսպիսի միջավայրի մէջ նկատենք այն ոգին, որ ի սկզբանէ տիրող էր ամէն կողմ, ուր մահմետական կրօնքը իշխող եւ պետական էր: Եթէ չունենայինք մեր պատմագիրները եւ անվերջ իսկ յիշատակագիրներն՝ իրենց անընդհատ նկարագրութեամբ այն*

---

129 Հայկունի, *անդ, էջ* 240, *անդ, էջ* 243, 296· *ի վերջոյ կ'ըսէ «Հայ–թուրքն ունի վեհանձն պարզ բնութիւն, չի գիտեր խարդախութիւն, քաջ է· ծաղուն ի թիւ առած են Օֆցիները, որ․ք քսու, խարդախ եւ անխելք են, նաեւ աւելի մինչեւ ամէն իսկ տեղ»· եւ թէ «Թուրքացած հայեր աւելի քաջ են քան վրացի, լազ եւ յոյն, որք հայթուրքերու աղջիկ չեն տար», եւն:*

վկաները, որոնց ենթակայ էին, կը բաւէր թերթել միայն այն հաւաքումը՝ զոր ըրած է Հր. Աճառեան, «Հայոց Նոր վկաները» անուամբ[130]: Տեղական նպաստաւոր պարագայից մէջ սովորաբար վճռուած էր քրիստոնեայ գիւղի մը կամ գաւառի բախտը, երբ որեւէ ազդեցիկ մոլեռանդ աւազ մ՚որոշէր «հաւատքի բերել» այն «անհաւատները»: Ոճը կրնար քիչ շատ տարբերիլ. բայց ԺԸ. դարուն «ենիչարի»ներու եւ անոնց պետերու, այլեւայլ ձորապետներու եւ նմանեաց սանձարձակութեան շրջանին որեւէ ընդդիմութիւն կը դառնար այն ոճոյ մահմեդականացման, որուն ենթարկուած են գաւառները, մանաւանդ Սեւ Գետ:

§ 18. Այս վերջնոյս մահմեդականացումն եղած է սաստիկ արխնալից անխնայ կոտորածով: Նոյնպիսի իրերը պատմած է՝ ի միջի այլոց Քոխ՝ ուրիշ տեղեր եւ կողմեր ալ[131]: Սեւ Գետոյ (եւ Համշէնի) այս կոտորածն ու բռնի մահմեդականացումն ընդարձակ պատմած է Հայկունի[132]: Այս պատմութեան գլխաւոր դրուագն ըլլալով Թորոսի

---

130 «Հայոց նոր վկաները» (1155—1843), հրտ. Յ. Մանանդեան եւ Հր. Աճառեան. Էջմ. 1903, էջք ԻԴ + 800 («գիտական հրատարակութիւն», համեմատութեամբք Ձեռագրաց եւն. կայ պարզ հրատարակութիւնն ալ):

131 Հմմտ. Քոխ, էջ 55, 57—58, 75, 167 եւն, այլեւայլ կէտեր յիշելու առիթ կ՚ըլլայ:

132 ԱՐՐՏ, 1895, էջ 240—42:

գիւղի Տէր Կարապետ քահանայի նահատակութիւնը, էական մասը դրած է Հր. Աճառեան ալ իր «Նոր վկաներ»ու շարքին մէջ, աւելի հնագոյն վկայաբանութիւն մը ցայժմ պակսելով, որ անշուշտ գոյութիւն ունէր[133]: Դէպքը կը դնէ Հայկունի 1708—1710 տարիները:

Սեւ Գետի բռնի դարձի եւ կոտորածի գլխաւոր դերակատարն է Սիւրմէնէի Ղուսուֆ-օղլի մոլլա Մէհմէտ, այն ժամանակի Սիւրմէնէի շրջանին չափազանց ազդեցիկ եւ մոլեռանդ անձ մը: Ինքն եւ իր հետեւողք իբր տաս տարի քարոզած են ի Սեւ Գետ, եւ աննշան ընդունելութիւն գտած: Այս՝ աւելի գրգռած է, մինչեւ այլեւայլ անգամ զինեալ ասպատակութեամբ բռնադատել փորձուած է: Ընդդիմութեան բախելով եւ ընդդիմութեան գլուխ համարելով Թորոսլի գիւղի Տէր Կարապետ քահանայն, որ մեծ յարգ կը վայելէր, աւելի մեծ զինեալ արշաւախումբ մը կազմուած է այն գիւղին դէմ ի վերջոյ նոյն իսկ Տրապիզոնի վարչութեան օժանդակութեամբ, պատրուակելով

133 «Նոր վկաներ», էջ 702—709: Ժամանակակից գրութիւն մը պէտք է որ ըլլայ, քանի որ քահանայի որդին Կալաֆկայ գիւղ փախած «քահանայ ձեռնադրուեցաւ իր հօր անունով»: Այդ գեղն ապաստանած էին «Տէր Կարապետին սերունդից ազատուողներն». — Եւ այդ «տեղ եւս ամփոփեցին ի հող նորա (Տէր Կարապետ նահատակի) յօշոտուած մարմնոյ մէկ մասը, միւս մասն եւս՝ Բաբերդի կողմն գնացողներն իրենց հետ տարած էին»:

թէ խալամութեան դարձածներն իրենց հաւատքը կ'ուրանան ։ Ցանկարծակի յարձակմամբ եւ եկեղեցւոյ մէջ իսկ աւագ շաբաթ օրը նահատակելով քահանան, նշան տրուած է կոտորածին ամէն անոնց, որոնք կը դանային ընդգրկել նոր կրօնքը ։ Կոտորածն եղած է չափազանց սաստիկ ամէն կողմ . Հազարաւորներ խողխողուած են . Հազարաւորներ՝ միայն փրկելու համար հաւատքի հետ կեանքն ալ՝ թողած ամէն բան, ապաստանած են այն երկրին անկոխ լեռներն եւ անանցանելի անտառները . եւ այնուհետեւ յոյս չըլլալով դարձի՝ դիմած են մօտ ու հեռաւոր դաւառներ[134] ։ Մնացեալք բռնադատուած են թլփատուիլ, նախ իբր 500 երեւելիներ նոյն Թորոսի գիւղը հաւաքելով, — գիւղիս անունն անշուշտ Ս. Թորոսի նուիրեալ եկեղեցւոյ անունէն մնացած է եւ թերեւս այս է 1642ի յիշուածը[135] — յետոյ

[134] Հայկունի, անդ. էջ 241—242 ուղղակի անկախ կը նկարագրէ Սեւ Գետոյ այս անտառային մասը· «եթէ, կ'ըսէ, դուք այս անտառները տեսած լինէիք՝ պիտի երեւակայէիք որ սորա մէջէն անցնողներից մէկն եւս չպիտի ազատուէր» եւն, — «խիտ ու փշալից անտառներու մէջէն, ուր ոչ թէ մարդու ոտք, այլ գազանաց անգամ ոտք կոխած չէր», եւն ։

[135] Եկեղեցւոյ անունէն առեալ գիւղի անուանք ցանցառ չեն մեր մէջ, ինչպէս յիշեցինք վերը «Ս. Գէորգ» գիւղ (§ 8) ։ «Ս. Թորոս» վանքեր բազմաթիւ են» (օրինակ՝ Բաբերդի մօտ Խաղձոնենաց Ս. Թորոս վանքը, ուր ձեռագիրներ ալ գրուած են), նոյնպէս կան այլեւայլ գիւղեր նոյն անուամբ ։ Սանա-

մխսմները: Այս ոճով կտտրած ու բռնադա-տութիւն կրած են, — բնականապէս չա-տերը մահմետականացած են այն միջոցին միայն առ երես, — իբր 100ի չափ գիւղեր, ընդարձակ մտօք առնելով այն ամէն կող-մերն ուր Սեւ Գետացիք կը բնակէին: Մինչեւ գոնէ 1700—1710 քրիստոնեայ հայ ընդարձակ գաւառն եղած էր ասով հայ—մահ-մետական, եւ հետզհետէ զուտ մահմետական ըլլալու պայմանները ստեղծուած էին: Աւելի մանրամասնութեանց պէտք չկայ հոս:

---

սարեան Վարժարանի թիւ 12 Ճարակնոցը (Հր· Աճա-ռեան, Ցուցակ, ՁՁ· Սանասարեան Վարժարանի, Վիեննա 1910, էջ 14) բուն գրուած է ի Մաշկեւոր ՁՀԲ (= 1322) թուին, բայց յետոյ ունեցած է այլեւայլ ստացիչներ, որոնք մէջ՝ «վերջին Նորոդոզս սոր(ա) մահդասի Գրդ· (= Գրիգոր) արեղայն, ի թվկն· ՌՂԱ (= 1642)· ի վանելումն Սբ· Թորոսցի Պր· Ղուկասին եւ խւր որդոյն տիրացու Լուսիկին, ամէն»: Այս «Սր· Թորոս»ի համար կ՚ըսուի թէ Բարերդի գիւղն է: Բայց յիշատակարանի մէջ որոշելու կռուան մը չկայ· եւ կրնայ ըլլալ Սեւ Գետի «Թորոս»լի գիւղն ալ: — Գիւղիս անունը Քոխ (էջ 5) կը յիշէ Dorosli ձեւով, բայց Կիպերտի նոր քարտէսը՝ Toroslu կը գրէ: — Նշանակենք հետաքրքրական պարագայս թէ ըստ Ս· Հայկունւոյ (ԱՐՐՏ, 1905, էջ 1040, կարեւոր յօ-դուածխս մէջ «Տրապիզոնի հայ գիղացու կեանքը»՝ անդ, էջ 737 եւն)· Տրապիզոնի գիւղերու Համշէնցին (Թորոսան» կը կոչէ Թղի մէկ տեսակը, (ուրիշ մը՝ «պաթլիճան»), որ «կլոր ու համեղ է» «ընկոյզէն քիչ մեծ», որուն «կեղեւն եւս քաղցր է»· իսկ «պաթլի-ճան»ը՝ խոշոր է ու երկայնաձեւ բայց «նոյնպէս հա-մեղ» եւն:

Համշէն ալ իբր մինչեւ 1700 տակաւին հայ քրիստոնեայ երկիր մըն էր : Հոս ալ անուշտ առանձնական դարձեր աւելի կանուխ ալ կրնան եղած ըլլալ. բայց զանգուածային դարձն այս միջոցին է : Բռնութիւն եղած է հոս ալ գլխաւոր պատճառը. բայց կ'երեւայ թէ գոնէ ա՛յնպէս սաստիկ արիւնալից չէ եղած հոս, ինչպէս իրենց եղբարց՝ Սեւ Գետացւոց քով : Գոնէ Ինճիճեան քիչ մ'այլազգ կը ներկայացնէ հոս իրերը, եւ տակաւին ԺԸ. դարու վերջերը բաւական թուով քրիստոնեաներ մնացած էին, գիւղերու չարք մը խառն բնակչութեամբ, բայց դրեթէ անհոլիւ : Ինճիճեանի այս տեղւոյ եւ առհասարակ միւս մասերու տեղեկութիւններն իբր ԺԸ. դարու կէսէն ետքը մինչեւ վերջի ժամանակին կը վերաբերին : Թէպէտ եւ կ'ըսուի թէ Ինճիճեան «բոլոր այն տեղեկութիւնները՝ զորս կ'աւանդէ, հաւաքած է ի Կ. Պոլիս, իւրաքանչիւր քաղաքաց բնակիչներէն, որոնք կ'երթեւեկէին հոն»[136]. կ'ենթադրենք թէ բաւական բաժին մ'ունենալու են նաեւ այն տեղեկագիրներն ու նամակներն, որոնք հասած էին ի Վենետիկ թէ՛ Մխիթարայ Աբբահօր առաջին իսկ աշակերտ

136 Այսպէս կ'ըսուի ի «Մխիթար» (Մխիթարեան Յոբելեան», Վենետիկ 1901), էջ 98, յօդուածիս մէջ՝ Հ. Ա. Ղազիկեան, «Համառօտ գրական պատմութիւն նշանաւոր Մխիթարեան Հարց» (անդ, էջ 71—155), ուր ուրոյն բաժին մ'ունի «Հ. Ղուկաս Ինճիճեան» (էջ 95—101) :

*վարդապետներէ, աւելի եւս յաջորդներէ, որոնք շրջած են ու գործած են մերձակայքը եւ արդէն տեղացի վարդապետներ ալ էին ոմանք (Տրապիզոն, Կարին, Կիմիւշխանէ Խոտորջուր եւ Արդուին եւն). եւ թէ՛ թղթակցող բարեկամներէ: Ինճիճեան այսպէս կը ներկայացնէ Համշէնի վիճակը*[137]. *«բնակիչք երկրին յառաջագոյն հայ էին. այլ ի յ*ելս ԺԷ. դարուն եւ ի սկիզբն ԺԸ. երորդին՝ առ հասարակ հանդերձ ամենայն շրջակայ գիւղօրէիւք դարձան ի տաճկութիւն սակս բռնութեան հարկապահանջութեան. *բայց* գտանին տակաւին ի նոսա եւ քրիստոնեայք, *յորոց գիւղօրէս* կանգուն *կան տակաւին* եկեղեցի(ք) *իւրեանց ի վաղուց մնացեալ, այլ* չունին երէց *ի հովուել. միայն քանի մի անգամ յամին գայ* առ նոսա երէց յԵվողիտ գեղջէ: *Իսկ տաճիկք* (*մահմետական Հայք*) խօսին ցայժմ հայերէն. *ի գործ ածեն ի գիւղօրէս ինչ անուանս կնքահայր եւ կնքամայր, պահեն պահս եւ զայլ ծէսս եւ օրէնս քրիստոնէական հաւատոց, յաճախեն յեկեղեցիս եւն. ոմանք* կէսկէս *են հաւատովք, արտաքուստ միայն ցուցանելով զտաճկութիւն. իւրաքանչիւրք տան ամի ամի խալէնճ որոյ գինն է անորոշ, սկսեալ ի 8 փարայէ մինչեւ ի 15 եւ ի 18 փարայ եւն»:*

*Ըստ երեւութին յառաջ մահմետականացած ըլլալու է* Պաշհամշէն, *որոյ «բնակիչք*

---

137 Ինճիճեան, *էջ* 396—97:

առհասարակ տաճիկք, ըստ մեծի մասին վաճառականք արջառոյ եւ մանաւանդ խաշանց եւ այծեաց», եւ ասոնք «ի ձմերայնի... ըստ մեծի մասին փոխադրեալ իջանեն առ ծովեզերբ Սեաւ Ծովու»: Այս պարագաներն ազդած ըլլալու են կանուխէն նաեւ լեզուի մասին. որովհետեւ մինչ Սեւ-Գետացիք եւ Համշէնցիք տակաւին բաւականաչափ պահած են հայ լեզուն — գոնէ խզական սեռը, — նաեւ հեռաւոր վայրեր պաղթելով ալ, ինչպէս քիչ մ'ետքը պիտի տեսնենք, Պաշհամշէնցւոց պաղթականք արդէն թրքախօս են:

Միւս գիւղերու մասին կը գրէ Ինճիճեան. «Գիւղօրէք Համշէնի են յետագայքս. Տափ, Տաճիկք կոչեն Զաբ-Կօլունա, Քօշտինց, Ամօգդա, Մեծմուն, Ժանըրնտնց, Մօլէվինց, Ուսկուրտա, Շնչիվա, Գուշիվա, Որդնենց, Մակրէվինց, Խապագ, Խալա, որ է վիճակ (տպ. «վիմակ»), յորում են զանազան գիւղօրէք Տանկաց, յորս յառաջագոյն գտանէին Հայք, այլ այժմ սպառեցան առ սակաւ դառնալով ի դէն այլազգեաց. նոյնպէս ո՛չ գտանին Հայք յերկուսին գիւղօրէսն կոչեցեալ Վերի Վիժա եւ Ներքին Վիժա. բայց ի վերոգրեալ գիւղօրէս մինչ ի Խալա բնակիչք են խառն՝ Հայ եւ տաճիկք»: — Ուստի բոլորովին մահմետականացած էր Պաշհամշէն, ամբողջ Խալայի վիճակը եւ Վիժէ, միւս գիւղերը — բաւական թուով — տակաւին էին խառն՝ մահմետականացած (անշուշտ

մեծամասնութեամբ) եւ քրիստոնեայ: Քահանայ չկար այս ամէն տեղերը, թէեւ եկեղեցիներն այս տեղերը տակաւին կանգուն էին, ուր Եղնովտէ երէց մ'երբեմն կ'այցելէր:

Ուրոյն գիրք մ'ունեցած կ'երեւայ Եղնովիտ, Ս. Խաչիկ վանքի ձեռագրաց մէջ այս յաճախ յիշուած մերձաւոր գիւղը: Զայս իբր ուրոյն բաժին մը՝ առանձին կը յիշէ Ինճիճեան նախընթացներէն ետքը, ըստ Համշէնի «գիւղօրէից շարքէն զատ, անկէ ետքը՝ ուրոյն վիճակներս Խեւակ եւ Բաղովիտ: Գիւղիս մասին կը գրէ. «Եվողիւտ կամ Եղիովիտ (= հին՝ Եղնովիտ). գիւղ ի գլուխ վիճակին Համշէնի, որոյ բնակիչք յառաջագոյն առհասարակ էին յազգէս Հայոց. այլ այժմ քստ կիսոյն դարձան ի տաճկութիւն. երկիր սորա բարեբեր»: Հոս կար երէց, որ կ'այցելէր միւս տեղերն ալ: Ըստ երեւութին տակաւին կար Ս. Խաչիկ վանքը, զոր չի յիշեր Ինճիճեան, բայց ըստ Բժշկեանի — որուն գրութիւնը քիչ մը միայն ետքն է, — «ուխտատեղի է Հայոց եւ այլազգեաց» են: Բնական ենթադրել թէ այժմ լիովին աւերակ պիտի ըլլայ (հմմտ. § 11):

Երկրի մ'այսպիսի բռնի եւ զանգուածային մահմետականացումն այլեւայլ վիճակ յառաջ կը բերէ, բնականապէս կրօնական քայլեր այն ըմբռնմամբ, որ հիմնական օրէնք էր եւ է տակաւին ամէն մահմետական վարչութեան: Կրօնական տեսակէտով կը ծագի

վիճակ մը, զոր «կէսկէս» կը կոչենք: Բնակչութեան տեսակէտով՝ յառաջ կու գայ մեծ գաղթականութիւն մնացեալ քրիստոնէից եւ անոնց՝ որ քրիստոնեայ կ'ուզէին մնալ: Սաստով՝ ըստ պարագայից՝ կրնայ հայ եւ քրիստոնեայ ժողովրդեան թիւն հասնիլ վիճակի մը, որ բնաջնջման գրեթէ հաւասարի: Եւ վերջապէս լեզուի տեսակէտով՝ ուշ կամ կանուխ՝ շատ տեղ յաջորդած է թրքացում: Այս կէտերէն մաս մը հոս տեսնել պէտք է՝ ի լուսաւորութիւն նաեւ յաջորդաց:

§ 19. Կէսկէսներ: — Երէկ քրիստոնեայ՝ այսօր բռնի մահմետական Հայը մէկ օրէ միւսը չէր կրնար բնականապէս՝ իւր բարքն ու սովորութիւնները, կրօնական ըմբռնումները, նաեւ աւելորդապաշտութիւնները փոխել: Բռնութիւնն առ երեսս միայն ընդգրկել կը ստիպէր նոր կրօնքը, ո՛չ՝ ներքին համոզմամբ: Արտաքուստ խիստ էր այնուհետեւ պետական-կրօնական օրէնքը, վերադարձ ի քրիստոնէութիւն՝ մահուան պատժոյ ենթակայ էր: Բայց բռնութեան անցնելէն ետքը, ճիշդ անկոխ երկիրներու մէջ, իւր տան մէջ կրնար ապրիլ՝ ինչպէս կ'ուզէր, երբ մատնութեան վտանգ չըլլար: Ակամայ խոկ միշտ պիտի յիշուէր բռնութիւնը, եւ այն ակամայ շղթան՝ պիտի յիշեցնէր եւ համեմատել տար հինն ու նորը: Նորը սիրելի չէր եւ չէր կրնար ըլլալ գոնէ առաջին սերնդեան: Արտաքուստ մահմետական, ներքուստ՝ քրիստոնէական ոգի,

լաւագոյն պարագայից մէջ՝ պահելով իսկ իրօք քրիստոնէութիւնը, ա՛յս վիճակն է, զոր սովորութիւն է կէսկէս կոչել: Այս վիճակը կրնայ տեւել շատ երկայն, երբ միջոց ըլլայ մերթ ընդ մերթ արծարծելու քրիստոնէական ոգին: Աննպաստ պարագայից մէջ սովորաբար արական սեռն՝ իր անընդհատ շփմամբ իսկ մահմետական տարրերաց հետ, ստիպուած միշտ մահմետական երեւնալու եւ իր այնպիսի գործելու (իբր գինուոր եւն), կ'ուծանայ ի վերջոյ, եւ նախ անտարբեր կ'ըլլայ յետոյ՝ — երբ անընդհատ քարոզութիւնք, մահմետական դպրոցներն աւելի խոր ազդեն — կը դառնայ նաեւ համոզեալ մահմետական: Շատ երկար կը տեւէ սակայն իգական սեռին քով այն կէսկէս վիճակը, եւ սոր նպաստաւոր է նոյն իսկ այն շղթայեալ վիճակն, որուն կ'ենթարկէ մահմետական կրօնքը կանացի դասակարգը: Այս՝ մանաւանդ այս երկիրներուն մէջ որ շփում չունի մահմետական օտար խաւի մը հետ, դիւրաւ չ'ազդուիր, եւ դարեր իսկ կը պահէ իր «ատէթ»ներն, ինչպէս կը բացատրէ՝ իւր կրօնական ըմբռնմաց հետ նաեւ ազգային սովորութիւնները:

Կէսկէս ունեցած ենք ոչ միայն մենք, այլ քիչ շատ ամէն ազգ արեւելքի մէջ, ո՛չ նուազ նաեւ Յոյնք՝ մանաւանդ այս Տրապիզոնի նահանգին մէջ: Կէսկէսութեան լաւագոյն օրինակն է Կուռմի շրջանի Յունաց ծանօթ բռնի մահմետականացումը, զոր կը նկա-

բաղրէ նաեւ Հայկունի: Այս գաւառակը՝ Սեւ Գետոյ հարաւ–արեւմուտքն, Տրապիզոնէ Կիմիւշխանէ երթալու ճամբու վրայ, Տէյիրմէնտէրէի ձախակողմը, նոյնպէս բռնութեամբ մահմետականացած էր գրեթէ նոյն ժամանակ, բաւական մեծ թուով ազգաբնակչութեամբ (Հայկունի 2—3000 տուն կ'ըսէ): Սակայն գաւառս գոնէ հեռու չէր կեդրոնէ եւ ունէր հաղորդակցութիւն: Յոյն եկեղեցին հոն ուրեմն կրցաւ վառ պահել քրիստոնէական հոգին. ծպտեալ քահանայք մտան ժողովրդեան մէջ, մինչեւ անգամ գետնափոր եկեղեցի շինուեցաւ: Ժողովուրդը ստիպուած էր մզկիթ երթալ, բայց ծածուկ կ'երթար նաեւ եկեղեցի, տղաք մկրտել կու տար եւն. միով բանիւ ներքուստ քրիստոնեայ ըլլալով՝ մինչեւ որ լաւագոյն օրերուն կրնային յայտարարել թէ քրիստոնեայ կ'ուզեն մնալ: Որչափ գիտենք սակայն տակաւին այսօր մեծ է նոյն նահանգին մէջ կէսկէսներու թիւը: Նոյն յոյն եկեղեցին անդին — այն ժամանակի հաղորդակցութեանց դժուարութեան շնորհիւ —, թողունք Սիւրմէնէն՝ եւ ո՛չ Օֆի ժողովուրդը կրցաւ կրկին մասամբ սիրաշահիլ: Հոս, տակաւին այսօր գրեթէ զուտ յունախօս ալ մնալով, շատոնց մոլեռանդ մահմետականութիւնը տիրող եղած եւ խորարմատ հաստատուած է:

Սեւ Գետ եւ Համշէն — հաղորդակցութեան տեսակէտով — շատ աւելի կղզիա–

ցեալ դիրք ունէին, եւ հայ եկեղեցւոյ վիճակն ինքնին այնպիսի հանգամանաց մէջ էր որ հազիւ կրնար պահպանել անաղարտ մնացած մասերը, թո՛ղ թէ մտածել ափրաշահելու կէսկէսները: Այսուհանդերձ առանձնական ջանքեր չեն պակսած: Ինչպէս Հայկունի կը հաղորդէ[138] Թորոսլի գիւղի Տէր Կարապետի որդին, որ փախչիլ կրցած էր եւ որուն սերունդն ապաւինած էր ի Կաֆկա, ուխտած էր որ իւր տնէն Տէր Կարապետ մը գտնուի, որ մտնէ Սեւ Գետ: «Այդ ուխտը պահուեցաւ մինչեւ 1820 թուականները. որ միշտ այդ տնից եղող Տէր Կարապետը կը գնար Սեւ Գետ, մինուոն կը բաժնէր, կարգ կը կատարէր, ծպտեալ տնէ տուն կը մտնէր, կը խրատէր» եւն: Այս 1820 տարիէն ետքը դադրեցաւ քահանայութիւնը, եւ Սեւ Գետացիք «20 տարւոյ չափ քահանայի երես չտեսան այնուհետեւ»: Ուրիշ ընտանիքէ (Տաւլաչեան) Տէր Կարապետ մը սկսաւ նոյնպէս ծպտեալ այցելել Սեւ Գետ, 1840է ի վեր: Բարեկամացած «Համշէնի բէկերու հետ, արտօնութիւն առաւ մեծ բէկից, որ տարին մի կամ երկու անգամ Համշէն գնայ, նոյն տեղ դեռ յայտնի 25—30 տան չափ Հայերուն կրօնական արարողութիւն կատարէ: Բէկը վեհանձն[139] էր,

---

[138] ԱՐՐՏ, 1895, էջ 242 եւն:

[139] Այս բէկին բերանը կը դրուի խօսքս, որ անհաւատալի չէ. «Թուրքութիւնը (= իրր՝ կրօնք ըմբռնուած) ինչ ի մը չէ, կ՚ասէր նա. ինցօ ըլնենք

կ'ըսուի, Հայոց խնամք կը տանէր, ձի կը յղէր Տէր Կարապետի, որ Համշէն մտաւ, եւ գտաւ հոն «Թուրքացած Հայերու մէջ դեռ քրիստոնէական ոգի, պառաւ կանանց բաժնեց մեռոն որ տանելով իրենց երեխայից քսեն[140]», եւն: Առանձնական այս ջանքերն ի հարկէ մեծ օգուտ մը չէին կրնար բերել:

Յամենայն դէպս գաւառները կէսկէս էին ո՛չ միայն Ինճիճեանի տեղեկութեանց օրով, ինչպէս յիշեցինք (§ 18)· ո՛չ միայն Բժշկեանի գրած ատեն[141], այլ նաեւ այնուհետեւ երկար ատեն: Հայկունւոյ այցելած ատենն ալ տակաւին բաւական վառ կ'երե-

էօր Թուրքացած ենք, ընկած ինք Աստուծու կրակին մէջ»· — իրական կէսկէսի ոգի:

140 Այս սովորութիւնը յամենայն դէպս խոր կ'ազդէր ժողովրդեան վրայ· Թրէձօրցի կամ Ծիմլակովցի Հայ-Թուրք կինը որ եկեղեցւոյ մը համար աւետարան գնելու ի նպաստ ոսկի մը կու տար, կը հառաչէր՝ «հին էրէցնին ինցօ պէտք էրէց էին, խալվութ (= գաղտնի) մեղիկի մեռոն բերէին կու· մեք էլ մեր տղոց քսէինք կու· իմ չիւյս մանչերուս երկուսին քսած ունիմ՝ ընոնք օնուշ հոմին կու (= հոտ ունին)· էնուր էօր քսած չունիմ՝ չոն (= չան) հոտ կու գայ»: Անդ. էջ 243:

141 Հմմտ. Բժշկեան, էջ 97· «Համշէնցիք կէսկէս են· շատը դարձած են· բայց քրիստոնէութեան սովորութիւնը կը պահեն, ժամոց եւ ողորմութիւնը պակաս չեն ըներ· գրեթէ ամէնքը Վարդավառին եւ Վերափոխման կ'երթան եկեղեցին մոմ կը վառեն եւ մատաղ կ'ընեն իրենց պապերուն հոգուն համար· բոլորը հայերէն կը խօսին»:

ւայ, գոնէ տեղ տեղ եւ գլխաւորաբար իրա-կան սեռին քով, քրիստոնէական ոգի մը, սէր մ'իրենց նախնական «հէյլի ատէթ» ին («Հայու սովորութեան»):

Սակայն պէտք է զանազանել բուն կրօնական կէսկէսութիւնը, միւս կէսկէսութենէ՝ զոր աւելի ազգային կրնանք ըսել: Արեւելքի մէջ կրօնքի փոփոխութիւնը կը պարունակէ նաեւ ազգի փոփոխութեան գաղափարը. ներշնչուած է այն՝ որոշ նպատակներով՝ դարերէ ի վեր: Ուր սակայն զանգուածային կ'ըլլայ դարձը եւ ուր — ինչպէս այս տեղեր — նպաստաւոր պայմաններ կան, եւ ժողովուրդն ամփոփ կը մնայ, լեզուին հետ նաեւ ազգային եւ նաեւ կրօնական սովորութեանց մաս մը կը մնայ[142]: Անոր հա-

---

[142] Հայկունի (Անդ էջ 243) կը յիշէ այլեւայլ նկարագրական դէպքեր եւ պարագաներ: Թորոսլի գիւղի մէջ «պառաւ մը Յիսուս Քրիստոս անելով սկսաւ սանել. Մեռնիմ հայի հաւատին, էն է էօր ինչաք հիմի կ'ապրինք»: — Ուրիշ կին մ'այն հարցման թէ ի՞նչէն գիտէ թէ ինքը հայ է, կը պատասխանէ. «Մեռնիմ քեզիկի, ինցօ չէ. Կիրակմուտ, չորեքմուտ, ուրբթմուտ պէհինք կու. խաչին (= եկեղեցւոյ) ըխտինք կու. մում վառինք կու. ծաղիկ հոնինք կու. սեր հաւքի խառնիլ չինք. էլ ի՞նչ սաեմ, Հէյի էմէն ատէթ պէհինք կու»: Կը թողունք ուրիշ կէտերը, բայց ստուգիւ յիշել կ'արժէ հետեւեալը. «1860—63 Թուականներուն կային դեռ եւս ջերմեռանդ կիներ, որ իրենց երախայներն Տրապիզոն բերած կամ յղած են իրենց մարդէն գաղտնի՝ մի հային, եւ առարկած թէ ջուրն ընկած կամ գայլն յափշտակած է»: Այս ստուգիւ քրիստոնէական ոգի կը ցուցնէ: Հայկունի կը

մար, կրօնական ուծացումը կրնայ տեղի ունեցած ըլլալ, եւ սակայն գիւղ մը կրնայ լիովին հայ գիւղի տպաւորութիւն թողուլ: Երբ երկիր մը՝ դոնէ մեծ չափով՝ հայ լեզուն պահած է, երբ՝ ինչպէս Այվէն գիւղի մէջ՝ եղած են տակաւին «աշխ Վարդանն» մը, որ հայերէն տաղեր յօրինած է» եւ «մինչեւ հիմայ հարսանիքներու մէջ կ'երգուին[143]» — Խոտորջրոյ երգերուն ալ հնագոյններէն մին է Համշէնցի Կրճէլ աւազակի Պարերգը՝ — զարմանալի չըլլար, եթէ կրնայ գրել Հայկունի թէ «Գտնուած եմ Թորոսլի գիւղն (1867—68ի), կարծուած եմ թէ հայ գիւղի մէջ կը գտնուիմ, մեծին ու փոքրին խօսքն հայերէն, արանց ու կանանց կերպարանքը հայու տիպ, եւ Տրապիզոնի հայ գիւղացւոց զգեստի նման» եւն: Միւս կողմանէ ինքը

---

յուելու. «Որոնաղն ցարդ եւս ջերմեռանդ պառաւներ կը դանէ այս մնացորդներէն»: Ծիմլակովցի ծերունի մը կը պատմէր թէ իրենք քահանայի սերունդ են եւ «Քէշիշ–օղլի» կը կոչուին, «այժմ եւս իրենց տան մէջ եկեղեցական ամէն զգեստներ կան, չեն վաճառեր», եւն:

[143] Այս աշուղին Պարերգերէն մաս մը կրցած է հրատարակել Հայկունի (անդ, էջ 293—94): Այս Թրէձոր գիւղի համար կ'ըսէին «իրենց գիւղ հայերէն խաղեր ասող պառաւներ կան, եթէ տաս օր իրար վերայ ասեն՝ չվերջանար»: Գիւղիս մասին կը դիտէ Հայկունի. «Թրէձոր գիւղն, որ այժմ Ծիմլա կ'ասուի: այստեղ հայ լեզուն աւելի գործածութեան մէջ է» (անդ, էջ 243): — Կրճէլ աւազակի Պարերգը տես «Երգեր» եւն Խոտրջրոյ», էջ 31:

*Հայկունի ուրիշ նման գիւղաց մէջ կը յիշէ հայ-մահմետականներ, որոնք հայերէն կը խօսին, բայց որոնց «շատերը կը զգուշին հայ անունից*[144]», *որովհետեւ «հայ» եւ «քրիստոնեայ» համանիշ են իրենց: Նոյնպէս կ'ըսէ թէ* «1840—45 *թուականէ ի վեր Սեւ-Գետացւոց հետ յարաբերութիւնը (քահանայից) դադրեցաւ. այն Հայերն, որ Տրապիզոնի Հայերուն* քեռի, հօրեղբայր, հօրեղբօրորդի *կ'անուանէին, որպէս ամենամերձ ազգականի կը վարուէին*, այս օրս տակաւ առ տակաւ սառելու վրայ են. *վասն զի Օսմանցիք ուսումնարան բացին, կրօնամոլ Օֆցի մոլլաներն սկսան բուռն կերպով գործել, շինծու առասպելներ յերիւրել, այնպէս որ հայ ժողովրդեան ի մահմետականութիւն դարձն հրաշքներու կարգը դասուած է» եւն*[145]: *Այսօրս կարծենք իրապէս կէսկէս դժուարաւ կրնայ ըսուիլ այս ժողովուրդը, որչափ ալ պահած ըլլայ այլեւայլ սովորու-*

---

[144] *Անդ, էջ* 294 *եւն՝ Եօմուրայի շրջանի մասին: — Մանտրա լերան «անտառապատ կողերուն վրայ տեղ տեղ կը տեսնուին գիւղական տներ,* 2—4 *քիլոմետր իրարմէ հեռի կը գտնուին. եւ թուրքացած Հայեր են. որպէս Սեւ-Գետացիք այստեղ եւս իգական սեռն հայերէն կը խօսի. ունին հայկական սովորութիւններ» եւն. կը լսէ անտառի մէջ հարսներու ու աղջկանց հայերէն երգեր, եւն. բայց «մահմետականներ են. շատերը կը զգուշին հայ (= քրիստոնեայ) անունից»:*

[145] *Անդ, էջ* 242 *եւն, կը յիշէ մանրադէպքեր եւն:*

թիւններ : Սերունդներէ վեր կրօնական դաստիարակութեան լիակատար բացակայութիւնը, միւս կողմանէ մահմետականութեան տրուած նոր մղումը մեր օրերուն իսկ, դպրոցներու հոս ու հոն բացուիլը, որոնց գլխաւոր նպատակը յայտնի է, մեր նորադոյն արիւնալից եւ ի վերջոյ բնաջնջման ջարդերը, որոնց մասին խօսելու պէտք իսկ չկայ, — այս ամէնը չէին կրնար առանց ազդեցութեան մնալ: Այս ամէնը՝ թողունք կէսկէսութիւնը՝ կը սպառնան նաեւ վերջին մնացորդին՝ լեզուին ալ գոյութեան:

§ **20.** Կէսկէս եւ լեզու: *Զանգուածային մահմետականացումը թէեւ լեզուն չի կրնար մէկանց անհետ ընել. բայց փորձը կը ցուցնէ թէ ի վերջոյ կը յաջողի այս ալ՝ ուշ կամ կանուխ: Գլխաւոր դեր կը կատարէ հոս ալ բռնութիւնը: Այսպիսի ճնշում, որուն ենթարկուած են նաեւ քրիստոնեայ Հայեր*[146],

146 *Հմմտ. ի միջի այլոց* Հր. Աճառեան, *«Հայ բարբառագիտութիւն» (Մոսկ.* 1911), *էջ* 30 *եւն՝ «Օտարախօս Հայեր»: Կ'աւանդուի թէ «Օսմ. կառավարութիւնը ժամանակին բանի միջոցներ գործածեր է հայերէնը ջնջելու եւ թուրքերէն տիրող լեզու դարձնելու, ինչպէս օրինակ կ'ըսուի թէ Անատոլուի մէջ հայերէն խօսող Հայոց լեզուն կտրել տուած են փաշաները» եւն: Ասոնց մէջ չափազանցութիւնք կրնան գտնուիլ. բայց իրական բարբարոսիկ բռնութիւնք պակաս չեն եղած, ինչպէս կը վկայեն անթիւ յիշատակագիրք՝ ամէն տեսակէտով, ի հարկէ նաեւ լեզուի: Անընդհատ հալածեալ դիրքն ինքնին կը ստիպէր զՀայը դուրսը զգուշաւոր ըլլալ լեզուաւ ալ.*

չէր կրնար պակսիլ հոս ալ։ Նոյն (1840—45) Թուականներուն, կ'ըսէ Հայկունի, «մոլլաներու կողմանէ մեծ ճնշում եղաւ, որ այլեւս հայերէն չխօսին. «հայերէն եօթը բառը մի հայհոյութիւն է»՝ ասացին. մոլլաները տնէ տուն մտան, ստիպեցին հայերէն խօսիլն արգիլել. կանայք նեղ մնալով քանի գիւղերից փայտի հարուածներով արտաքսեցին զմոլլաներն. իսկ այր մարդիկ երկիւղ կրելով թէ կոտորած առաջ պիտի գայ, կը հաւաքուին իրենց աղայի մօտ, ուր որոշում կ'անեն թէ ով որ հայերէն խօսի, իրենց աղային հինգ ոչխար տուգանք տայ»։ Այս առթիւ կը պատմուին «Նոյնիսկ Սեւ Գետացւոց եւ Համշէնցւոց մէջ» «առած դարձած» զուարճալիքներ, որովհետեւ գիւղացին ի հարկէ ակամայ իսկ՝ Թուրքերէն խօսելու փորձած ատեն՝ հայերէն կը խօսէր[147]։ — Լեզուի մասին բնորոշ է Քոխի ալ տուած տեղեկութիւնը Արդուինի վրացի-մահմետականաց մասին. «Ընտանեաց մէջ, կ'ըսէ, միշտ քրիստոնեայ-վրացերէնը կը խօսուի, եւ բարեպաշտ «ուղղահաւատները» (= մահ-

---

147 Տես ԱՐՐՏ, 1875, էջ 297։ Այս զուարճալիքի վերջաւորութիւնն, որով երկու խօսակիցքն ալ 5 ոչխար կը տուգանեն աղային, այն կ'ըլլայ թէ «Աղան տեսնելով որ մէջն շահ կայ, հետամուտ եղաւ, ամէն կողմ լրտեսներ դրաւ որ հայերէն չխօսին»։ — Այս կէտերը յիշեցինք՝ ցուցնելու թէ ինչպիսի պարագայից մէջ կորսուած է շատ տեղ հայ լեզուն, որ արդէն ինքնին վտանգի մէջ էր՝ ժողովրդեան մը մահմետականալէ ետքը։

մետականք) ինծի յայտնի խոստովանեցան թէ՝ թէեւ մեղք է կեսաւուրներու լեզուն խօսիլ ընտանեաց ներքին շրջանի մէջ, բայց Աստուած զայն իրենց ներշնչած է՝ մօր կաթին հետ. կը յուսան թէ երբեմն արքայութեան մէջ այս իրենց յանցանք չի համարուիր, քանի որ արաբերէնէ եւոքը սրբազան թուրքերէնն ալ խօսիլ գիտեն եւ հետեւաբար Աստուծոյ եւ հրեշտակաց ալ անհասկանալի չեն մնար[148]»: Այս ճիշդ նոյն է՝ Օֆցի մոլլաներու հայերէնը «հայհոյութիւն» քարոզելուն հետ: — Կը տեսնուի թուրքերէնը տարածելու եւ ժողովուրդ մը լեզուաւ ալ թուրքացնելու բաւական ազդոյ միջոց ալ դըրնուած էր: Լեզուի ալ մասին այս բռնութիւնը տակաւին վերջնական արդիւնք չէ ունեցած, քանի որ մանաւանդ իգական սեռը հայախօս է, նաեւ արականը՝ բաւական չափով: Թէեւ Թուրք լեզուի ազդեցութիւնը բնականապէս յաղթական է: Հ. Աճառեան կրնար տակաւին գրել թէ Համշէնցիք (— ընդհանրապէս Համշէնի բարբառը խօսող ժողովուրդն —) «բռնի մահմետական դարձան եւ մինչեւ այսօր ալ կը համարուին տաճիկ, թէեւ իրենց հին հայկական սովորութիւնները եւ պապենի հայ բարբառը կենդանի կը պահեն[149]»: Բայց կը նշանակէ նաեւ արդէն բարբառիս «տարօրի-

---

148 Քոխ, էջ 167:

149 Բարբառագիտութիւն, էջ 190:

նակ յատկութիւն մը, որ ո՛չ թէ ուրիշ հայերէն բարբառի, այլ կարծեմ ուրիշ որեւէ լեզուի մէջ ալ գոյութիւն չունի»· — այսինքն՝ թուրքերէնի թափանցումն այն մտօք որ ո՛չ թէ իբր պարզ փոխառութիւն են, այլ ուղղակի թուրք քերականութեամբ եւ բայաձեւերով[150]: Անիկա սակայն երեւոյթ մըն է ընդհանրապէս նոյն բարբառին, ուստի ո՛չ միայն մահմետականացած տարրին, այնպէս՝ ինչպէս որ չեշտն ալ սկսած է աւելի լազերէնի նման ըլլալ, ազդուելով թրքախօս երբեմնի լազերու չեշտէն[151]: Բայց

---

150 Անդ: Օրինակ կը բերէ «էմիր Խաչօյին քիչ մը յարադալդիլէր» (անոնք խաչօյին քիչ մը վիրաւորեցին)· — «էղաս մէզի հետ կօշդի» (առաւ մեզի հետ միացուց)· «գեղ թէ գաս, իրաց հետ դօղուշո՛ւրուֆ» (եթէ գեղ գաս՝ իրարու հետ կը կոուինֆ)· — «դուք չատ փարա կազօնո՛ւրսունուզ» (դուք չա՞տ դրամ կը վաստկիք): Ասոնց մեկնութիւնն եւ այլ բարբառոց թուրք փոխառութիւններու հետ, — որոնք իբր բառ կամ պարզ ձեւով միայն կ՚առնուին, ո՛չ թէ այսպէս «զուտ թուրքերէն կանոններով», միեւնոյն տեղը:

151 Անդ, էջ 190—91, ինչպէս Տրապիզոնի, նոյնպէս եւ Համշէնի բարբառին մէջ չեշտն ըստ օրինի վերջին վանկին վրայ է· բայց արագ խօսակցութեան մէջ շատ անգամ կը պատահի որ երկու բարբառներուն մէջ ալ չեշտը բառին առաջին վանկին վրայ անցնի: Ասիկա Պոնտոսի բնիկ ժողովրդին՝ Լազերու լեզուին ազդեցութեամբ է: Լազերը իրենց մայրենի լեզուն կորսնցուցած են եւ թուրքերէն կը խօսին, բայց թուրքերէնը կը չեշտեն իրենց նախկին չեշտով, այսպէսով Լազերէնի շեշտը անցած է թուրքերէնի եւ ասկէ ալ հայերէնի անցնելու վրայ է»:

գժուար չէ գուշակել թէ ուշ կամ կանուխ հոս ալ իրերը պիտի հասնին հոն, ուր լեզուն նախ աւելի Թուրքերէն պիտի ըլլայ քան հայերէն, որչափ ալ մեծ ըլլայ վերջնոյս բաժինը, մինչեւ որ ի վերջոյ լիովին Թրքանայ՝ աւելի կամ նուազ պաշար պահելով հայերէնէ :

Այս վիճակին մէջ է արդէն լեզուն Թորթումի եւ Բերդադրակ գաւառաց մէջ, — հայ գիւղերը բնականապէս դուրս հանելով : Այսօր՝ օրինակի համար՝ Թորթումէ անցնող ուղեւոր մ՚այն ընդհանուր տպաւորութիւնը կ՚ունենայ թէ այս լիովին մահմետականացած եւ թրքախօս գաւառ մ՚եղած է : Ի հարկէ հոս ալ — ինչպէս ուրիշ տեղեր — առաջին տպաւորութիւնը յաճախ խաբուսիկ է : Որովհետեւ ուղեւորը կ՚անցնի որոշ գծէ մը միայն, որոշ իջեւաններէ, որոնց տեարք յաճախ նոյն իսկ տեղացի չեն : Եւ դարձեալ որովհետեւ ներկայ պայմաններու մէջ տիրող լեզուն, որով ամէնքը կը խօսին ուղեւորին հետ, Թուրքերէնն է, այնպիսի տպաւորութիւն ինքնին կը ծնանի՝ ո՛չ միայն այնպիսի իրապէս մահմետականացած երկրի մէջ, այլ նաեւ ուրիշ տեղեր, ուր տարբեր են իրերը : Թողլով այս կէտը, հոս աննպաստ էին արդէն պարագաները : Երկիրս մահմետականացած էր ԺԶ. դարու գրեթէ կիսուն, Սեւ-Գետէ եւ Համշէնէ գրեթէ դարու մօտ ժամանակ մը յառաջ, բայց տակաւին Ինճիճեանի օրով բացի մահմետականացած Թոր-

թում կենդրոնէ, մնացեալը գիւղերն էին «ըստ մասին բնակեալ ի Հայոց եւ ըստ մասին ի Տաճկաց[152]»: Հոս սակայն ազդած է զանգուածային գաղթականութիւնը, յատկապէս Կարնոյ կոչուած մեծ գաղթն (1830/1) եւ բնականապէս ասոնց տեղ բռնած են նորեկ գաղթականներ օտար լեզուաւ, որ այնուհետեւ աւելի սաստիկ պիտի ազդէին լեզուի Թուրքացման վրայ: Դժբախտաբար հոս եղան մինչեւ անգամ նոր կէսկէսներ: Քիցխայի հայաշատ ձորը տակաւին նոր վիճակացոյցներու մէջ կը նշանակուի իբր 800 տուն հայ: Այսպէս կը նշանակէ այն վիճակացոյցը Թորթումի 73 գիւղերու, որ իբր 1880ի կազմուած կ'ըսուի[153]: Նոյնպէս կը դնէր, նոյն ցուցակին համեմատ նաեւ Ա—Դօ իւր ծանօթ երկասիրութեան մէջ[154]: Բայց Ա. Ջնդի կը գրէ այս մասին թէ զուր է այլեւս այն 800 տուն թիւը նշանակել Հայոց թուոյն մէջ: Քիցխացիք արդէն իսլամացած

---

[152] Ինճիճեան, էջ 93—94: Թորթումի մասին առիթ կ'ունենանք խօսելու:

[153] «Բնաշ. Բառարան», Հտր. Բ, (Վենետիկ 1907), էջ 51: Հոս չի նշանակուիր ցուցակիս կազմուելու տարին, բայց Կարնոյ գիւղերու վիճակացոյցին համար (անդ, էջ 300—301) կ'ըսուի թէ «եղած է 1880ին» եւ թէ «Կարնոյ մասն կազմող Թորթումի գիւղերուն աշխարհագիրը դրած ենք ի կարգին»:

[154] Ա—Դօ, «Վանի, Բիթլիսի եւ Էրզրումի վիլայէթները», (Երեւան 1912), էջ 201. — «Բնաշ.» եւ Ա—Դօ կը նշանակեն միայն 13 հայ գիւղեր Թորթումի այն 73 գիւղերու մէջ:

են[155]. — այս իրր օրինակ մահմետականացման այն նոր հոսանքին որուն արդիւնքները մանուանող այս օրերուս ուղղակի սարսռացուցիչ են։ Նաեւ բնաջնջման օրերէս յառաջ Թորթումի (— նոյնը կ'արժէ միւս խառն բնակչութեամբ գաւառաց ալ) արդէն լիովին աննպաստ վիճակն անընդհատ վատթարանալու միտում կը ցուցնէր[156]։ Նոյնը վերջնական բաժին է ամէն գաւառի, որ մահմետականացման ենթարկուած է, ի

---

[155] Ա. Ջնդի, «Հողային հարցը Երզրումի վիլայէթի մէջ»՝ յօդուած ի՛ թերթին «Արեւ» (Բաղու) 1914, թիւ 52։

[156] «Բնաշ.» եւ Ա.—Դ.Օ այն 13 գիւղերու մէջ կը դնեն 2829 տուն Հայ։ Անշուշտ «Բնաշ. Բառարանի» այս գիւղերու մանրամասն ցուցակը խնամով յօրինուած ըլլալու երեւոյթ ունի. 73 գիւղերը միատմի նշանակուած են հայ եւ Թուրք տները ուրոյն ուրոյն բաժիններու մէջ։ «Թուրք» տներու թիւն է 8000է քիչ մ'աւելի։ Կը յիշէ նաեւ Վ. Կինէի (Cuinet) տուած թուերը, որ 173 գիւղ կ'ըսէ 52, 591 բնակչով, որոնց մէջ Հայք կ'ըսուին միայն 2946. (որոնց 881 Հայկթղ.)։ Հոս ուրեմն նախընթաց ցուցակին 2829 տունը՝ նոյնչափ անձ նշանակուած է։ Ասոր համեմատ կամ անկէ առեալ Ա. Ջնդի ալ միայն 700 տուն կ'ըսէ Հայոց։ Այս եւ այսպիսի թուերու արժէքի մասի պիտի խօսինք քիչ մ'ետքը (§ 23)։ Վերջինս ալ ուղիղ չէ անշուշտ. բայց նաեւ առաջնոյն մէջ կան թուեր որ ստուգիւ շատ բարձր են։ Մեր այցելած Նորշէն Հայկթղ. գիւղին համար կ'ըսուի 300 տուն, մինչ տեղացիք մեզի տասը կէսէն ալ պակաս ըսին։ Նոյնպէս Խտպատ Հայ-կթղ. գիւղի համար նշանակուած 95 տունը շատ բարձր է, եթէ ոչ կրկինը։

*վերջոյ նաեւ լեզուի տեսակէտով: Այս ամէնուն մասին կընանք Հայկունւոյ ընտրած վերնագիրը դնել՝ «Կորած Հայեր»:*

*Անոր համար ի վերջոյ մխիթարական չեն նաեւ այն կայծերը, որոնք կ'երեւան իբր ծածկուած յանթեղի, երբ առիթ ըլլայ քիչ մ'աւելի մերձուստ ճանչնալ այս ժողովուրդը — բնականապէս ընիկը — իւր հեռաւոր եւ կողմնակի ձորերու մէջ: Այս տեղ դտանք որ ցեղային գիտակցութիւնն այնպէս ի սպառ մոռցուած չէ, ինչպէս արտաքուստ կ'երեւայ [157]: Նոյն իսկ մահմետականութիւնն այնպէս խորարմատ չէ ամէն կողմը, մանաւանդ*

157 *Ասիթ ունենալով յՈշկվանք քիչ մ'երկար մնալու, յաճախ լսեցինք տեղացւոց պարծանքը թէ այն տեղւոյ գեղակերտ, դժբախտաբար քայքայման դատապարտուած, եկեղեցին «իրենց պապերը» շինած են: Եթէ այս ինքնին գիտակցութիւն կ'ենթադրէ իրենց նախկին կրօնից, աւելի որոշ ալ աստնք կը ժխտէին թէ իրենք «Թուրք» ըլլան, նաեւ բացարձակապէս ո՛չ «կուրճի» (վրացի), լազ, քուրդ կամ այլ ինչ: Բայց այն հարցման թէ ուրեմն ի՞նչ են, միշտ «խլամ» կը պատասխանէին: Թէեւ կ'ըմբռնէին լիովին թէ Թուրքն ալ, քուրդն ալ, լազը եւն նոյնպէս «իսլամ» է, չէին համարձակեր բնականապէս «հայ» ըսել (այսինքն՝ = քրիստոնեայ՝ ըստ իրենց ըմբռնման. այլ միայն թէ՝ ինչ ալ ըլլայ՝ «իրենց պապերը ճշմարիտ կրօնքը (= մահմետականութիւն) գտեր են, եւ այս կը բաւէ»: — Այս՝ տեղ մ'ուր մգկիթ կայ (եկեղեցւոյն մէկ մասը կոշտ պատով բաժնուած) եւ մօլլա, որուն սակայն տխպարն ինքնին կը ցուցնէր թէ ընիկ չէ: Ասոնց (օտարի հետ) խօսած Թուրքերէնը չափազանց հայախառն էր:*

այն տեղեր, ուր — Թողունք ուսումնարան, — եւ ո՛չ կանոնաւոր մզկիթ գոյութիւն ունի: Արդէն անոնք, բաց ի այն տեղերէ՝ ուր պատրաստ եկեղեցիք փոխուած են մզկիթի, այնպէս աչքի չեն զարներ՝ բոլոր այս գաւառներս, ինչպէս բուն Թուրքական մասերու մէջ, ուր ուղեւորի մ'առջեւ տեսածը մզկիթ մըն է, յաճախ՝ շարք մը — ըստ մեծութեան տեղւոյն: Հոս ցանցառ չեն տեղացիք, որ պարզ «նամազ» մ'անգամ չեն գիտեր, ուստի մահմետականութեան տարրական պաշտօնին իսկ անգիտակ են[158]: Իրենց խօսած լեզուն — խօսքն արական սեռի վրայ է, — Թուրքերէն է: Բայց արդ ամէն մահմետական Հայ կը խորշի օտարի առջեւ ուրիշ լեզուաւ

---

158 Մեր ուղեւորութեան միջոցին մտադիր եղանք որ այս ձորերուս բնակիչք շատ փութկոտ չէին այս կրօնական պաշտօնը կատարելու հրապարակաւ եւ այնպէս՝ ինչպէս նոյնը կը տեսնուի զուտ Թրքական տեղերը: Ցաճախ տեսանք (մեր ուղեկից, ջորե-պաններն էին) որ եւ ո՛չ կը կատարէին, շատերը միայն շարժուձեւերը միայն գիտէին, բայց եւ ո՛չ բառ մ'աղօթքին: Ուրիշները այն իսկ շարժմունքը կանո-նաւոր չէին գիտեր, (ինչպէս ականատես եղանք յԹուէք), եւ երբ որեւէ առթիւ բոնադատուէին՝ կը ջանային արտաքուստ նմանիլ աղօթողին որչափ կրնային: Ասոնք կը խոստովանէին որ իրենց գիւղերը շատ շատերն այնպէս են, եւ կը չքմեղէին թէ զպրոց տեսած չեն, մօլլա չունին, ևն: Մահմետականու-թեան մասին հիմնադրին անունէն, ծոմէն (զոր ջորե-պանք չեն պահեր ուղւոյ միջոցին՝ ըստ կանոնի)· եւ քանի մը ժողովրդական հաւատալիքներէ («մաղէ կա-մուրջ» ևն) անդին մեծ բան չէր գիտցածնին:

խօսելու, ինչպէս դիտած են ուրիշներ ալ: Այս Թուրքերէնը սակայն տակաւին մեծ չափով հայ խառնուրդ ունի, եւ որովհետեւ տեղական ամէն ինչ, յետին գիւղ ու գետ, ձոր ու լեռ, արտ ու մարգ տակաւին պահած են հին՝ մեծ մասամբ հայ՝ անունները, այսպիսի Թուրքերէն խօսակցութիւնը տեղւոյն վրայ շատ տարբեր տպաւորութիւն կ'ընէ, կարծես Թրքախառն հայերէն ըլլայ: Յաճախ հարցափորձած ենք — մեր ուղեւորութեանց առեն — գործածուած այս կամ այն հայ բառը, իբր անգէտ՝ մեկնութիւն խնդրելով դիտամամբ, եւ նկատած՝ որ ատոնց շատերուն Թուրք համազօրներն անծանօթ էին շատերուն: «Իրենց գիւղն այսպէս կ'ըսեն»՝ ա՛յս էր ամէն մեկնութեան յանկերգը: Ոչ սակաւ անգամ նշմարած ենք որ այն հին մահմետականացածները, որոնք ա՛յնպէս կը վարուին իբր թէ Թուրքերէնէ զատ ուրիշ լեզու չեն գիտեր, լիովին կը հասկնային հայերէնը (օր. Խեւակցիք): Եւ իրերը տակաւին տարբեր կ'երեւային նաեւ ամէն ուղեւորի, — որ սակայն արդէն երկար չի կրնար յամել իր ուղւոյն առեն, — եթէ մահմետական կրօնքը, բայց նաեւ տեղական սովորութիւնը (որ կայ գոնէ մասամբ Հայոց մէջ ալ). անկարելի չընէր՝ աւելի մերձուստ դիտելու ընտանեկան կեանքն եւ քննելու իգական սեռի լեզուն: Եթէ մեր այս մասին ի հարկէ ցանցառ դիտողութիւնք զմեզ չեն խաբեր, այն հայ-մահմետականները՝ որ հայախառն բայց

*քերականութեամբ էապէս Թուրքերէն կը խօսէր, տունը Թրքախառն հայերէն կը գործածէր։ Այսուհանդերձ՝ «Կորած Հայեր» ինչպէս հոս, նոյնպէս Ճորոխի գծին կամ Բերդագրակի գաւառի մէջ, ուր սակայն իրերն այնու քիչ մ'աւելի մխիթարական են որ գոնէ աջ ափին վրայ հայը տակաւին բաւական թիւ մը կը ներկայացնէ, ինչպէս ձախ ափին վրայ՝ Խոտորջուր եւ Մոխուրկուտ։*

§ **21.** Մահմետականացում եւ գաղթականութիւն. — *Նախընթաց դիտողութիւններն արդէն ցուցուցին թէ մահմետականացման չափ եւ երբեմն աւելին կ'ազդեն գաւառի մը ժողովրդեան Թրքացման մնացեալ քրիստոնէից յաճախ ակամայ, բայց նաեւ երբեմն կամաւոր մեծ գաղթականութիւնները։ Մասնական եւ առօրեայ գաղթողներու մասին չէ մեր խօսքը, որոնց սաստիկ յաճախութիւնն ալ ինչպէս մեր օրերուն փորձառութիւնը կը ցուցնէ, առանց ազդեցութեան չի մնար տեղւոյ մ'ազգաբնակչութեան փոփոխութեան նկատմամբ։ Ամենամեծ գաղթը կամ աւելի ճիշդ՝ փախուստը տեղի կ'ունենայ բնականապէս բռնի մահմետականացման եւ կոտորածներու շրջանին։ Վերը տեսանք թէ Սեւ-Գետացիք հազարաւորներով խոյս փախան իրենց անանցանելի անդունդներէն դէպի մերձակայ վայրերը* (§ 18)*։ Ասոնց, կ'ըսէ Հայկունի, «*$^1/_{10}$*ը Բաբերդի կողմը դուրս ելաւ* $^1/_5$ *Տրապիզոնի*

*մերձականերն Զաղփոս, Ապխօն, Կալաֆկայ եւն վայրերը. դուրս ելնողներու 3/4ը եւս անցան Ծանիկ, որ Տրապիզոնից ծովով մի աւուր ճանապարհ է ի յարեւմուտս*[159]*»: Այս ամէն տեղերն, ինչպէս առ հասարակ Համշէնցւոց կամ նոյն բարբառը խօսող ժողովրդեան Սեւ ծովու եզերքները ցրուիլը իբր լիովին միահաղոյն եղած ընդունելու հարկ չկայ, եւ ո՛չ ալ հաւանական է: Գաղթելու անթիւ պատճառներ կային յառաջ ալ, ինչպէս նոյները մնացին մեծաւ մասամբ նաեւ յետոյ: Հողային խնդիրը, արեւելքի այս մշտնջենաւոր ցաւը, բէկերու եւ գրեթէ ամէն գիւղի մեծ ու մանր բռնաւորներու կեղեքումները, պետական ծանր «խարաճ» եւ անթիւ նման պարագաներ, որոնք կը տիրէին ինչպէս յառաջ նաեւ գոնէ մասամբ յետոյ, այս հողագուրկ աշխարհներուս մէջ միշտ յառաջ պիտի բերէին գաղթականութիւններ: Ինչպէս հայ ժողովրդեան դէպ ի ծով գաղթը հնուց կը սկսի (§ 5). նոյնպէս Համշէն ու Սեւ Գետ չէին կրնար առանց գաղթականութեան մնացած ըլլալ այս մահմետականացման թուականէն յառաջ, ինչպէս մնացած չեն անկէ ետքն ալ: Անոր համար ունինք այսօր տակաւին հայախօս «հայ-մահմետական»ներ՝ գաղթած Համշէնէ նաեւ շատ հեռաւոր տեղեր, ինչպէս քիչ մ'ետքը պիտի յիշենք:*

159 Հայկունի, *անդ*, *էջ* 242:

Նոյն իսկ Սեւ–Գետացիք՝ ընդհանուր առ–
ամբ՝ տարբեր ժողովուրդ չէին Համշէնցի–
ներէ. եւ հետեւաբար ասոնք, ինչպէս բոլոր
այն ժողովուրդն՝ որ ցրուած է Սեւ ծովու
եզերքը (— ի բաց առեալ Տրապիզոն եւ իւր
գաղութները —) միեւնոյն բարբառը կը
խօսին: Այս «Համշէնի բարբառը» ինքնուրոյն
է, եւ կը խօսուի Տրապիզոնի նոյն իսկ առա–
ջին գիւղի մէջ: Անոր համար յարմարագոյն
են Բժշկեանի տեղեկութիւնները, որ իբր
տեղացի եւ ի Տրապիզոն ապրած[160], Համ–
շէնցւոց համար նախ կ'ըսէ. «Ասոնց մէկ
մասը խուռշունլի եւ Սիւրմէնէ գնացին.
Խուռշունլի գնացողները քրիստոնեայ մնա–
ցին[161]: Սիւրմէնէ գացողները կը հասկ–
ցուին Սեւ Գետացիք, որոնց բռնի արիւնա–
լից մահմեդականացումը տեսանք: Բոլորո–
վին տարբեր նկարագիր կու տայ Խուռշունլիի
Համշէնցւոց, ուստի Ճանիկի գաղթականաց.
«խուռշունլի աւանը մօտ է Զարշամպայի (—
Հերիկի վրայ, ծովախառնունքի մօտ), բնա–

---

[160] Հ. Մինաս Բժշկեան (ծնած է ի Տրապիզոն 1777ին, † 1851ին Վենետիկ. հմմտ. «Մխիթար», էջ 220) կը գրէ Տրապիզոնի «Ս. Օգսէտ» եկեղեցւոյ մա– սին թէ «հիմայ Առաջնորդարանի եկեղեցին» է. «որուն մօտն է Առաջնորդարանն ծովահայեաց ընդար– ձակ եւ բարեդիր, որ էր տուն Բժշկեանց» (Պատմ. Պոնտ. էջ 81). — Աստուածամայր եկեղեցւոյ գլխաւոր դրան համար կ'ըսուի՝ «Այս դրան դիմացն է ժամա– տունը հանդերձ դպրատունով որ շինեցինք 1818ին» (էջ 80): = Հմմտ. էջ 84, 89:

[161] Անդ, էջ 97:

կիչներն են հայ Համշէնու եկած. եւ ամէնքը զինուոր գրված են որդւոց որդի. եւ ունին զօրապետ հայ իշխան, որ զիրենք կը կառավարէ. մարտէ ահ չունին. միայն Տէրէպէկիին հետ պատերազմ կ'երթան, ու զօրաւոր մարդիկ են[162]»: Ասոնք ուրեմն միակ հալածանքէ փախչողները չէին կրնար ըլլալ. բայց փախստականներն հանդիստ կրնային դառնել ինչպէս հոս, նոյնպէս միւս տեղերը կանխաւ հաստատուած ազգակցաց եւ ընդհանրապէս ազգայնոց քով:

Նոյնպէս տարբեր նկարագիր կը տրուի Տրապիզոնի շրջակայ Համշէնցւոց, եւ Բժըշկեան արդէն մատնանիշ կ'ընէ բարբառներու տարբերութիւնը: Յիշելով Տրապիզոնի եկեղեցիներն եւ իրենց արձանագրութիւնը (— որոնց հնագոյնք ՊԿԳ = 1414, ՊՀԳ = 1424, ՊՀԸ = 1429, ՊՁ = 1431 են թուերը կը կրեն[163] —) կը յաւելու. «Գեղերն ալ կան փոքր եկեղեցիներ Հայոց՝ որ խաչտուր կ'ըսեն: Ասոնք Համշէնէն եկած են. բայց քաղաքացիք Անի քաղաքէն են. ուստի գեղացիներուն լեզուն եւ հնչմունքը շատ տարբեր է քաղաքացիներէն, սակայն քաղաքին մէջ ալ կան Համշէնէն եկած հին տներ. որոնք տարուէն տարի տուրք կու տան Համշէնցւոց հետ հին ժամանակէն ի վեր. իր

---

162 Անդ, էջ 49 (§ 82):

163 Անդ, էջ 79—85. — Հմմտ. Ինճիճեան, էջ 387, 390—92:

զի՝ Թագաւորին առաջը վառած մեղրէմոմն ասոնք կու տան. ինչպէս գրված է Թագաւորական դիւանը: Քաղաքացիք 200 տուն հազիւ կ'ըլլեն, առաջ շատ էին. իսկ գեղացիք 500էն աւելի են. որ իբր զօրք են ամէնը Տէրէպէկներուն, որոնք խորամանկ եւ շատ պատերազմող մարդիկ են[164]»: — Կը տեսնուի՝ Համշէնցիք ալ առոյգ ու պատերազմասէր եղած են նաեւ այս կողմերը գաղթելէն ետքը:

Այս նկարագրութիւնը շատ աւելի ճշգրիտ է անշուշտ. մինչ Ինճիճեան բոլոր Տրապիզոնցիք Համշէնցի կ'ըսէ. Տրապիզոնի բնակիչները 8000 տուն կ'ըսէ, «յորոց իբրեւ 500 են տունք Հայոց...: Հայք եկին յայս քաղաք ի Համշինէ. իսկ ի Համշէն եկեալ ասեն ի յԱնի քաղաքէն. վասն զի որպէս պատմեցին մեզ, առ քաղաքացիս ոմանս Դրապզոնոյ գտանին թուղթք ազգաբանութեան իւրեանց գրեալք ի յԱնի. ըստ հին վճռոյ՝ Համշէնցւոց անկանէր տալ զմեղրամոմն որ վառէր առաջի Թագաւորին, որպէս ցարդ ասեն գտեալ հայ յարքունի գիրս. եւ զայս տուրս բառնամք ի Դրապզոնցոց տան մինչեւ ցայսօր գոլով սերեալք ի Համշէնցոց[165]»: Սակայն Ինճիճեան ալ ուրիշ տեղ մը կը գտնա-

164 Անդ, էջ 82:

165 Ինճիճեան, էջ 387:

զանէ գիւղացի Համշէնցիքը, լաւ բէկերու ներքեւ[166]:

Անւոյ դաղթականութեան խնդիրն ի Տրապիզոն տարբեր տեսակէտ մըն է (§ 5): Այստեղ շատ կանուխէն ալ հայ գաղութ ըլլալու էր, նոյն իսկ անով որ արեւմտեան Հայաստանի համար բնական ծովեզերեայ քաղաքն ու նաւահանգիստն էր: Բիւզանդահայ երկար շրջանին Տրապիզոն կապուած էր ընդարձակ հայ գաւառաց հետ: Ի վերջոյ իբր կենդրոն Խաղտեաց բանակաթեմին, ինչպէս յիշեցինք: Եթէ Լաստիվերտացի Վասլի կայսեր եւ Պետրոս Գետադարձ կաթողիկոսի հանդիպումն — ուր «եղեւ Հայոց կորստեան գիր եւ նամակ» եւ հիմ դրուեցաւ Անւոյ առման ի Յունաց եւ անով Անւոյ ի վերջոյ կորստեան — ընդհանուր կերպով «ի մարմանդս Պոնտոսի... ի գաւառն Խաղտեաց, կը դնէ, ինչպէս որ Աստուածայայտնութեան տօնին դէպքն աւելի պարզ կը ներկայացնէ («ցըն-

---

166 Ինճիճեան, էջ 384. «Ի գիւղականս բազումք են յազգէս Հայոց եկեալք ի Համշէնէ, որք ունին քահանայս եւ եկեղեցիս գրեթէ յամենայն գիւղօրէս: Իշխօղք գիւղօրէից առ հասարակ կոչին Տէրէպէյք, որք են Լազք ինքնիշխանք, զամենայն վճիռ անձամբ հատանեն, չունելով ուստեք երկիւղ, իւրաքանչիւր ի նոցանէ ունի պալատ պարսպաւոր եւ աշտարակաւոր հանդերձ ամենայն հարկաւորօք, ուր ամրացեալ կարող լինին ընդդէմ դնել փաշայից, ի լինել հարկէ կարեն ժողովել զարս հազար եւ աւելի եւս ի հպատակեալ գիւղականաց»:

ցուղս լուսոյ ճառագայթից յանկարծակի ծագեաց ի ջուրցն»[167]), անապանադոյն «բայց արդէն հին աւանդութիւնը, որ աւելի դարդարած է, եւ որմէ «Գետադարձ» անունը մնացած, նոյնը կը դնէ ուղղակի «ի Տրապիզոն քաղաք»[168] : Այս ատեն նորագոյն աւանդութիւնը բնականապէս պիտի կապէր Բիքսիդես գետակին, արդի Դէյիրմէն–դէրէի ջրոյ հետ, եւ մերձակայ Սմենափրկիչ վանքին հետ ալ որեւէ կերպով[169] : Տրապիզոնի հայութեան պատմութիւնը քննել մեր նպատակը չէ · բայց դարմանալի էր որ այս նպաստաւոր կենդրոնն, որ նաեւ Կոմնենեանց օրով երկար ատեն ապաստարան ըլլալու սահմանուած էր շրջակայ աշխարհաց, այնչափ քիչ հայ բնակչութիւն ունեցած է ըստ երեւութին, եւ դարձեալ որ այնտեղ չեն դրանուած հնագոյն յիշատակարաններ եկեղեցեաց եւ քան ժէ· դարը : Նաեւ մեզի ծանօթ հոն գրուած ձեռագիրք այս շրջանէն կը

---

167 «Պատմ. Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ» (Վենետիկ 1901), էջ 18—19 (գլ. Բ) :

168 Այսպէս՝ ի մէջի այլոց՝ Կիրակոս Գանձակեցի (Պատմ., Վենետիկ 1865, էջ 53—54 :

169 Տես Բժշկեան, էջ 88—89. «Գետը ձգած ոսկի խաչը տեսանք, որ աւանդութեամբ կը պահեն» : Ոմանք կ՚ըսեն թէ այս հայրապետը վանքը նստաւ· ուստի ան ատենը վանքին տեղը պիտի եղած ըլլար փոքր վանք մի» եւն : Արդի վանքը «զտեղի վանացս իւր անդաստանաւն» գնած է «խօճայ Ստեփաննոս» եւ շինած է տաճարը ՊՀԳ· (= 1424) թուին. (յիշատակարանը՝ տես էջ 83) :

*սկսին*[170]*: Ասով չենք ուզեր ի հարկէ ըսել թէ աւելի հնագոյնք չկան, նոյն իսկ ի Վենետիկ, որուն Ձեռագրաց մէկ փոքր մասը*

---

[170] *Օրինակի համար Խաչիկ Վ. Դատեանի* (Յակոբ Յ. Թօփճեանի, *«Ցուցակ Ձեռագրաց Դատեան Խաչիկ վարդապետի», Մաս Ա. էջմ.* 1898, *էջք* 112. *Մաս Բ, էջմ.* 1900, *էջք* 74) *Թիւ* 47 *Հարանց վարք գրուած է ՊՀԱ* (= 1422) *Թուին «ի մեծ քաղաքն արքունի, որ Տրապէզ սա յորջորջի, ընդ հովանեաւ* Ս. Տիրամաւր *որ* Զարխափան *սա անուանի»: Ղազար գրչէ եւն (անդ, էջ* 56—58)*: — Տրապիզոնի Ս. Աստուածածին եկեղեցւոյ Մաշտոցը* (*տես* Ա. Վ. Մխիթարեանց, *վէպ գաղթականութեան Հայոց Տրապիզոնի». Կ. Պ.* 1857, *էջ* 36)*, զոր գրած է «Աւետիք արեղայն Տրապիզոնեցւոյ ի Թուին ՋԺԶ (տպ. Է, այլ ամի* = 1467) *ընդ հովանեաւ* Ս. Փրկչին եւ Ս. Կարապետին *եւ ամենայաղթ Ս. Նշանին... եւ եդի զսա ի* վերին եկեղեցին որ կոչի Ս. Աստուածածին» *եւն: — Վենետիկոյ Հաւաքման մէջ կան ի հարկէ բազմաթիւ Ձեռագիրք: Ամենանշանաւորը Թիւ* 108 «Տրապիզոնի Աւետարան» *կոչուածը՝ մեծադոյն, «գեղեցկաձեւ հրաշագեղ երկաթագիր», մագաղաթեայ, նախնաբար շատ հին ձեռագիր է, տեղին ու գրիչն անյայտ, եւ ստացիչ էր «Սիր Պարոն». (մանրամասնութիւնք տես* Հ. Բ. Սարգսեան, *Ցուցակ, սիւն* 477—486)*: Զայս յետոյ ստացեր է «Պր. Էվաչաս», որ զնեցի... եւ ետու... ի* Վերի Ս. Աստուածածին» *յամի ՊՀԴ* (= 1425)*: — Նոյնպէս Վենետիկոյ Թիւ* 111 *Աւետարանը բուն գրուած է ի Բարձրբերդ ՉԺԸ* (= 1269) *Թուին, յետոյ «կազմեցաւ... ի ծովահայեաց քաղաքն Պաւնտոս, ի դրան* Սբ. Ամենափրկչին» *Աբրահամ կրօնաւորի ձեռօք ՋԺԶ* (= 1467) *Թուին: Ասոր մէջ կան յիշատակագրութիւնք՝ «ես Յակոբ եպիսկոպոս» եւ «Ես Յակոբ Մալաղս» նոյն վանաց համար Ռ* (= 1551) *եւ ՌԻԸ* (= 1579) *Թուերով. (տես* Հ. Բ. Սարգսեան,

միայն ծանօթացած է Ցուցակով, նոյնպէս ուրիշ տեղերու հաւաքման մէջ: Ծովե-զերեայ գաղթականութեանց համար կրնար կարեւորութիւն ունենալ յիշատակարանն այն Ձեռագրին, զոր արդէն Բժշկեան կը յիշէ Ռիզէ գրուած, դժբախտաբար առանց մանրամասնութեան եւ առանց Թուականի: Այս տեղւոյ Հայերն ալ Պարսկաստանէ գաղ-թած կ'ըսէ Բժշկեան[171]: Բժշկեան նոյնպէս

493—98)· — Վեննեակոյ Թիւ 27 Սաղմոսարանը գրած է Ցակոբ աբեղայ «ի հռչակաւոր մենաստանս Տրապի-զոնու որ կոչի վերի Աստուածածինն»՝ Թուին «ԹՃԴ» (= 1455), երբ «պատուելի եղբայրն իմ» Տէր Յո-հանէս եպ· «Վերատեսուչ քաղաքիս» էր· (տես Հ· Բ· Ս·, 188—89): Աւելորդ է յիշել մնացեալքն, որոնցմէ արդէն ծանօթ են, թէ՛ հոն գրուած եւ թէ հոն բերուած (հմմտ· Հ· Բ· Ս· Թիւ 73, 76, 77, 84, 108, 109, եւն):

171 Բժշկեան, էջ 94 «Իրիզէ··· Առաջ անհամ Հայեր չատ կային, որ Բոշի Թաղը կը նստէին· ունէին փառաւոր եկեղեցի, ուր ճաշոց մի գրեր են, որ մայրաքաղաք կ'անուանէ այս քաղաքը»: — Ինճիճեան (էջ 394) կ'ըսէ Րիզէի «բնակիչք տունք իբր 500 տա-ճիկք եւ յոյնք, եւ յազգէս Հայոց տունք իբր 20»: Բոխ (էջ 7—13) որ աւելի կենալ ստիպուած էր հոս· միայն 300 տուն կ'ըսէ ամբողջն, առանց մանրամաս-նելու: — Անցողակի յիշենք որ Տրդատ եպ· Պալեան «Տրապիզոնի հայ վանքերը»՝ ի «Բիւզանդիոն» 1901, Թիւ 1386) կը յիշէ՝ «Ս· Գէորգ վանք, Տրապիզոնի ենթակայ Կ•համայի մէջ», եւ «Ս· Ղուկասու վանք, նոյնպէս Կօհանայի մէջ»· — առանց մասնաւոր տեղե-կութիւն տանել կարենալու: Բժշկեան (էջ 89—90) եւ Ինճիճեան (էջ 395) նոյն իսկ հայ չեն յիշեր Կէօնեէ, կամ Կիւնեէ (= Կոնի), շրջանակի մէջ, եթէ այս կը հասկցուի:

*խրատումը ունէր, երբ հրատարակելով եկեղեցեաց եւն յիշատակարանք, կը հետեւցնէր. «Այս յիշատակարաններուն հին անուններէն կիմացվի թէ Տրապիզոնի Հայերը չէ միայն Անի քաղաքէն, այլեւ* Աճէմիստանէն *ալ եկած են, ինչպէս յայտնի է ստակներուն անունէն եւ ուրիշ բառերէն»: Այսինքն՝ Տրապիզոն դտնուած են Հայք ի հարկէ ամէն կողմէ: Ի վերջոյ Անւոյ գաղթն ալ միայն հնարաւոր ասանդութիւն մըն է: Բայց Համշէնցի կար՝ եւ նաեւ «հին տներ» եւ այս՝ բնական էր: Տրապիզոն կեդրոն էր Խաղտեաց, որուն կը վերաբերէին Սեւ Գետ ու Համշէն, ինչպէս Բիւզանդեանց օրով, նոյնպէս Կոմնենեանց եւ դարձեալ օսմանեան տիրապետութենէ* (1461) *ետքը: Այն պարագան որ Տրապիզոնի Համշէնցիք իրենց բնիկ հայրենեաց հետ մեղրամոմի հարկ կը հատուցանէին, համեմատ է տաճկական վարչութեան այն ժամանակի դրութեան: Այս միանգամայն ապացոյց է թէ այս Համշէնցւոց մաս մը հին դաղթական ալ էր այսինքն՝ բնի մահմետականացումէ շատ ալ յառաջ հոն հաստատուած էին:*

§ 22. *Ասոնք քաղաքին մէջ խօսացուցած էին նաեւ Տրապիզոնի բարբառը, մինչ գիւղացիք պահած են Համշէնի բարբառը. Տրապիզոն ուրոյն բարբառ մ՚ունի, բայց՝ ինչպէս Հր. Աճառեան կը շեշտէ*[172], *«կը տա–*

---

[172] *«Հայ. բարբառագիտութիւն»:*

րածուխ փոքր շրջանի մը մէջ, որ կը պարունակէ միայն Տրապիզոն, Կիւմիւշխանէ եւ Կերասոն: «Վերջինս Տրապիզոնէ եկած գաղթականութիւն մ'է»: Նորագոյն ժամանակներս «բաւական ստուար թիւ մը գաղթեց Կովկաս եւ Սեւ ծովու եզերքները հաստատուեցաւ (Բաթում, Փոթի, Կերչ, Սեւաստապոլ, Եալտա) «Տրապիզոնի շրջակայ գիւղերը չեն մտներ նոյն բարբառին շրջանակին մէջ եւ կը պատկանին Համշէնի բարբառին»:

Վերջինս՝ բացի բուն Հայրենիքէն (Համշէն–Սեւ Գետ)՝ կը խօսուի ցրուած ժողովրդենէ, որ կը բնակի ինչպէս «Տրապիզոնի մօտակայ գիւղերը», նոյնպէս սփռուած «Ունիէ, Ֆացա, Թերմէ, Չարշամպա, եւ աւելի հեռուները[173] Սամսոնի շրջակաները,

[173] Հետեւաբար Համշէնցիք եւ Սեւ Գետացիք մեծ թիւ մը կը կազմեն այն վիճակագրութիւններու մէջ որ հրատարակուած են Տրապիզոնի թեմի ենթարկեալ դպրոցաց համար, որոնց ազդեցութիւնը բարբառի մասին անտեսելու չէ· «Տրապիզոնի թեմին Ուսուցչական Ա· Համագումարը» տեղեկագրութիւն մը (տես «Հորիզոն» թերթ, 1914, թիւ 86) Տրապիզոնի մէջ կը դնէ 3 դպրոց (663 աշակերտ)· յետոյ կու գան գիւղախմբերս՝ Եօմուրա (դպրոց 11, հմմտ· Հայկունեաց տեղագրականքը՝ ԱՐՏՏ, 1895, էջ 239—40, եւ մանաւանդ 294—95, ուր հայ գիւղերը մանրամասն կը նկարագրուին)· Ագչէապատ (11 դպր·), Կերասոն (3 դպր·), Օրտու (2 դպր·) եւ Թրիպօլի (2 դպր·) — այս շրջանին մէջ ընդ ամենայն 32 դպրոց՝ 2515 աշակերտով: Այս հաշուին մէջ չեն ի հարկէ Հայ-

Սինոպ եւ Նիկոմիդիա» եւ «վերջին կոտորածներէն առաջ եւ յետոյ՝ Համշէնցի Հայերու նոր ստուար գաղթականութիւն մը անցաւ Կովկաս, ուր հիմնեցին բազմաթիւ փոքրիկ հայ գաղութներ Սեւ ծովի եզերքներուն

---

կաթուղիկեայք են: Ուրիշ բաժանումներով՝ բայց ընդհանուրը նոյնպէս վիճակ մը կը ներկայացնէ՝ Վաղեմի Ուսուցիչ «Տրապիզոնի Թեմին վիճակագրութիւնը» (ի«Բիւզանդիոն» 1900, Թիւ 1035—36), որ 47 վարժարան կը դնէ, որոնց 21ը «Տրապիզոնի շրջակայ գիւղերու մէջ», 17ը «Օրտուի շրջակայ գիւղերու մէջ» եւ 3 ալ Կիւմիւշխանէի շրջակայ գիւղերու մէջ, 5 հատ «գաւառակներու քաղաքներուն մէջ»: Աշակերտաց թիւը կը դնէ 2998» գրեթէ ամբողջովին մանչ (718 աղջիկ միայն, նշան՝ այս մասին կրթութեան տակաւին շատ թերի ըլլալու, ինչպէս այլուր ալ): «Տրապիզոնի Թեմի» ամբողջ Հայերը կը հաշուէ 24·000 անձ: Հոս ալ բնականապէս հաշուի մէջ չեն Կաթող· Հայք են, ինչպէս հաշուի մէջ չեն այս Թեմէն դուրս եղող Համշէնցիք: — Ս. Հայկունի ուրիշ յօդուածի մը մէջ («Տրապիզոնի հայ գիւղական կեանքը»՝ ԱՐՐՏ, 1905, էջ 737 եւն) ուրիշ ընդհանուր թուեր կու տայ: Ըստ այսմ ի Տրապիզոն իբր 1000 տուն հայ կայ, (4000 տուն՝ յոյն, եւ 8000՝ թուրք)· եւ գիւղերն ալ նոյն համեմատութեամբ, միայն թէ Հայք աւելի սակաւաթիւ են եւ հոն: Տրապիզոնի հարաւ եւ արեւմտեան հարաւ ուղղութեամբ (Համշէնցի) իբր 20 գիւղեր կ'ըսէ 2 ժամէ մինչեւ 15 ժամ հեռաւորութեամբ, եւ իբր 2000 տուն, ընդհանրապէս անտառներու մէջ: Գիւղերը երկար շինուած են, անոնց տները տարածուելով 1—2 ժամ երկարութեան վրայ, տներն ալ իրարմէ շատ հեռու շինուած, շրջապատուած արտերով են (էջ 738—39):

«վրայ» եւն[174]: Այս ժողովուրդն սովորութիւն է կոչել պարզապէս «Համշէնցի», բայց դարձեալ — անյատուկ կերպով՝ իրենց տարազին պատճառաւ — «Հայ-Լազ»: Ասոր այն չափազանց տարածումը՝ մէկ կողմանէ դէպ ի Նիկոմիդիա, միւս կողմանէ Սեւ ծովու ռուսական ափունքները՝ նոր ժամանակի է: Երկու մասերուն վրայ ալ բաւական ընդարձակ գրութիւններ կան այժմ: Նախ «Հայ-Լազերու» մասին Նիկոմիդիոյ շրջանին մէջ մանրամասն խօսած է Մինաս Գ. Գասապեան՝ Նիկոմիդիոյ Հայոց մասին իւր երկասիրութեան մէջ[175]: Ինքն ասոնց գաղթը կը դնէ իբր 1870է սկսեալ՝ Օրտուի շրջանէն: Այս «բնիկ Համշէնցիք» գոհ չէին, կ'ըսէ, իրենց վիճակէն, հողազուրկ էին եւ ճնշմանց ենթակայ. միւս կողմանէ գուշագործ, տաշտագործ եւ ատաղձաչէն էին. Եւ այս արուեստի շնորհիւ շատերն արդէն Նիկոմիդիոյ Գարասու գիւղախմբի ծովեզերեայ (Սեւ ծովու) անտառախիտ մասերը կու գային աշխատելու: Արդ 1873ի «խլամ-

174 Հմմտ. Հր. Աճառեան, «Հայ բարբառագիտութիւն», էջ 184 եւն. նոյն բարբառի մասին՝ անդ, էջ 184—195, ուր յիշուած են այլ գրուածքներ ալ բարբառիս մասին (յԱՐՐՏ, ի «Հանդէս Ամս.» եւ «Բիւրակն», որոնցմէ դուրս կան նոյնպիսի մանր ուրիշ գրուածքներ ալ. (օր. Բարդէն Վ., «Համշէնցիներու հայերէնը»՝ «Լոյս» 1906, էջ 40—41, եւն):

175 Մինաս Գ. Գասապեան (Ֆարհատ), «Հայերը Նիկոմիդիոյ գաւառին մէջ». Պարտիզակ 1913:

գաղթային, քաղաքականութեան» հետեւութեամբ ինչպէս նոյն Օրտուէ եկող Յունաց նպաստեց գաղթելու այս կողմերը, որոնք իբր 20 գիւղ հիմնեցին, նոյնպէս Հայք հետեւեցան, եւ հիմնուեցան մասամբ Գարասուի գետակի երկու կողմը՝ Յունաց մօտ, եւ Գուրտ լերան Խանդիկի կողմի կողերուն վրայ, մասամբ Պարտիզակի եւ Օվաճըգի գծի եւ կոնակի մասերուն մէջ Մանիշակ գիւղ, գիւղ մ'ալ Արմաշի եւ Տաղ գիւղի միջեւ Խաչ գիւղ: Գլխաւոր գիւղերն են Արամ գիւղ, Գեղամ գիւղ եւն: Շատ գիւղերը բոլորովին նոր ալ են, կայ նոյն իսկ 1902 թուին հիմնուած[176]: — Աւելի հետաքրքրական է այս գրութեան մէջ Համշէնցի «Մահմետա-

---

176 Անդ, էջ 81: Արամ գիւղ կամ Գըզըճըգ, Սեւ ծովու եզերքէ $2\frac{1}{2}$ ժամ հարաւ, Գարասուի կենդրոն Ինճիրլիի եռեւը՝ 2 ժամ, շրջապատուած «յոյն–լազ» գիւղերով. երեք թաղ ունի, որոնց մեծը առաջինն է (43 տուն): Կը յիշուին Օրտուի այն գիւղերն՝ ուսկից գաղթած են 1873ին: — Գեղամ գիւղ կամ Գովուf փէլիք, նախընթացէն 3 ժամ արեւելք, այլեւայլ բաժիններով (բուն Գեղամ գ. 37 տուն., Զաfար գ. 30 տուն, Թէփէ գիւղ 16 տուն, եւն եւն: Ասոնց կարգէն է Աչմա–պաշի հայ–մահմետականաց գիւղը, նոյնպէս Համշէնցիք — Ֆարհատ նշանակած է նաեւ հիմնարկութեան թուականները, որոնց համեմատ շատերը լիովին նոր են, ինչպէս՝ Թէփէ–գիւղցիf եկած են 1902ին, Հովիւ (= Զոպան) գիւղ հիմնուած է 1884ին Խաչ գիւղ (Արմաշի մօտ) 1897ին, եւն: Աւելի հին է Պարտիզակի շրջանի Զաfար գիւղ հիմնուած է 1878ին Օրտուէ, բայց Մանուշակ գիւղը (որ նախ ուխտատեղի էր)՝ 1892ին, եւն եւն:

կան Հայեր» գլուխը[177]: Ասոնք կը գտնուին նոյն գաւառին արեւելեան հիւսիսային մասին մէջ, եւ այլեւայլ ընտանիքներ՝ ցրուած Պարտիզակի եւ Նիկիոյ միջեւ գտնուող Ալմալու գիւղը, Կէյվէյի կողմերը են: Բայց յատուկ անխառն գիւղ մըն է Հայ-Համշէնցւոց մօտ վերոյիշեալ Գեղամ (Ատաբազարի վիճակի Գարասու գիւղախմբի) գիւղի վերեւը, սարին կատարը շինուած Աչմա-Պաշը գիւղը (42 տուն) հայախօս. այսինքն, կ'ըսէ, այրերն իսկ կը խօսին հայերէն. «իսկ մահմետական հայ կիները մանաւանդ բոլորովին կ'անգիտանան ուրիշ լեզուներ»: Պահած են հայ սովորութիւնքն, ունին հրաշագործ «գիրք» մը եւն: Բայց արք, կ'ըսէ, անծանօթներու առջեւ կը խուսափին հայերէն խօսիլ: Աշխատասէր ժողովուրդ մըն են: — Կան ուրիշ երկու հայ-մահմետական գիւղեր որոնք Գաստամունի նահանգի Տիւզճէ վիճակի Ադչէ-Շէհիրի գիւղախմբի մէջ են, նախ՝ Եէնիճէ (40 տուն), եւ Գարա-Թավուգ (25 տուն): Ասոնք հոս գաղթած են Խոբէի կողմերէ, ուր նախ գաղթած էին մերձաւոր Համշէնէ: Ասոնք ալ հայախօս են: Բայց արդէն թրքախօս է Եէնիճէէ 1 ժամ հեռու եղող գիւղը կամ Թաղը (35 տուն), ուր ծերերը միայն տակաւին հայերէն կը խօսին: Ասոնք Պաշ-Համշէնցի կը կոչուին՝ իրենց բնիկ հայրենի գիւղին անուամբ (միւս Հայ-

177 Անդ, էջ 143—47:

մահմետականները դանոնք Այօեցի կը կոչեն): Այս հայ-մահմետականք, կ'ըսէ, շատ մաքուր հայերէն բարբառ մը կը խօսին, նոյն իսկ աւելի մաքուր քան Հայ-Լազերունը[178]:

Շատ ընդարձակ գործ մըն է՝ Սեւ ծովու ռուսական ափանց վրայ ցրուած Համշէնցւոց մասին Յ. Մուրատեանի երկասիրութիւնը, որ ընդարձակ ազգագրութիւն մըն է՝ նախ լոյս տեսած «Ազգագրական Հանդէսի» մէջ[179]: Ասոնք ոտք կոխելով այդ ամայի եւ անմարդաբնակ ափնավայրերը՝ տնտեսական ծաղկման ռահվիրաներ իսկ եղած են, իրենց դրաջան աշխատասիրութեամբ, գլխաւորաբար ծխախոտի մշակութեամբ, որով այդ շրջանն այսօր ծխախոտի առաջնակարգ արդիւնաբեր վայրերէն եղած է: Բայց այս գլխաւոր պարապումն իսկ կը ստիպէր որոշ, ջուր ունեցող տեղերու կապուիլ, փոքր գիւղեր կամ տներու խմբեր միայն կազմել (միջին 20—30 տուն) շրջապատուած ծխախոտի արտերով եւ

---

[178] Օրինակ կը բերէ՝ «փուր բնո՞ղ ես բէ» (= միթէ փայթ կ'ընես, «պիտի նայի՞ս»)․ hալեւոր, ցախուռ («անտառ», շուշտ ըրէ (= շուտ ըրէ)․ ածուf («պարտէզ») «խմիչf» մը բեյ («ջուր մը բեր») են:

[179] Յ․ Մուրատեանց, «Համշէնցի Հայեր․ ազգագրական նիւթեր»․ Տփղ․ 1901․ (նախ՝ «Ազգ․ Հանդ․» Գ, 1898, էջ 117—143․ Ե․ 1899, էջ 361—406, Զ, 1900, էջ 109—158), գործոյս այլեւայլ կէտերու մասին հմմտ․ Տ․ Յ․ ի «Մշակ» 1901, թիւ 265:

«ածուք»ով: Այլեւայլ այսպիսի գիւղամասերէ կազմուած են նաեւ մեծ գիւղերն, որ ժամերով երկարութիւն կրնան ունենալ, — ճիշդ իրենց հայրենեաց եւ առհասարակ Հայոց աշխարհի «գիւղ»երու նման, որոնք իրականին մէկ կամ աւելի ձորեր են: Դժբախտաբար ասոնց մեծ մասը սեպհական հող չունի, ուստի վարձեալ հողի վրայ կ՚աշխատի, եւ ի հարկին՝ կը ստիպուի թողուլ գիւղն իսկ ամայի եւ այլուր նոյն աշխատանքն սկսիլ: Գլխաւորաբար կենդրոնացած են Սուխումի շրջանի մէջ, ուր իբր 900 տուն են (իբր 1000 անձ ալ պանդուխտ): Հոս կան իրենց երկու մեծագոյն գիւղերը՝ Մծուրա եւ Ծէրէլդա, նախկին ափխազեան թափուր թողուած գիւղերը. (այժմ իւրաքանչիւրն իբր 150 տուն Համշէնցի): Սեւ ծովի միւս ափանց վրայ ալ ցրուած են, գլխաւորաբար Ադլէրի, Սօչիի եւ Շափշուկայի շրջանները (իբր 1000 տուն)՝ որոնց մէջ Շափշուկա «Համշէնցի Հայերի հիմնած առաջին գիւղն է Կովկասեան ափերում: Ռուսերը նրան անուանում են Հայոց գիւղ («Արմեանսկայա») թէեւ մի քանի տարի է՝ իրանցից էլ մի քանի տուն մնում են այնտեղ Հայերի հետ խառն»: Այս ահագին տարածութեան մէկ հայ գիւղէ մինչեւ միւսն երբեմն օրերով ճամբայ է: Իբր 4—500 տուն ալ կայ «Անապայի, Եկատերինոդարի, Մայկոպի ու Ղրիմի կողմերում»: Ընդ ամէնը կը հաշուէ՝ «բոլոր Համշէնցի Հայերը ամենաշատը հազիւ մի

2500 տուն կը լինին, «բայց յաւելլով իր 2—3000 անհատ «անտնուոր բանուոր» պանդուխտները՝ ամբողջն իր 15.000 անձ կ՚ըլլայ: Եթէ կ՚ըսէ այնչափ ընդունինք Նիկոմիդիոյ կողման գաղթականները (— անշուշտ առհասարակ օսմ. երկրի մէջ եղածները —) իր 30.000 կ՚ըլլայ «Համշէնցի կոչուած թիւրքահայերի թիւը[180]»: Այս թուերն ի հարկէ շատ ընդհանուր գնահատումներ միայն են: — Ազգագրական միւս ընդարձակ տեղեկութիւնները մեր ծրագրէն դուրս են:

§ 23. **Մահմետականացում, Հարկեր եւ ազգաբնակութեան թուերը:** — *Մինչեւ հիմայ առիթ ունեցանք յիշելու այլեւայլ թուերը, եւ ուրիշ շատեր պիտի յիշենք յընթացս մեր գրութեան: Ասոնց մասին հոս քանի մը դիտողութիւն պէտք է, ցուցնելու թէ ինչպիսի հիմ ունին ասոնք եւ ինչպէս ըմբռնուելու են:*

---

180 Ուրիշ գիւղերու եւ գիւղամասերու անուններէն իբր օրինակ կը յիշուին «Մնացցոց գեղ», «Փափազցոց գեղ». «Արթին ուստի գեղ», «Սինդիւրդցոց գեղ» եւն, ուստի մաս մ՚իրենց հայրենեաց՝ ուսկից եկած են անունով, միւսները «հարուստ իշխան» եւ առաջաւոր մարդկանց անուններով: — Հետաքրքրական գլուխներ են՝ Համշէնցի Հայերի կազմուածքը, բնաւորութիւնը, զգեստն ու բնակարանը, Պարապմունքն ու տնտեսական վիճակը, Ապրուստը, Ամուսնութիւն ու Հարսանիք, եւն եւն: — Տրապիզոնի նահանգի Համշէնցւոց մասին շատ գեղեցիկ է Ս. Հայկունւոյ «Տրապիզոնի հայ գեղացու կեանքը»՝ ԱՐՐՏ, 1905, էջ 737—746, 934—942, 1034—1041, անդ՝ 1906, էջ 180—189:

Սեւ Գետացիք եւ Համշէնցիք, կ՚ըսէ Հայկունի, 16.000 տուն էին այն արիւնալից մահմետականացման ատեն, եւ յատկապէս Համշէն «մօտ 10.000 տուն, Սեւ Գետ 3—6000 տուն է»[181]: Ասոնք խոշոր թուեր են, եւ ընդհանուր գնահատումներ. բայց այսպիսի թուեր անսովոր չեն այն ամէն կողմերու համար, ուր ի հարկէ իրական մարդահամար գոյութիւն չունէր եւ չունի: Օրինակի համար թէ՛ Ինճիճեան եւ թէ՛ Բժշկեան Օֆի գաւառի համար կ՚ըսեն, «առաջ 80.000 տուն կը գտնէին.. բայց այնչափ չի կան. 20.000 տուն հազիւ կ՚ելլէ»[181a]: Քսանէ մինչեւ ութսուն հազար ահագին անջրպետ մըն է գաւառակի մը բնակչութեան համար: Սակայն եթէ Օֆ իրօք քանի հազար տուն ունէր, Սեւ Գետ եւ Համշէն յամենայն դէպս կրնային ունենալ 16.000 տուն: Բայց ունեցա՞ծ են իրօք եւ ունի՞ն: Ճիշդ է՝ նաեւ Սմիթ լսած էր 3—4000 տուն թիւ մը, բայց Քոխ իր ուղեգրութեան մէջ բոլորովին տարբեր թիւ մը կու տայ, զոր լսած է բնականապէս Ճեմիլի իշխանէն: Համշէնի «ամբողջ լեռնաշխարհիկը, կ՚ըսէ. 1.500 ցանուցիր դրուած տնէ աւելի չունի. եթէ տուն գլուխ առնունք միջին թիւ մը $5^{1}/_{2}$ բնակիչ, ամբողջ Համշէնի համար միայն

---

181 Հայկունի, անդ, էջ 239—240:

181a Բժշկեան, էջ 93. նոյնպէս Ինճիճեան, էջ 393 «Թիւ բնակչաց չէ 80 հազար թիւթիւն այսինքն ծուխ կամ տուն, որպէս ոմանք համբաւեն», բայց ինքը թիւ մը չի նշանակեր:

8000 անձէ քիչ մ'աւելի կ'ըլլայ»[181b]։ Արդ 1.500 տուն եւ «մօտ 10.000 տուն» հսկայ անհամաձայնութիւն մըն է. բայց եթէ վերջին թուոյս «տուն» առնունք իբր անձ, հաշիւը քիչ շատ կը մօտենայ եւ կը համաձայնի։ Այս է իրական վիճակն անթիւ տեղերու մասին ալ տրուած թուերու, որոնք յետոյ յաճախ կը կրկնուին, իսկ եւրոպացի գրողներն երբեմն իբր թէ եւրոպական մարդահամարի արդիւնք ըլլային՝ այնպէս կը ներկայացնեն։

Իրական եւրոպական ոճով մարդահամար չկայ նաեւ այսօր. իսկ այն հին ժամանակներու մասին խօսք անգամ ընելու չէ։ Անշուշտ պետութիւնն այն ատեններն ալ պէտք ունէր ընելու, եւ ըրած է, այլեւայլ «աշխարհագիր» մանաւանդ երբ նոր գրաւած երկիր մը կը կազմակերպուէր եւ ընդհանուր հարկերը կ'որոշուէին, նոյնպէս յետոյ նոր հարկերու յաւելմանց պատճառաւ կը կազմուէին տետրակներ, կամ «դաւտար» ինչպէս կը գրէ Յակոբ Կարնեցի։ Այս կը յիշէ

---

181b Քոխ, էջ 24—25։ — Սմիթ (*Eli Smith* and *H. G. O. Dwight*, Missionary Researches in Armenia, London 1834, p. 457 Համշէնի համար կ'ըսէ. «Մեր տեղեկատուն, Տրապիզոնի պապական (= հայկթղ.) Հայ մը, Համշէնի ժողովուրդը կը համարի (estimated) երեք կամ չորս հազար տուն, որոնք 70—80 գիւղեր կը բնակին։ Ասոնց մեծագոյն մասը մահմետականութիւն ընդգրկած է իբր 200 տարի յառաջ. բայց տակաւին հայերէն կը խօսին, եւ իրենց կանանց մէկ մասն ուրիշ լեզու չի գիտեր» եւն։

նման աշխարհագիր մը, երբ Ջաֆար մօլլայ 1643 թուին հրաման տուաւ «յաշխարհագիր առնել զբոլոր շրջակայ երկիրս Արզրումայ. եւ ելեալ արար դաւտար եւ կապեաց ծանր խարաճ, եւ եդից մեծ եւ փոքր ի թագաւորական դաւտարն»[181c]: Այս եղաւ Թորթումի մահմետականացման պատճառներէն մին, եւ այս «խարաճ»ի խնդիրն, որով կը հասկըցուէին հարկերու որոշ՝ բայց մեծ շարք մը (գլխահարկ, կալուածոց հարկ, եկամտից հարկ եւն), գլխաւոր ազդակն էր նաեւ դաղթականութեանց եւ առիթ՝ ամէն կարգի հարստահարութեանց հանդէպ քրիստոնեայ տարրին, քանի որ իսլամական կրօնից հիմնական սկզբունքն էր, զոր որդեգրած էր տաճկական օրէնսդրութիւնը («կանոն»ք Սուլէյմանայ եւն). Հարկերու շարք մը (յատկապէս հողային, կալուածոց եւն) քրիստոնէից միայն սեպհական սահմանել, որոնցմէ ազատ էին մահմետականք: Վարչական այս ամբողջ կազմակերպութիւնը ծանօթ է, եւ անոր համար հանրածանօթ նաեւ այն պարագան թէ ինչպէս կ՚ըլլային եւ ի՛նչ նպատակաւ այս «աշխարհագիր»ներն ու «դաւտար»ները: Այս նպատակին համար կը բաւէր գաւառաց, գաւառակաց եւ գիւղերու ընդհանուր ցուցակագրութիւնը, նոյնպէս ընդհանուր միջին թուով մը տներու, էական զանազանութեամբ թէ քանի գիւղ ու տուն քրիստոնեայ է, ինչպէս նաեւ երկրին ընդ-

---

181c Յակոբ Կարնեցի, էջ 18:

հանուր արտադրութեանց։ Եւ քանի որ նոյն իսկ մեր օրով «հարկահաւաքութիւնը պետական չէ, այլ ամէն տարի աճուրդով կը վաճառուի, եւ գնողն է իրական հարկահաւաքը, հին ժամանակները գնողն էր ուղղակի կուսակալը, անկէ՝ գաւառապետն եւ այսպէս ի կարգին։ Անոնք էին իրական տէրը բնակչութեան, հաւաքիչ տրոց եւ ամենայն ինչ։ Վերջիններն իրենց սեպհական մասին գիւղերուն մերձաւոր թիւն անշուշտ կրնային գտնալ, եւ ըստ այնմ հարկ պահանջել· բայց շահ չունէին նոյնպէս ծանուցանել կեդրոնի վարչութեանց, ընդհակառակն շահ ունէին նուազ ցուցնել՝ նուազագոյն տուրք տալու համար, յօգուտ իրենց։ Կրնանք գուշակել թէ ինչ է արդիւնքը, որ ծանօթ է նաեւ այսօր, մանաւանդ այն ժամանակները։ Մեր յիշատակագրերու իսկ միայն տեղեկութիւններով, որոնք անվերջ հառաչանքներ են, կրնանք այս մասին ընդարձակ՝ շատ տխուր՝ պատմութիւն մը հիւսել[182]։ Ի՜նչ պատկեր

---

182 Կը շատանանք յիշել յիշատակարան մը ճիշդ այն ժամանակներէն, երբ սաստիկ հարկապահանջութիւնն ալ դրդիչ միջոց էր մահմետականացման այն շրջանին։ Ե. Լալայեանց («Ջաւախք», Տփղիս 1897, էջ 314—15 = «Ազգ. Հանդ.» Բ, 290—91) հրատարակած է այժմ Ձանձղա գիւղը գտնուող Մաշտոցին յիշատակարանը, գրուած «ի Թուաբերութեանս Հայոց ՌՃԽԳ (= 1694) ունիս ամսոյ ԻԶ օր Գշբթի, ի գաւառս Ծախթեաց, որ այժմ կոչի Բաբերդ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի որ է մեղի եկեղեցի» եւն։ Յիշատակագիրը՝ Գրիգոր կ'ըսէ. «Արդ գրեցաւ սա

է օրինակի համար Կարնոյ Նահանգին հարկերու մասին Ուխտէրի գծածը՝ ԺԸ. դարուն համար, եւրոպական ուղեւորներու

---

ի դառն եւ ի դժուար ժամանակին, որ իբրեւ գնաւ մրրկեալ եւ ալեկոծեալ կայաք ի ձեռս անաւրինացն եւ գաղանաբարոյ բռնաւորացն: Զի ազգի ազգի նւ պէսպէս պատրանօֆ նւ անխտիր թալանէին նւ կողոպտէին զազգս քրիստոնէից անողորմաբար: Եւ կայեաք ի մէջ այլազգեացն անտերո(ւ)չ: Ոչ ունելով զառաջակայ եւ ոչ գլուխ ժողովրդեան, այլ մնացեալ աւերերան եւ լալք ի մէջ օձից Թունաւորաց, զի որում ոչ կարեաք յաջ գնալ եւ ոչ ահեակ վասն անաւակ գործոց մերոց որ կու կողոպտիմֆ ի ձեռս այլազգեաց: Եւ զի առաջին ժամանակն հաստատեալ կայր ի միջի մերում հարկս որ այժմ ասեն խարաճ, եւ սայն (= Թիւն, սակն) եւս հաստատեալ էր հայրեննեաց մերում ի վերայ ճափարի (= անձն) եւ մեք կու տայեաք անխտիր: Եւ այս Գ. ամ է որ ուրիշ ուրիշ սահմանֆ արծարծելով վերխուցին զճափարին խարաճն եւ արարին խարաճ բխտի երեֆ բաժին. առաջին ալա (= բարձր) որ էր Դ ոսկի չարիֆի (= «չարիէֆ»՝ քառո՞րդ, Թէ «զարիֆ» = չարպ). եւ երկրորդն յաւսաթ (= վասիթ՝ միջին) որ էր Բ ոսկի եւ երրորդն յայտնալ (= յետնեա՞լ). որ է Ա ոսկի: Դ ոսկին կ'անէր Թ ղռշ. եւ էր ԽԸ դրամ արծաթ, եւ Բ ոսկին՝ Դ ղռշ. որ կ'անէր ԽԴ (= ԻԴ՞) դրամ արծաթ. եւ Ա ոսկին կ'անէր Բ ղռշ. յռպ. (= չորրորդ մասն) որ էր ԺԲ դրամ արծաթ: Եւ էր ալայն ծանր խօճա մարդոյն, եւ աւսաթն՝ միջնասահման մարդոյն եւ յայտնան՝ էր յետնացեալ մարդուն, որ է վերջին աղքատն: Եւ նոքա յարեան ի վերայ քրիստոնէից եւ եկեալ Թալանեցին անողորմաբար, մեծատունք եւ միջնասահմանքն եւ աղքատքն հաւասար իւրեանց գիտութեան եւ վերջն Աստուծոյ է գիտելի զինչ լինելոցն» են: — Կ'արժէր այս եւ նման

(Տուրնըֆոր, Ժոբէր եւն) իսկ միայն տեղեկութեանց համեմատ աւելի եւս Ինճիճեանի նկարագրածը[182a]: Կարնոյ փաշան, որ Բէկլէրբէկ էր (իրեն ներքեւ ունենալով փաշաներ), սուլթանին կը վճարէր 300 քսակ. իրեն իրաւունքն էին վաճառաց մաքսերուն հարիւրին երեքը որով անհուն հարստութիւն կրնար դիզել: Կարին նահանգը կը վճարէր սուլթանին տակաւին 600 քսակ, եւ անկէ զատ՝ 300 քսակ իբր «խարաճ» կուտային Հայերն ու Յոյները, սուլթանին էր նաեւ մաքսերու հարիւրին վեցը, եւն: Տակաւին այս հաշիւներէն դուրս են եէնիչէրիներու տրուած հողերու համար որոշուած

---

ուրիշ յիշատակագրաց տեղեկութիւնքն հաւաքելով՝ ճշդել հաշիւները եւ հայկաց պատմութիւն մը գծել՝ համեմատութեամբ օտար աղբերաց:

182a *C. Ritter*, Die Erdkunde. West-Asien (Bd. IX), Berlin 1843, p. 753, եւ այլուր, Տեղեկութիւնքս քաղած է Tournefortի (*J. Pitton de-'* Relation d'un Voyage du Levant. Amsterdam 1718, Paris 1717), *Jaubert*ի (A., — Voyage en Arménie, Paris 1821), դարձեալ M. Kinneirի, J. Brantի եւ բազմաթիւ այլ ուղեւորաց գրութիւններէն: Ինճիճեանի (էջ 71—75) տուած տեղեկութիւնքն շատ աւելի բարձր եւ պէսպէս կը ցուցնեն Կարնոյ հարկերն ու տուրքերը, նոյնպէս Կարին մտած եւ անկէ անցած ապրանաց մաքսերն՝ որոնց ցուցակ մ՚իսկ կը դնէ հարիւրէն 4% մինչեւ 11% իսկ (Պարսից կողմէ եկածներու): Տուրքերը «բազում անգամ փոփոխին», եւ «ի քաղաքին Էրզրումայ զայսպիսի տուրս միայն Հայք վճարեն. բայց ի գիւղօրէս Էրզրումայ՝ Հայք եւ Տաճիկք եւս վճարեն» եւն եւն:

տուրքերը՝ հանդէպ պետութեան եւ կուսակալի, եւ իրենց աղային. որուն փոխարէն ի հարկէ կրնային ընել՝ ինչ որ կ'ուզէին, միայն պարտաւոր ըլլալով պատերազմի ատեն որոշ թուով հեծեալ տալ (յատկապէս «զի'ամէթ» եւ «թիմար» կոչուած կալուածոց վայելողք): Լաւագոյն դրից մէջ էին միայն այն մասերն, որոնք կիսանկախ գաւառապետ–իշխաններու ներքեւ կ'ապրէին, ո՛չ ուղղակի կեդրոնական իշխանութեան ենթարկուած: Հոս այն իշխանը պարտական էր որոշ հարկ մը հատուցանել. մնացեալն իր գիտնալիքն էր, ինչպէս իւր գաւառին ներքին վարչութիւնն իր ձեռքն էր, եւ ինչպէս վերը յիշուեցաւ, Պոնտական գաւառաց (Համշէն, Բերդագրակ եւն) համեմատական բարեկեցութիւնն ասկէ կը ծագէր: Անգամ մ'որ սահմանուած էր թէ օրինակի համար Համշէն 2000 հոխա մեղրամոմ տալու է իբր հարկ, այն կը մնար, ամենեւին հոգ չէ թէ Համշէնի գիւղացիք կ'աւելնային թէ կը պակսէին, հոն էին թէ կը գաղթէին. վերջինքն՝ երբ մանաւանդ նոյն նահանգին մէջ թիւ մը կազմէին, կցորդ էին իրենց բնիկ հայրենեաց տուրքին: Թէ բուն մարդահամարի տեսակէտով իրերն ի՛նչ վիճակի մէջ էին նաեւ ԺԹ. դարու սկիզբը, կը ցուցնէ այն պարագան որ երբ Ռուսները 1828ի պատերազմին առին Կարինը, միայն անոր արական անդամոց ընդհանուր թիւ մը կրցան գտնել, իսկ նահանգին մասին միայն այսչափ իմանալ թէ

իւրաքանչիւր գաւառ (Սանճագ) իբր 200 գիւղ ունի՝ իւրաքանչիւրը 10էն մինչեւ 50 տուն: Արդ ասոր հետ համեմատելու է Կարնոյ մաքսապետի մը (1831ի) տուած տեղեկութիւնը թէ Կարնոյ նահանգի 9 գաւառները 3800 գիւղ ունենան, ըսել է իւրաքանչիւր գաւառ 400 գիւղէ աւելի, նախընթացին կրկինը[182b]: Այս պատերազմէն ետքն է որ օսմ. վարչութիւնը սկսաւ նոր կազմակերպել այս երկիրները, եւ առաջին անգամ մարդահամարի նման բան մ՚ընելու ձեռնարկեց: Սակայն թէ ասկէ շատ ետքն ալ ի՛նչ վստահութիւն կը ներշնչեն նաեւ պաշտօնական կերպարանք ունեցող թուերը, պայծառ կը տեսնուի, երբ համեմատենք ասոնք իրարու հետ: Իբր օրինակ առնունք, քանի որ Կարնոյ վրայ խօսք եղաւ, այս քաղաքին մասին տրուած — ուստի տեղւոյ մ՚որ կենդրոն էր եւ ուր ի հարկէ ճշդագոյն ըլլալ կրնային թուերը հին ու նոր թուերը:

§ **24.** Ինճիճեան կը գրէր. «Բնակիչք էրզրումայ ի ժամանակս Դահմասին առ զօրապետութեամբ Ահմէտ փաշայի (որ էր Պաղտատու վալի) ի համար արկեալ գտան

---

182b Ռիտտէր, անդ, էջ 754—55. Ռուսական 1828ի արշաւանքի վերաբերեալ մասերը յառաջ կը բերէ գործէն *v. Uschakoff*, Geschichte der Feldzüge des General Paskewitsch etc. (1828—29), aus dem Russischen deutsch bearbeitet von *Al. Lämmlein*, Leipzig 1838. կը յիշէ գործոյն գաղղ. խմբագրութիւն մ՚ալ, եւն:

90·000 տուն Տաճկաց եւ 10·000 տուն Հայոց· այս հաշիւ ստոյգ իմն է համարեալ առ Էրզրումցիս, իսկ անդի եւ այսր քանզի Թաղք Տաճկաց բազմացան եւ անդաստանք եղեն բնակարան, կարծի լինել 100·000 տուն Տաճկաց, եւ իբրեւ 13·000 տուն Հայոց, յորոց չորս մասն են օտարականք եւ մի մասն բնիկ քաղաքացիք Հայք»[183]: Այս հսկայ թուերուն վերջինը լոկ ենթադրեալ հաշիւ մըն է· բայց առաջինն իբր մարդահամար կը ներկայանայ, թիւ մ'որ Կարնոյ մէջ իբր կէս միլիոն բնակիչ կ'ուզէ դնել: Ասոնց քով, որչափ ալ տակաւին մեծ, շատ համեստ է Յակոբայ Կարնեցւոյ տուածը՝ ԺԷ· դարու վերջին կիսուն համար, «կան բնակեալ մինչ ի քառասուն հազար տուն մարդիկք իսլահիք եւ ենկիչարիք յոյժ ընչաւէրք, բայց յազգէս Հայոց երկու հազար տուն հազիւ թէ գտանի» են[184]:

---

183 Ինճիճեան, էջ 68:

184 Յակոբ Կարնեցի, էջ 37, եւ էջ 25—26· «Ունի սա (փաշայն Կարնոյ) ընդ ձեռամբ իւրով Իսլահիք, գիւղօրէից տեարք, ենկիչարիք եւ բերդորէից պահապանք Թագաւորական, ղուլ ու ծառայ, տամբ եւ տեղօք, որ գրեալ կայ զանուանս նոցա ի դրանն արքունի· որ հանապազ օլոֆայն եւ հացն կուտեն ԼՌ· ոգի, թո՛ղ զԹրդաց պարոնայքն՝ որ առանց գրի ու թոշակի են, եւ փաշային հետ բերած զօրքն՝ որ ոչ են մնացական, այլ յորժամ փաշան իւր տեղացն փոխէ Թագաւորն, առժամայն ինքն եւ իւրայինքն ելանեն ի քաղաքէն յայսմանէ: Եւ թէ մեծ պատերազմ լինի, Թագաւորի հրամանաւ իւր կերուածքովն ամենայն ՃՌ· թուրքի ձիաւոր ելանէ քաղաքէս» են:

*Հոս Հայոց թիւն իրականի մօտ ըլլալու է. իսկ մահմետականաց* 40.000 *թուէն ըստ ինքեան մեծ մաս մը հանելու ենք, քանի որ մէջն են «ենիչէրիք», (որոնց թիւը* 30.000 *կ'ըսէ Կարնոյ գաւառին համար* 1846) *ուստի՝ բանակը, որ այսպիսի կեդրոնի մէջ բնականապէս մեծ էր, բայց ըստ պիտոյից շատ փոփոխութեանց ենթակայ, ԺԸ դարու սկըզբին համար* (1701—2) *Տուռնըֆոր Կարնոյ բնակիչները կ'ըսէ* 18.000 *թուրք տուն,* 6000 *հայ տուն,* 400 *յոյն տուն եւ* 12.000 *ենիչարի*[185]*: Հոս Հայոց թիւը բարձր է, աւելի բարձր քան* 1828—31*ի գաղթականութեան օրերուն, թուրքաց՝ նուազ: Նոյն իսկ Ռուսներն այս միջոցին մեծ թիւ մը կը ներկայացնեն, ըսելով թէ Կարին ունէր իբր* 80—100.000 արու *բնակիչք, որոնց հինգերորդ մասը՝ Հայք*[186]*: Այսպիսի թիւ մը կու տան ուրիշներն ալ:*

*Ասկէ ետքը յանկարծ կը փոխուի պատկերը, Կարնոյ գլխէն ի հարկէ շատ տաք ու*

---

185 *Այսպէս կը հասկնայ իրաւամբ* Րիտտէր (*էջ* 757—58) *թէեւ Տուռնըֆոր «տուն» չի գրեր, միայն ենիչէրիներու թիւն՝ անձ հասկնալով: Տուռնըֆոր կը գրէ* «կը կարծուի *թէ Արզրումի* (Erzeron) *մէջ Թուրքերը* 18 *հազար են, Հայերը՝* 6 *հազար եւ Յոյները* 4 *հարիւր:* Կը համարին *թէ* 60.000 *Հայեր կան նահանգին մէջ, եւ* 10.000 *Յոյներ: Էրզրումի մէջ Թուրքերուն* գրեթէ ամէնքն *ալ* ենիչարի *են. ասոնք կը հաշուին իբր* 12.000, *եւ նահանգին մնացեալ մասին մէջ* 50.000*է աւելի» եւն եւն:*

186 Րիտտէր, *էջ* 764 (*ըստ Ուշաքովի*)*:*

պաղ անցաւ, բայց այս աւելի Հայոց համար էր թէեւ Թուրքերն ալ կրեցին աւելի մեծ պատուհաս մը՝ ժանտախտը: Հայք, ինչպէս ծանօթ է, այնպէս հիմնովին թողուցին Կարին ու գաղթեցին Ռուսաց հետ դէպ ի Ախալցխա ու Կիւմրի, որ քաղաքն, (— ինչպէս առհասարակ Կարնոյ ամբողջ նահանգը —) լքուելին ամայացաւ: Որչափ ալ չափազանցութիւն համարինք այն տեղեկութիւնը թէ 120 տուն հայ միայն մնաց, մինչ 4000է աւելի տուն Կարնէն գաղթեցին, իրը յէականս ուղիղ է: Այս գաղթականութեամբ բնակչութեան ահագին փոփոխութիւնը լաւ կը պատկերացնեն Սմիթ եւ իւր ընկերը նոյնպէս: Բորէ կ'ըսէ թէ 450 տուն Հայ-կաթուղիկէից թուէն մնացին միայն 36 տուն[187]:

---

[187] Սմիթ այցելած է ճիշդ 1831ին, Բորէ՝ 7 տարի ետքը: Առաջինը կը գրէ· (*Eli Smith* and *H. G. O. Dwight*, Missionary Researches in Armenia, London 1834, p. 64)· «Կարնոյ ժողովուրդը» քանի մը տարի յառաջ եղած ժանտախտի դժնդակ աւերածներէն յառաջ կը համարուէր իբր 100·000: Ռուսական արշաւանքին ատեն, ինչպէս ըսին, հարկահաւաքին վկայութեան համեմատ, երբ երկրորդ անգամ այցելեցինք, ունէր 11·733 տուն տաճիկ, եւ 4645 տուն քրիստոնեայ, որոնք իբր 80·000 հոգի ժողովուրդ մը կ'ընէ: Քրիստոնեայ բնակիչներէն՝ 50 տուն Յոյն էին, եւ 646 տուն «պապական Հայք» մնացեալ 3950 տուն, իբր 19·000 հոգի հայ եկեղեցւոյ կը վերաբերէին»: Գաղթականութենէ ետքը (էջ 441) քաղաքն «աւերակ, կ'ըսէ, վաճառանոցներն ամայի: «Իւր նախկին քրիստոնեայ ամբողջ բնակչութենէն մնացած ն միայն 120 հայ եւ 48 պապական-հայ ընտանիքներ,

Բրանտ, որ Կարնոյ անգղիական հիւպատոսն էր Ռուսաց գալէն յառաջ 1827ի Կարնոյ բնակիչները 130.000 կը դնէ, 1835ին միայն 15.000 անձ գտած կ'ըսէ[188]։ Ժանտախտը կը տիրէր, քաղաքն ու ամբողջ երկիրը աւերածութեան մէջ էր։ Քաղաքին ամբողջ թաղեր ամայի եւ աւերակ էին, 6000 խանութներու կէսը գոց են։ Ասոր հակառակ երկու տարի վերջ 1837ին՝ «երբ Ասիական Տաճկաստանի առաջին մարդահամարը (Census) կատարուած էր», հոն 37.000 անձ կը բնակէր[189]։

---

վերջիններս մօտերս եկած ըլլալով ուրիշ տեղերէ, իր նախկին 6600 խանութներէն 3000ըն այժմ փակ են» եւն։ — Բորէ (*E. Boré*, Correspondance etc., Paris 1840, I, p. 396 ff.) կ'ըսէ թէ «Գաղթականութեան ընդհանրութիւնը կրնանք դատել քաղաքին մէջ մնացած կաթուղիկէից թուէն։ Արդ 450 ընտանիքէ մնացած են միայն 36, ասով այլեւայլ թաղեր ամայի են եւ աւերակ, եւն։ Բորէի տուած միւս հետաքրքրական թուերը Կարնոյ եւ Տայոց կաթուղիկէից՝ յետոյ առիթ կ'ունենանք յիշելու։

188 *J. Brant*, Journey through a part of Armenia and Asia Minor, London 1836 (ի Journal of Roy. Geogr. Soc. XI, p. 187—223), p. 201. — Այս եւ ուրիշ այլեւայլ թուերու մասին հմմտ. բացի Ռիտտէրէ 642—43, 764 եւն, նաեւ *Lynch*, Armenia, II, 206—207, դարձեալ եւ «Բնաշ. Բառարան», Բ, 299—325, եւ ուրիշ գործեր, զորոնք չենք յիշեր։

189 Ռիտտէր, էջ 764 այս տեղեկութիւնը յառաջ կը բերէ Southgateէ, որ կ'ըսէ (*Horatio Southgate*, Narrative of a Tour through Armenia, Kurdistan, Persia and Mesopotamia, Vol. I, London 1840, p. 175). Ի Կարին կը գտնուին ամէն կարգի

Այժմ քիչ մ՚ալ յաջորդ «մարդահամար»ի (— կամ անոր նման —) հաշիւներէն: Մեր ազգայիններէն Բարունակ պէյ Ֆէրուհխան 1847ի ուղեւորութիւն մ՚ըրած է Հայաստանի մէջէն դէպ ի Բաբելոն պաշտօնական հանգամանօք՝ ընկերանալով Րաղուպ պէյ սենե–կապետի: Իր ճանապարհորդութեան Յիշատակագրութեան մէջ յառաջ կը բերէ նաեւ բնակչաց եւն մասին տեղեկութիւններ, «որոնք ստոյգ աղբիւրներէ» են: Արդ հոս Կարնոյ թիւը կը ներկայանայ ամենայն մանրամասնութեամբ: Կարին ունէր 11.060 տուն՝ 65.400 բնակչով, որոնց 9350 տուն (57.100 անձ) մահմետական եւ 1710 տուն Հայ քրիստոնեայ (8.500 անձ) ի հարկէ Հայք ասոնց մէջ ըլլալով միայն 35 տուն յոյն[190]:

---

ազգեր՝ Քուրդ, Պարսիկ, Վրացի, Հայ եւ Թուրք. եւրոպացի կ՚ըսէ միայն Անգղիական եւ Ռուսական հիւպատոսներն եւ իրենց ընկերակիցք, եւ թէ այս հիւպատոսութիւնք հաստատուած են 1829ին արշաւանքէ ետքը: Ասով «քաղաքն աւելի բազմամարդութեան կերպարանք կ՚առնու քան ինչ որ իրականին է: Կանոնաւոր մարդահամար մը (a regular census), առաջինն՝ որու մասին ընդհանրապէս լսած եմ ի Տաճկաստան, նոր կատարուած էր, որ կը ցուցնէ թէ բնակչաց ամբողջ թիւը միայն 35.000 է»: — Թէ ի՛նչ կարգի «կանոնաւոր մարդահամար» էր այն միջոցին՝ այս կրնանք գուշակել, երբ տակաւին բոլորովին ուրիշ էին օսմ. վարչութեան պայմանները, ինչպէս Քոխի նկարագրութիւնն իսկ կը ցուցնէ կիսանկախ գաւառներու մասին:

190 «Բարունակ Պէյի Ֆէրուհխան ճանապարհորդութիւն ի Բաբելոն ընդ Հայաստան յամի Տեառն

Հեղինակս որչափ ճամբորդած է 1847ի, գրած է 1868ի, եւ թուերս այս տարուան կամ նախորդ տարիներու համար ըլլալու են. որովհետեւ թողլով Ալիշանի երկբայութեամբ տուած շատ անորոշ թուերը[191], նոյն իսկ «1853—56 տարիներու մէջ պաշտօնապէս հաւաքուած տեղեկութեանց համեմատ» Կարին ունէր 60.000 անձ, «որոնցմէ 10.300 Հայ-լուս., 500 Հայ-կաթող., 180 յոյն, 10 հրեայ եւ 100է աւելի Եւրոպացի». մնացեալը՝ մահմետական Թուրք, քուրդ ու պարսիկ[192]: Ըստ այսմ գոնէ ԺԹ. դարու

1847»: Արմաշ 1876. էջ 260: — Հոս (էջ 176) քրիստոնէից թիւն այսպէս կը մանրամասնուի. Հայ 1300 տուն (6950 անձ), Հայ-կթղ. 290 տուն (600 անձ). յոյն՝ 35 տ. (200 անձ). Հայ-բողոքական՝ 25 տ. (150 անձ). «փոշայ» (հայ-բոշաներ) 60 տուն (400 անձ):

191 Ալիշան, «Տեղագիր» (1855ի), էջ 36 «Թիւ բնակչաց քաղաքին աւելի քան զ40.000 (ըստ ոմանց՝ 75.000), յոյն 600 եւ ըստ ոմանց իբրեւ 1000 տունք են Հայոց» եւն: Այսպէս կը բացատրէ նաեւ Curzon, որ Կարին կենալով առիթ ունենալու էր լաւագոյն թուեր նշանակելու, սակայն կրնար միայն գրել (*Robert Curzon*, Armenia, a year at Erzeroum etc, IIIth ed., London 1854, p. 36) «Կ'ըսեն թէ 30.000է մինչեւ 40.000 բնակիչ ունենայ. բայց ես չեմ կարծեր թէ 20.000է աւելի պարունակէ. բայց ճշգրիտ միջոց չունիմ հաստատելու»:

192 «Բնաշխ. բառ.» Բ, 319: Եւ «Ճանապարհորդութիւն Տ. Յովհաննէս քահանայի Վաղարշակերտցւոյ, ի Սահմանս Բարձր Հայոց». (Հատոր Ա., Կ. Պ. 1870, էջք 40), էջ 6:

կէսէն աւելը «պաշտօնական» թուերու համեմատ Կարին 60.—65.000 բնակիչ ունէր։ Ասոր համեմատութեամբ համեստ թիւ մը կը ներկայացնէ Յովհ. քհ. Վաղարշակերտցի, որ ի Կարին կը գտնուէր եւ գրած է 1870ին։ Անիկա կ'ըսէ. «Տունք Հայոց ի սմա հաշուին 1000. մահմետականաց՝ 4000, Յունաց՝ 80, եւ հայ-հռոմէականաց 100». — ընդ ամենայն ուրեմն 5180 տուն, բաւական Պէյլի պաշտօնական թուոյն կէսը[192]։ Բայց ահա աւելի նորագոյն հաշիւ մըն ալ, նոյնպէս աղբիւրներու համեմատ։ Լինչ 1887 տարւոյ համար մարդահամարական մասնամասնութեամբ յառաջ կը բերէ թուերը։ Ըստ այսմ Կարնոյ մահմետականք էին 26.554 անձ, քրիստոնեայք 10.434 անձ, յոյներ՝ 484, եւ 1422 այլեւայլ ուրիշ անձինք (օտարականք եւն). — գումարը՝ 38, 894 անձ. այսինքն նախընթաց պաշտօնական թուերուն կէսը[193]։ Կարին, եթէ ճիշդ է այս,

193 *Lynch*, էջ 413 կ'ըսէ թէ այս թուերը «տաճկական պաշտօնական» են՝ եւ հրատարակուած են Բրիտ. Հիւպատոսարանի 1887ի վաճառականական Տեղեկագրին մէջ, եւ կը յաւելու թէ իբր 10% աւելցնելու ենք՝ կանանց անճիշդ թուարկութեանց համար։ Հմմտ. նաեւ էջ 207, ուր յիշելով նոյն «պաշտօնական թուերը»՝ կլոր հաշուով 40.000 հոգի կ'ըսէ։ — Նոյն աղբիւրէ են ճիշդ թուերը (10 անձի միայն տարբերութեամբ) Վ. Կինէի (*V. Cuinet*, La Turquie d'Asie, Paris 1891) վիճակացոյցը՝ նոյնպէս մանրամասնութեամբք։ Մահմետականք կ'ըսուին 26.564 անձ, քրիստոնեայք 10.919, որոնք կը մանրամասնուին՝ Հայ-Լուս. 9422, Հայ-Կթղ. 717,

հասած է կրկին կամ ետ դարձած 1837ի վիճակին, ինչպէս վերը տեսանք: Կարծենք աւելորդ է շարունակել ասկէ ետքը: Թողունք որ չափազանց երկար կ'ըլլար՝ եթէ ամէն յիշատակութիւններ յառաջ բերէինք մանաւանդ վերջին շրջանիս (կոտորածներու եւն) առթիւ եղած անթիւ հրատարակութիւններէն: Արդէն խնդիրն այն չէ թէ Կարին իրօք ո'րչափ բնակիչ ունի: Մեր նպատակին համար այսչափն ալ կը բաւէ, ցուցնելու թէ «պաշտօնական» թուերն ինչպէս 1837ի եւ 1887ի կը նոյնանան, մինչ 1856ի անոր կրկինը կը ներկայացուի. Թողլով

---

Հայ-բողոք. 296 եւ յոյն՝ 484: Բացի 6 Հրեայէ եւ 6 Ղպտէ, 1088 «օտարականք զանազան ազգերէ» եւ 323 «օսմ. օտար հպատակներ». ամբողջ գումարը 38.906: (Հմմտ. «Բնաշ. Բառ.» Բ. 319, Ա—Դ0, էջ 237, եւն: — Անպաշտօնականներէն օրինակ մը յիշելու համար՝ Մ. Կ. Միրախորեան («Նկարագրական Ուղեւորութիւն» եւն. Մասն Գ, Կ. Պ. 1885, էջ 139) Կարնոյ բնակիչք կը դնէ 10.000 տուն, որոնց 7.600 մահմետական, 2000 «արմենական», 150 «հռովմէական» (հայ-կաթոլիկ)», 100՝ յոյն, եւ 150 հայ-բողոք, լատին եւ Պարսիկ: Իսկ Լեւոն Սարգսեանցի («Այց Թիւրքաց Հայաստանի», Թիֆլիս 1890, էջ 128) «հաւաքած տեղեկութիւնների նայած», «Կարին քաղաքում ընդ ամէնը 8000 տուն բնակիչ կայ: Այդ թուից՝ 2500 տուն հայ-լուս. 120 տուն՝ հայ-կաթոլիկ. 40 տուն՝ հայ-բողոք., եւ 80 տուն՝ յոյն»: Իրաւացի կը դիտէ «Տաճկաստանում կարգին վիճակագրութեան մասին նոյնքան հասկացողութիւն ունին, որքան եւ կարգին կառավարութեան»: Աւելորդ է յիշել ուրիշները:

«անպաշտօնական» Կարնոյ թուերը[194]։ Բայց յայտնի է՝ նաեւ առաջինները բաւական չափով լոկ գնահատական են։ Իրական միօրեայ մարդահամար՝ եւրոպական իմաստով՝ չէ եղած ցայսօր ալ։

Մեր միտքը սխալ չհասկցուի։ Չենք ուզեր ըսել թէ որեւէ թիւ արեւելեան այս աշխարհաց մասին կասկածելի ըլլայ, երբ մանաւանդ չներկայանայ այն որոշ գունով մը, ինչպիսի են յաճախ դժբախտաբար վերջին շրջանին տիրող քաղաքական նպատակաւ՝ այս կամ այն տարրն աւելի կամ պակաս երեւցնելու դիտաւորութեամբ։ Այլազգ՝ գոնէ նորագոյն շրջանին մէջ աւելի բարեփոխուած են վիճակագրական պայմանները, մինչեւ անգամ «արձանագրութիւն»ներ չափէն աւելի շատցած, ի հարկէ մանաւանդ գլխաւոր կեդրոններու մէջ։ Նոյն իսկ չատոնց մուծուած գինուորական պարտաւորիչ ծառայութիւնը մահմետականաց համար,

---

[194] Անշուշտ Կարին ունեցած է արկածներ ալ, յատկապէս 1859ի մեծ երկրաշարժն, որուն զոհ գացին շատ անձինք. ազգային ականատես մը մեռելոց թիւը 6700 կը դնէ, վիրաւորեալներունը՝ կրկին, եւ բնականապէս յաջորդեցին այլեւայլ հիւանդութիւնք եւն. (Նկարագրութիւն մը տես «Բնաշ.» 323—324)։ Կարին յաճախ ունեցած է երկրաշարժներ, բայց քիչ անգամ այսպէս աւերած, որուն յիշատակը տակաւին կենդանի է։ Հմմտ. ի միջի այլոց հոն եղող Սարգիս Մատիկեանի տաղը, ուր կը չեշտուի թէ «մասն էր դարձած Կեաւուր-Պողան» տաճիկ թաղը, եւն. («Երգեր եւն Խոտորջրոյ», էջ 88—89)։

իսկ քրիստոնէից համար որոշ տարիքով վճարելի գլխաւորական հարկը, զոր կը հատուցանէր հասարակութիւնն հաւաքաբար, կը ստիպէր աւելի ճշգրտիւ արձանագրել ծնունդները, բայց ի հարկէ արական սեռը միայն: Աւելի նորագոյն անձնագիրը («համիտլյէ») անցագրի խիստ դրութիւնը եւ այսպիսի բազմապիսի պայմաններ մինչեւ անգամ ահագին արձանագիր–տումարներ ստեղծած են: Նոյն չափով զարգացած են հետզհետէ մեր ազգային–եկեղեցական տումարները: Բայց արդ հոս ալ կան շատ կէտեր դիտելի: Մենք անձամբ առիթ ունեցանք պրպտելու կենդրոնի մը հայ–կաթուղիկէից եկեղեցական մատեանները, որոնք շատ ճշդրտութեամբ բռնուած են գոնէ կէս դարէ ի վեր: Նկատելով ծննդոց անպայման մեծ առաւելութիւնը՝ համեմատութեամբ ննջեցելոց, հոն պէտք էր ժողովուրդն կրկին եւ նոյնիսկ եռեքպատիկ եղած ըլլար: Մինչ այսպէս չէր իրականին. հոն եթէ չէր ալ պակսած, զգալի աւելցած ալ չէր ժողովուրդը: Այս ի հարկէ պարզ պատճառ մ'ունի, — պանդխտութիւն եւ անոր յարակից անընդհատ գաղթում: Այն արձանագրութիւնները, որոնց տարեկան ցուցակները կը տրուէին նաեւ պետական իշխանութեան, չեն ներկայացներ ուրեմն իրական վիճակը: Իսկ թէ ի՛նչ խառնակութիւն կը պատճառէ «տանց» հաշիւը, որ ցայսօր ալ մեծ դեր կը կատարէ ամէն կարգի հողային,

կալուածական են խնդրոյ մէջ, ուր հիմնական տարբերութեամբ քրիստոնէական եւ մահմետական տանց կազմութեան, այս արդէն յայտնի բան մըն է, ինչպէս նաեւ այս երկուքին միջին թուոց շատ մեծ տարբերութիւնը ծանօթ է[195]: Վերջապէս թէ այն իսկ

[195] Մահմետական կրօնից պահանջմանց համեմատ նոյն իսկ երկու եղբարց ընտանիք չեն կրնար լիովին բնակակցիլ, եւ որեւէ կերպ մը կը գտնուի՝ խորշերու իսկ վերածելով գիւղական նախկին տունը, կրկին տուն ըլլալու համար: Այսպիսով գիւղական շատ խնդրոց մէջ (ջրոյ բաշխում, արօր եւն) յանկարծ մեծ թուով մահմետական տներ կ'ելլեն, որոնց անձանց իրական թիւն ամենեւին համապատասխան չէ հայ տներու անձանց թուոյն: Հայն ստիպուած է աւելի ամփոփ մնալ, բազմանդամ եւ նահապետական տուն կազմել, նաեւ կալուածական խնդրոց տեսակէտով: Այս վերջինք այնչափ կնճռեալ են, փոխացմանց պայմանները յաճախ այնչափ դժուարին որ նոյնիսկ հայ գիւղացին, թէեւ ենթակայ անընդհատ դրամանց՝ ստիպուած է զգուշաւոր ըլլալ, փոխացմունքն, բաժանմունքն եւն արձանագրել չի տար, նոյնիսկ վաճառմունք կ'ըլլան յաճախ ձեռքի տակէ՝ «ջրոյ դաշինք»ով, ինչպէս կ'ըսուի: Այս՝ մահմետական տարրին քով արդէն սովորական երեւոյթ է, քանի որ երկիւղ ալ չունի դրամանց, եւ յաճախ դժուար ալ կրնար օրինապէս փոխանցել, քանի որ օրինաւոր վաւերաթուղթ չունի (դրաւեալ հող, ձրի նստած, տարիներէ վեր տուրք չտուած, եւն եւն): Ուստի նաեւ Հայոց քով հեռու գիւղերու մէջ ցանցառ չէ որ տուն մը շատոնց բաժնուած է՝ բազմաթիւ տներու, բայց արձանագրուած է տակաւին իբր 1 տուն, եւ ըստ այսմ հաւաքարար կը վճարուին տուրքերը եւն: Տուն ու հող վաճառուած ալ է շատոնց ուրիշի, բայց ոչ արձանագրուած կամ փոխանցուած ըստ օրէնի

ամենախիստ օրէնքը — զինուորական ցուցակագրութիւնը — կարելի չէ այն ճշդութեամբ կատարել, ինչպէս կեդրոնները կը բաղձան, անոնցմէ քիչ մ'իսկ հեռուն, կը ցուցնէ այն ոճը՝ որով կը հաւաքուին օրինակի համար Տայոց աշխարհի ձորերուն մէջ նորակոչ եւ ի հարկին, որ շատ յաճախադէպ է, պահեստինները: Եւ բոլորովին այլազգ կը դառնէ իրերը, ով որ առիթ ունենայ նշմարելու այն իբր թէ զինուորութեան տարիքը նոր թեւակոխող նորակոչներն, երբ ասոնց գոնէ մէկ մասը իրականին այն տարիքն շատոնց անցած էր, ամուսնացած եւ զաւակի տէր, նաեւ հոն՝ ուր տարեկան ցուցակները կանոնաւոր յօրինած է գիւղին մօլլան, պարզ եւ դիւրահասկանալի պատճառաւ՝ սերունդը գոնէ մասամբ պահելու վերջնական քայքայումէ[196]: Իսկ ի՞նչ ըսելու ենք այն բազմա-

---

եւ տուրքերը կը գանձուին նախկին ստացչէն կամ ժառանգորդներէն: Այսպիսի կնճռոտութիւնք անպակաս են այս երկրին ամէն կողմ:

196 Ասոր պարզ միջոց մը կայ: Տղան իր նորածին կ'արձանագրուի քանի մը տարի ետքը միայն, որ ծանօթ երեւոյթ մըն է քիչ մը հեռու գիւղերու մէջ: Բնազդաբար իսկ մահմետական ժողովուրդն այս ելքը գտած էր՝ զինուորական ծառայութեան քայքայիչ ազդեցութեան տոկալու համար: Զինուորը նաեւ տասնեակ տարիներով յաճախ չէր դառնար՝ միշտ զէնքի տակ պահուելով վերջին շրջանիս, եւ երբ դառնար՝ վարակուած կ'ըլլար յաճախ հիւանդութեամբ: — Հայն ուրիշ հաշիւ ունէր, կարելւոյն չափ ծածկել մանչերու թիւը՝ ճնշող զինուորական տուրքը թեթեւցնելու համար:

թիւ գիւղերուն, ուր մահմետական ո՛չ մզկիթ կայ եւ ո՛չ մոլլա, դժբախտաբար նաեւ քրիստոնեայ գիւղերու շարք մը՝ ուր, եթէ ըլլայ ալ եկեղեցի մը, քահանայ չկայ: Իսկ այս երկրիս մէջ գիւղական վարչութիւն կամ համայնք — եւրոպական իմաստով — գոյութիւն չունի, նոյն իսկ թղթի վրայ՝ օրինօք, թող թէ գործնականին մէջ: Նոյն իսկ կենդրոնի մօտ գիւղ մը կը «կառավարուի» որեւէ անպաշտօն երեւելիով մը կամ երեւելիներով. որեւէ՝ յաճախ ինքնակոչ «բէկ» մըն է ամենայն ինչ, եւ ուր գոյութիւն ունի՝ մոլլան: Գոնէ քրիստոնեայ գիւղը յայտ լաւագոյն դիրք ունի, ուր եկեղեցի ու քահանայ կայ, որեւէ ձեւի տակ կայ թաղականութիւն մը (երէցփոխ եւն)․ բայց այս ալ համայնական իշխանութիւն չունի, եւ օրինակի համար աւերեալ կամուրջ մը, ճամբայ մը եւ ամէն նման իրերն որեւէ անհատի կամ հասարակաց կամաւոր միաբանութեամբ միայն կրնան հոգացուիլ, — եթէ արդեւք մ՚ալ չյարուցուի․ Նոյն իսկ դիտմամբ ինչպէս կ՚ըլլայ յաճախ խառն գիւղերու մէջ: Անոր համար անկեալ վիճակ մ՚ունին գիւղերու մեծ մասը, ուղիները, հաղորդակցութեան միջոցներ եւ գրեթէ ամենայն ինչ, մանաւանդ ինչ որ գաւառ ու վարչութիւնը միայն կրնային ընել: Այնպիսի բազմամարդ տեղեր իսկ ինչպէս Խոտորջուր, — որ վարչական կենդրոն մ՚իսկ է՝ «միւտիւր» ունենալով, — զուրկ են թղթատարական եւ հեռագրական

պարզագոյն խակ հաստատութենէ: Այսպիսի գիւղախումբ մը, որ կ՚ապրի պանդխտութեամբ եւ որով տարեկան մեծ գումարի մը ստանալու պէտք ունի արտասահմանէ, որ շաբաթական մեծ քանակութեամբ նամակ ու հեռագիր ստանալու եւ առաքելու կարիք ունի, ստիպուած է մասամբ առանձնականաց միջոցով հաղորդակցիլ, մասամբ անով որ վարձած է անձեր, որոնք այն դժուարագնաց ուղիներով ժամեր ու ժամեր պիտի երթան ու գան դէպ ի Արսիս, նամակ ու հեռագիր տալու եւ առնելու: Իսկ քիչ մը հեռու ինկած միւս գիւղերու, աւելի եւս խորին ձորերու մէջ թաղուած գիւղամասերու եւ նման տեղեաց քաղաքակրթական պայմանաց մասին, խօսք ընելու պէտք չի մնար: Այսպիսի գիւղերն այցելողն, աւելի եւս գոնէ միջոց մ՚ապրողը գիտէ իրերն՝ ինչպէս որ են: Ասոնք սակայն գոնէ առաւելութիւն մ՚ունին քան անցուղարձի գծերու վրայ եղող գիւղերը. այսինքն՝ գոնէ համեմատաբար խաղաղութիւն մը կը վայելեն, զոր ի հարկէ մերթ ընդ մերթ՝ ուրեմն շատ անհաճոյ կերպով՝ կը խանգարեն որեւէ առթիւ կենդրոնէ մ՚եկող ոստիկանը, զօրահաւաքը եւ մանաւանդ հարկահաւաքն իւր բազմազգի պահանջներով, ոչխարի տուրքէ մինչեւ տասանորդի տուրքն եւ աւելին ալ, օրինաւոր ու աւելի ապօրինաւոր: Ասկէ զուրս կարծես որեւէ իշխանութիւն գոյութիւն չունի՝ կենդրոնէ մը քիչ մ՚ալ անդին: Իսկ թէ վի-

ճակատագրական ինչ պայմաններ կան այն տեղերն, որոնք բախտ — կամ դժբախտութիւն — ունին հիւրընկալելու վաչկատուն ցեղերու շարք մը, այս ուրիշ գլուխ մըն է, զոր հոս պէտք չունինք ի նկատի առնուլ: Վասն զի բարեբախտութեամբ Տայոց աշխարհի այս մասերուն մէջ, զորոնք գլխաւորաբար կ'ուսումնասիրենք, անոնք գոյութիւն չունին: Բայց անոնց միւս դերը, — անկոչ տէր ըլլալ թէ՛ ճամբու վրայ եւ թէ՝ գիւղերու մէջ օտար ապրանքներու ու ստացուածներու, աւելի վտանգաւոր՝ օրին մէկ «բէկ» մ'ըլլալ եւ տիրել գիւղի մը հողերուն այս կամ այն ոճով, — զայս ստանձնած է այս կողմերն՝ ուրիշ ցեղ մը, մահմետական Լազը: Թորթումի, Բերդագրակլի եւն գիւղացւոց աչքին, — այսինքն՝ նոյն իսկ եւ գլխաւորաբար մահմետականացածներու, քանի որ քրիստոնեայն սակաւաթիւ մ'եղած է, — նոյն է Լազը, ինչ որ է՝ ուրիշ շարք մը գաւառաց համար Քուրդն եւ իր բէկը: Բայց անոնք ուրիշ խնդիրներ են, որոնք մեր ուսումնասիրութեան ծրագրէն դուրս կը մնան, ուստի չենք մտներ մանրամասնութեանց մէջ: Իսկ մինչեւ ցայժմ մեր ըրած դիտողութիւններու նպատակն էր ցուցնել թէ ինչու մենք մեր յառաջ բերած եւ տակաւին յիշելի ուրիշ վիճակագրական թուերն, ուր իրական մարդահամար չկայ, լոկ ընդհանուր գնահատումներ կը նկատենք:

**§ 25. Խեւակ եւ Բերդագրակ կամ Կիսկիմ:** — *Տեսանք Պոնտական բարձր լեռնաշղթային, մեր նախնեաց յատուկ մտօք Պարխար լերանց, հիւսիսային երեսի դէպ ի ծով իջնող ձորաշխարհաց վիճակը. այժմ տեսնենք անոնց հարաւային երեսի դէպ ի Ճորոխ իջնող ձորերու բախտը՝ մահմեդականացման տեսակէտով: Պարխար լերանց ամենաբարձր գագաթն իւր հսկայ լեռնաբնով՝ յատուկ մտօք Քաջքարը կամ Վարսամբէկ՝ ինչպէս կեդրոն էր Համշէնի ձորերուն դէպի հիւսիս, կեդրոն է այն խորաձորերուն, որոնք դէպի հարաւ եւ հարաւարեւելք կ'իջնեն Ճորոխ, եւ որոնք Տայոց աշխարհի վերջին ծայրերը կամ վերնաձորերն էին: Ասոնք մասն էին Տայոց այն գաւառին՝ որ Ճորոխի երկու ափերու հովիտները կը պարունակէր այն կէտէն սկսեալ, ուր կը դադրէր Բարձր Հայոց Սպերի գաւառը, մինչեւ այն կէտն՝ ուր հաւանօրէն Գուգարաց Կղարջք գաւառը կը բռնէր միջոց մը Ճորոխի ձախ ափն ալ, այնուհետեւ գալով Եգերաստան ելն: Տայոց այս գաւառին մէջ, որ կը կոչուէր Արսեաց անուամբ, յետոյ Բերդագրակի եւ այժմ Կիսկիմի անուամբ, ինքնայատուկ դիրք մ'ունին Խոտորջուր եւ Խեւակ ձորաշխարհները, երկուքն ալ սկսելով Քաջքարէ: Խոտորջուր կը սկսի Քաջքարէ, դէպ ի հարաւ, բայց նաեւ Քաջքարի արեւմտեան—հարաւ ընթացող բարձր լեռնաշղթային միացեալ*

ստորոտէն, որ կը մօտենայ վերը յիշուած Սողորնի գեղի անուն կրող բարձր գագաթին (§ 3): Այն կէտն, ուսկից Խոտորջուրցին Ոխգէէ դալով եւ Համշէնի վրայէ կ'անցնի բարձր լեռնագիծը՝ իջնելու համար ի Խոտորջուր, արդի Թրքական անուանակոչութեամբ «Ճաքար» — լեռ կը կոչուի, Սողորնի գլխուն արեւմտակողմը: Ասոր եւ Քաջքարի ճիշդ տակը կ'իյնայ Խոտորջրոյ վերնամասն, ուրկէ կ'իջնեն խորաձորերն, երեք գլխաւոր ձորերու վերածուելով, որոնք ի վերջոյ կը միանան Խոտորջրոյ գլխաւոր հովտին մէջ, ուր կը միանան նաեւ Խոտորջուր գետակը կազմող բոլոր ջրերը, եւ յետոյ նեղ ու երկայն կապան մը կը հասցնէ Ճորոխ: Սողորնիի եւ Ճաքար-լեռան միջեւ բարձր եւ յաղթ լեռնաբազուկ մը կ'իջնէ դէպի հարաւ-արեւելք՝ հասնելով Ճորոխ: Այս մեծ լեռնագիծը կը բաժնէ Սպերի վերաբերող Թափձորը Հունուտի ձորէ: Լեռնագիծս սակայն արդէն շատ վերը կ'երկճղի, եւ երկրորդ ճիւղն՝ աւելի խիստ արեւելեան-հարաւ ուղղութիւն մ'առնելով, կը բաժնէ Հունուտէ Խոտրջուրը: Ասիկա Արջուկն-Գրեր լեռնագիծն է եւ անկէ վեր Մոխրուստ լեռը: Այնպէս որ Ճաքար-լեռնէ իջնող ուղեւորը կ'իջնէ նախ Հունուտի ձորի վերնամասը («եայլա»ն), անկէ ելլելու համար Մոխրուստի կողէն ի վեր: Ճորոխի հարաւային ափէն, օրինակի համար Կարմիրքի բարձունքէն Հունուտի այս վերնամասն այն-

պէս պայծառ կ՚երեւայ, ինչպէս առհասարակ Խոտորջրոյ ամբողջ վերնամասն եւ Գայլխայրի լեռնագիծը, որ անկէ դիտողին ինքնին կու գայ այն գաղափարը թէ Հունուտ ալ թերեւս Խոտորջրոյ հետ կազմէր Տայոց աշխարհի այս կողման ծայրամասը: Գոնէ երկրին կազմութիւնն ու լեռնագիծն այս գաղափարը կը ներշնչէ: Այսպէս ալ կը դնէ Ինճիճեան, բայց նաեւ, քանի որ Հունուտ՝ գոնէ յետնագոյն բաժանմամբ Սպերի կը վերաբերի, դրած է անոր անուան կից ալ. (տես § 2) անոր համար հոս կը թողունք այս կէտը: Սակայն մեր հին աշխարհաց եւ գաւառաց բաժանմանց մէջ, ինչպէս բնական էր, երկրին բնական կազմութիւնը, լերանց ուղղութիւնն եւ գետերու աւազանները ամենամեծ դերն ունեցած են:

Եթէ Խոտորջուր Քաջքարէ ուղղակի ծորոխ կ՚իջնէ, բոլորովին տարբեր ուղղութիւն կ՚առնու անոր սահմանակից Խեւակի ձորաշխարհը: Քաջքարէ հսկայ լեռնաբազուկ մը կը բաժնուի, որ կ՚անջրպետէ ճիշդ հոն ամենամեծ բարձանց տակը Խոտորջուրը, որ այնտեղ արեւմուտք կը մնայ, Խեւակէ, որ ամբողջովին արեւելք կ՚երկարի: Այս հսկայ լեռնաբազուկն ուղիղ արեւելեան ուղղութեամբ կ՚երկարի, շատ մեծ բարձրութեամբ ալ, եւ կը կոչուի այժմ գիւղին անուամբ Խեւակու լեռ («Խեւակ–Տաղ») բայց տեղական բազմաթիւ անուններ ունենալով: Միւս կողմանէ, ինչպէս ըսինք, բուն բարձր

Գարխար լեռնագիծը՝ Քաջքարէ արեւելք՝ արեւելեան հիւսիս ուղղութեան կ'ընթանայ, մինչեւ որ շեղելով միջոց մը շիտակ դէպի հիւսիս՝ աղեղ մ'իսկ կը կազմէ դէպ ի «Զըրալեռ» եւ երկրորդ Քաջքար (§ 10)։ Ասով կը կազմուի տեսակ մը հսկայ բարձրագիր եռանկիւն, որուն ծայրէն կը սկսին Խեւակի ձորերը, որ այն հարաւային բարձր լեռնագծին ընթացքով բռնադատուած կը բաժնուի վարի ձորերէն (Հունդամեկ եւն) որոնք Ճորոխ կ'իջնեն՝ առանց վերը բուն Գարխար լեռներն հասնելու, այլ մինչեւ այս Խեւակու լեռնագիծը։ Ասով Խեւակի ձորն կը հասնի Գարխալի վիճակին եւ իր Խեւակ-Ջուրը կը միանայ Գարխալի-Ջրոյ հետ։ Գարխալ, գաւառ որ պահած է հին Գարխար լերանց անունը, միանգամայն անունն է մեծ հովտին կամ գաւառին եւ դարձեալ գիւղին՝ որ նշանաւոր է իր հոյակերտ եկեղեցիով (այժմ մզկիթ)։ Իր ջուրը կամ գետը, Խեւակի ջուրը չընդունած, կ'իջնէ բազմաթիւ գետակներով ու առուներով Պոնտական բարձր լեռնաշղթայէն, եւ այն՝ մասամբ երկրորդ Քաջքարէ եւ մասամբ անոր արեւելքն երկարող լեռնագծէն, որուն գագաթներն այժմ այլեւայլ երբեմն թրքական անունները կը կրեն (Ալթը-Պարմագ, եւն)։ Սակայն այս ջրերու վերջինները («Կապազ-սու» եւն) կը միանան Գարխալ գիւղէ վար, այնպէս որ Գարխալ-Ջուր յատուկ կերպով կը կոչուի երկրորդ Քաջքարէ իջնողը բազուկը, որ

գիւղին առջեւէն անցնելէն քիչ մ'ետքը կ'ընդունի Խեւակի ջուրը, եւ անկէ ետքը կը միանան միւսները։ Կիսպերտի Նորագոյն քարտէսը նաեւ Արջեւանի-Ջուրը կը միացնէ Պարխալ-գետի հետ՝ Մախադէթ եւ Խամրուտ գիւղերու միջեւ, մինչ ուրիշ քարտեր (օր. ռուսականք) Արջեւանի ջուրն անկախ Ճորոխ կ'իջեցնեն։ Ցամենայն դէպս Պարխալ-գետ շատաջուր կ'իջնէ Ճորոխ՝ անցնելով Կինապորոտ եւ Վժանգետ գիւղերու առջեւէն, եւ Ճորոխ կը թափուի այն տեղն, որուն դիմացն՝ աջ ափին վրայ է Խամզէթ գիւղն եւ անոր կռնակը Ասմուչէնի բարձունքը, զոր յետոյ յիշելու առիթ պիտի ունենանք։ Քիչ մ'անդին դէպ ի արեւմուտք Ճորոխ կը թափուի հարաւէն եկած Վոհր կամ Վրաց բուն «Ճորոխ» կոչածը, այն է Օլթի-Ջրոյ եւ Թորթումի-Ջրոյ միացեալ գետը։

Արդ ճիշդ այս Պարխալ-Ջուրը կը համարուէր յետոյ սահման Բերդագրակ գաւառին, որմէ անդին կը սկսէր Լիվանէ գաւառը՝ որուն կենդրոնն էր Արդուին։ Ասկէ կրնար հետեւցուիլ թէ ուրեմն այս էր սահմանը նաեւ Հնութեան ատեն Արսեաց գաւառի։ Միւս կողմանէ Խեւակի այս ինքնուրոյն դիրքն եւ անոր աղերսը մէկ կողմանէ Խոտորջրոյ եւ յարակից միւս ձորերուն եւ դարձեալ Պարխալի վիճակին հետ, ինչպէս նաեւ վերջնոյս ինքնուրոյն դիրքն՝ ինքնին կը բերէին որ այս գաւառներս ըստ երեւութին մերթ այս եւ մերթ այն բաժնին միացուած

էին։ Այսպէս Ինճիճեան զԽեւակ կը դնէ Համշէնի մէջ իբրեւ ուրոյն վիճակ մը[197], եւ իւր դիրքով կընար այս յարմար իսկ նկատուիլ, թէեւ բուն Համշէնէ բաժնուած է այնպիսի բարձր մշտնջենաւոր ձեան լեռնաշղթայով մը, որուն անանցանելի ըլլալն ա՛յնպէս գեղեցիկ նկարագրած է Քոխ (§12 եւ 15)։ Ասոր հակառակ Քոխ զԽեւակ տակաւին Բերդագրակի գաւառի եւ անոր ժառանգական ձորապետի վարչութեան ներքեւ գտած էր[198], մինչ Պարխալ կը դնէ Լիվանէի ժառանգական աւատատիրութեան կամ գաւառի մէջ[198]։ Այս վերջին կէտը համաձայն է Ինճիճեանի, որ զՊարխալ ուրոյն գաւառ դիտէ, բայց նաեւ «Լիվանէ» ընդարձակ մտօք կը պարունակէր միջոց մը զայն, ի հարկէ նաեւ ուրիշ գաւառներ, նոյն իսկ Կիսկիմը[199]։ Այս վերջին կէտերը յետոյ կրկին տեսնելու առիթ կ՚ունենանք։ Ցամենայն դէպս Խեւակ եւ Պարխալ ալ տակաւին Տայոց

---

197 Ինճիճեան, էջ 397։

198 Քոխ, էջ 98—99։ «Խեւակ կը վերաբերի տակաւին Բերդագրակ գաւառին» եւն· «Իսկ Պալխարը կը վերաբերի արդէն Լիվանէ մեծ աւատական գաւառի, որուն գլխաւոր տեղն է Խեւակէ երեք օրուան ճամբայ հեռու Արդուինը»։

199 Ինճիճեան, էջ 124։ — Արդի ձեւն Ինճիճեան կը գրէ Պարխալ, Քոխ՝ Պալխար (Balchar)· Կիպերտ կը զանազանէ, գիւղն, իւր ջուրը եւ կը գրէ Parchal, բայց Պարխար լերանց շղթան կը նշանակէ Balchar՝ ճիշդ Խեւակի թիկանց մասը։ Տես քիչ մ՚ետքը։

աշխարհի վերաբերելու էին, ինչպէս կը ցուցնէ ընդհանուր դիրքը եւ Ճորոխի աջ ափին համեմատութիւնը։ Հոս Տայք Օլթիի եւ Թորթումի միացեալ ջրոյ գետախառնունքէն ետքն ալ կը շարունակուէր երկար ատեն գետն ի վար, մինչեւ այն կէտն երբ Տայք ու Գուգարաց Կղարջք կը սահմանակցէին, իրարմէ բաժնուած բնական լեռնագծով մը։ Ճորոխի աջ ափին վրայ Տայոց այս մասին համապատասխանող է ձախ ափին վրայ Պարխալի գաւառը։

Խեւակ՝ զինքը հարաւէն բաժնող համանուն բարձր լեռնով մը բարձր լեռնաշղթային դերը կը կատարէ Բերդագրակ գաւառի միւս ձորերուն հանդէպ, այսինքն՝ այս ձորերը կ՚իջնեն Խեւակ-լեռնէն դէպ ի Ճորոխ։ Այս մասը սակայն մեծ սպիտակ բիծ մըն է Կիպերտի քարտէսին վրայ, որ նաեւ Խեւակի լերան ու ջրոյ, շարունակութիւնը, Բերդագրակի, Հունդամեկի, Իցաձորի եւ Մոխուրկուտի, նոյն իսկ «Խոտորջուր-լերան» (Երանուողի) վերնամասերը թողուցած է առանց գծագրելու՝ իբրեւ անծանօթ երկրամաս մը (հմմտ. § 4)։ Խեւակի լեռն այս դերը կը կատարէ մասամբ նաեւ Խոտորջուրի նկատմամբ։ Այս երկուքն՝ ինչպէս ըսինք՝ սահմանակից են եւ այն բուն վերը Փաջքարի ոտքը։ Բայց Խոտորջրոյ ալ վերնաձորերուն մէկ մասը՝ իր հիւսիս արեւելեան սահմանին վրայ՝ կը հասնի մինչեւ այն Խեւակ լերան գիծը։ Այստեղ հեռաւորա-

դոյն Զօրածայրին՝ Սալանափոսի՝ վրան կը բարձրանայ Խեւակի շղթային հսկայաբերձ սպիտակ լեռը, զոր իւր գոյնին համար Խոտորջուրցին ճերմկլի ծայր կը կոչէ: Այս եւ մերձակայ Գօչին-սարը կը կապեն Խոտորջրոյ այս կողման սահմանը: Խոտորջրոյ յարակից Մոխուրկուտի ձորը մինչեւ այս լեռնագիծը չի հասնիր լիվին: Ասոր ամենավերին ծայրը՝ Թագուորձորի վերջն ու Մատունունց լեռը թէեւ կը մօտենան Խեւակի լերան բայց չեն բարձրանար մինչեւ գագաթագիծն: Ընդհակառակն հոս միջանկեալ արդէն կը սկսի Հունգամեկի ձորին ամենավերին ծայրն, որ ձորագաւառն այնուհետեւ արեւելեան-հարաւ ուղղութեամբ կ՚իջնէ Ճորոխ բաւական հեռուն, որով Մոխուրկուտի եւ ասոր միջեւ ինկող Քարչ-կամրջի եւ Իցաձորի (Երիցաձոր) ձորերը շատ աւելի կարճ ըլլալ ստիպուած չէն: Անկէ աւելի անդին՝ արեւելք է բուն Բերդագրակի ձորը, եւ անկէ ետքը մանր ձորեր ալ, մինչեւ Պարխալի ջուրը: Ցաւալի է որ Բերդագրակէ անդին՝ Ճորոխի ձախ ափին վրայ գտնուող արդի անուամբ Դէօրթ-քիլիսէ, իւր նոյնպէս երբեմնի հին եկեղեցիով, տակաւին չէ քննուած, ինչպէս ի վերջոյ չէ քննուած Պարխալի նշանաւոր եկեղեցին ալ, ինչպէս որ պէտք էր:

Ասոնք Ճորոխի ձախ ափին վրայ՝ Խոտորջրոյ գծին ուղղութեամբ, արեւմուտքէ դէպի արեւելք: Պէտք չկայ երկարել Ճո-

րոխի աջ ափին վրայ, ուր կը գտնուին գաւառիս հին եւ նոր անունը տուող Արաիս եւ Կիսկիմ, ինչպէս Համազասպայ պատմութեան մէջ դեր կատարող Որջնհաղ, եւն։ Առհասարակ Բերդագրակի այս գաւառին մասին առիթ պիտի ունենանք յաճախ անդրադառնալու այս երկասիրութեանս մէջ։ Դարձեալ որովհետեւ Քոխ շրջան ըրած է Ճորոխի այս երկու ափերուն վրայ ալ, իւր նկարագրութիւնը յետոյ պիտի տեսնենք իւր պատշաճ տեղը։ Իսկ Խոտորջրոյ մասին յատկապէս պիտի խօսուի՝ բնական է աւելի երկարագոյն ալ։

**§ 26. Բերդագրակի դիրքն ու դրացիք․ —** Այսօր Բերդագրակի գաւառը կամ Կիսկիմի «գայմագամ»ութիւնը, — որ աւելի ընդարձակ է քան վերը գծուած հին Բերդագրակի գաւառը, — մահմետականացած երկիր մըն է Համշէնի եւ Թորթումի պէս, միայն քիչ մ՚աւելի լաւագոյն պայմաններով՝ քրիստոնէութեան համար։ Արդէն այն պարագան որ գաւառս ինկած էր հիւսիսէն Համշէնի եւ հարաւէն Թորթումի միջեւ, ուստի երկու գաւառներու՝ որոնք մահմետականացան, նպաստաւոր չէր միջանկեալ գաւառիս համար։ Համշէնի ազդեցութիւնը թերեւս շատ մեծ չէր։ Այս բաժնուած էր տարւոյն մեծ մասն անանցանելի լեռնագծովը, եւ կը հաղորդակցէր Սպերի հետ եւ դարձեալ Խոտորջրոյ վրայէն։ Միւս մասերն անանցանելի են եւ ուղեգիծ չկայ Բերդագրակի հա-

մար: Արդ ճիշդ հաղորդակցութեան այն՝ թէեւ նոյնպէս դժուարին գիծը՝ Խոտորջուր՝ որ ամէնէն մերձաւորն ալ էր Համշէնի[200], չէ ազդուած անկէ: Աւելի ազդել կրնար Թորթում թէ՛ իբր դրացի եւ թէ՛ իբր գլխաւոր անցուղարձի գիծ դէպ ի կենդրոնը՝ Կարին եւ անկէ դէպ ի աւելի հեռուները:

Որչափ Համշէնը բաժնող բարձր լեռնաշղթան հեռու է, այնչափ մօտ է Ճորոխի աջ ափին համընթացող նոյնպէս բարձր լեռնաշղթան, որ ամենեւին սակայն չի հասնիր Պոնտականին բարձրութեանց: Այս հարաւային լեռնաշղթան ջրաբաշխ է Ճորոխի ու Թորթումի միջեւ, դէպ ի Ճորոխ կ'իջնեն կարճ ձորերու ջրերը, դէպ ի Թորթում հարաւային երեսի ջրերն՝ որ կը միանան համանուն գետին: Որչափ ալ մեր հիներու Պար-

200 Յամենայն դէպս հնագոյն ժամանակ շատ աւելի բանուկ եղած կ'երեւայ Համշէն–Խոտորջուր գիծը: Ինճիճեան, որ Պաշհամշէնի համար կը նշանակէ թէ «միօրեայ հեռի է սա ի Խոտորջրոյ» (էջ 396), կը նշանակէ միանգամայն Խոտորջրոյ համար թէ «ի գարնան ժամանակի ընդ այս ճանապարհորդեն Լազք ի գնալն յէրզեռում (էջ 133): Այս երթեւեկը դադրած է այժմ պարագայից փոփոխմամբ: Համշէնի վրայէն եկողն այժմ Խոտորջուրի պանդուխտն է՝ ի հարկէ իւր Լազ կամ Համշէնցի առաջնորդով: Ուրիշ կարգի «Երթեւեկ» եղած են ի հարկէ Լազ աւազակախմբերուն, որոնք յաճախ այցելած են Խոտորջուր եւ մաս մ'արձանագրուած ալ է թերթերու մէջ. (օրինակ Կաղմխուտի կողոպտուիլը 1800 թուին՝ Գ. Ս. «Խոտորջուր» ի «Նոր–Դար» 1890, թիւ 67, 73, եւ ուրիշներ):

խար լեռները բուն Պոնտական բարձր լեռնաշղթան են, որուն մէկ մասին վրայ մնացած է նաեւ անունը, եւ ինչպէս անոր ստորոտը գտնուող համանուն գիւղի դիրքն ալ կը ցուցնէ, շատ հաւանական է որ նախնիք ընդարձակ մտօք Պարխար կոչելով ի միասին հոս կցած են նաեւ այս հարաւային լեռնաշղթան, ուստի Ճորոխի երկու ափանց բարձունքները։ Իսկ վրական աշխարհագրութիւնն, որ ի հարկէ ի վերջոյ ԺԸ. դարու նոր գործն մըն է Վախուշտի, մինչեւ անգամ Պարխալ գրեթէ միայն Ճորոխի հարաւային լեռնաշղթան կը հասկնայ[201], եւ

---

201 Քոխ (էջ 238) կը խորհրդածէ այս մասին. «Ըստ Ինճիճեանի, կ'ըսէ, Պարխալ բացորոշ կ'իյնայ Պոնտական լերանց արեւելակողմը, ընդհակառակն ըստ Վախուշտի Parachli (Parchali)՝ Ճորոխի արեւելակողմը եւ կը պարունակէ Տայոցկերտի (Taosgerd) արդի աւատական գաւառը, Տայք (Taos կամ Tao) յատուկ մտօք։ Վախուշտ մինչեւ անգամ անուանց նոյնութիւնն որոշակի կը նշանակէ։ Բաց աստի այն թէ Պալխար անունը գոյութիւն ունի նաեւ Ճորոխի արեւելակողմը եւ նոյն իսկ Կուրի հովտին մէջ, կը տեսնուին այն ամարոցներէն՝ զորոնք յիշեցինք լեռն անցնելու ատեն։ Այլուստ երբ Վախուշտ կ'ըսէ թէ Պարախլի Ճորոխի արեւմտեան կողմը կ'իյնայ, այս ուղիղ է այն կողմանէ որ ինքն Ճորոխ ըսելով Օլթի-Ջուրը կը հասկնայ, մինչ նոյն անունը կրող բուն գետն ինքը Սպերոյ-Ջուր (Ispiris-Tskhali) կը կոչէ»։ — Քոխի ակնարկած այն երկու ուրիշ «Պալխար» տեղերն են, մին Սպերի մօտերը միւսը՝ Կուրի ականց մօտ։ Առաջինը կը յիշէ՝ երբ կը յիշատակէ Սպերի Ս. Յովհ. վանաց մերձակայ արծաթա-

այս կ՚երեւայ այժմ տարածուած կարծիք մ՚եղած էր եւ տակաւին չենք խօսիր այս լեռ–

---

հանքերը, զորոնք կը շահագործէին մերձակայ Քարձորի եւ Տշաձորի բնակիչք։ «Միւս հանքը, կ՚ըսէ, գետին ձախ ափը կ՚իյնայ Սպերի աւելի մօտ, ճիշդ կից Պալխար գիւղի. բայց հոս յառաջագոյն պղինձ կը շահուէր, անոր համար ալ այժմ նաեւ Պագըր-Մատէն անունը կը կրէ» (Քոխ, էջ 48)։ Իր քարտէսին վրայ ալ կը նշանակէ Balchar-Maaden. նաեւ Կիպերտ հին քարտէսներուն վրայ կը նշանակէր այս Balcharը, բայց նորագոյնին վրայ ա՛յլ եւ չ՚երեւար անունն ու տեղը, թէեւ ձախ ափին վրայ՝ կը նշանակէ հին արծաթահանք» մը, ինչպէս ճշգրտուած են հոս Ս. Յովհաննու եան գիրքերը։ — Երկրորդ յիշուածն է այն ամարանոցը՝ որուն կը հանդիպի Քոխ՝ երբ Կողայ սարոտէն կ՚անցնի Բանակ կամ Փանակ, այս կողման Դէօրթ-Քիլիսէ, որուն երբեմն եկեղեցիներու երկուքն տակաւին աւելի լաւ մնացած էին, անկէ՝ «Կիւմիւշ-ջուր» գիւղը, եւ ապա լեռն ի վեր՝ բարձունքն ելլելու համար, որ Կողայ եւ Բանակի սահմանն է եւ այժմ կը կոչուի Գանլը-դաղ (Արեան-լեռ), նախ հանդիպելով «ամարանոցն Պալխար գիւղի» (Balchar-Jailassi) ինչպէս կը նկարագրէ դալարագեղ արօտներով եւ մեծ նախրով, եւ ուր Կուրի արեւմտեան ակունքը կը բղխեն, եւն (էջ 231—32)։ — Անուանցս մասին նկատենք որ Պարխար հին հայ ձեւ մըն է, բայց բնականապէս ո՛չ նախնականը։ Դասականք կը գրեն Paryadres լերինք, ցանցառ՝ Parachoathros. անունն կը նշանակէր, ինչպէս կը մեկնէ Հիւբշման (Armenische Grammatik, I, Leipzig 1895, p. 66—67, «փառաւոր», լի փառօք», զնդ. pourux-vâθra, նոյնպէս յորջորջանք լերանց, պհլ. pur-xvârih։ Այս արօտաշատ լերանց անունը յետոյ կրնար գործածուիլ իբրեւ բառ մ՚ալ, որով, կ՚ըսէ, Տրապիզոնի Յոյնք (այսինքն՝ նախկին Լազք) Parchar կը գործածեն պարզ «արօտ» իմաստով ալ (Հմմտ. անդ, 508)։ Այս

վին տարապայման դետեղմանց մասին[202] Սակայն այս վերջապէս մին է այն բազմաթիւ այլակերպ ըմբռնումներէն՝ որոնք

յետնագոյն գումածութեամբ կ՚նային այլեւայլ արօտաչատ գիւղեր այսպիսի անուն մ՚առնուլ: Հմմտ. նաեւ *J. Marquart*, Erānšahr etc. Berlin 1901, էջ 116, 168 եւն:

[202] Ամէնէն բնորոշն այս տարապայման նորագոյն դետեղման կը ներկայացնէ՝ ի միջի այլոց՝ *Michel Tamarati*, L'Église Géorgienne (Rome 1910, pp. 710), իւր գործին կից քարտէսին մէջ: Հոս Ճորոխէ հիւսիս մինչեւ ծով ամենայն ինչ «Ճանէթ» է (Djanethi), հետեւաբար Թողունք Սեւ-Գետ ու Համշէն, նաեւ Խոտորջուր ու Բերդագրակ եւն: Ճորոխէ հարաւ՝ Բաբերդէ կամ անոր մօտերէն մինչեւ Թորթումի-Ջուրը՝ «Կլարջէթ» է (Klardjethi), իսկ Պարխար ա՛լ ուրիշ բան չէ՝ բայց եթէ Կարնոյ Քօփ-դաղն ու չարունակութիւն (Կեաւուր-դաղ) մինչեւ Կապոյտ կամ Դումլի ի միասին: Այս ուստի Կարնոյ դաշտին անմիջական պատող լերինքն են Parchali, մինչ անկէ մինչեւ Օլթի՝ լեռնագիծը (Ղարղաբազար-Քիրէճլի եւն) միայն «Մեսխաց լերինք» (Meskethi) կրնան ըլլալ՝ ըստ հեղինակին: Այս ամէնը՝ իբր «արդի Վրաստանի» քարտէս: Այսպիսի ըմբռնմամբ կամ դետեղմամբ հին անուանց ի հարկէ անկարելի է ուղիղ հասկնալ՝ Թողունք հին հայ մատենագիրները՝ նոյն իսկ վրական պատմութեան իրապէս հին մասերը: — Բերինք Հեղինակիս կարծիքն իբր օրինակ, ո՛չ թէ ծանրակշռութիւն տալով իւր գործին, որուն արժէքը միայն վերջին բաժնին մէջ է, չնայելով տարապայման վրացասէր ուղղութեան (ինքն ի ծնէ հայ մըն էր), որովհետեւ հոն հրատարակուած են շարք մը յիշատակարանաց ի մասին եւրոպական առաքելութեանց աթարեկութեան երկիրներու մէջ (Ախալցխա եւն) եւ ի Վրաստան: Մնացեալը, մանաւանդ հին պատմութիւնը՝ անքննադատ

կ'երեւան Հայոց հին աշխարհագրութեան եւ վրական նոր աշխարհագրութեան միջեւ շարք մը նոյն անուանց մասին (օր. Ծորոխ, Տայք Կղարջք եւն), որոնց տարածութիւնը կամ զետեղումն այլազգ է, թէեւ ոչ միշտ: Ասոնց մէկ մասն առիթ կ'ունենանք տեսնելու:

Հարաւային այս լեռնաշղթան այսօր սովորութիւն է կոչել Հարկեւոր, որ միանդամայն անունն է այն գլխաւոր լեռնողին ու լեռնացքին՝ որուն վրայէն կը կատարուի սովորական հաղորդակցութիւնը դէպ ի Թորթումի ձորը: Նոր ժամանակներս հետզհետէ աւելի տիրող սովորութեամբ՝ թուրքացնելու անունները, — մանաւանդ լերանց անուանքն՝ յաճախ բոլորովին աննշան յորջորջանքներով, որոնք մինչեւ անգամ քարտէսներուն վրայ մուտք կը գտնեն եւ ասով կը նպաստեն հին անունները մոռցնելու, — այս լերան ալ հին քարտէսները դրոշմած են «Շիփաքլի»-Տաղ, կ'ենթադրենք «շէփագ» բառէ: Թէ ե՛րբ երեւան եկած է յորջորջանքս, չենք գիտեր. բայց արդէն Քոխ այնպէս կը գրէ[202a]: Այսօր մոռցուած է անունս.

---

երկասիրութիւն մըն է, որու մասին P. Peeters իւր քննադատականին մէջ („Analecta Bollandiana, XXX, 1901, p. 106—108) կը գրէ թէ «Վրաստանի քրիստոնէութեան հին պատմութիւնը տակաւին գրելու է» եւն:

202a Քոխ իւր քարտէսին վրայ կը գրէ Schifaklu, նոյնպէս Կիպերտ հին քարտէսներու վրայ Schifakly. — Արբ.-տճկ. շէփագ (գւռ. շաւաղ,

*եւ Կիպերտ, որ հին քարտէսին վրայ կը նշանակէր նոյնը, նորագոյն քարտէսին վրայ այլեւս չի կրկներ: Անոր տեղ երեք նոր մասնական անուններ կը նշանակէ, որոնց ամէնէն արեւմտակողմանն ըստ երեւութի Խախուայ անունը կը կրէ. միւս երկուքն՝ որոնց ճիշդ մէջտեղն է Հարկեւորի գլխաւոր լեռնանցքը, կը նշանակուին կ'երեւայ «Արեւմտեան» որ ուրեմն յատուկ անուն մը չէ, միւսը «Պէճիկ» որ թերեւս Թուրքերէն «պէչիք» բառն ըլլայ: Ըստ երեւութին այս երկուքը շատ նոր ծագում ունին՝ երբ այս լեռնանցքն ապահովցնելու համար հոն զինուորական պահակ մը դրուեցաւ*[202b]*: Ոչ միայն Հայք, այլ նաեւ տեղացիք մահմետա-*

---

շափախ)՝ *«արշալոյս» եւ երեկոյեան (կարմիր) մթնշաղ:*

[202b] *Այս նոր մասնական անունները նշանակուած են Թուրքերէն ձեւերով· Վերքի թիկանց մասը՝* Chachanyn Syrt *(Խախուայ լեռնող, որուն բարձրութիւնը նշանակուած է* 1680 *մետր, — Նիխաղի թիկանց մասը՝ լեռնանցքի արեւմուտքը,* Megrebin Dagh, *ըստ երեւութին* մաղրէպ *(արեւմուտք) բառէ. — ասոր շարունակութիւնը դէպ ի հիւսիս արեւելք՝ Որջնհաղ-Կիսկիմի թիկանց մասը՝* Bedjigin Dagh... *որ եթէ «պէյ-ճիկ» (փոքր բէկ) կամ նման բան մը չէ, կրնայ ըլլալ* «պէշիք» *(օրօրան): — Ի հարկէ կարելի էր որ՝ ինչպէս առաջին անուան ներքեւ ծածկուած է իրական տեղույ մ'անունը, վերջնոյս Թուրքական ձեւերուն տակ ծածկուած ըլլան նախկին երկու անուններ, որ նմանաձեւ էին, եւ զորոնք Թուրքերն՝ ինչպէս ամէն տեղ ըրած են, իրենց լեզուի բառերու վերածած են:*

կանացածները կը գործածեն Հարկեւոր անունը, եւ օրինակի համար Ոշկվանեցիք իրենց գիւղին Թիկունքը պարապանման բարձրացող վեհատեսիլ լեռը, որ կը համապատասխանէ վերոյիշեալ «Պէճիկ»ի, կը կոչեն այնպէս Հարկեւոր[203]: Այս յամենայն դէպս կը գործածուի իբրեւ յորջորջանք ամբողջ այս հարաւային բարձր լեռնագծին: Միւս կողմանէ չափազանցութիւն կ՚ըլլար եթէ այս անունն ու հակառակ Թորթումի լերանց ընդհանուր յորջորջանք մը նկատէինք, ինչպէս լսած է Ինճիճեան, որ Հարկեւորի ոտքը կը դնէ Թորթումի գլխաւոր աւանը[204]: Եթէ մերձաւոր լեռնաշղթայի

203 Ինչպէս մենք, այսպէս լսած է նաեւ «Թորթում գաւառը կամ Թորթումի ձոր» յօդուածին հեղինակը (ի «Տարեցոյց», հրտ. Ազգ. Ուսանողներու Խնամակալութեան, 1914, էջ 257—267), որ կը գրէ թէ Ընկուզեկի ձորէն կը պատի Հարկեւորի լեռնաշղթային մէկ բազուկը՝ արեւմտեան կողմէն երկարելով կ՚անցնի հիւսիսէն եւ կը վերջանայ հարաւարեւելեան կողմը քարաժայռի տխտաննեան լեռնապարապով: Հարաւ-արեւմուտքէն կը պատէ Ընկուզեկի լեռը եւ կը հասնի արեւելեան քարաժայռի պարապին եւն: Ասոնց միջավայրն է Ոշկ. (տճկ. իօշք): Այս շրջակայից բնականապէս, ինչպէս ամէն տեղերու, կան մասնական անուններ ալ, այսպէս Վանք-լեռ (Wank-Dagh), եւ Kiadet, Թորթումի լճաբերանէն (որ «Տէնիզ-պաշի» կը կոչուի այժմ) դէպ ի Ոշկ տանող կրճին երկու կողմը, եւն: Հմմտ. Ծխեկու-սարը, եւն:

204 Ինճիճեան, էջ 93. «Թորթում գիւղաքաղաք... կառուցեալ ի ձորամիջի՝ առ բարձր լե-

իսկ անունէն ըլլայ անյատուկ կերպով նշանակուած, Թորթում ո՛չ թէ Հարկեւորի, այլ մօտ է Կարնոյ եւ Թորթումի միջեւ բաժնող, նոյնպէս հին բարձր Հայքն ու Տայքն այս կողմն անջրպետող Կապոյտ կամ արդի Դումլի լերանց, կրնանք ըսել անոր վարի ստորոտն է։ Ընդհանուր անունէս շատ բնականապէս կան շարք մը մասնական անուններ, այժմ մասամբ արդէն՝ ինչպէս ըսինք, թուրքացած ձեւերով, ուրիշները՝ յաճախ մերձակայ գիւղի մ'անուամբ, օրինակ՝ Ոշկի եւ Լճին միջեւ եղած բարձր լեռը «Ծխեկուսար», լճափին վրայ եղած Ծխեկ գիւղէն[205] եւ նմաններ։

Այս կէտերն, եւ յատկապէս Հարկեւորի լեռնանցքը մանրամասնեցինք անոր համար որ այս ամէնը պէտք է՝ լաւ ըմբռնելու համար յետոյ Ե. դարու Համազասպայ եւ ըն-

---

բամբ որ կոչի Հարկեւոր» են։ — «Հարկեւոր» անյատուկ մտօք լսեցինք ուրիշ տեղեր ալ, նաեւ ի Խոտորջուր, ուր սակայն յատուկ մտօք լեռը ճշդիւ այնպէս կը յորջորջուի։

[205] Այսպէս նշանակած է արդէն Հ. Ներսէս Վ. Սարգիսեան («Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս», Վենետիկ 1864) իւր «Տեղագիծ Թորթումայ» քարտէսին վրայ։ — Լիճը կազմուած է մերձաւոր Խարս գիւղի լերան փլուզմամբ, որով ջրերն ի վերջոյ ելք մը գտնելով՝ կը կազմեն հիանալի Ջրվէժը, դէպի Թեւ գիւղ։ Վերջինքս Կիպերտի քարտէսին վրայ ուղիղ նշանակուած են (Tev, Chars)։ Ծխեկ նշանակուած է Chyk միայն, Ծ- տառը ի բաց թողլով։

կերաց նահատակութեան տեղերը, որոնց կենդրոնը կ'իյնայ Որջնհաղ՝ Ճորոխի վրայ, այս լեռնացքին վարի դուռը դէպի անդին ու ասդին: Այս է նաեւ այսօր Խոտորջուրցւոց եւ նաեւ մերձակայ շրջակայից համար սովորական ուղին, նոյնիսկ Կարինէ Արախս ձգուող խճուղւոյն շինութենէ ետքը. (— որ՝ գոնէ որչափ մենք տեսանք, շատ տեղ անկատար է, առանց կարեւոր կամուրջներու են), որովհետեւ Խոտորջուրէ նախ դէպի Արախս երթալն ինքնին ճամբու խոտորում մըն է եւ շրջան մը կը կազմէր: Յատկապէս Խոտորջուր, Մոխուրկուտ են միայն ամառուան քանի մ'ամիսները հաղորդակցութիւն ունին Սեւ Ծովու հետ (որ արտասահմանի իրենց մօտագոյն ուղին է), դէպի Ռիզէ գծով Սեւ Ծով շատ մօտ է: — Քաջքար տեսանելի է ծովէն, — բայց Պոնտական հսկայ լեռնագիծն, ուր ձիւնն ու սառոյցը նոյնիսկ ամառը շատ տեղ կը մնայ, գարնան մեծ մասն ուղղակի անանցանելի է: Միւս ամբողջ ամիսները հաղորդակցութիւնը կը կատարուի Ճորոխի գծով մինչեւ Որջնհաղ, անկէ ելլելով Հարկեւոր եւ Ընկուզեկի ձորէն իջնելով Թորթումի գլխաւոր ձորը, են: Անշուշտ այս լեռնագիծն ալ ունի ձիւնային եւ դժուար անանցանելի ժամանակ մը, բայց երկարատեւ չէ: Այս ուղին սակայն աւելի սովորական եղած է նորագոյն ժամանակս, Կարինէն դէպի Թորթում գծին կանոնաւորուելովը: Հին ժամանակ յամենայն դէպս

*շատ աւելի մեծ էր Խոտորջրոյ յարաբերութիւնը գետն ի վեր՝ ոչ շատ հեռու Սպերի հետ, որ նաեւ պարենաւորման կեդրոնն էր բնականապէս*[206]*: Այս պարագային բնական եւ ըստ ինքեան շատ աւելի կարճ ճամբան էր Սպերէ Կարին հին գիծը, որ կ'անցնէր այժմ Օվաճըգ կոչուած լեռնադաշտէն — «Ովաճուղ» Թուրք ձեւը գիտէ արդէն Յակոբ Կարնեցի*[207]*, — իջնելով Կարնոյ դաշտը յՈրթուզ*

---

206 *Այս աղերսը Սպերի հետ բնական էր հին ատեն, եւ նոյնը կը շարունակուէր Ինճիճեանի գրած օրով ալ, որուն տուած են տեղեկութիւնս (էջ 133)· «Ամենայն բերք Խոտորջրոյ բաւական է միայն առ վեց ամիս· զմնացեալ վեց ամսոյն* բերեն ի Սպերոյ» *եւն: Տակաւին մօտ ժամանակներս Սպերի հետ հաղորդակցութիւնը եւ հետեւաբար Սպեր—Կարին գիծն ալ յաճախադնաց էր: Այնուհետեւ հիմնովին փոխուեցան պարագայք: Խոտորջուրցին՝ ինչպէս իւր կեդրոնի, Արսիսի հետ սերտագոյն աղերս ունենալ ստիպուած է, պարենաւորման մասին՝ գլխաւորաբար ուղղակի Կարնոյ հետ, ուսկից կ'երթեւեկեն անընդհատ փոքր կարաւաններ: Մրգոց եւ նմանեաց մասին բնական է պէտք չկայ հեռուներն երթալ· Ճորոխի ձորերն ինքնին կը բաւեն: Ասոր փոխարէն ինքը տեսակ մը կեդրոն եղած է՝ այս շրջակայից հանդէպ:*

207 Յակ· Կարնեցի, *էջ 47 խօսելով Եփրատայ ականց վրայ· «Եւ ի հիւսիսային կողմանէ լերանցն փոքր գաւառէն* Ովաճուղու՝ *որ է ի մէջ մայրեացն, ելանեն բազում ակունք... եւ մտանէ անհուն ձորն Ծիրանեաց եւ Սառչամու» եւն: Գրեթէ կից են Ճորոխի ակունքն ալ, որ կը բղխեն «ի Թաւ մայրեաց միջոց ի գաւառէն* Ջորմարոյ» *(անդ, էջ 51): Երբեմնի այս մայրեաց շրջանի Շաղգոմք անունը գործածական է այսօր ալ:*

եւ Դումիկլի վրայէն Կարին: Այսօր այս գիծը գրեթէ անգործածական է նաեւ Խոտորջուրցւոց: Իսկ միւս ձորերուն համար արդէն աւելի մօտ չէր ըլլար ասոր: Ամառն ամէնէն կարճ լեռնուղի մ՚ալ կար յառաջ, Կարմիրքէն անցնելով բարձր լեռնագիծը՝ ելլել այն հսկայ բարձրաւանդակ սարահարթն, ուր Թորթումի բոլոր ձորերը կ՚ելլեն ի վերջոյ իբր աւելի կամ նուազ հեղեղատներ միայն, ուստի դէպի Նորշէն, եւ անկէ Խաչափայտի՝ Եփրատայ ականց՝ վրայէն իջնել դաշտը: Բայց այս միայն ամառը հնարաւոր էր, միւս ամբողջ ժամանակը ձիւնապատ է եւ անանցանելի: Եւ թէ՛ Կարմիրքցիք ու թէ՛ Նորշէնցիք, որ յառաջ մասամբ ջորեպանութեամբ ալ զբաղելով՝ այս գիծը կ՚երթեւեկէին, շատոնց թողուցած են այս զբաղումն: Միայն տեղական պիտոյից կը ծառայէ լեռնագիծս այժմ:

Թողունք ուրիշ լեռնագիծ-արահետները, որոնք բնականապէս շատ են, քանի որ այս լեռներն ա՛յնպէս բոլորովին անանցանելի չեն: Սակայն համառօտիւ նշանակենք նաեւ երկու գիծեր, որոնք կարեւորութիւն ունէին այս գաւառիս համար՝ ոչ միայն հին ատեններն, այլ նաեւ ցորչափ Ախալցխայի վարչութեան ներքեւ էր, ուստի մինչեւ ԺԹ. դարու սկիզբներն իսկ: Գաւառիս կենդրոնական, ինչպէս Բերդագրակի, նոյնպէս Կիսկիմի եւ Արսիսի համար, նախ կար բնականապէս Ճորոխի գիծը դէպ ի Արդուին եւ

անկէ Արտանուշ–Արտահան են: Այս գիծն այսօր անկածութեան մէջ է, Արդուինի ռուսական սահմանին մէջ մնալէն ետքը եւ դարձեալ այս կողման ուղիներու անխնամ թողլով: Բայց յառաջ սերտ էր յարաբերութիւնը նոյն իսկ Խոտորջրոյ եւ Արդուինի միջեւ, մանաւանդ երկուքին ալ հայ–կաթուղիկեայ փոքր կեդրոններ ըլլալէն ետքը: Անպակաս էին նաեւ մանր գաղթումներ, եւ Խոտորջրոյ քահանայք բաւական ժամանակ մը հովուած են Արդուինի հայ–կթղ. հօտը: Անոր համար զարմանալի չէ որ Խոտորջուր ու Կարին գրուած՝ նաեւ Խոտորջրոյ համար կարեւոր ԺԸ. դարու ձեռագիրը՝ (մեր Մատենադարանի թիւ 980) գտնուած է ոչ թէ Խոտորջուր, այլ յԱրդուին: Յատկապէս Արսիսէ չատ կարճ էր ճամբան դէպ ի Թորթում, թէեւ պէտք էր ելլել բաւական բարձունք մ'իւր անմիջական թիկունքը (8176 ոտք կը նշանակուի), որ այժմ Դիվիքլեռ կը կոչուի, իջնելու համար անմիջապէս յՕշկ: Բայց կարեւորագոյնը բոլորովին ուրիշ գիծ մըն էր, որուն երբեմնի նշանակութիւնը կը ցուցնեն բազմաթիւ աւերակ բերդեր: Այս՝ Բերդագրակէ ու Կիսկիմ–Արսիսէ դէպ ի նշանաւոր Իշխան անցքն էր, ուստի Թորթում–Ջրոյ եւ Օլթի–Ջրոյ միացման կէտին մօտերը, անկէ անցնելով ի Տաւուսկար որ՝ ինչպէս անունը կը նշանակէ, դուռն էր Տայոց աշխարհը մտնելու Արտանուշէ: Քանի որ յընթացս մեր երկասիրութեան ասոր՝

բայց նաեւ Ճորոխի գծին մասին՝ առիթ պիտի ըլլայ խօսելու, հոս կը բաւէ այս հարեւանցի ակնարկութիւնն ալ:

Արդէն այս գծերը նշանակեցինք՝ ցուցնելու համար թէ մահմետականացեալ աշխարհաց մէջ ինկած Բերդագրակի գաւառ ի՛նչ գծերով կրնար ազդեցութիւն կրել ի նպաստ նորանոր մահմետականացմանց: Թէ Թորթում ունեցած է մեծ ազդեցութիւն՝ բնական է ընդունել: Սակայն նաեւ հոս պէտք չէ չափազանցել: Թորթում, ինչպէս արդէն տեսանք ալ (§ 20) գոնէ կէս առ կէս քրիստոնեայ էր եւ իւր արդի ճնշող մահմետական նկարագիրն առած է միայն 1828էն ետքը: Արդ այս միջոցին Բերդագրակի մահմետականացումն արդէն էապէս աւարտած էր: Վերջապէս մտադրութեան արժանի է այն պարագան որ Թորթումի անմիջական սահմանակից մասին մէջ՝ Հարկեւորի հիւսիսային երեսը՝ համեմատութեամբ շատ մը գիւղեր քրիստոնեայ մնացած են, նոյնիսկ Կիսկիմ, թէեւ հաղորդակցութեան գլխաւոր գծին վրայ Որջնհաղ մահմետականացած էր: Շատ աւելի մեծ ծաւալ ստացած է մահմետականութիւնը գաւառիս ձախ ափին վրայ՝ մինչեւ վերին լեռնալիծն, ի Խեւակ:

Բերդագրակի կամ Կիսկիմի գաւառը հայ էր էապէս, ասոր տարակոյս չկայ: Եթէ չըլլար ալ ուրիշ փաստ՝ նոյնիսկ տեղւոյ եւ

գիւղերու անուանք կը ցուցնեն, ինչպէս նաեւ ի Թորթում: Բայց ի կարգ մ'անուաններէ՝ որոնք շատ հին են, — հաւանօրէն հին Տայոց շրջանէն, ուստի գրաւոր հայերէնի ձեւերով չեն մեկնուիր, ամենայն ինչ գրաւոր հայերէն ձեւով է: Հազիւ հոս հոն քանի մ'օտար անուանք կան, (— խօսքս Նորագոյն Թրքականներու մասին չէ, որ արդէն շատ չեն —), որոնք սակայն օտար ցեղի նշան չեն: «Խեւակ» օրինակի համար հայ գիւղ մըն էր: Թէեւ անունն անշուշտ վրականէ մնացած է (= ձոր») հայկական -ակ վերջաւորութիւնն առնելով: Քանի մ'ուրիշ այսպիսի անուններ ալ կան ինչպէս հոս՝ նոյնպէս այլուր, օրինակ Օլթի-Ջրոյ աւազանին մէջ, ուր սակայն վրական տարրն արդէն կար: Բայց ի՞նչ են ասոնք այն հսկայ թուով հայկականներու քով՝ որոնք հոն ալ կան՝ Իշխանէ մինչեւ Պարտէզ:

Սակայն երբեն արդէն տարբեր կը սկսին ըլլալ նոյնիսկ Պարխալի գաւառի մէջ, թո՛ղ թէ անդին՝ Արդուինի մօտերը, ըլովին՝ անկից անդին: Հոս՝ Թուրքաց «Լիվանէ», հին Լիգանի գաւառի մէջ հնուց շատ խառն ըլլալու էր բնակչութիւնը, եւ որչափ Բերդագրակի սահմանէն կը հեռացուի՝ ա՛յնչափ կը յաճախեն ոչ-հայկական անուններ: Անշուշտ հոս ալ կան շարք մը հայկականներ նաեւ այսօր (օրինակ՝ Արմաշէն, Արջեվան, Լազնջուր, Զոր, եւն)․ բայց ճնշող մեծամասնութիւնն արդէն հայկական չէ: Եթէ արդէն

Բերդակրակի մէջ հաւանօրէն կային, ինչպէս ի Թորթում՝ վրացածէս Հայեր, անշուշտ փոքր թիւ մ'ալ բուն Վրաց կամ քրիստոնեայ Լազերու: Եւ թերեւս աւելի ասոնց մնացորդներէն համարելու ենք այն այլեւայլ «Ցոյնք»՝ որ կը յիշուին հոս հոն նաեւ ԺԹ. դարու սկիզբը, թէեւ աննշան թուով, որոնք այսօր անհետ եղած են, քան թէ հարազատ Ցոյներ, թէեւ ասոնցմէ ալ այլեւայլ տներ կրնան գտնուած ըլլալ՝ որեւէ առթիւ հաստատուած: Բայց արդէն Պարխալի մէջ. թէեւ անշուշտ Տայոց կը վերաբերէր, զօրաւոր ըլլալու էր վրական կամ լազ տարրը: Այս արդէն տիրող ըլլալու էր լիովին Արդուինի շրջանի մէջ: Արդ դժբախտաբար հոս մահմետականութիւնն աւելի կանուխ մուտք գտած էր: Այս՝ կապուած է մէկ կողմանէ նոյն իսկ Ախալցխոյ աթաբէկներու կողմանէ խստիւ յառաջ տարուած մահմետականացման հետ, որուն զոհ գնաց ամբողջ այն աշխարհաց վրական (Մեսխ եւն) տարրը եւ ի վերջոյ վրածէս եղած մասն ալ (§ 1). միւս կողմանէ ընդհանրապէս Լազերու մահմետականացման հետ թէ՛ ծովեզերքն եւ թէ Ճորոխի այս վերջին ափունքները: Այնպէս որ Բերդակրակի գաւառը շրջապատուած էր ոչ միայն մահմետականացող Համշէն եւ Թոր-Թորթում գաւառներէ, այլ նաեւ վերջնոյս պէս կանուխէն մահմետականացած Լիվանի գաւառով: Կարգը պիտի գար Բերդակրակի կամ Կիսկիմի գաւառին ալ, ուրեմն մինչեւ

Թոտորջրոյ դռները: Էապէս քրիստոնեայ մնացած էր միայն արեւմտեան կողմն՝ Սպերու գաւառը, որ սակայն ամայացաւ 1828 գաղթով:

§ 27. **Խեւակի մահմետականացումը:** — Խեւակի եւ Բերդագրակի մահմետականացումն ալ համաժամանակեայ է Համշէնի մահմետականացման հետ: Այս կատարուած է նոյնպէս ԺԸ. դարու ընթացքին, ուստի այն միեւնոյն ազդակներն՝ որ հոն ու ի Սեւ Գետ ներգործած են, գործած են հոս ալ: Ինճիճեանի գրած օրով այս մահմետականացումն արդէն աւարտած էր, այնու որ սակաւաթիւ էր մնացեալ քրիստոնէից թիւը՝ համեմատութեամբ մահմետականացածներուն: Բայց այնու իսկ դադար չէր առած տակաւին, այլ կը շարունակուէր, որով կրնար գրել գիւղի մը համար թէ «նորոգ տաճկացաւ»:

Դժբախտաբար այս գաւառիս մահմետականացման մասին մանրամասն տեղեկութիւններ չունինք, գոնէ մեզի ծանօթ չեն: Էականն անշուշտ հաղորդած է Ինճիճեան. այլեւայլ դիտողութիւններ կու տայ նաեւ Քօփ: Բայց ամէնը միայն այսչափ է: Իւրաքանչիւր՝ նաեւ գլխաւոր վայրերու եւ ձորերու մասին ընդհանուր տեղեկութիւն միայն ունինք տալ:

Սկսինք Խեւակէ, որ ուրոյն դիրք մ'ունի: Անոր մասին՝ Համշէնի ներքեւ՝ կը գրէ Ինճիճեան[208]. «Խեւակ. գիւղ իբր 8

---

208 Ինճիճեան, էջ 397:

ժամաւ հեռի ի Համշէնէ, եւ իբր 3 ժամաւ ի Խոտորջրոյ ի հիւսիսակողմն նորա, կառուցեալ ի լանջակողմն բարձր լերին: Բնակիչք նորա առհասարակ տաճիկք իբրեւ 200 տունք դարձեալ յազգէս Հայոց. եւ իբր 5 կամ 6 տունք մնացեալք ի Հայոց: Գտանի ի սմա մեղր ընտիր: Անցանէ առ նովաւ Պէժանկէտ վտակ, որ խառնի ի Ճորոխ»: — Դիտենք որ վերջինս բոլորովին յարմար չէ. Պէժանկէտ վտակ ի հարկէ Վժան գետ՝ գիւղի անունէն է, որուն քով Ճորոխ կը թափուի Խեւակի-ջուրն՝ միանալէ ետքը Պալխարջրոյ հետ[209]: Այս կարեւոր չէ հոս: Մնացեալը կը ցուցնէ որ Խեւակ միահաղոյն մահմետականացում ունեցած ըլլալու է, ուստի Սեւ Գետի, Համշէնի եւն նման: Որովհետեւ 5—6 տուն մնալը նշանակութիւն չունի այնչափ մեծ թուոյն համեմատութեամբ: Քանի որ Ինճիճեանի այս թուերը մանրամասնութեամբ են, տարակուսելու պատճառ մը չունինք. միայն թէ հոս ալ կ'արժէ՝ ինչ որ արեւելից թուերու մասին ըսինք (§23): Գոնէ կէս դար ետքն ալ Քոխ նոյն թիւը կու տայ, կարծես որեւէ փոփոխութիւն եղած չըլլալով. «Խեւակ գիւղը, կ'ըսէ, կը վերաբերի

209 «Պէժանկետ»՝ աւելի թրքացեալ արտաբերութեամբ Պէշանկէտ (Beschanget), ինչպէս կը գրէ Քոխ (էջ 182 եւն): Նոյնպէս կը գրէր Կիպերտ հին քարտէսներու վրայ, բայց նորագոյն քարտէսին վրայ գրած է գոնէ Vezanget, աւելի համեմատ Վէժանգետ կամ Վժանգետ ձեւոյն: — Կայ «Վէրճան» ձեւ մ'ալ՝ գետոյ անուն:

տակաւին Բերդագրակ գաւառի, կը կազմուի հինգ թաղերէ (կամ գիւղամասերէ) եւ ունի իբր 200 տուն՝ 1000 մինչեւ 1200 բնակչով[210]»: Այս տեղեկութիւնն առած է ի հարկէ Բերդագրակի գաւառատէրէն (Դուրախ-Ալի բէկ), որ միջոց մ'ընկերացած էր իրեն դէպի Մոխրկուտ: Խեւակի ձորի մասին Քոխի տուած նկարագրութիւնը յետոյ կը յիշենք: Հոս նկատենք միայն որ Քոխ գԽեւակ ալ այն գիւղերու կարգը կը դասէ, ուր «մահմետականաց մէջ յոյն եւ հայ քրիստոնեայք կ'ապրին[211]»: Իրապէս ալ մեր անդրադոյն՝ թէեւ ընդհանուր՝ տեղեկութեանց համեմատ հոս իրօք կային աւելի շատ ետքն ալ յունածէններ՝ Հայոց հետ (ընդհանրապէս հայ-կթղ.): Այնպէս որ դոնէ քիչ մ'ետքը 5—6 տնէ աւելի քրիստոնեայ մնացած ըլլալու է հոս: Դարձեալ Խեւակէ քրիստոնեայ գաղթականք կան այլեւայլ տեղեր, այսպէս՝ ի Կարին: Անոր համար Ինճիճեանի եւ Քոխի ալ «իբր 200 տուն» նկատելու ենք միայն կլոր հաշիւ մ'ընդհանուր բնակչութեան. այն կարգի տեղեկութիւններէն՝ զորոնք կը ստանանք այսօր ալ, երբ գիւղի մը բնակչութիւնը հարցնենք: Պատասխանը յաճախ այսպիսի ընդհանուր թիւ մըն է, զոր թերեւս այնպէս կ'ըսէին իրենց պապերն ալ, ըլլայ գիւղն այնուհետեւ աճած (— որ վերջին հալածման շրջանին ցանցառ է —) ըլլայ

210 Քոխ, էջ 98:

211 Անդ, էջ 71:

նուազած, որ յաճախադէպ է[212]։ Այսպէս ալ Ինճիճեան եւ Քոխ՝ իրարմէ գոնէ կէս դար հեռու՝ ճիշդ միեւնոյն թիւը կու տան։ Ջխարդ եւ լիցէ․ իրը հիմնապէս չի փոխուիր։ Խեւակ ԺԸ․ դարու վերջին արդէն մեծամասնաբար մահմետականացած ձորաշխարհ մ'եղած էր։ Հոս սակայն իրերը գոնէ երկար ատեն միացած ըլլալու են՝ ինչպէս ի Համշէն։ Այսօր ալ Խեւակցիք, կամ գոնէ շատը՝ հայերէն գիտեն կամ կը հասկնան թէեւ օտարի հետ (արական սեռը) թուրքերէն կը խօսին։ Մահմետականք տակաւին պահած են առհասարակ հայ մականուններն ալ (օր․ «Քէչիշ-օղլու, Մակար-օղլու, Մինաս-օղլու» եւն եւն)։ Խեւակցիք յարաբերութեան մէջ են բնականապէս տակաւին Խոտորջրոյ հետ, ուր կու գան ամառն աշխատելու այլեւայլ գրաւմամբք։

---

212 Թողունք որ գիւղացին ընդհանրապէս չի հետաքրքրուիր իր թուով, օտարի որեւէ նման հարցման հանդէպ կամ ընդհանրապէս մարդահաշուի վերաբերեալ որեւէ խնդրոյ ներքեւ կասկած մ'ունի՝ տրոց աւելնալու եւն։ Մահմետական գիւղացւոյն յաճախագոյն պատասխանն է՝ «Աստուած գիտէ»։ Հայն ալ յաճախ որոշ թիւ մ'ունի՝ զոր կը կրկնէ, մինչ իրականը լիովին փոխուած կրնայ ըլլալ։ Բայց տարբեր չեն իրերը նաեւ հոն՝ ուր պէտք էր որ թուերը գոնէ քիչ շատ ճիշդ գիտցուէին։ Տողերուս գրողն օրինակի համար Կարնոյ բնակչաց թիւն հարցուցած է այլեւայլ այսպիսի անձանց եւ ստացած է թուեր՝ որոնք իրարու բոլորովին անհամաձայն, կրկին՝ մինչեւ անգամ եռեքպատիկ էին։

§ 28. Կիսկիմ: — *Տակաւին ասիկա կենդրոնն չէր համարուեր գաւառիս, այլ՝ Բերդագրակ, եւ Ինճիճեան մինչեւ անգամ զԿիսկիմ Լիվանէի ներքեւ գիտէ իւր օրով թէեւ Բերդագրակի հետ դրած ի միասին իբր մէկ գաւառ, ինչպէս որ իրօք է: Բայց Քոխ արդէն Բերդագրակի հետ նաեւ զԿիսկիմ գիտէ իբր կենդրոն: Զիարդ եւ իցէ. այս գիւղիս մասին Ինճիճեան աւելի տեղեկութիւն մը չունի: Իւր գրածն է.* «Կիսկիմ. *ունի աւան համանուն, եւ այգեստանս պտղաւէտս, կոչեցեալ* խավու պաղէր. *բազում լինին ի սմա մժեխք*[213]»: *Ուստի որեւէ տեղեկութիւն չկայ բնակչութեան մասին: Նոյնպիսի է դժբախտաբար Քոխի տուած նկարագրութիւնն ալ, որ իբր դրախտ կը նկարագրէ երկիրս, ինչպէս յետոյ կը յիշենք: Բայց ինքն Որջնհաղէ եկած էր Կիսկիմի վարի մասն, եւ բուն գիւղէ* 1/2 *ժամ դէպի հարաւ կը մնար, որով որեւէ տեղեկութիւն չկայ գիւղի մասին եւ ո՛չ բնակչութեան թիւ մը*[214]: *Այս լռութենէն թէեւ ինքնին չի հետեւիր թէ հոս քրիստոնէութիւնը մնաս կրած չըլլայ, բայց յամենայն դէպս հոս քրիստոնէութիւնը մնացած է: Կիսկիմ այսօր ունի իբր* 60 *տուն Հայ*[215]: *Եւգ. Բորէի գրելը*

---

[213] Ինճիճեան, *էջ* 132:

[214] Քոխ, *էջ* 66 *եւն, յաւել. էջ* 69:

[215] *Այս թիւը կու տայ* Լ. Մրպյօն, *ի յօդուածին «կրթական տխուր վիճակ» ի թերթին կարնոյ «Յառաջ»* 1913, *թիւ* 3, *էջ* 2 (*գրուած Կիսկիմէ՝ նոյն տարւոյ Դեկտ.* 10 *թուականաւ*): — Ա—Դ.Օ (*էջ* 199)

թէ Կիսկիմ քրիստոնեայք շատ կան՝ ընդհանուր մտօք է, այսինքն՝ կը խօսի «Կիսկիմ գաւառի» մասին[216]: Ինչպէս յետոյ կը տեսնենք: Հաւանական կ'երեւայ (ինչպէս պատմեցին) թէ ճիշդ Կիսկիմի այս քրիստոնեայ բնակչութեան պատճառաւ ի միջի այլոց՝ այժմ գաւառիս վարչութեան իրական կեդրոնը եղած է մահմետականացած Մերձաւոր Արախս, թէեւ պաշտօնապէս կը մնայ Կիսկիմի անունը: Եւ ուր քրիստոնեայ կայ՝ հոն հողային խնդիր անպատճառ պիտի գտնուի: Ազգային Թերթի մը մէջ հրատարակուած բողոքագիր մը Կիսկիմցի 9 ազգայնոց կողմանէ կը բողոքէ այն ոտնձգութեանց դէմ, զոր կ'ընեն «դարերէ վեր» իրենց սեփականութիւն եղող Հունապ արօտատեղւոյ մասին Հանճէվէցիք են[217]: Նման ցաւեր

---

չի յիշեր զԿիսկիմ, բայց նոյնն ըլլալու է «Գատապա» (միայն 15 տուն նշանակուած)՝ որով գաւառի մը գլխաւոր գիւղաքաղաքը կամ անունը կը նշանակուէր: Այսչափ նուազ թիւ կրնայ յարմարիլ նոյն իսկ Արախի, ուր՝ երբ իրական վարչութեան կեդրոն կը գտնուին այժմ Հայեր ալ:

216 E. Boré, Corresp. I, p. 398:

217 Բողոքս՝ ձեռագրի ձեւով՝ հրատարակած է «Ազատամարտ» 1914, թիւ 1520 (Կիսկիմէ՝ նոյն տարւոյ 22 Մայիսի): Կ'ըսուի թէ «Դարերէ վեր մեր սեփականութիւն եղող Հունապ արօտատեղին» վէճի նիւթ ըրած էին Գուշ-Թիւյլի-օղլիք եւ ուրիշներ, որոնց դէմ երբ «պահապան» կ'առնուէին Հանճէվէյի ժողովրդնէ: Հիմայ անոնք կ'ուզեն տիրանալ: Թէեւ «դատարանը ճանչցած է մեր ձեռքը գտնուող փաստերու վրայ, «մեր բացայայտ իրաւունքը», բայց

ամէն կողմ անվերջ են, եւ նման ցաւ մ'ունէր տարիներէ վեր Խոտորջուր ալ։ Ասոնց վերջը սովորաբար միշտ միեւնոյն կ'ըլլայ։ Դատարանն իսկ իրաւունք կու տայ, ա՛յնչափ բացորոշ կ'ըլլան քրիստոնեայ հասարակութեան իրաւունքը եւ ձեռքն ունեցած փաստաթղթերը։ Բայց գործնականին իրերը կը մնան հոն՝ ուր էին, քանի որ տիրող օրինաց զօրութեամբ ալ հնար է միշտ ձգձգել դատը, եւ վերջապէս՝ իրաւունք թղթի վրայ, բայց գործնականը՝ տարբեր, ըլլայ կեդրոնի մը, օրինակ Կարնոյ քթին տակ, ըլլայ այս հեռու Պոնտական գաղաթներու վրայ՝ Կիսկիմի թէ Խոտորջրոյ վերաբերող։ Բայց անցնինք։

---

առաջի տարին Տրապիզոնի կուսակալութեան միջոցով «մեր հակառակորդներուն իրենց արջառներով պարպուիլը յետաձգուեցաւ։ «Թէեւ դարձեալ անցեալ «Նահանգի Իդարէի ժողովին կողմանէ յիշեալներուն ոտնձգութիւնները արգիլուեցան», բայց կրկին կը փորձուի եւն։ — Խնդիրը դիւրաւ կը կնճռոտի՝ եթէ երկու նահանգաց սահմանին վրայ է վիճելի կէտը։ Այս միեւնոյն երեւոյթներն ունի Խոտորջրոյ «լերան» խնդիրն ալ, զոր չենք ուզեր մանրամասնել։ Նոյնպիսի խնդիրներ գտանք ի Թորթում, նոյնիսկ Կարնոյ գրեթէ դռներու առջեւ։ Հոս հետաքրքրական դէպք մ'ալ կար։ Վէճ մը լեռին կարգադրուելէն ետքն ալ՝ երկու կողման այլեւայլ «բէկ»եր խնդիրն իրենց ուզածին պէս կարգադրած էին նորէն. այսինքն՝ ոտնձգողք ի վերջոյ նորէն տէր էին հողին ու ամարանոցին, հոգ չէ թէ դատարանն այլազգ վճռած եւ գործադրուած ալ էր միջոց մը։ Ասոնք՝ իբր օրինակ։

Կիսկիմ յամենայն դէպս կարեւոր տեղ մըն էր հնութեան ատեն ալ: Ասոր վկայ է իւր բերդը, որ կը նշանակուի աւելի վարը՝ Ճորոխի մօտ Կիսկիմի գետակի Ճորոխ թափուելու կէտին գրեթէ վրան: Այս ուրեմն տարբեր է այն բերդէն, զոր հեռուէն միայն դժբախտաբար կրցանք նշմարել, եւ որուն Կիսկիմի անուն տուին՝ դէպի Որջնհաղ իջնալու ատեն աջ թեւին՝ բաւական բարձր լեռնողին վրայ վեհօրէն կեցած[218]: Բաց աստի Կիսկիմի այս գաւառիս մէջ — բաց ի Խոտորջուրէ — մեզի ցայժմ ծանօթ միակ տեղն է, որու մասին ձեռագիր-յիշատակարան մ'ունինք: Ձեռագիրը հոս գրուած չէ. ընդհակառակն այն ձեռագիրն է՝ որ Կարնոյ Կան գիւղը գրուած է 1283ին եւ որուն յիշատակարանը յառաջ բերինք: Սակայն ձեռագիրս կրկին յափշտակուած էր, եւ բարեպաշտ Կիսկիմցի մը ազատած էր «գերութենէ» գնելով զայն 1512ին: Քանի որ միակ յիշատակարան մըն է եւ պատմական կարեւորութիւն ալ ունի՝ ցուցնելով որ այս միջոցին Կիսկիմ — եւ բնականապէս գաւառը — Սպերի իշխանութեան ներքեւ ինկած էր, յառաջ կը բերենք նոյնը: Վերջին ստացողս «նուրբ բոլորգիրով»

---

218 Կիպերտի նոր քարտէսը Ճորոխի վրայ նշանակած բերդը կ'անուանէ Kaskin kala, թէեւ գիւղը Kiskin կը գրէ՝ բերդին գրեթէ դիմացը Ճորոխի ձախ ափին վրայ կը նշանակէ Djala գիւղ մը: Հունկամէգի (Chingemek գրուած) վտակի Ճորոխ թափած տեղը:

գրել տուած է հետեւեալը[219]. (Թղ. 1բ). «Ես Գուլպակիս որդի Աստընվորի թոռն մաղրար[220] Ցովանէսին՝ որ գնեցի զսուրբ աւետարանս ի Կսկիմ ի Վրաց ազգէ՝ որ գերեալ էին եւ տարեալ, ի Թվականիս ՋԿԱ (= 1512). յիշխանութեանն Սպերու Պրն. Կիտէվանին, որ տիրեաց, ի Վրաց ազգէ: Արդ ես Գուլպակիս որ գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ծնաւողացն իմոց Աստընվորին եւ մաւրն իմոյ Գոհարին եւ պապին իմոյ Ցովանէսին եւ մամին իմոյ Սավլուին եւ ամենայն արեան մերձաւորաց մերոց, ի վայելումն եւ ի պահպանութիւն ինձ եւ եղբարցն իմոց Տէր Սարգսին եւ Տիրատրին, Ամիրին եւ Զրախին. եւ որդոցն իմոց Փիրումին եւ Դիպալիկին. եւ եղբաւրորդոցն իմոց Աբելին եւ Դովլաթիարին եւ Սահակին: Արդ աղաչեմ զձեզ ընթերցողք սուրբ աւետարանիս յիշե(ս)ջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զԳուլպակիս եւ զկողակիցն իմ զՍուրաթն, զՏէր Սարգիսն եւ զկողակիցն իւր զՏանսուխն, զՏիրատուրն եւ

---

219 Բուն յիշատակարանը տես վերը § 5 ծան.: Հմմտ. Հ. Բ. Սարգս. «Ցուցակ», սիւն 646 եւն:

220 «Մաղրար» = մաղարար՝ մաղագործ: Այս կոչումը կու տայ այսօր հայ գիւղացին հայ-բոշաներուն՝ անոնց այն արուեստին պատճառաւ: Արդեօք «մաղրար Ցովհաննէս» հայ-բոշա՞յ մըն էր նախնաբար: Ինչպէս յիշատակարանս կը ցուցնէ՝ մեծ գերդաստան մըն է, որմէ երիցունք ալ կային: — Հետաքրքրական է «Կսկիմ» ամփոփուած ձեւը, որ աւելի հայաձեւ է քան արդի «Կիսկիմ»:

զկողակիցն իւր զհանգուցեալ Գոհարն, զԱմիրն եւ զկողակիցն իւր Սուլթան փաշան, զեղբայրն իմ զՋրախն, եւ զքոյրն մեր զԱւաքուհիկինն, զՍավլուն, զՄիտամն եւ զԼալխաթունն. եւ դուք յիշեալ լիջիք» եւն:

— Տարբեր գրով կը շարունակուի ուրիշ անուններով յիշատակարան մ'ալ, որ կրնայ նոյն բազմանդամ տան յաջորդ սերնդոց ըլլալ, որովհետեւ կը կրկնուին «Տէր Սարգիս» եւ «Աստընվոր», «Աբէլ» եւն անունները: Ասոր մէջ ալ, ինչպէս նախընթացին, կան Թուրքական եւ Թուրքաձեւ անուններ, որոնք՝ ինչպէս ծանօթ է ամէն յիշատակարաններէ, ժամանակամիջոց մը չափազանց սիրուած են հայ ազգէն, եւ կը գտնուին ամէն կողմը, մինչեւ այս լեռները[221]:

Հետաքրքրական յիշատակարանս այլեւայլ դիտողութեանց պէտք ունի ի լուսաւորութիւն: Ծանրակշռութիւն չունի այն պարագան որ աւետարանս գերուղն «վրաց ազգէ» էր: Նախ որովհետեւ մերայինք «վիրք» շատ ընդհանուր իմաստով կը գործածեն: Բայց նաեւ արշաւանքի մ'ատեն,

[221] Այս տարբեր գրով յիշատակարանիս շարունակութիւնն է. «Արդ աղաչեմ... յիշեսջիք... զՏէր Ղուկաս եւ զկողակիցն իւր զՀատեան, զԱբէլ եւ զկողակիցն իւր զԼուսխաթուն, եւ զհանգուցեալ Շիրինն, զՓարզուզաթն եւ զկողակիցն իւր զՄարգարիտն, Սարգիս երէց եւ զորդին իւր Աստընորն, զքուրն իւր զՏեփարն, զորդին իւր զՅոճիկն, զՄթխալն, զՂուկաս երէցն եւ զորդին իւր զՄիրաքն եւ զՂազարն. եւ դուք յիշեալ լիջիք» եւն:

*երբ բանակի մը մէջ ամէն կարգի ցեղ կը գտնուէր, բուն վրացի եւ քրիստոնեայ մ'ալ անշուշտ չէր խորշեր միշտ հայ եկեղեցի կամ վանք մը կողոպտելէ՝ մանաւանդ որ աւետարանք, եկեղեցւոյ սպասք (— ցորչափ արծաթի կամ ոսկեայ չէին, առոնք ի հարկէ կը ձուլուէին —) յաճախ յետս գնուէին, ուստի շահու աղբիւր էին: Քրիստոնեայ Վրաց արշաւանք մը՝ որ լի էր կողոպուտով Սպերի եւն՝ պիտի տեսնենք՝ երբ օրինակ՝ քիչ մ'ետքը* (§ 29)*: Մեր ձեռագիրք լի են այսպիսի գերութեամբք աւետարանաց եւն եւ յետ գնման կամ ազատման յիշատակութեամբք՝ քիչ ձեռագիր կայ՝ որ նման որեւէ յիշատակութիւն մը չունենայ, յաճախ պարզ «անաւրէնք» կամ նման բառով մը բացատրուած գերիչները, բայց երբեմն նաեւ ազգի յիշատակութեամբ*[221a]*: Այս ամէնը կարեւոր կէտ մը չէ հոս:*

*Սակայն շատ կարեւոր է՝ այս կողմանց յաճախ մթին պատմութեան համար՝ այն պարագան որ* 1512*ին Սպերի իշխան մ'այս կողմերը կը տիրէր: Յիշատակարանիս խօսելու կերպն ի հարկէ կը ցուցնէ թէ այս՝*

---

221a *Օրինակի համար Վենետկոյ Թիւ* 181 (*տես Հ. Բ. Ս.*, 753—56) *Աւետարան գրուած «ի յաշխարհս Ղրիմի, ի մայրաքաղաքն Սուրխաթ» ՉՂԲ* (= 1343) *թուին յետոյ* «գերի անկեալ *էր ի մէջ անհաւատից ի ձեռն* ապազգյի *միոյ» եւ* «ազատեաց *ձեռամբ պարոն Օվակիմին՝ որ առի ճիէնպօյլըի՝ ազատարար», եւ քայքայեալ ըլլալով՝ նորոգել տուած է ՌՄԺ* (= 1761) *թուին, եւ կազմած է Տէր Կարապետ:*

սովորական բան մըն չէր յիշխանութեան Սպերու Պրն. Կիտեւլանի՝ «որ տիրեաց ի Վրաց ազգէ», ո՛րով այս կէտը չեշտելու պէտք կար: Այս պարագան եւ աւետարանի գերուիլը կը ցուցնէ թէ այս ամէնը հետեւութիւն էր որեւէ արշաւանքի մը: ԺԵ. դարու վերջերն, երբ կը սկսի Պարսից (— որուն ի վերջոյ ենթարկեալ էին աթաբէկները —) յառաջխաղացութիւնը մէկ կողմանէ, միւս կողմանէ Օսմանեանց դիմելն դէպ ի արեւելք, ինքնին բացուած էր շրջան մ'անընդհատ արշաւանաց եւ պատերազմաց, որոնց մէջ մեծագոյն էր Սելիմ Ա.ի արշաւանքն ընդդէմ Շահ-Իսմայէլի 1514ին: Զարմանալի եղանակաւ ճիշդ մեր ձեռագրին պէս 1512 տարին, (— բայց նաեւ աւելի կանուխ ալ —) կը դնէ Վախուշտ այս արշաւանքը: Իւր Քարթլեաց պատմութեան մէջ կը գրէ թէ «յամի 1512 Թուրքաց սուլթանի մեծ բանակ մը քալեց Սամցխեայ եւ Իմերէթի դէմ[222]»: Սամցխեայ պատմութեան մէջ այն իսկ Կայ-Խոսրովի Ա. աթաբէկի համար (զոր իշխած կը դնէ՝ 1500—1502) կը գրէ թէ «իւր ժամանակ Արզրումի եւ Տրապիզոնի փաշաները սկսած էին արշաւանքներ ընել ի Սաաթբագոյ (աթաբէկութեան երկիրները) եւ ի Ճանէթ. զանոնք խաղաղցուց հպատակութեան խօսքերով եւ շարունակեալ պարգեւներով[223]»: Յաջորդին՝ Մզէճապուկի

[222] *Brosset*, II, 1, p. 19.
[223] *Brosset*, II, 1, p. 213.

(1502—1516) ատեն կ՚ըսէ «Օսմանցիք Գուրիացիէն (= տէր Գուրիոյ) գրեթէ ամբողջովին յափշտակած էին Ճանէթը. Մղէճապուկ զանոնք խաղաղցուց հպատակութեան խօսքերով եւ ասով յաջողեցաւ Գուրիացիէն առնուլ Աճառան ու Ճանէթ, զորոնք իրեն պահեց: Յամի 1512 սուլթան Սուլէյման ուղարկած էր սէրասքէր մը՝ այսինքն՝ զօրաց հրամատար կամ սպարապետ մը, մեծ եւ հզօր բանակաւ, որպէս զի տիրէ Վրաստանի (Giorgia) ասոնք մտան ի Սաաթբագոյ, զոր պատեցին ամէն կողմէ: Այն ատեն Մղէճապուկ իւր բերդերն ու ամուր տեղերը պաշտպանութեան վիճակի մէջ դրաւ, հրամայեց բնակչաց այն տեղերն ապաստանիլ, եւ Մեսխաց խորհրդով անձամբ գնաց ներկայանալու սերասքէրին, որ պատուով ընդունեցաւ զինքը եւ ուտեստեղէն ուզեց իրմէ, նոյնպէս առաջնորդներ՝ Իմերէթ անցնելու համար: Մղէճապուկ ըրաւ՝ ինչ որ կ՚ուզէր եւ առաջնորդեց յԻմերէթ: Օսմանցիք ըրին հոն՝ ինչ որ ըսի. ի դարձին՝ անցան Սամցխէն ու Սաաթբագոյ, ու մեկնեցան՝ առանց հոն վնաս մը ընելու: Ասով Մղէճապուկ խաղաղութիւն ունեցաւ անոնց հետ եւ խոստացաւ անոնց հնազանդիլ ու ծառայել: Յետոյ փախստականներն իրենց տները դարձուց, զՍաաթբագոյ լեցուց շինութեամբք եւ իմաստութեամբ կառավարեց: Բարեկամ էր Դաւթի՝ Քարթլեաց արքայի: Կոչուեցաւ Մեծ, որովհետեւ իւր օրով իւր կալուածոց

մէջ՝ անխռովութեամբ եւ ո՛չ աքաղաղ մը կը գողցուէր: Կ'ապրէր բարեկամութեամբ եւ միաբան՝ իր դրացեաց հետ եւ Սամթրադոյի իր ամէն երկիրները պահեց: Ցետոյ կռիւներ ունեցաւ Օսմանցւոց հետ, եւ յաջողեցաւ պահպանել իր երկիրն անոնց յարձակումներէն» եւն[224]:

Ինչպէս Բրոսէ կը դիտէ[225] այս պատմութիւնը կը միաբանի ընդհանուր օսմ. պատմութեան հետ, եթէ երկու տարի յետաձգենք: Իրապէս 1514ի մեծ արշաւանաց պատմութեան մէջ կան համաձայնութեան կէտեր. Սելիմ սուլթան Թաւրէժէ դարձին Կարսի վրայէն ի Կարին ընդունեցաւ Բաբերդի բանալիները, ուր բանակ մը ուղարկած էր եւ որ երկար ատեն պաշարած էր զայն: Անկէ յառաջ ի Կարս որոշած էր «իր վրանը դարձնել դէպ ի Վրաստան, որպէսզի երկիւղ ազդէ Ճանիկի, որ խոստացած էր անձամբ բանակը գալ, բայց խօսքը չէր պահած: Այս ուղղութեամբ չորս օրուան յառաջխաղացութենէ ետքն եկան վրացի պատգամաւորներ շատ պարգեւներով եւ պաշարով, որ չափազանց կարեւոր էր, որովհետեւ ուտեստի պակասը շատ մեծ էր[226]»: Այստեղ

224 Անդ, էջ 213—14:

225 Անդ, II, 1, p. 19, ծն. 2:

226 Հմմտ. *Josef Hammer*, Geschichte des Osmanischen Reiches, I, հար. 834, p. 721—22: Այս կարեւոր գործն այլեւայլ հրատարակութիւններ ունի,

ի հարկէ շփոթութիւն մը կայ. բացի աշխարհագրական անուն մ'իբր անձի գործածուելէն՝ բուն «Ճանիկ» եւ բուն «Վրաստան» հոս գործ չունէին: Բրոսէ անոր համար կ'ըսէ թէ պէտք է կարդալ ჭანის, այսինքն՝ Լազիստանի որեւէ իշխանի մը մասին է խօսքը, կամ իշխանի մ'որուն հեղինակութիւնը մինչեւ Լազիստան կը տարածուէր, եւ այս կրնայ ըլլալ աթաբեկ մ'որ այն ատեն էր, կ'ըսէ, Ղորղորէ (Ղուարղուարէ) Գ. — որուն սակայն Վախուշտ 1500—1502 տարիները միայն կու տայ[227]: Մենք կարծենք թէ «ჭანიკ» պարզ շփոթութիւն մըն է «Մզէ-ჭაბუკ» (— որ կը նշանակէ «Երիտասարդ-Արեւ[228]» —) անուան: Այս ժամանակ. «Վրաստան» հաւանական է անո՛վ որ Օսմանցիք այս անուամբ կ'իմանան նաեւ աթաբեկներուն երկիրը, որուն հետ նախ շփման մէջ մտան, ինչպէս աւելի ալ պիտի ունե-

---

որով բաժանմունքն ու իջաթուերն անհամաձայն են: — Տարեթուերը լուսանցքներու վրայ նշանակուած ըլլալով՝ կրնայ շատ բան դիւրութեամբ գտնուիլ:

[227] Brosset, II, 1, p. 213. բայց Բրոսէ (անդ ծն. 3 եւ p. 211, ծն. 2) կը նշանակէ այլեւայլ կէտեր աթաբեկներու տան եւ անդամոց մասին, որոնք տակաւին մութ են:

[228] Հմմտ. Brosset, II, p. 384, յառաջ բերելով ուրիշ աղբեր մը («Տարեթիւք») տեղեկութիւնը, որ կ'ըսէ նոյնպէս 1512 թուին համար. «Սերասքէր մ'եկած ըլլալով, Մզէ-ճապուկ աթաբեկն անոր առջեւ գնաց, եւ Իմերեթ մտան»:

նանք տեսնելու[229]: Անուանց այսպիսի չփոթութիւնք ցանցառ չեն օսմ. պատմութեան մէջ, ամէն անգամ մ՛որ նոր երկիր մ՛առք կը կոխէին: Իրաց այս ամբողջ ընթացքին մէջ մութ կը մնայ սակայն Պրն. Կիտեվանի դիրքն: Բաբերդի պաշարման եւ առման շրջանին Թուրքերն անշուշտ արշաւանքներ ըրած են Ճորոխի հովտի մէջ ալ եւ առհասարակ շրջակայքը, որով, կ՛ըսէ, Բրոսէ նոյն տեղը, կը մեկնուին Վախուշտի տուած տեղեկութենէն Թուրքաց արշաւանքներու մասին ի Սամթրագոյ: Ցամենայն դէպս Օսմանցիք տիրած են ի վերջոյ՝ նաեւ Սպերի, որուն պատմութիւնը շատոնց ի վեր կապ ունէր Բաբերդի էմիրներու հետ, եւ անոր համար յաջորդ արշաւանքներուն, (յատկապէս 1548/49ին) Շահթամազ ինչպէս այրացուեր ըրաւ Կարին ու Երզնկան, նոյնպէս առաւ ու աւերեց Բաբերդն ու Սպեր: Ընդհանուր պատմութեան հետ միաբան մեր նոր ժամանակագիրք ալ նոյնը կը պատմեն[230]:

---

[229] Ճանիկ յատուկ մտօք աշխարհամասն ի հարկէ անծանօթ չէր կրնար մնալ Թուրքաց, որ նոյն անունը կը գործածեն յաճախ. Օսմ. պատմութիւնը կ՛ըսէ թէ Սելիմ Ա. ի Կարէն Բաբերդի բանալիներն ընդունելէն ետքը՝ անոր առնողին, Պըյըքլը Մուհամէտի շնորհեց «Երզնկան (Erzendschan) գրաւեալ երկրին կուսակալութիւնը, իբր յաւելուած տալով Գարահիսար, Ճանիկ եւ Տրապիզոն». (Համմէր, անդ, էջ 722):

[230] Օրինակի համար Զաքարիա Սարկաւագ (Պատմ., տպ. Էջմ. 1870, էջ 11) ՋՂԷ (= 1548) Թուի

Այս տեղ մեր նպատակին համար այսչափը կը բաւէ· բայց որովհետեւ կայ ուրիշ կէտ մ'ալ, զոր կը նշանակէ ուրիշ հայերէն ձեռագիր մը, — եւ որ կապ ունի ընդհանրապէս այս կողմանց կամ գոնէ մերձակայից հետ, հարկ է տեսնել նոյնը։

§ **29.** Կոտրաշէն եւ Վաշլովան։ — Այս երկու անունները կու տայ հայերէն ձեռագրի մը յիշատակարանը, որ դժբախտաբար — որչափ մեզի ծանօթ է — չէ հրատարակուած, բայց որուն մասին տեղեկութիւն կու տայ Բրոսէ, ծանօթութեան մը մէջ, ուր կը գրէ[231] «Աթաբեկներու գերդաստանին մասին մեր ծանօթութիւնքն յաւելլու համար՝ պէտք եմ յիշել տակաւին իշխան մը Իվանէ կամ Ioanè անուն, որուն մասին կը խօսուի Ս· Պաւղոսի (Առաքելոյ) Թղթոց գեղեցիկ հայերէն ձեռագրի մը մէջ, զոր ինձի տուաւ կոմս Ուվարոֆ։ Այս ձեռա-

համար կ'ըսէ· «Թագաւորն Թահմազ՝ ելեալ գնաց ի վերայ երկրին Օսմանցւոց, եւ աւերեաց զԽնուս, զԲասէն, զԱրզրում, զԴերջան, զԿեղի, զԲաբերդ, յԵրզնկայ, զՍպեր եւ այլ բազում տեղիս, եւ դարձաւ ի Թաւրէզ»։ — Գրեթէ նոյն բառերով ունին Գրիգոր Կամախեցի («Դիւան», Ժ, 39—40), Վարդան Բաղիշեցի (անդ. էջ 72) եւ ուրիշներ, նոյն ՋՂԷ թուին։ Նոյն բառերով՝ բայց թուականի տարբերութեամբ (ՋՀԵ/ՌՇԻԶ, ուստի 1526) կը գրէ Խաչատուր աբեղայ Ջուղայեցի (Պատմ· Պարսից, հրտ· Բարգէն վ· Աղաւելեանց, Էջմ· 1905, էջ 97)։

[231] *Brosset*, II, 1, p. 213, ծն· 2։

գիրը գրուած է՝ 10 մարտ 1508 տարին Կոտորաշէն (Cotorachen) գիւղը, ի գաւառին Վաշլովան (Vachlovan) Մզէճապուկի կառավարութեան տակ, Իվանէի իշխանութեան օրով, «ընդ պատրօնութեամբ Մզէճապուկին, եւ «ի իշխանութեան Իվանէի»: Միւս կողմանէ Մցխիթայ ձեռագրին մէջ Ioané իշխանի մը մահը կը դրուի յամի 191=1508[232]: Այս երկու վկայութիւնքն միաբանելու համար՝ կրնանք ընդունիլ թէ (հայերէն) գիրքս սկսած էր գրուիլ այս Իվանէի օրով, որ սակայն այլուստ անծանօթ է, եւ աւարտած է աւելի անագան»: Այսչափ՝ Բրոսէ:

Նախ դիտելի կէտ մըն է, զոր արդէն ակնարկեցինք ալ Համշէնցւոց «Պարոն» յորջորջանաց առթիւ (տես § 7), աթաբեկութեան՝ պատրոնութիւն յորջորջանքը: Այս՝ հնագոյն բառ մըն է՝ արդէն հռոմէական իսկ շրջանէ, եւ մերձաւոր իմաստով, որ ուրեմն պահուած է մեր մէջ ալ[233]: Հոս ի հարկէ գործածուած է նախնաբար տարբեր ծագմամբ «Պարոն» (baron) բառին համադօր, նշանակելու ինքնօրէն իշխան մը: Սակայն այս չէ կարեւորը. այլ այն որ Մզէճապուկ

232 Անդ, կը յիշէ այս մասին տեղիս՝ Bull. hist.-philol., I, p. 234 (Պետերբուրգ ճեմարանի «Պատմական-բանասիրական Տեղեկագիր» հրատարակութիւնը որուն այս հատորն չունինք այժմ առձեռն):

233 Լտ. patrōnus, «տէր, աւատատէր, պաշտպան» եւն. իտալ. padrone, գղ. patron, եւն:

պատրոնութեան կամ աթաբեկութեան հետ՝ գրեթէ համազօր, թէեւ անշուշտ անոր ընդհանուր մօտ գերիշխանութեան ներքեւ, «իշխանութիւն» մ'ունէր Իվանէ։ Ինքնին կը ծագի այն համեմատութիւնը թէ ուրեմն նոյն կամ գոնէ նոյնպիսի աղերս մըն էր «յիշխանութեան Սպերու Պրն. Կիտեվանին, որ տիրեաց ի Վրաց ազգէ»։ Այս «Պարոն» Կիտեվան ալ ուրեմն հաւանօրէն նոյն տնէն էր, եւ թերեւս այն Իվանէ նախորդն էր իրեն այն «իշխանութեան մէջ, որ տարածուած էր մինչեւ Սպեր, եւ որուն ենթակայ էր Կիսկիմ։ Արդ հոս է խնդրոյն էական մասը. Կոտորաշէն գիւղը, ուր գրուած է ձեռագիրս, կը յիշեցնէ անպատճառ արդի հայ գիւղը՝ որ Կուտրաշէն կը կոչուի այժմ, Կիսկիմի կամ Բերդագրակի գաւառիս մէջ, Ճորոխի աջ ափին, Նիխաղի եւ Կարմիրքի միջեւ, Մոխրկուտի գրեթէ հանդէպ։ Այս մասին տարակուսելի տեղի չէր մնար, եթէ չըլլար այն կէտը թէ Կոտորաշէն էր Վաշլովան գաւառի մէջ։ Եթէ տեղը նոյն է ստուգիւ, այս՝ մինչեւ անգամ շատ կարեւոր պարագայ մըն է։ Այս շատ ընդարձակ գաւառն պէտք էր որ յատուկ անուն մ'ունենար։ Անշուշտ հին Արսեացփորը կը յիշուի՝ ինչպէս պիտի տեսնենք՝ գոնէ մէկ երկու անգամ նաեւ վրական պատմութեան մէջ։ Բայց ըստ ինքեան սար քով կընար նոր անուն մ'ալ գոյութիւն ունենալ, գոնէ մէկ բաժնին համար, ինչպէս որ յետոյ

սովորութիւն եղած է կոչել Բերդադրակ կամ Կիսկիմ տեղերու անուամբ: Իսկ օսմանեան տիրապետութենէ վեր դարերով իսկ կոչուած է անյատուկ յորջորջանօք մը՝ «Կիւրճիստան» (= Վրաստան) սանճաք», անով որ Օսմանեանք երբ հոն ոտք դրին, իրենց համար «Վրաստանի» աթաբեկներու իշխանութեան ներքեւ դտան, ուստի հոս կը սկսէր իրենց համար «Վրաստան»: Անոր համար յամենայն դէպս երբեմն Վաշլովան կոչուած ըլլայ գոնէ մէկ մասը:

Սակայն հոս է դժուարութիւնը: Նախ ի հարկէ հոս գործ չունի հեռաւոր «Վաշլովանը» որու մասին կը պատմէ վրական պատմութիւնը 1560 տարւոյ ներքեւ թէ «այս միջոցին Խունան, Կուինջրոբ եւ Վաշլովան տանց բնակչաց էին եւ բոլորովին անմարդաբնակ», որով Գըզըլբաշք կրնային դիւրայն անցնիլ Եաղլուջա եւ մտնել Տփղեաց բերդն՝ որ իրենց ձեռքն էր, են[234]: Այս

[234] Brosset, II, 1, p. 351 (դէպքը՝ յամի 1560), Khounan, Ghwindchrob et Wachlowan). — Հմմտ. «Ազատամարտ» 1914, թիւ 1556 (քաղուած «Հորիզոն» թերթէ). «Թիֆլիսի բնակիչ վաճառական Գ. Սմբատ Տէր Առաքելեան ընծայաբերել է Կովկասի Հայոց բարեգործական Ընկերութեան իւր կալուածքները Վաշլովան գիւղում, այն է՝ մէկ քարէ երկյարկանի տուն... եւ մէկ խաղողի այգի, որպէս զի ընկերութիւնը յիշեալ տան մէջ բաց անի Հայոց դպրոց վրախօս Վաշլովանի եւ հարեւան (նոյնպէս) վրախօս գիւղերի համար» են: Ընկերութեան անդամք այցելած են Վաշլովան եւ «մի չորք վրախօս

խնդիրէ դուրս է: Բայց արդ վրական աղբիւրները կը յիշեն ընդհանուր մտօք Սամցխեայ մէջ Վաշլովան մ'ալ, որուն մասին յիշատակութիւնք կը ցուցնեն որ այս կողմերը կամ ոչ շատ հեռու մերձակայքն ըլլալու էր: Առնունք նախ այն՝ թէեւ ընդարձակ՝ միջադէպն, որ կը պատմուի աթաբեկութեան հիմնադրութեան օրերէն իսկ, Բեկայ աթաբեկի օրով, եւ որ միանգամայն կը ցուցնէ Սպերի եւ Բաբերդի դիրքն՝ այս աշխարհաց հանդէպ: Վրական Տարեգիրք Քարթլեայ Վախթանգ Գ. արքայի (1301—1307) իշխանութեան շրջանին համար կը պատմեն[235]. «Այս ժամանակ Բեկայի (Béka) զօրութիւնը շատ աճած էր. բայց երեւցան թուրքերը, որոնք Յունաց աշխարհը կը նուաճէին եւ որոնք ամառը կու գային Պարխար (Parchal) լեռները, եւ ձմեռը կը մնային Պոնտոսի մօտը: Ասոնք հաւաքուած էին 60.000 անձանց թուով, հրամատարութեամբ Ազատ-Մուսէի, որ քաջ եւ ազդեցիկ մարդ մըն էր, եւ որ իւր վայրենիներով եկաւ Վրաստան աւերել: Հազիւ թէ Տայք (Tas) մտան, սկսան աւերել, սպաննել եւ կողոպտել այնպիսի անգթութեամբ որ անկարելի է ըսել թէ ո՛րչափ մեռան կամ գերեցան: Ծերք, տղաք եւ երի-

---

գիւղերը», եւ որոշել «բանալ դպրոց բաց ի Վաշլովանից, նաեւ Կումիս, Կոթա կամ Մուխաթ, եւ Փոքրիկ-Թելէթ (Միրզոյեանների կալուածք) գիւղերում» են:

[235] *Brosset*, I, 1, p. 626—630.

տասարդք կորան. ծծկեր տղաք սպաննուեցան իրենց մօրը գիրկը. որովհետեւ արշաւանքն յանկարծական էր եւ գիւղերը գտան խորին ապահովութեան մէջ ընկղմած, առանց մէկու մը փախչելու. ուստի կոտորածն անթուելի եղաւ: Տայք այնպէս այրացուեր եղաւ որ Թուրքերը, Վաշլովանէ մեկնելով, մտան ի Մուծղուլ[236] եւ Նիգալի հովիտները, որոնք անանցանելի վայրեր են, ուր ջնջուեցան Խերխեմելիս-Մէ ազնաւորներէն: Յանհնարինս մտած՝ իւր զօրաց տկարութեան պատճառաւ, Թագա՝ տէր Բանասկերտի (Thaqa Phanascertel), որ Տայոց իշխան (երիսթաւ Tasի) էր, փոքրիկ կռիւ մ'ըրաւ անոնց դէմ՝ Թորթումի բերդին ներքեւ, եւ անոնց շատ վնաս հասցուց, բայց չկրցաւ լիովին վտարել իւր երկիրներէն՝ անոնց բազմութեան պատճառաւ, որոնք աւելի կատղելով սկսան աւերել (Թորթումը)»: Բեկա (որ «մթաւար» կը կոչուի հոս) լսելով՝ կը կոչէ իւր հպատակները. բայց «հասնելով Բասեն»՝ կը լսէ Թուրքաց իրենց ձմերոց դառնալը: Բեկա կը հաւաքէ Սամցխեայ, Շաւշէթի եւ Կլարճէթի իշխանները. «այս մթաւարք եւ Բեկայ զօրքերը» կ'որոշեն կռուիլ Թուրքաց դէմ, եւ Բեկա կոչեց իւր բոլոր հպատակները, Տաօխկարէ մինչեւ Բասեան, Մեսխերը, Շաւշէթ-

---

236 Անդ, էջ 627. Moudzghoul. Բրոսէ կը նշանակէ թէ «Վախուշտ, էջ 79, կը դրէ Moughris-Khéwi»:

ցիքն եւ Կղարճք, բնակիչները Կողայ, Արտահանի, Կարնիփորայ, Տայոց որոնց մեծագոյն մասը, որովհետեւ նոյնպէս տէր էր այս երկրին»: Կը միաբանին նոյնպէս Թմոգի (Thmogwi) եւ Թորի արք, ընդ ամէնը 12.000 արք, որոնք կ'երթան Թուրքաց դէմ: Ասոնք «ամառուան մերձենալուն սկսած էին (լեռներն) ելլել» եւ այն՝ «վեց բիւր»: «Ասոնք երբ Վաշլովան հասան, 10.000 անձ, Բեկայի 500 զինուորները՝ որոնք ուղարկուած էին երկիրը պաշտպանելու, դէմ դրին անոնց ամուր դիրքի մը մէջ: Խիտ կռիւ մ'եղաւ, ուր Թուրքերը պարտուած՝ իրենց չարքերը (մեռեալ) թողուցին այն պախվայրներու մէջ»:

Բեկա «լսելով թէ Թուրքերը մերժուեցան Վաշլովանէն, շատ ուրախացաւ եւ գնաց Սպերի եւ Բաբերդի (Sper, Baberd) կողմը, ուր էր Թուրքերու ձմեռոցը (quartier). բայց Աղատ-Մուէ «հաւաքեց զօրքերը, ընտրեց 30.000 հոգի եւ քալեց դէպ ի Վաշլովան». դարձեալ «երեք բիւր ալ՝ իւր հրամանաւ՝ գնացին ի Տայս (Tas). եւ անոնց ըսաւ. Ես կ'երթամ Վաշլովան, զայն կ'աւերեմ եւ հատուցանել կու տամ արեանս գինը: Դուք գացէք ի Տայս, ջնջեցէք ինչ կրնայ հոն գտնուիլ եւ միացէք ի Բանակ (Bana, Բանակ) ուր յաղթութեամբ պիտի գամ ես ալ. անկից միացեալ զօրութեամբ կը մտնենք Վրաստանի սիրտը»: Այս ըսաւ եւ դիմեց ի Վաշլովան»: — Բեկա յետոյ կ'իմանայ այս

բանը, իւր բանակին «լաւագոյն եւ հզօրագոյն մասը տուաւ իւր անդրանիկ որդւոյն Սարգսի, որ նոր կը մտնէր պատերազմողի մը տարիքը»: Սարգիս հալածելով կը հետապնդէ եւ կը հասնի թշնամեաց թիկունքը, եւ Թուրքերը կը դառնան իրեն դէմ, «որ չունէր աւելի քան 500 Մեսխեր ընդդէմ 30.000 Թուրքերու»: Սաստիկ պատերազմ մը տեղի կ'ունենայ եւ «Թուրքերը՝ առաջին իսկ բախումէն պարտուած՝ ետ դարձան փախչելու, լիակատար խուճապով»: Հաշուեցին 513 Թուրք դիակներ, թողլով փախուստի ատեն կոտորուածները: Սարգսի կողմանէ ինկած էին «միայն հինգ հոգի, այն ալ՝ աննշան մարդիկ»:

«Իսկ Բեկա, որ կ'երթար ընդդէմ Թուրքաց կանանց, անոնց (թշնամեաց) հանդիպեցաւ անոնց ընթացքին: Թշնամիք հեռուէն («Շաւոր լեռնէն»[237]) տեսան՝ լեռան մը վրայ՝ զինքն ու իւր արքն, թիկունք դարձուցին ու փախան: Կանայք դիմեցին դէպի լեռները, եւ լքանելով իրենց հարստութիւնք՝ ձգեցին ամէն կողմ: Բեկա եւ իւր արք սկսան անմիջապէս հալածել, եւ մեծ կոտորած ըրին: Միայն քանի մը Թուրքեր փախան Սպերի քաղաքն ու բերդը, քանի մ'ուրիշներ ի Նոր-քաղաք (Nor-Kałak) Մեսխերը, երբ հասան, ամփոփուեցան, տեղեաց անձկութեան

237 Անդ, էջ 629. Choar. բայց՝ ինչպէս կը նշանակէ Բրոսէ, միակ ձեռագիր մ'ունի անունս. (փակագծեալ մասը):

*պատճառաւ»: Այստեղ Թուրքերը չկարենա-
լով փախչիլ՝ «բռնուեցան, կոտորուեցան
ոչխարի հօտի պէս»: Մեսխերը «սփռուե-
ցան* Սպեր քաղաքի *շուրջը: Քաղաքը*, ի բաց
առեալ միջնաբերդը, *առաջին իսկ յարձակ-
ման* առնուելով, *Վրացիք լեցուեցան հարս-
տութեամբք, ոսկւով, արծաթով, թանկա-
գին նիւթերով. ձիերու եւ ուղտերու երա-
մակներ իրենց ձեռքն ինկան. իսկ ո՞վ կրնայ
հաշուել եզներն ու ոչխարները: Հագիւ կըր-
նային տանիլ աւարը, բարձած թշնամւոյն
գրաստներուն վրայ»:*

*Երբ (Բեկա) պաշարուած կը պահէր
Սպերը, երկուհարիւր փախստականներ,
ազատելով Սարգսէ, անցան Պոնտոսի կողմը:
Սարգիս դիմեց դէպի իւր հայրը.* ճամբուն
վրայ աւերեց Նոր-քաղաքը *եւ հարստացուց
իւր յաղթող զինուորները բազմութեամբ նիւ-
թոց, աւարաւ եւ գերիներով, եւ յետոյ
եկաւ միացաւ հօրը հետ:* Սպերի պաշարումը
երկարեցաւ. *(պահապանք)* [238] *ուղարկեցին
իրեն ըսելու. «Մենք Ղազան-խանի մարդիկն
ենք. (իւր արք) մեր կամաց հակառակ՝ փա-
խան Պոնտոսի կողմը: Կ'աղաչենք խնայել
մեզի եւ ետ դառնալ. քեզի կու տանք շատ
ոսկի, արծաթ, ջորի ու ձի»: Այս առաջար-
կութիւնն ընդունելով Բեկա, բերաւ իրեն
հետ* Սպերէ ու Բաբերդէ *անթիւ հարստու-*

---

238 *Բրոսէ (անդ, էջ* 630, *ծն.* 1) *կը նշանակէ որ
հոս բնագիրը մութ է. բայց խնդիրն ըլլալու է պա-
հապան զօրաց մասին, ո՛չ թէ բնակչաց, եւն:*

թիւններ, եւ դարձաւ յաղթութեամբ: Կարնոյ–քաղաքի (Carnou-kałak) աւագներն ալ եկած ըլլալով իրենց դիմաւորութեան ընծաներով եւ աւարաւ, անոնց մաս մը ըրաւ: Աստուած այնպիսի չքեղ յաջողութիւն մը պարգեւած ըլլալով, դարձաւ իւր բնակարանն անհաշուելի հարստութեամբք» են:

Ահա ընդարձակ պատմութիւնը, որուն մանրամասնութեանց, թուերու եւ մասին խնդիր ընելու պէտք չկայ, քանի որ կարեւոր բան մը չէ: Միւս կողմանէ գեղեցիկ պատկեր մըն է այն վիճակին, որ Սելջուկեանց իսկ ոտք կոխելու առաջին վայրկեանէն կը տիրէր ամէն կողմ, նաեւ այս նեղ հովիտները: Բաբերդի տէրերը, որոնք այնչափ հզօր ալ էին եւ երբեմն, — բերդին նորոգութեամբըն ալ, ըրած է նոյն իսկ «Թագաւոր Փոքր Ասիոյ եւ Հայաստանի» Տուղրիլ որ գրած է հոն իւր արձանագրութիւնները[239], ի հարկէ կանուխէն տէր էին Սպերի ալ: Նոյն իսկ Բեկա չկրցաւ առնուլ Սպերի բերդը, եւ Սպեր, որ Վրական պատմութեան մէջ յա-

239 Հմմտ. *C. F. Lehmann-Haupt*, Materialien zur älteren Geschichte Armeniens und Mesopotamiens, Berlin 1907, p. 125 ff. Arabische Inschriften, bearbeitet von *Dr. Max v. Berchem*, Բաբերդին արձանագրութիւնք՝ p. 152—157: Հմմտ. (թրգմ. ապէ) Հ. Յ. Աստուրեան, «Արաբական արձանագրութիւններ Հայաստանէն՝ ի ԲԶՄ, 1909, էջ 241—45. — Արշակ Իսրայէլեան, «Բաբերդի բերդը»՝ ի Թերթին «Աւետաբեր» 1914, թիւ 47, էջ 1123—1125, եւն:

ճախ կը յիշուի, իբր սահման մը կը յիշատակուին, մինչեւ ուր կը տարածուէր Վրաց՝ նաեւ հզօրագոյն շրջանին առեն, իշխանութիւնը: Բացառութիւններ են անոր տիրապետելն, ինչպէս այն Կիտեւլանի իշխանութիւնը, որուն պարագայք մթին են: Այն անրաւ աւարն՝ որ կը յիշուի, ի հարկէ միայն «Թուրք»երու չէր, որոնք արդէն վաչկատուն կը նկարագրուին, այլ տեղացի հայ բնակչաց գիւղերու եւ քաղաքին: Թէ այս թաթաղուն գեղուն աւարի մէջ Կիւկլիմի յիշատակարանին պատմած աւետարանաց գերութիւնք ալ «ի Վրաց ազգէ» անպակաս էին, ինքնին կը հասկցուի: Սպերի իբր մերձակայ նկարագրուող՝ նոյնպէս աւարեալ Նոր-Քաղաքն այլուր չի յիշուիր, որչափ մեզի ծանօթ է, եւ դժուարին է նկատել թէ այս կողմերն ինչ «քաղաք» կրնայ եղած ըլլալ:

Ո՞ւր էր այս տեղ յաճախ յիշուած Վաշլովան: Թուրքերը Սպերէ կու գան միշտ, եւ հաղիւ «Պարխալ» լեռներն ելած՝ կը մտնեն Վաշլովան. «Պարխալ» հոս ալ առաւելապէս հասկնալու է Ճորոխի հարաւային լեռնագիծը. (§ 26). բայց այս համեմատաբար հին բնագրին մէջ անշուշտ ո՛չ այն անձկագոյն իմաստով, զոր կու տայ անագանագոյն վրական աշխարհագրութիւնը[240]: Բնագիրս

240 Հմմտ. նաեւ Խոր. Բ, գ. «դառնայ առ ստորոտովն Պարխարայ ընդ մէջ Տայոց ի գիջին եւ ի մառախլուտ տեղիս մայրեացն» եւն, յետոյ յիշելով

որոշ կ'ըսէ թէ Թուրքերը Պարխարէ կը մտնէին ի Տայս, եւ այս Տայոց մէջ էր նաեւ Թորթում, ուր Տայոց իշխանը՝ բանակի տէրը Թաղա անուն ջանաց առջեւն առնուլ։ Նկարագրութիւնն ա՛յնպէս է որ կարծես Թուրքերը Սպերէ կ'ելլեն այս հարաւային Պարխարի այն կէտը՝ ուր արդի Կարմիրքն է, (— Ոսկեվանէ վերեւքը՝ արդի Ջանչան կոչուած բարձրաբերձ լեռնակողն ի վեր՝ իրօք մեծ «ելլել մըն է դէպ ի Կարմիրք —) անկէ Կուտրաշէն» — գիւղի վրայէ իջնել Որջնհաղ եւ այն վերը գծուած Հարկեւորի անցքէն իջնել Թորթումի ձորը։ Այս պարագային Կուտրաշէն իրօք Կոտորաշէն է եւ այն ատեն կան կարելիութիւններ

գնող։ Ջուանշէր ալ կը գրէ «հարկանէին զերկիրն Հայոց՝ առ գետովն Նուասէ, եւ առ Պարխարաւ, որ են Տայք, եւ առ ճանապարհին Աշոցաց (էջ 33)։ Համմտ. Brosset, I, p. 69 որ Nosté անուան դրից մասին որոշ բան չէր կրնար ըսել. բայց կը կարծէ՝ Դեմոթի եւ Ոցրխէի միջեւ տեղ մը։ «Պարխալ» անունը բնագրին մէջ սխալագիր է, բայց դիւրաւ կ'ուղղուի» յաշխարհն Պարխալ, որ է ի Տայս («Tao»). Աշոցք անուան տեղ վրականը միշտ ունի Աբոց (Abotz)։ Ինչպէս Հիւբշմանն (Հին Հայոց տեղւոյ անուանները, էջ 242) կը նշանակէ Պարխար լեռը «մասամբ Տայոց արեւելեան սահմանը կը կազմէր» (հիւսիսէն), «մասամբ Տայոց ներսերը կը մտնէր» (հարաւէն). այսինքն՝ նկատելով Պարխարի կրկին լեռնագծերը՝ յիշեալ բացատրութիւնք կը մեկնուին։ Այսու համդերձ ըմբռնման տարբերութիւն մը կայ նոյնիսկ հին Խորենացւոյ եւ աւելի յետնագոյն Ջուանշէրի քով։ Իսկ այս Աղուա–Մոսէի պատմութեան մէջ Պարխար անցնելով կը մտնէին ի Տայս։ Համմտ. վերը՝ § 27 եւ ծն.։

զետեղելու: Նախ կը փորձուինք գաւառ Վաշլովան ուղղակի նոյնացնել Որջնհաղի հետ, որ ուրեմն ըլլալու էր գաւառիս արեւմտեան մասին կեդրոնական տեղին, արդէն կարեւոր ահեղ բերդովն (մասնաւոր այն՝ որ անոր ու Նիխաղի միջեւ է՝ Ծորոխի վրայ): Ե. դարու Հմայեկի պատմութեան մէջ ալ, ինչպէս պիտի տեսնենք, «Որջնհաղ» ու Պարխար լերինք մեծ դեր կը խաղան: Արդեօք «Վաշլովան» ի վերջոյ Որջնհաղի վրական մէկ ձե՞ւն է: Որջնհաղ այսօր կը հնչուի իբր Որջնաղ, է Օրջնաղ, եւ Թրքախօսներէն պարզ Օշնաղ[241]:

Ազատ–Մուշէի երկրորդ ծրագիրն ալ շատ հակառակ չէ, երբ բանակին կէսը կ'ուղարկէ Վաշլովան, անկէ Բանակ կամ Փանաք (Թրք. Ֆէնէք) անցնելու, ուր ինքն ալ պիտի գար՝ նախ Տայք աւերելէ ետքը: Բանակ ինքնին Տայոց մէջ է, եւ այն Վրաց

---

241 Ինճիճեան (էջ 133) «Օշնախ» կը գրէ: Քոխ (էջ 65) կը գրէ Ordschnagh, բայց կ'ըսէ «անուանս ականջիս իբր Otschnach հնչեց», Կիպերտ հին քարտէսին վրայ Ortschnagh գրած է, բայց նորագոյնին վրայ պարզ Oshnag, թէեւ «բերդը կ'անուանէ Oshnagh kala. նշանակելով հին անունը ձեւովս Vordjnhal: Համմ. Ալիշան, («Տեղագիր», էջ 39) «Օշնախ կամ Որջնհաղ». — Հիւբշ., անդ, էջ 245, եւն: — «Որջնհաղ» բնականապէս պիտի հնչուէր նախ «Օրջնաղ», եւ Խոտորջրոյ բարբառի այս միտմամբ այս գրից մէջ ր տառին յ հնչուիլն եւ նաեւ լիովին իյնալն ինքնին կը բերէր «Օջնաղ» (ինչպէս կը հնչուի ալ), եւ ի վերջոյ Օշնաղ արտաբերուիլը:

անձկագոյն Taoի, այն է Օլթի-Ջրոյ աւազանին: Ուստի Աղատ-Մուշ նախ պիտի աւերէր Տայոց միւս աւազանը՝ Թորթումի ձորերը: Ուստի ուղեգիծն հոս ալ որոշ է: Մէկ բաժինը կ'անցնէր Վաշլովան, այսինքն ուրեմն ըստ այս մեկնութեան Որջնհաղ եւ անկէ հաւանօրէն Արսխի գծով դէպ ի Իշխան ու Տայոցկերտ (արդի՝ Թաւուսկեար), անկէ Բանակ (հմմտ. § 26): Իսկ ինքն ընտրած ըլլալու է նաեւ արդի գործածական ուղին՝ Սպերէ աւելի հարաւային գծով անցնիլ ի Տայս Վերինդեղի ճամբով, մտնել Ողէքի (արդի՝ Խօդէք) Ջրոյ ձորն կամ Վխիկլի ձորէն ու գոնէն՝ բուն Թորթումի ձորը:

Ընդունելի ըլլայ մեր նոյնացումը կամ ոչ, Վաշլովանի համար այս պատմութեան մէջ ընտրութեան շատ մեծ ասպարէզ չկայ: Ան սերտիւ կապուած է Սպերէ եւքը՝ Պարխարի լերանց, եւ Տայոց հետ, եւ այն՝ ճշդիւ խօսելով դուրս հանելով իսկ Տայոց Բանակը (ուստի Օլթի-Ջրոյ աւազանը), որովհետեւ Վաշլովան եւ Տայք (ուստի Թորթում-Ջրոյ աւազանն) աւերելէն ետքը հոն պիտի մտցուէր: Եւ որովհետեւ այս Պարխարի հարաւային ամբողջ երեսը կը բռնէ Տայք՝ այն կրկին աւազաններով, կը մնայ Պարխարի հիւսիսային երեսը՝ դէպ ի Ճորոխ: Այս տեղ միայն կրնանք զետեղել Վաշլովան, ամէնէն մեծ ընդարձակութեամբ ալ առեալ անջրրպետիս մէջ՝ Սպերէ մինչեւ իրր արդի Արդուինի մօտերը, ուր թէ՛ Տայք կը սպառին

թէ՛ այս Պարխար լերինքը: Կա՛մ ուրեմն այս անջրպետին (Սպերէ եաքն եկող) առաջին բաժնին, — եւ պատմութիւնն զա՛յս հաւանական կ՚ընէ, ուրեմն արդի Կիսկիմի կամ Բերդագրակի գաւառիս մէջ գնելու է, կամ եթէ անկէ վեր, — քանի որ հոն հին Լեգանի գաւառի անուն մը կայ, — միայն նեղ չերտը կրնայ ըլլալ՝ միացեալ Թորթումի եւ Օլթիի ջրերու ձորոխ խառնուելէն եաքն, ուր՝ ինչպէս պիտի տեսնենք, ուրոյն գաւառ մ՚եղած ըլլալու էր երբեմն, որուն անունը սակայն չէ աւանդուած: Տեղն որոշելու կռուան մ՚ունինք՝ «Կոտորաշէն» գիւղը: Քանի որ ունինք Կուտրաշէն մը, եւ այլուր այս կողմերը ծանօթ չէ համանուն ուրիշ գիւղ մը, հոս ըլլալու է գաւառը, որով Սպերի գաւառի ալ սահմանակից:

Եթէ այս վերջին կէտը տարակուսական կը մնայ, նախ քան ուրիշ կարելիութիւն մը քննել, տեսնենք այն դժուարութիւնը, որ կը ծագի անկէ միայն որ պատմութեանս միւս մասը թէ Թուրքերը Տայքն աւերելէ եաքը՝ Վաշլովաճէ մեկնելով մտան ի Մուծղուլ եւ Նիգալի հովիտները, աւելի Արդուինի մօտերու կը յարմարի: Դժբախտաբար այս տեղերն ալ որոշ չեն, թէեւ Նիգալի հովիտ («Նիգալիս–Խեւ») քանի մ՚անգամ կը յիշուի, Վրական Տարեգրոց մէջ ալ: Այսպէս նոյն իսկ Աշոտ Կիւրապաղատ, Արտանուջէ ելլելով զինուոր հաւաքելու եւ յարձակում կրելով՝ «մեկնեցաւ եւ մտաւ Նիգալի հովիտը. ուր

եկեղեցւոյ մը մէջ սպաննուեցաւ (826ին), եւ «իւր արեան հետքերն տեսանելի են մինչեւ այսօր[242]»: Իւր հաւատարիմք Դոլիս–Ղանայէ կը հասնին, կը հետապնդեն սպաննողները եւ գտնելով զանոնք «իրենց ապաստանարանն ձորոխի վրայ»· կը կոտորեն: Այս վերջին տեղս ծանօթ է՝ այժմ ալ Դոլիս–խանա կոչուած, եւ դիրքը յարմար է այս պատմութեան: Վասիլ կայսեր եւ Գորգի արքայի պատերազմաց առեն կ'ըսուի «Արքայն Գորգի Նիգալի վրայէ Սամցխէ գացած ըլլալով, Վասիլ հետեւեցաւ ի Ջաւախս, զոր աւերեց[243]»: Դաւիթ Դ·ի համար կ'ըսուի «Ձմեռուան կէսը Սամցխէ անցնելով գնաց ի Շաւշէթ եւ ի Կլարճէթ եւ մտաւ Նիգալի հովիտը[244]»: — Այս առթիւ կը դիտէ Բրոսէ թէ «Զյաջողեցայ այս տեղւոյ (Նիգալի) դիրքն որոշել, որ կ'երեւայ թէ Արտանուչի շրջակայքն է[245]»: Ուրիշ ընդարձակ պատմութիւն մ'ալ, որ տեղեաց նկարագրութիւն իսկ կ'ընէ, Աճառիոյ մերձակայ կը դնէ ըստ երեւութին[246]:

---

242 *Brosset*, I, 1, p. 263—64.

243 Անդ, էջ 307:

244 Անդ, էջ 559:

245 Անդ, էջ 559, ծն. 2:

246 Անդ, էջ 579. բնագիրը մանաւանդ անտառի տարագրութեան մէջ մութ է եւ Բրոսէ ստիպուած էր վրական բառերը դնել թարգմանութեան մէջ: Բայց խօսքն ընդհանրապէս հետեւեալն է. Թադութարի եւ Արաղայի պատերազմները պատմելով, կ'ըսէ թէ Թադութար իջաւ Արսեան լեռներէն, պարտուեցաւ եւ

*Ցամենայն դէպս Արդուինէ վար Ճորոխի ընթացքին վրայ կամ դէպ ի հոն իջնող հովիտն ըլլալու է: Եւ արդէն Խորենացւոյ անուն կրող Աշխարհագրութեան մէջ ալ այս դիրքը կը յիշուի, երբ Ճորոխի համար կ'ըսուի թէ «անցանէ առ Թուխարս բերդով ի* Կղարճս

---

*փախաւ դէպ Ջնալ: Սիրմոն զինքը կը հալածէ: Լեռներու մէջ կրկին երկու օր ճակատ կը տրուի եւ Թագուհար կրկին կը փախչի: «Իր արանց ոմանք քաշուեցան* դէպի Աճառս, *ուրիշները դէպի Նիգալի հովիտ* (Nigalis-Khew), *որոնք այնպէս անանցանելի են մարդկան համար, որ* այս լեռնէրը տեսնողը չի կրնար մտածել թէ անկէ անցած: *Մարդ մը, աւելի եւս ձի մը, չի կրնար ճամբայ բանալ իրեն, անտառաց···, փշերու թէ' անհարթութեանց եւ թէ' թանձրութեան պատճառաւ, պատաղիճներով կազմուած ցանցակերպներով, որոնք անանցանելի կ'ընեն՝ նոյն իսկ գազանաց համար՝ այն տեղերն, ուսկից սողոսկեցան: Աւելի զարմանալին այն է որ ստիպուեցան անցնիլ անտառներէ, որոնց ծառերը ծնած են հողի թեթեւ խաւի մը վրայ, որ ժայռերը կը ծածկէ: Երբ կ'անցնէին, հողն՝ որուն վրայ ծառերը կը բուսնէին, ձեան հիւսի մը պէս վար թափեցաւ հազարաւոր մարդկան՝ իրենց կանանց հետ՝ ողջերուն տակ, սահեցաւ* իջաւ Աճառայ հովիտը, *թաղեց ձիերն ու մարդիկն, եւ զանոնք ամէնքն ալ աներեւոյթ ըրաւ: Այսպէս թշուառաբար կորսուեցան. եւ* Աճառացիք տակաւին այսօր, *փորելով այս տեղը, կը գտնեն կանանց ոսկեղէն ու արծաթի զարդեր:* Աճառիոյ *եւ* Նիգալի *հովտին միջէն՝ մտան ի Գուրիա եւ եկան Քութաթիս» եւն: — Այս պատմութեան մէջ դրոյցն անշուշտ խառնուած է. բայց այս կարեւոր չէ: Նոյնպէս հողի հիւսի նկարագրութիւնն եւն աւելի Աճառիոյ մասին վերաբերելու է: Սակայն տեղիս կարեւոր է նաեւ Նիգալի դրից համար:*

եւ անդի յԵգի, ընդ Նիգալ, ընդ Մրուղ եւ ընդ Մրիտ գաւառս ի Պոնտոս ծով» եւն[247]: Հիւբշման կը հարցնէ թէ «Մրուղ» արդեօք չէ՞ արդի Մուրղուլ՝ (ջուրը՝ Մուրգուլ-ջուր[248]): Այն ատեն թերեւս այս էր նաեւ վերոյիշեալ պատմութեան Մուծղուլ, բայց այս ի վերջոյ կրնայ ըլլալ՝ անուան նմանութիւն եթէ նկատի առնունք՝ նաեւ Մաճխալ գաւառն՝ իւր համանուն ջրով: Յամենայն դէպս Մուծղուլ եւ Նիգալ ըլլալու են Արդուինէ մինչեւ Աճառա-ջրոյ Ճորոխ թափուելու կէտը տարածուող շրջանին մէջ, եթէ Նիգալի հովիտը չէ նոյնիսկ արդի Իմերխեւ կոչուածը՝ իւր ջրովը, որուն հետ կը միանայ Արտանուչի ջուրը, եւ Ճորոխ կը թափուին Արդուինէ քիչ մը գետն ի վեր, եւ ուր մօտ է Դոլիս-խանա:

Վաշլովան կը յիշուի ուրիշ տեղեր ալ Վրական Տարեգրոց մէջ, եւ կրկին Տայոց,

---

247 Ընդարձակ խմբագր. «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», Վենետիկ 1881, էջ 35. ծանօթութիւնք եւ կից գղ. թրգմ. Հ. Արսէնի Վ. Սուքրեան (Géographie de Moïse de Corène. Texte arménien, traduit en français par le P. Arsène Soukry. Venise 1881, pp. VIII + 62 + 46). — Համառօտ խմբագրութիւնը կը յիշենք ըստ հրատարակութեան «Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք». Վենետիկ 1865, «Աշխարհացոյց»՝ անդ, էջ 583—616:

248 Հմմտ. Հիւբշմանն, «Հին Հայոց տեղւոյ անունները» եւն, էջ 242. «Մուրղուլ —» եւրոպական քարտէսները կը գրեն ի հարկէ աւելի Murgul-su. այսպէս նաեւ Կիպերտ նորագոյնին վրայ, մինչ հին քարտէսին վրայ կը գրէր Murghur-su:

բայց նաեւ այն Նիգալի հետ: Այսպէս աճարեկութեան երկիրներու համար կ'ըսուի թէ «Բեկա տէր էր երկրին Տաոխկարէ եւ Կարնոյ-քաղաքի միջեւ, Սամցխեայ, Աճարայ, Շաւշէթի, Կլարճէթի, մեծագոյն մասին Տայոց (Tao) Վաշլովանի, Նիգալիսխեւի, Արտաանուշի, Ժբ. անապատայ, Կողայ, Կարնիփողայ, Կրկին Արտահանայ, եւ բազմաթիւ գիւղերու ի Ջաւախէթ[249]»: Ընդհանուր «Տայք» անուան տեղ աւելի մանական տեղ մ'ալ երբ մերձաւոր կը յիշէ աւելի հնագոյն պատմութիւն մը: Թամարայ (1184—1211) օրով, ուստի վրական ճոխութեան գագաթնակէտին, կ'ապստամբի Գուղան, «եւ իրեն հետ Տայոց-կար (Taos-car), Վաշլովան եւ բազմաթիւ ուրիշ բերդեր», Գուզան կ'երթայ Շահ-արմէնի քով՝ օգնութիւն ուզելու: Յամենայն դէպս կուսակից էին նաեւ Շաւշէթի եւ Կլարճէթի աւագները: Բայց երբ Կողայ լեռը անցած էին, կը դիմադրեն Զաքարիա տէր Բանակերտի եւ իր հետ Ծինացին ու Կազմախեցին[250], եւ կը յաղթեն, կը գրաւեն նորէն բերդերն ու ամուր տեղերը[251]» եւն: — Այս տեղ ալ Վաշ-

---

249 *Brosset*, I, 1, p. 590.

250 *Brosset*, I, 1, p. 430. «Ծինացի»՝ Dzinel, կ'ըսէ Բրոսէ (անդ, ծ. 4) անծանօթ կը մնայ անով որ անյայտ է «Ծինա» տեղը: Calmakhel «Կազմախ» բերդէն, որ յաճախ կը յիշուի Տարեգրոց մէջ (Հմմտ. I, 250 «տիրեցին քարին Կազմախի ի Տայս», եւն). ինչպէս յետոյ պիտի յիշենք:

251 Անդ, էջ 430—31:

յովան սերտ կապ ունի Տայոց հետ եւ այն յատկապէս Տայոց-կարի հետ (արդի Թաւուսկեար, Թաւսկէր են) հետ որու մասին յետոյ կը խօսինք։

Վերջապէս Վաշլովանի տեղւոյ նկատմամբ չփոթելու չէ զմեզ Նիգալի հովտին յիշատակութիւնն, ուր ալ ըլլայ այն։ Որովհետեւ վերջապէս Նիգալ կից յիշուած է այն իսկ Արսեացփորի հետ, երբ կը գրուի թէ «երրորդ մասն (աշխարհաց Ջուանշէրի) Կլարճէթի, Շաւշէթի. Աճարայ, Նիգալի, Արսեաց-փորի (Asis-Phor), Արտահանի, Վարին-Տայոց եւ բերդերուն՝ զորոնք որդի ի հօրէ Վախթանգայ սերունդներն ունէին, այս երրորդ մասն բաժին ինկած էր Ատրներսեհի Բագրատունւոյ, որ եկաւ ի Կլարճէթ, ուր մեռաւ[252]»։ Ասիս-փորի կամ Արսեաց-փորի տեղը, որ տակաւին ծանօթ չէր

---

[252] Brosset, I, 1, p. 259. այս ամէնը կ'ըսէ տակաւին Ջուանշէրի օրով (որուն կը տրուի 718—786 տարիները. իրականին՝ անուանական միայն)։ Նոյնը կը կրկնէ Վախուշտ Սամցխեայ Պատմութեան մէջ, որ նոյնպէս արդէն այս միջոյին Բագրատունիք կապելու համար վրական պատմութեան հետ կ'ըսէ թէ Ջուանշէր կին առաւ Ատրներսեհի Latawr դուստրը, եւ կը յաւելու «փոխելով այս իշխանին հետ իր կալուածքները Կլարճէթի, Շաւշէթի, Աճարայ, Նիգալի, Արսեացփորի (Asis-Phor) եւ Ստորին-Տայոց եւ բոլոր բերդերն՝ զորոնք Գուրգարսլանի թոռները կը գրաւէին, Ատրներսեհ եկաւ ի Կլարճէթ, ուր մեռաւ յամի 531 = 779» (Brosset, II, 1, p. 202)։

Բրոսէի[253], փնտռելու պէտք չունինք։ Այժմ ալ գաւառին կեդրոն է՝ արդի Արսիս (Թրք. Էլյախս)։ Ասեաց–փոր յամենայն դէպս ուղիղ ընթերցուածն է վրական ալ յք. Asis-Phorni) քան երկու ձեռագրաց «Կարնի-փոր» ընթերցուածն, այն տեղն՝ ուր Տարեգիրք կը պատմեն 1080 տարւոյ «Թուրք»աց արշաւանքն «Ասիս–Փոր»ի գաւառէ «միջեւ ծովու եզերքը[254]»։ Բայց դժուարաւ ուղիղ է

---

[253] Բրոսէ (անդ, էջ 259, ծն. 4) «Նիգալ եւ Ասիս–փոր երկու այլուստ անծանօթ գաւառներ են...։ Երկրորդն անշուշտ Մովսէսի Խորենացւոյ Աշխարհագրութեան Ասեացփորն է, բայց ասոր գիրքը չէ նշանակուած»։

[254] Արշաւանքս հազիւ քանի մը տողով յիշուած է հայ բնագրին մէջ (Ջուանշէր, էջ 114—15) «յաւուրսն յայնոսիկ ասպատակեցին Թուրք յերկիրն Վրաց եւ բազում արիւնս հեղին, զյոլովս գերեցին եւ գնացին, որոց գլխաւորին անուն Բուժղուր» եւն)։ Վրականն ալ ընդհականակն չափազանց երկար է (Brosset, I, 1, p. 346—48, եւն)· ուր ի միջի այլոց կ'ըսուի· «էմիրները՝ ճամբան փոխելով, տարածուեցան երկրին երեսը՝ մարախներու նման. Ս. Յովհաննու օրն է (ըստ Վախուշտի 24 յունիս 300 տարւոյ = 1080)· կողմանք Ասիս–փորի (Asis-Phorni), Կլարճէթ, մինչեւ ծովու ափը, Շաւշէթ, Աճառա, Սամցխէ, Քարթլի, Արգուէթ, Սամօքալաք («երկիր քաղաքին» ըստ Բրոսէի կա'մ Քութայիս եւ կա'մ Տփղիս ակնարկուած), Ջղուղիդ լեցուեցան Թրքերով. կողոպտեցին եւ բոլոր բնակիչները գերի տարին։ Մէկ օրուան մէջ այրեցին զՔութայիս, զԱրտանուջ, Կլարճէթի անապատները» եւն։ Հոս, կ'ըսէ Բրոսէ, Asis-Phorni տեղ երկու ձեռագիրք Carnis-Phorni կը կարդան։ Այս տեղ սակայն իրօք յարմար է Ասիս–փոր կամ Ասեաց–փոր։ Յոգնակի ձեւը Asis-

միւս տեղն, ուր «Կարնիփոր» եւ Ասիան, կը յիշուին, զոր Բրոսէ կը համեմատէ իսկ Ասխաց–փորի հետ՝ որուն տեղն իրեն անծանօթ էր[255]:

---

Phorni նման է ուրիշ անուանց, որ սովորաբար կը գործածուի երկրի մը գիւղերն կամ անկէ կախեալ մասերը նշանակելու համար: Հմմտ. Pharnacni (II, 1, p. 217 եւ ծն. 4) եւն:

255 Գորգի Բ. (1072—1089) արքայի համար կ'ըսէ Վրականը. «Ասկէ ետքը՝ շնորհօք Աստուծոյ, եւ առաւ բոլոր բերդերն՝ զորոնք բռնութեամբ գրաւած էին Ցոյները, զԱնակոփիա՝ Ափխազէթի տեղեաց գլխաւորը, բազմաթիւ բերդեր Կլարճէթի, Շաւշէթի, Ջաւախէթի եւ գաւառին Արտահան (Artan). յետոյ՝ երկնից ուրիշ մէկ շնորհօք՝ առաւ Կարուց (Cars) քաղաքն ու աշխարհը, բերդեր, Վանանդայ, Կարնիփորայ եւ Ասիանի (Vanand, Carniphor, *Asian*) եւ Թուրքերը վռնտեց այս երկրէն» (Brosset, I, 1, p. 345): Այստեղ ձեռագիր մը միայն ունի «եւ Ասիանի». միւսները կ'աւարտեն «Կարնիփորայ» անուամբ: Բրոսէ (անդ, ծն. 3) կ'ըսէ թէ «եւ Ասիանի» ընթերցուածը լաւագոյն է, «որովհետեւ իրօք ալ կը գտնենք Ասեացփոր Հայ Տայոց գաւառներու մէջ (Ինճիճեան, Հին Հայաստան, էջ 371), եւ Վրական Սամցխեայ մէջ ալ կայ լեռն ու գաւառն Arsiani»: Թէ վերջինս ըլլայ հոս կամ ոչ՝ խնդիր չենք ուզեր ընել թէեւ յարմարագոյն էր զAsiani սխալագրութիւն ըսել Բասեան անուան: Բայց յամենայն դէպս գործ չունի Արսեացփոր այստեղ՝ Վանանդայ Կարուց շըրջանին մէջ (— որ ըլլալու է Carniphor ալ, ինչպէս պիտի տեսնենք): — Հայ Ջուանշէր ալ չունի անունս եւ կ'աւարտի վրական միւս ձեռագիրներուն պէս, առանց «Կարնիփոր» ալ ունենալու, գրելով՝ «Եւ էառ Գէորգ ի Ցունաց զամենայն բերդսն՝ զոր առեալ էր նոցա, զԱնակոփի՝ ի գլուխ Ափխազէթոյ, եւ յերկիրն Կլարճէթոյ եւ ի Շաւշէթոյ եւ ի Ջաւախէթոյ եւ յԱրտահանայ՝ յոլով

*Ջիարդ եւ լցէ․* Նիգալ *եւ* Ասխ-փոր *այնպէս են իրարու համեմատութեամբ, ինչ-պէս տեսանք՝* Նիգալ *եւ* Վաշլովան։ *Ուստի յայտնի կ'երեւայ որ Սպերէ մինչեւ Արախ գծին վրայ արդէն* Կուտրաշէնն *է ստուգիւ Վաշլովան գաւառի մէջ յիշուած* Կոտորաշէնը, *որով Վաշլովանի դիրքն ալ կ'որոշուի՝ իբր Արսեաց կամ Բերդագրակ գաւառի ուրիշ անուն մը կամ անոր մէկ մասին՝ Կարմիրքէ Որջնհաղ, թերեւս պարունակելով ձախ ափին համապատասխանող մասն ալ, ուստի յատկապէս նաեւ Խոտորջուր։ — Վերը յիշուած «Ծաւոր» լեռան դիրքն որոշելու միջոց չունինք․ գուցէ «Ծաւոր» արդէն «Ծէֆաքլի» (Հարկեւոր) է։*

§ 30. Բերդագրակ եւ «Կիւրճիստան»։ — *Քանի որ գաւառս այսչափ անուններ ունեցած է, զարմանալի չէ թէ հատ մ'ալ աւելցուցած են Օսմանեանք, որ շատ երկար տեւած է այնուհետեւ։ Ճշդիւ այս երբեմնի լիովին հայախօս գաւառն եւ անոր մէջ Խոտորջուր՝ կոչուած է* «Վրաստան *գաւառ» (տճկ․* «Կիւրճիստան» *սանճաք)․ եւ գրեթէ մինչեւ մօտ ժամանակներս այս անունը գործածական մնացած էր։ Նոյնը կը նշանակեն հին քարտէսներն ու նաեւ մատեանք՝ մինչեւ ԺԹ․ դարէ ետքն ալ։ Անշուշտ մտադրութեան կէտ մըն է որ Ինճիճեան չէ լսած յորջորջանքս․ իրեն քով գաւառիս անունը՝*

---

*ամրոցս․ եւ* զԿարս եւ զՎանանդ․ *նոյնպէս եւ զԾամչոյլոէ ի Թուրքաց» եւն․ (Ջուանշ․ էջ* 114)։

կրկին ցուցակներու համեմատ ալ՝ է միայն (ժա) «Բերդէֆրէկ» կամ (իզ) Բերդագրէկ», ուստի՝ Բերդագրակ[256]։ Այս լռութենէ պէտք չէ հետեւցնել թէ յորջորջանքս գոյութիւն չունէր։ Քոխ, որ գաւառն ինչպէս Բերդագրակի՝ նոյնպէս Կիսկիմի անուամբ գիտէ, կը չեշտէ միանգամայն Gürdschistanը, եւ ակէ եզրակացութիւններ կ'ուզէ հանել, եւ բնականապէս նոյնը կայ իւր քարտէսին վրայ։ Կիպերտի հին քարտէսներն ալ ունին նոյնպէս։ Եւ տակաւին Ալիշան կը գրէր «վիճակքն Համշէն եւ Կիւրճիստան որ է Բերդագրակ, ընդ նմին եւ Խոտորջուր, յետին սահմանք Հայոց», ինչպէս որ կից գաւառը «Լիվանէ կամ Արդուին վիճակ» են[257]։ Այս սակայն տարբեր բան մըն է քան «Կիւրճիստան»։ Որովհետեւ Լիվանէ (զոր հին քարտէսներն ալ կը գրեն Liwaneh), իւր այս այլակերպեալ եւ Թրքաձեւ կերպարանքին ներքեւ ալ պահած է իրական անուն մ'այս գաւառիս, որ այն է՝ վրական Լիզանի։ Չենք գիտեր կապ մ'ունի՞ն որեւէ կերպով Լեղուն կամ նման անունները[258]. բայց յամենայն դէպս կապ չունի «Լիվանէ»ի հետ Լեւոն իշխան մը, եւ դժուար է իմանալ թէ ուսկից

256 Ինճիճեան, էջ 123—24, հմմտ. 132։

257 «Տեղագիր» եւն, էջ 38։

258 Այսպէս ի Խոտորջուր ունինք Լեղան, լեռն ու մանաւանդ անտառն, իւր այլեւայլ (հին) ամարանոցներով։ Ցամենայն դէպս ճիշդ չէ սակայն «Բնաշ. Բառ.» (Բ, 92) գրելը «Խոտորջուրի գիւղերէն մին»։ Լեղան գիւղ չէ։

կրնայ ծագած ըլլալ այսպիսի մեկնութիւն մը[259]: Զիարդ եւ իցէ. այսօր՝ երբ յատուկ կերպով գաւառի անուն գոյութիւն չունին ո՛չ «Կիւրճիստան» եւ ո՛չ «Լիվանէ» եւ անոր համար Կիպերտ իւր նորագոյն քարտէսին մէջ ա՛յլեւս չի նշանակեր անուններս: Ըստ ինքեան «Լիվանէ» լիովին իսկ մոռցուելու էր. որովհետեւ այս արդէն կանուխէն բացի այն յատուկ գաւառէն շատ պէսպէս եւ ընդարձակ իմաստներով ալ կը գործածուէր՝ ըստ որում Արդուինի ճարպիկ տէրերը կը յաջողէին շրջակայ այլեւայլ գաւառներն ալ իրենց իշխանութեան ներքեւ առնուլ: Այս պարագան կը նշանակէ արդէն Ինճիճեան[260], եւ Քոխի անցած առեն՝ բացի Սինգոթէ նոյն իսկ Մաճխալ կամ Մաճախէլ Լիվանէի տիրոջ իշխանութեան ներքեւ էր, բայց ոչ

---

259 Տէր Յովհաննէս քհ. Վաղարշակերտցի (Ճանապարհորդութիւն, Ա. Կ. Պ. 1870, էջ 7) կը գրէ. Կարին ունի սահման «ի հիւսիսոյ զՕլթի, զՆարման եւ զայլ կալուածս Լեւոնի անուն ուրումն իշխանի վրաց, որոյ յանուն եւ աշխարհն ցարդ եւս կոչի Լեւոնեանց կամ Լիւանայ»: — Բազմաթիւ են իշխանք եւ արքայք «Լեւոն եւ «Լիւան» (Lewan) անուամբ, մանաւանդ յԻմերէթ եւ յԱփխազիա, ճիշդ ալ այն շրջանին՝ երբ Թուրքերը շօշափման մէջ մտան այս կողմերը: Բայց գաւառի անունս կապ մ'ունենալու չէ այս իշխաններու մէկուն հետ:

260 Ինճիճեան, էջ 124 «Իդ. Լիվանէ է Օճախլըխ: Այս վերջին գաւառ ոչ է ուրոյն ի վերոգրեալ գաւառաց, այլ ընդ իւրեւ փակէ դչորս գաւառս, այսինքն՝ զԱրդուին, զՍինգոթ, զՊարխալ եւ զԿիսկիմ»:

եւ Կիսկիմ[261] : Իսկ վերջին ռուս-թուրքական պատերազմէն ետքը (1878էն) մինչեւ անգամ իրր գաւառ գոյութիւն ունենալէ դադրեցաւ քանի որ բաժնուեցաւ երկուքի, Արդուինի հետ մաս մը ռուսական ըլլալով,

---

261 Քոխ, որ երկար կը գրէ Արդուինի մասին (էջ 158—183), կը նշանակէ նախ թէ «Լիվանէի իշխանը՝ Մուրատ-Ալի բէկ, ընդարձակ շրջակայից մէջ հզօրագոյն իշխանը, բացարձակ կ'իշխէր իր մեծատարած կալուածներուն վրայ, զորոնք նախ իւր հայրն ա՛յսչափ նշանաւոր կերպով աւելցուցած էր» (էջ 163) : Իւր օրով նախնաբար բազմաթիւ աւատական գաւառներէ բաղկացեալ իշխանութեան» մասին կը գրէ· «Նշանաւոր տարածութիւն մ'ունի եւ կը տարածուի Ճորոխի երկու ափերուն վրայ՝ Հարաւակողմը մինչեւ Բերդագրակի աւատական գաւառը : Նեղ ձորեր, խորափիտ կրճեր, մարգերով եւ անտառներով ծածկուած բարձունքներ, սեպ լեռներ կը կազմեն հողը· այս իշխանութեան ամբողջ անջրպետին մէջ տեղ մ'ալ երկու ժամէ աւելի դաշտ չկայ : Որովհետեւ Ճորոխ Լիվանէ (Վախուշտի քով՝ Լիգանի) իշխանութեան մէջ հարաւէն դէպ ի հիւսիս կը հոսի, իր մեծագոյն երկարութիւնն ալ այս ուղղութեամբ կը տարածուի : Եթէ հիւսիսակողմը տակաւին սար վերաբերող Մաճալ (Մաճխալ) աւատական գաւառի վերջին սահմանէն սկսինք՝ տակաւին Աճառա-Ջրոյ միւս կողմէն, երկարութիւնը 30—34 ժամու ճամբէ նուազ չէ : Ճորոխի հովտի միջին մասն շատ անտառապատ կ'ըսուի եւ հոն կը գտնուին գիւղերու մեծագոյն մասը» են (Քոխ, էջ 182) : «Նորագոյն տեղեկութեանց համեմատ, զորոնք հետզհետէ ստացայ, սար մէջ ցրուած ըլլալու են իրր 100 գիւղեր : Ասոնք ունին կ'ըսուի իրր 6000 տուն, որով բնակչաց թիւ իրր 32·000 հոգի ըլլալու է» (անդ, 183) :

միւս մասն ալ անցնելով Կիսկիմ գաւառի: Այսուհանդերձ «Լիվանէ» իբր իրական անուն մը չէ դադրած ժողովրդեան բերանը. եւ կը գործածուի նաեւ Արդուին կենդրոնը նշանակելու[262]: Բոլորովին անհետ եղած է սոր հակառակ «Կիւրճիստան» անյատուկ յորջորջանքը. եւ նոյնն այլեւս չի լսուիր այս կողմերը: Այս արդէն տարբեր ծագում ունէր, զուտ տաճկական՝ (նախնաբար ժողովրդական) յորջորջանք մը, որ դիւրեաւ ալ կը մեկնուի գաւառիս վերջին ժամանակաց պատմութենէն:

Քոխ այս յորջորջանքէն չափազանց հետեւութիւն մը հանել կ'ուզէ. Սպերէ հանելով Ծագկոց (արդի «Սագուս») կ'ընէ այնուհետեւ[263]. «Հոս կ'աւարտի Սպերի աւատական գաւառը եւ իրեն հետ՝ բուն Հայաստանը. եւ կը սկսի Կիւրճիստան աւատական գաւառը, որ իւր գլխաւոր տեղերու անուամբ նաեւ Բերդագրակ (Pertakrek) եւ Կիսկիմ (Kiskim) կը կոչուի, կամ բուն Վրաստանը (Grusien), Մեսխաց կամ Մոսքիացւոց երկիրը. (Մեսխեթի, Սամցխէ[264]):

---

262 Ինչպէս «դաստակ» բառն՝ բացի կենդրոններէ՝ կը գործածուի իբր անուն. նոյնպէս «Լիվանէ» անուան՝ կենդրոնի համար՝ գործածուիլը դիւրաւ կը մեկնուի, թերեւս ազդուած նաեւ «լիվա» եւն բառերէ:

263 Քոխ, էջ 53—54:

264 Քոխ հոս ալ «Սամցխէ» անունը կ'ուզէ մեկնել իբր «Sa-M'scheh», որուն անճշդութիւնը նորէն կը շեշտէ Բրոսէ (I, p. VIII—IX եւ այլուր), նշա-

Հոս փնտռելու է նաեւ այն Քարթլեաց-կիրճը (Քարթլիս-խէլի) կամ Կիւրճիստան-Գօղագը՝ Վախուշտ արքայորդւոյն, եւ ո՛չ թէ Սպերէն վեր ինչպէս այն կ՚ուզէ․ որովհետեւ երկու անուններն ալ՝ մին վրացերէն միւսը Թուրքերէն, միեւնոյն բառը կը նշանակեն «Կիրճ Վրաստանի»[265]: Իւր բնակիչք իրենց կազմուածքն ու դիմագծով վրական ժողովրդեան յատուկ նկարագիրը կը ցուցնեն: Սագուսով կը փոխուի նաեւ գիւղերու եւ տներու ձեւը, եւ մինչդեռ Սպերի մէջ տները խիստ քովէ քով են եւ կիսով չափ հողի տակ, ասկէ ետքը կը տեսնուին ցրուած, աւելի ընդարձակ եւ լաւագոյն կահաւորուած» են[266]: Քոխ Ծաղ-

---

նակելով որ սալ «Սամի-ցխէ» է, այսինքն՝ Երեք-բերդ: Ստուգաբանութիւնն՝ զոր արդէն Վախուշտ կու տայ, կ՚ընդունի Հիւբշման, մինչ Վախուշտի միւս ստուգաբանութիւնք Գուգարաց անուանց «անյաջող» կը կոչէ («Հին Հայոց Տեղւոյ անունները» եւն, էջ 236: Գուգարաց հին անուանցս համար կ՚ըսէ «կ՚երեւայ թէ սոանք ո՛չ հայկական ծագում ունին եւ ո՛չ վրական» եւն:

265 Նոյնը կը կրկնէ Քոխ այլուր ալ (էջ 238)՝ թէ Բերդագրակի գաւառը Վրաստանի (Grusien) կը վերաբերի, կը տեսնուի նաեւ այսօր գործածական իր անունէն՝ Կիւրճիստան: Հոս խնդիր կ՚ընէ թէ Տայք (Taus անձուկ մօտք) եւ Պարխալ գաւառն Հայ Տայոց կը վերաբերէ՞ր. եթէ այնպէս ըլլար, կ՚ըսէ «Բերդագրակ միւս վրական գաւառներէն լեռլին բաժնուած կ՚ըլլար»: Կարծես ուրեմն Արսեացփոր եւն գոյութիւն ունեցած չըլլայ: Սակայն Տայոց աշխարհի գաւառաց այս խնդրոյ մասին յետոյ կը խօսինք:

266 Քոխ (էջ 54—55) համեմատութիւն կ՚ընէ հողածածկ տներու եւ փայտակերտ տներու եւն:

կոցէ եղած է Կարմիրք, եւն: Այս ամէնը տարապայման չափազանցութիւն է, զոնէ ժողովրդեան եւն մասին: Այն «Վրական–Կրճի» մասին խօսք անգամ ընել չ'արժեր· այս յետնագոյն աշխարհագրութեան գիւտերէն է: Քանի որ նորաձեւ «Կլարճէթ» պիտի պարունակէր Սպերն ալ, — ինչպէս արդէն յիշեցինք, եւ որուն պիտի անդրադառնանք — հարկաւ անդին դրուելու էր «Վրաստանի» սկիզբն որեւէ անուանակոչութեամբ: Եթէ զոնէ «Մեսխական» կամ նման յարմարագոյն անուն մը տրուէր, որ զոնէ պատմական շըրջանի մը յիշատակ կարենար համարուիլ: Բայց Սպեր եւ «Քարթլիս» անհամաձայն աշխարհագրական գաղափարներ են: Ցայտնապէս «Քարթլիս–խէլ» թարգմանութիւն մըն է թուրքական «Կիւրճիստան–պօղազի», որուն այն կողմն ե՛րբ եւ, որչափ գործածուած ըլլալն անծանօթ է· բայց նոյնը կայ իրօք ուրիշ տեղ մը, զոր քիչ մ'ետքը պիտի յիշենք: Բերդագրակցուց, ուստի նաեւ Կարմրքցուց, Խոտորջրցուց են (— նոյնը

---

Տանց եւ շինութեանց մասին Քոխի՝ իւր ժամանակի համա՛ր՝ հետաքրքրական տեղեկութեանց մաս մը յետոյ կը տեսնենք: Անցողակի նշանակենք որ ցրուած տներով չեն գիւղերուս շատերը, (— թէեւ «գիւղ» կ'ըսուին ցրուած թաղերով ամբողջ ձորեր —) օրինակ՝ ո՛չ Կարմիրք, եւ ո՛չ Խոտորջուր, որուն այլեւայլ թաղերու տները նաեւ այսօր չափազանց խիտ առ խիտ են, այնպէս որ կանոնաւոր փողոցի տեղ չի մնար յաճախ, ի հարկէ տեղւոյն դրից ալ պատճառաւ:

կընանք ըսել Թորթումի բնիկներուն համար —) «վրական յատուկ նկարագիր» ունենալը թերեւս յառաջ եկած է ա՛յն տպաւորութենէն, զոր կ՚ընէ այս կողմերու այսօր իսկ սիրուած, յառաջադոյն շատ աւելի տարածուած տարազը, որ նոյն է Լազերու տարազին հետ։ Արդէն այս պատճառաւ ալ նաեւ գաղթական համշէնցիք «Հայ-Լազ» կը կոչուին մերազնոց կողմանէ ալ. (§ 21)։ Խառնուրդներ (հնագոյն ժամանակ իսկ «Հայ-Խաղտիք» եւն) եղած են անշուշտ՝ ինչպէս ամէն կողմ, նաեւ այս երկիրները։ Բայց արդի ժողովրդեան «կազմն ու դիմագիծը» ո՛չ միայն հայուն, այլ նաեւ մահմետականացած՝ ցորչափ հայ էր, տարբերութիւն չունի հայ տիպարէն։ Թէ իրերն արտաքուստ դատելով ո՛րչափ այլակերպ կընան երեւալ օտարի մը, — որ կովկասեան եւ վրական լեզուաց եւ իրաց հմուտ եւ հետամուտ գիտնական մը (Դր. Ռոզէն) ուղեկից ունենալով՝ անկէ ազդուած է այսպիսի իրաց մէջ, — այս յայտնի է այն գիտողութենէն, զոր կ՚ընէ Արդուինի հայ-կթղ. ժողովրդեան մասին։ «Լիվանէի բնակիչները, կը գրէ, որոնք տակաւին քրիստոնէութիւնը կը դաւանին, կաթողիկեայ Հայեր կը կոչուին, մինչդեռ պէտք էին կաթուղիկեայ վրացիներ կոչուիլ, եւ իրենց սովորութեանց մէջ արեւելեան եկեղեցւոյ հետեւորդաց աւելի մերձաւոր են քան թէ Գրիգորեան

հերձուածի հաւատացեալներուն[267]»: Թողունք դիտողութեանս վերջին մասը. վասն զի թէեւ կաթուղիկեայ Հայք ունին ի հարկէ այլեւայլ տարբեր «սովորութիւն»ներ, բայց թէ անոնք Յունաց կամ Վրաց եկեղեցւոյ սովորութեանց մերձաւոր ըլլան, այս մասին արդէն դժուարաւ ուղիղ դատել կրնար Քոխ, որ կաթուղիկեայ չէր: Բայց թէ Արդուինի Հայերը աւելի «վրացի» կոչուելու էին, այս համեմատ է իւր վերը յիշուած «Կիւրճիստան»ի մեկնութեամբ, բայց հիմնովին սխալ է: Եւ Քոխ ինքնին տարբեր կը դատէր, եթէ ունենար հայագէտ ուղեկից մ'որ մտադիր ընէր ճիշդ յԱրդուին խօսուած հայ բարբառին մասին: Այս իրապէս եզական դիրք մ'ունի: Մինչ Խոտորջրոյ եւն բարբառը հիմնապէս նոյն է Կարնոյ եւն բարբառին հետ, Արդուին լիովին տարբեր բարբառ մ'ունի. այն է՝ Մարաղայի եւ Խոյի բարբառներուն հետ սերտ կապուած է, եւ այս երեքը ի միասին կը կազմեն՝ ինչպէս այժմ կը բաժնէ Աճառեան, մեր բարբառներու «Ըլ»-ճիւղը[268]:

---

[267] Քոխ, էջ 167:

[268] Տես Հր. Աճառեան, «Հայ բարբառագ.», էջ 280—292. «Արթվինի բարբառ»՝ էջ 291—92: Այս բարբառի շրջանին մէջ կը յիշէ նաեւ Արտանուջի եւ իւր գաւառին երկու հայ գիւղերը (Տանձուտ՝ 115 տուն որոնց 5 հայ-կթղ. Նորաշէն՝ 22 տ.) դարձեալ Շաւշէթ-Իմէրխէվ գաւառի հայ գիւղերը (Սաթլել, 65 տուն եւ 17՝ հայ-կթղ. — Մամանէլիս 12 տուն հայ-կթղ. Օքրոբակերտ՝ 160 տուն, եւ Փխիկուր՝ 25 տուն

Ինչպէս Թորթումի՝ նոյնպէս Բերդագրակի գաւառն էապէս հայ եւ հայախօս էր։ Այն «Կիւրճիստան» յորջորջանքն ազգագրական իմաստ չունէր նախնաբար ալ, բայց ունէր իրօք քաղաքական նշանակութիւն։ Նոյն իսկ կանուխէն այն հրոսակներն, որոնք ի հնուց Բաբերդ եւ նաեւ Սպեր որջացած էմիրներէ առաջնորդուած կը մտնէին այս գաւառը, — ինչպէս տեսանք Աղատ–Մոսէի արշաւանքները (§ 29) —, եւ երբ յետոյ Օսմանեանք Ճորոխի գծով Սպերէն անդին կը մտնէին Բերդագրակի գաւառը, կը կոխէին հող մ՚որ իրենց աչքին՝ «վրական» էր, վերաբերելով աթաբեկութեան իշխանութեան՝ ուղղակի կամ անուղղակի, աւելի վերջինս՝ նկատելով մանաւանդ այն շրջանին զօրեղ մանրապետական եւ աւատատիրական դրութիւնը։ Իրենց համար քաղաքականապէս այն տեղ կը սկսէր «Վրաստան», որով նաեւ Օսմանեանք կը հասկընային աթաբեկներու երկիրները, որոնց հետ նախ շփման մէջ մտան եւ զորոնք քիչ մ՚ետքն լիովին գրաւեցին, մինչ բուն Վրաստան աւելի յետոյ եւ քիչ ժամանակ մը միայն իրենց ձեռքը մնաց։ Իրականին ոչ միայն այս շրջանին, այլ նաեւ հնութեան ատեն կրկին «Վրաստան» զանազանելու ենք մենք ալ արդէն մեր պատմագրաց քով։ Նոյն իսկ Արտա-

---

հայ-կթղ.»։ Բաց աստի կը յիշէ Արտահան եւ Օլթի։ — Այս տեղեաց մասին, ի հարկէ խօսքն է ցորչափ այն բնիկ բարբառը կը խօսին, ո՛չ նորեկ գաղթականաց։

նուչի իշխանութեան շրջանը, որուն հիմնարկութիւնն իսկ հայկական էր, յընթացս ժամանակի տիրող «վրական» գոյն առաւ, եւ մեր պատմագիրք եւ յիշատակագիրք՝ բացի «Տայք» կամ «Գուգարք» յորջորջանքներէ, — որոնք մասամբ միայն ուղիղ կըրնային ըլլալ, — յաճախ կը կոչէն պարզապէս «Վիրք»: Իսկ Բիւզանդեանք արդէն սովորական «Իբերիա» (Վիրք) կ՚անուանեն այս բաժինն ալ, զոր միշտ պէտք է զանազանել բուն Վրաստանէ: Աւելի եւս վրական էր — ընդհանուր մտօք — աթաբեկութիւնը, ո՛չ միայն տիրող դասակարգովն, ո՛չ միայն իւր կենդրոնական գաւառներովը (Սամցխէ եւն), ո՛չ միայն տիրող կամ պետական վրական եկեղեցւով, այլ նաեւ անո՛վ իսկ որ անոր ենթարկեալ հայ գաւառներու մէջ ալ հայախօս իսկ միացած մեծ տարր մը կար, որ վրական եկեղեցւոյ կը վերաբերէր եւ «վրացի» կը կոչուէր նոյն իսկ ի Հայոց, չհաշուելով արդէն վրախօս եղածները: Օտարի մ՚աչքին աննշան էին ներքին մանր տարբերութիւնքն, օրինակի համար այն որ այս կողմ տիրող «վրական» տարրն աւելի Մեսխ, Կլարճ եւն էին, թէ նոյն իսկ վրական եկեղեցին անկախ էր բուն Վրաստանի կաթուղիկոսութենէն, եւն: Բայց մանաւանդ Օսմանցւոց համար երբ ոտք կոխեցին այս «Վրաստանը», բոլորովին անտարբեր բան մըն էր թէ ճշդիւ Բերդագրակէ անդին եւ ասդին Թորթում գաւառներու բնակիչք

րուն ի՛նչ էին եւ ի՛նչ լեզու կը խօսէին՝ ամենամեծ մասամբ ։ Այս գաւառներէն եւ նաեւ Օլթի–Ջրոյ աւազանէն դուրս տիրողն էր վրական լեզուն, որուն արդի մնացորդներուն համար կան գիտականներ որ աւելի մաքուր եւ անարատ վրացերէն կը համարին քան Տփղիսի իսկ լեզուն ։

Թէ այս յորջորջանք իրօք միայն քաղաքական մտօք էին, կը ցուցնէ այն պարագան որ նաեւ Կարնոյ դաշտին ծայրէն Հինձքի մօտէն սկսող կիրճը կամ աւելի՝ նեղ հովիտն, որ դիւրագոյն ուղին էր դէպ ի Թորթում եւ որ կը տանէր նաեւ դէպ ի Օլթի, կը կոչուէր — եւ այսօր ալ կը կոչուի ժողովրդեան բերանը — «վրական կիրճ» (Կիւրճի–պօղազ) ։ Այս յորջորջանքը նոյնպէս հին է, այնչափ որ արդէն Յակոբ Կարնեցի ԺԷ․ դարուն կը գործածէ զայն «Վրաստան–պօղազ» ձեւով յիշելով[269] ։ Հոս ուրեմն, ուր իրական որեւէ Վրաստանի մասին խօսք

---

269 Յակ․ Կարնեցի, էջ 46, խօսելով Եփրատայ ականց մասին՝ «Առաջինն է գլուխ որ ելանէ արեւելից կողմանէ, որ Վրաստան պօղազ, ի Ծաղկաւէտ լեռնէն մասն Եփրատայ» եւն․ յետոյ «նաեւ եւս խաչափայտի ջուրն եւս խառնի ընդ սա եւ գետանայ եւ գնացեալ առաջի Հնձուց վանիցն եւ լինի գետ մեծ» եւն ։ Կարնեցի արդի Ծալկի (եւ Գըզըլքիլիսէի) լերանց ակերը կը դնէ բուն աղբիւրը ։ Նոյնը կ'ըսէ Քոխ ալ՝ որ Գըզըլքիլիսէէ կ'անցնէր առհասարակ այս կրճի ականց, բայց նաեւ ընդհանրապէս Դումլի լերանց բոլոր ականց մասին՝ աւելի ուղղութեամբ (էջ 268—271) ։ Կարնեցի ալ զանոնք միատեղ կը յիշէ ։ Հոս տեղը չէ այս մասին աւելի երկարել ։

չի կրնար ըլլալ, կար եւ կայ Քոխի յիշած «Կիւրճխատան-պօղազ»ը, եւ չենք տարակուսիր արդէն ԺԶ. դարէն ալ ըլլալու է ժողովրդական յորջորջանքս, երբ Օսմանեանք ասկէ անցան առաջին մեծ արշաւանքին դէպ ի Թորթում (1549ի)։ Զենք գիտեր թէ ա՛յսչափ հին են արդեօք նաեւ Կարնոյ պարսպին դրանց անունները, որոնք ընդհանուր ուղղութեամբ կը կոչուէին ինչպէս Երզնկու-Դուռ, նոյնպէս Թաւրէժի-դուռ, «Նոր-Դուռ» եւ որ աւելի հետաքրքրական է՝ հիւսիսային դրան յորջորջանքը Վրական-Դուռ, նաեւ այսօր՝ «Կիւրճի-Դուռ», թէեւ այն գեղակերտ դռներն՝ որ մինչեւ մօտ ժամանակներս կեցած էին, այսօր անհետ եղած են բարբարոսաբար, պարսպաց մեծ մասին հետ։ Յակոբ Կարնեցի՝ որ կը յիշէ Կանայ-Դուռը, չի յիշեր այս դռները[270]։ Բայց նոյն Յակոբ Կարնեցի կը յիշէ կէտ մ'որ լաւ կը ցուցնէ այն ժամանակ ալ տեւող «Վրաստան» անուան նշանակութիւնը։ Ինքն որ ընդարձակ նկարագրած է զԹորթում եւ որ անոր համար կը գրէ թէ «զքաղաքն մեր Արզրում» եւ մինչեւ Բասեն ու շրջակայքն՝ «կու լնուն զինեաւ, խաղողով եւ ձիթապտուղով եւ ամենայն մրգով», ուրիշ տեղ մը կը

---

270 Հմմտ. ի միջի այլոց Ինճիճեան, էջ 66—67 իւր ժամանակի Միջնաբերդի, պարսպաց, դրանց եւ արուարձաննեաց մասին, որոնք միայն խրամ ունէին 10—11 «ճէպխո»-դռներով (ճէպուով, այն է չտապաւ» շինուելուն)։

նկարագրէ ի Կարին բերուող պտղոց եւ առատութիւնն ու ժամանակները, եւ կ'ըսէ ի մէջի այլոց. «Եւ ի հասանել դարձի արեգականն Յունիսի ԺԹ. ամենայն պտուղք ծառոց բազում գայ ի Վրաստանայ[271]»: Կարնոյ պտուղ մատակարարող այս «Վրաստանն» ինչպէս Յակոբայ Կարնեցւոյ՝ նոյնպէս մեր օրով են Թորթում եւ անոր Թիկունքը (— Կարնոյ կողմանէ —) Ճորոխի գիծը, յատկապէս Կիսկիմի գաւառը (Սըսիս, Բարակամուրջ եւն): Այնպէս որ այս «Վրաստան» յորջորջանքի մէջ կրնանք գտնել նաեւ Բերդագրակի «Կիւրճիստան» յորջորջանքը: Յամենայն դէպս այժմ որոշ է թէ «Կիւրճիստան» կամ «Վրաստան» ի՛նչ իմաստով են այս գաւառաց, եւ յատկապէս Բերդագրակի համար:

**§ 31.** Բերդագրակ եւ «Բերդացփոր»: — Ինճիճեան Կիսկիմի մասին երկտողէն ետքը (§ 28) կը գրէ «Բերդագրակ կամ Բերդեգրեկ» գաւառի մասին. «Երկրորդին անուն աղաւաղեալ թուի յերկուց անուանց Բերդագարակ. եւ երեւի լինել հին գաւառն Տայոց կոչեցեալ Բերդացփոր[272]: Հոս նախ դիտենք որ այս ծանօթութեան առաջին մասն ուղիղ է ընականապէս: Տեղւոյն անունն եղած է պարզապէս Ագրակ, այսինքն՝ Ագարակ, եւ իւր բերդն, որ անշուշտ ուրոյն անուն ունէր երբեմն, սկսուած է կոչուիլ

---

271 Յակ. Կարնեցի, էջ 41. հմմտ. էջ 18:

272 Ինճիճեան, էջ 132:

պարզ բերդ: Ինքնին այնուհետեւ կը ծագէր անուանցս միացումն, որ ըստ երեւոյթին շատ հին ալ չէ. որովհետեւ Յակոբ Կարնեցի տակաւին ԺԷ. դարու վերջին քառորդին կը գրէ՝ «մինչեւ ի բերդն Ագրակ առ յափն Ճորոխ գետոյն[273]». ուստի տակաւին Ագրակ ուրոյն անուն էր տեղւոյն, եւ բերդը՝ ուրոյն: Աւելի նոր եւ թրքացեալ ձեւերէն կամ թրքական արտաբերութեամբ «բերդեգրեկ», զոր Ինճիճեան կու տայ, լիովին աղաւաղուած է: Աւելի լաւ է Բերդագրէկ (Pertakrek), զոր Քոխ կ'ընծայէ. իսկ Կիպերտ այժմ Բերդէկրէկ (Pertekrek), կը գրէ իւր նորագոյն քարտէսին վրայ զոր եթէ ի հարկէ «Պերդեկրեկ» գրենք՝ անճանաչելի կ'ըլլայ հին ձեւը[274]: Ագարակ, աւելի համառօտածն Ագրակ, եւ ասոր նորաձեւերը՝ աւելի թրքացած՝ էգրէկ, էֆրէֆ, յաճախադէպ անուններ են՝ քիչ շատ ամէն կողմ, ոչ նուազ ի Տայս[275]: Կը բաւէ իսկ յիշել միայն Ագրակ, արդի էֆրէֆ, ի Թորթում, հռչակաւոր եկեղեցւոյն իսկ, այս կողմանց համար ցանցառ յունական արձանագրութեամբ ԺԱ. դարու սկզբէն իսկ[276]:

273 Յակ. Կարնեցի, էջ 17:

274 Կիպերտ իւր քարտէսներուն վրայ տակաւին Pertakrek կը գրէր՝ Քոխի ամէն տեղ գրածին պէս (էջ 53, 73—75, եւն): Հմմտ. Հիւբշ. էջ 242, 244, եւն:

275 Շարք մը տեղերու տես ի «Բնաշ. Բառ.», Ա, էջ 3—5, 839:

276 Հմմտ. Հ. Ներսէս Սարգսեան, Տեղագրու-

Եւ որովհետեւ ագարակ բառս անցած էր նաեւ Վրաց, նման անուններ շատ յաճախ են հոն ալ, բայց մանաւանդ այն տեղերն՝ ուր խառն էր բնակչութիւնը, այսպէս ի Գուգարս: Հոս մինչեւ անգամ գաւառի մ'անուն եղած է Ագարակ: Նախ նոյն իսկ Ջուանշէր վրական եպիսկոպոսարանաց մին կը դնէ «մի ի յԱգարակ՝ հանդէպ Խունանայ». ըստ արդի վրական բնագրին՝ մետասաներորդ (եպ.) յԱգարակ (Agarac), այսինքն է՝ ի Խունան եւ յաշխարհս շուրջ զնովաւ». ըստ Բրոսէի՝ այս արդի Ախթալա է[277]: Անկէ շատ հեռու չէ գաւառն, զոր Վրացիք Agarani (= ագարակ) կը կոչեն, Հայք՝ Ագարակ, Օրպելեանց կալուածքն՝ համանուն բերդով մ'ալ: Կարծենք Բրոսէ իրաւունք ունի երբ կայ բնագրին «դարպաս» կամ «դարապաս» բառն՝ իբր անուն կ'առնու, եւ կը նշանակէ թէ այս Agarani գաւառին մէջ,

---

թիւնք» եւն (Վենետիկ 1864), էջ 92—93: — Տայոց մէջ՝ ի մէջի այլոց՝ Ագրակ կայ արդի Կոտոմ-Ջրոյ (որ Օլթի-Ջրոյ մէկ օժանդակն է) վրայ, համանուն Կոտոմ գիւղի հիւսիս-արեւելքն, եւ այս կողման բարձրաբերձ լեռնագծին մէջ՝ որ Բասենէ կը բաժնեն զՏայս, յատկապէս բարձր է ճիշդ Ագրակ լեռը՝ 2693 մետր բարձրութեամբ, վերոյիշեալ Ագրակի արեւելքը (տես Ալիշան, «Այրարատ», Վենետիկ 1890, էջ 32, եւ քարտէսը): Կիպերտի նորագոյն քարտէսը քիչ մ'այլազդ կը դնէ այս Akrak գիւղի դիրքն, իր վտակովը դէպի Պարտէզ-Ջուր, մօտ Կոտորի (= Գոցձոր), եւն:

[277] Ջուանշէր, էջ 91: — Brosset, I, 1, p. 195, եւ ծն. [8], ըստ աշխարհագրութեան ալ Վախուշտի:

զոր Վախուշտ Բողնիսի, Ծուլաւէրի եւ Կուրի միջեւ կը զետեղէ եւ որ յառաջ Գուրդարան կը կոչուէր, կը գտնուին երկու գիւղեր Դարպաս (Darbazi[278]) : Սակայն նաեւ ասոնք կը ցուցնեն թէ ի՛նչ դիւրութեամբ ագարակ, դարպաս են բառերն իբր անուն կը գործածուէին, պարագայ մ՚որ արդէն ծանօթ է[279] : Իսկ եթէ ուզենք հին ու նոր «Ագարակ»ներն հաւաքել, շատ մեծ ցուցակ մը կազմելու պէտք կ՚ըլլար, առանց իսկ ամբողջական

---

[278] Այս տեղերն Ստեփաննոսի Սիւնեցւոյ Պատմութեան մէջ (տպ. Թիֆլիս 1910, գլ. ԿԶ. հրատարակուած են այս ձեւով՝ «Տուաւ նմա ի Թագաւորէն Լաւռէ իւր գաւառովն, եւ Ագարակն՝ տեղի դարպասի» (էջ 379) — «մինչ նստէր Խանէ եղբարբքն եւ որդւովք յԱգարակն կոչեցեալ դարապասի» (էջ 383). — «համագունդ դիմեալ էին առ նա յԱգարակն դաբապաս» (էջ 384). — «իսկ Թագաւորն Գէորգի եկեալ եւ ոչ գտեալ զնոսա յԱգարակին. ապա նստեալ ի վերայ բերդին խիստ զաւուրս 25՝ էառ զնա» եւն (էջ 385). Բրոսէ, որ բնագրիս թարգմանութեան առթիւ երկար կը խօսի աստ մասին՝ Պատմութեան իւր Յաւելուածոց մէջ (Brosset, II, 2, p. 259 եւ ծն. 1) այս տեղերը կ՚ըսէ այնպէս կարդալու է որ Ագարակ գաւառի անուն եւ Դարպաս տեղւոյ անունն ըլլայ՝ նիստ իշխանացն, որու դրից մասին ալ խնդիր կ՚ընէ. Agarani շատ յաճախ կը յիշուի Տարեգրոց մէջ, զորոնք յառաջ բերել աւելորդ կը համարինք. Նոյնպէս Բրոսէի միւս դիտողութիւնն որ «Ագարակ» կ՚ուզէ նոյնացնել «Վրաց դաշտ»ին հետ (Ասողիկ, Գ., ը, խղ, եւն. Հմմտ. Brosset, II, 2, p. 180—81) :

[279] Օրինակ՝ Սիւնեաց Ծղուկ գաւառի, Դարպաս գիւղի: Հմմտ. Ալիշան, «Սիսական» (Վենետիկ 1893), էջ 220—21. Ե. Լալայեանց, «Զանգեզուրի գաւառ», Ա, 64—66. «Բնաշ. Բառ.» Ա, 595 եւն:

*ըլլալու հնարաւորութեան, երբ մանաւանդ առնունք այս բառով բարդուածները*[280] *: Այս ամէնը, եւ առանձնապէս Յ. Կարնեցւոյ ի բերդն Ագրակ, ուղղագրութիւնը կարծենք լիովին կը փարատէ այն թեթեւ կասկածը, որ կը յայտնէր Հիւբշման անուանս մասին թէ ըլլա՞յ արդեօք = հին* «բերդ–ագարակ»[281] *: Ինչպէս մեկնած էր արդէն Ինճիճեան :*

*Տարբեր բան է Ինճիճեանի մեկնութեան երկրորդ մասն, այն թէ Բերդագրակ «երեւի լինել հին գաւառ Տայոց կոչեցեալ* Բերդացփոր *: Այս դժուարաւ կրնայ ուղիղ ըլլալ, եւ պարզապէս անուանց նմանութիւնը պատճառեալ է կարծեացս : Անշուշտ Խորենացւոյ*

---

280 *Միայն իսկ գիւղերու այն ցանկը, որ կցուած է Սիւնեաց պատմութեան (գլ. ՀԴ, անդ էջ 509—523) «Սիւնեաց ԺԲ գաւառաց հարկք եկեղեցւոյ» եւն կը պարունակէ շատ մեծ թուով «Ագարակ» անուններ. օրինակ՝ Ծղուկք գաւառի մէջ «Ագարակիկ». — Վայոց–ձորի մէջ՝ «Ագարակի ձոր» եւ «Ագարակ». — Գեղարքունի գաւառի մէջ՝ «Ջառաց ագարակ» (կամ Ջառագարակ), «Հոփուաց (կամ Հոփոց) ագարակ». — Աղահէջ գաւառի մէջ՝ «Ագարակի գետ». — Հաբանդ գաւառի մէջ՝ «Ագարակ». Նոյնպէս Արեւիք գաւառի մէջ, եւն: Հմմտ. նաեւ Հիւբշ. «Հին Հայոց տեղւոյ անունները», էջ 293—94. եւ դարձեալ այսպիսի անուանք՝* Արուճագրակ *կամ* Ալիճագրակ *(Բաունի) եւն, աւելի եւս՝ «Ագարակ» բազմաթիւ հին անուանց թրք. թարգմանութիւնը* Զիֆթլիք, *որով բազմաթիւ գիւղեր կան ամէն կողմ:*

281 *Հմմտ.* Ինճիճեան, *«Ստորագր. Հին Հայաստանի», էջ 371, որ յիշած է ձեռագրաց ալ տարբերութիւններ :*

աշխարհագրութեան համառօտ խմբագրութիւնը չ'որոշեր մանրամասնութեամբ Տայոց գաւառներու դիրքերը: Այս խմբագրութիւնն առջեւ ունեցած կ'երեւայ Ինճիճեան, թէեւ այլեւայլ ձեռագիրներով, որոնք իրարմէ ալ կը շեղէին[282]: Բայց այդ նոյն իսկ այս խմբագրութեան մէջ գաւառաց կարգը կը ցուցնէ Բերդացփորի դիրքը. որովհետեւ կը յիշուին գաւառներն այս կարգաւ. «ունի գաւառս եւն. զԿող. զԲերդացփոր, զՊարտիզացփոր, զԾակս (կամ Ծակատս)» եւն[283]: Այս կարգն ինքնին կը ցուցնէ թէ Բերդացփոր չի կրնար հեռու ըլլալ ո՛չ Կողէ եւ ո՛չ Պարտիզացփորէ, որոնց մէջտեղ կը յիշուի. իսկ այն կրկին գաւառաց դիրքերն որոշ են՝ անունները մնացած ըլլալով ցայսօր ալ: Ընդարձակ խմբագրութիւնն աւելի պայծառ ալ կը նկարագրէ դիրքը: Հիմ կամ սկիզբ դնել զԿող որ Տայոց «յելից կուսէ» գաւառն էր, անոր համեմատութեամբ կը շարէ միւսները, առ այժմ մեզի պէտք եղած հետեւեալները. «իսկ ըստ մտից Կողոյ՝ Բերդացփոր. Պարտիզացփոր, ճակատեալք յելս». — յետոյ կու գան՝ «ըստ հարաւոյ» Բուխա, եւն[284]: Կողայ արեւմուտքն, եւ Տայոց

---

282 Խոր. (Վենետիկ 1865), էջ 610:

283 Հրտ. Սուքրեան, էջ 35:

284 Քոլս, էջ 247 եւն. «Bardes մեծ գիւղին» համար իրեն ըսած են իբր 200 տուն, ուստի կը կարծէ 1200 հոգի: Ալիշան («Տեղագիր», էջ 39) Օլթիի համար կ'ըսէ «մասն Պարտիզացփոր գաւառի Տայոց, որոյ եւ գետակ համանուն Պարտէզու ընթանայ ընդ

աշխարհի «յեղս» կամ արեւելեան բաժնի գաւառներս կրնան միայն կրկին գլխաւոր աւազաններու (Թորթումի–Ջրոյ եւ Օլթի–Ջրոյ) արեւելեան աւազանին, ուստի Օլթի–Ջրոյ եւ իւր օժանդակաց վրայ գտնուիլ: Արդէն որոշ է՝ ինչպէս Կող գաւառի դիրքը (վր. Cola, արդի Թրք. Կէօլէ). նոյնպէս Պարտիզացփոր գաւառինն, իւր ցարդ եւս մնացած Պարտէզ–ջրով («Պարտէզ–սու»). եւ համանուն Պարտէզ (այժմ նաեւ «Պարտուս») անունով: Անունս տակաւին Քոխ Bardes(s) կը գրէր, եւ Կիպերտ՝ հին քարտէզներու վրայ ուղղակի Bardez, բայց նորագոյն քարտէսին վրայ ընտրուած է աւելի Թրքաձեւը՝ Bardus, բայց վերջապէս տեղը նոյն է: Ուստի Բերդացփոր ալ անկէ հեռու չէր կըրնար ըլլալ, եւ ամենեւին ո՛չ Ծորոխի վրայ: Ալիշան զայս կը դնէ յարմար դրիւք իբր համապատասխանող արդի ՓէՑէկ, Թաւուսկեար, գաւառներու[285]: Կարծենք թէ զՏայոցկերտ կամ Թաւուսկեար ի բաց առնելու ենք. անոր պիտի համապատասխանէր հաւանօրէն յաջորդող Ծակք կամ Ծակատք գաւառը: Սակայն այս խնդրոյ մասին հոս երկարել պէտք չէ. արդէն առիթ պիտի ունենանք տեսնելու գաւառներս յընթացս մեր այս

---

այն եւ Պարտէզ կամ Պարտըզ աւան մեծ 200 տամբք յեզր նորին»: Քոխի օրով ալ (անդ) Օլթիի աւատական իշխանութեան մաս էր Պարտէզ–Ջրոյ շրջանը: Բայց հին գաւառի սահմանաց մասին անշուշտ կրնայ խնդիր ըլլալ: Հմմտ. նաեւ Հիւբշ. անդ, 243, եւն:

[285] «Տեղագիր», էջ 24:

գրութեան: Յամենայն դէպս ուրեմն Բերդացփոր գաւառը Բերդագրակի հետ գործ չունի, եւ անկարելի է այսչափ հեռու տեղւոյ մասին մտածել: Ծորոխի այս կողմն աշխարհագրութիւնը միակ գաւառ մը կը գտնէ՝ Արսեացփոր, որուն դիրքը կը ցուցնէ արդի Արսիսը, Բերդագրակի քթին տակ: Հոս նկատի չենք առներ համառօտ խմբագրութեան, ուստի ձեռագրաց այն ընթերցուածն՝ որ Արսեացփորէ յառաջ կը յիշէ Կափոր մ'ալ, ուստի այն խնդիրը թէ ուղի՞ղ է ընթերցուածս, եւ եթէ էր՝ ո՞ւր էր այն: Որովհետեւ այս կէտը հեռուն կը տանէր զմեզ:

**§ 32.** Բերդագրակի մահմետականացումը: — *Ինչպէս Խեւակի մահմետականացման մասին ըսինք (§ 27), Բերդագրակ գաւառի մահմետականացումն ալ ընդհանուր կերպով միայն ծանօթ է, առանց կարեւոր մանրամասնութեանց: Բայց նոյնն ընդհանրապէս կատարուած էր Ինճիճեանի գրած ատեն, թէեւ մասամբ տակաւին կը շարունակուէր: Այս վերջին կէտս կը վերաբերի ի հարկէ այն քրիստոնէից՝ որ տակաւին մնացած էին, եւ մնացած են այսօր ալ, շատ աւելի քան ի Թորթում, ամենեւին համեմատութեան չառնելով Համշէն ու Սեւ-Գետ, որոնք քրիստոնէութեան պահպանման տեսակէտով չեն կրնար իսկ համեմատուիլ Թորթումի հետ, թող թէ Բերդագրակի: Վերջինս այսօր այս գաւառներէն ամէնէն*

աւելի քրիստոնեայ բնակչութիւն ունի, բայց գլխաւորաբար շնորհիւ Խոտորջրոյ եւ անմիջական մերձակայ գիւղերու, որոնք քրիստոնեայ ովասիս մը կը կազմեն: Միւս կողմանէ Քոխի լսած՝ թէեւ կցկտուր՝ տեղեկութիւնք այնպէս կ'երեւցնեն թէ այս մահմետականացումն աւելի եղած ըլլայ ԺԸ. դարու վերջերը, կամ անոր մօտ:

Բերդագրակ գաւառի մասին Ինճիճեանի տուած տեղեկութիւնը հետեւեալն է[286]: «Երկիր սորա մրգաւէտ, ունի գինի առատ եւ ընտիր[287]: Գիւղօրէք նորա կառուցեալ են

286 Ինճիճեան, էջ 132—33:

287 Մահմետականացած երկրի մը մէջ «գինի առատ եւ ընտիր» զարմանալի: Բայց Ճորոխի գծին վրայ գինեգործութիւն չափով մը կայ այսօր ալ, շնորհիւ քրիստոնէից, նոյնիսկ մահմետականացածներու կողմանէ, ի հարկէ քրիստոնէից վաճառելու համար: Այս կէտը կը յիշէ նաեւ Murray's Handbook Asia Minor etc. (ed. Sir Charles *Wilson*, London 1905, p. 213) որ Բերդագրակի համար կը գրէ. «Բերդագրակ (Petegrek) 2090 ոտք, երկարաձիգ մահմետական գիւղ մը (Ճորոխի) ձախ ափին վրայ: Կամրջին քով կան բերդի մ'աւերակները: Հովտին երկու կողմը կ'աճին խաղող եւ բրինձ. եւ գինի կը շինուի՝ որ կը վաճառուի մերձակայ հռոմէական-կթղ. Հայոց. կլիման վատառողջ եւ տենդաբեր» են: Ճորոխի գծին վրայ գնողներու մեծագոյն տոկոսը կը կազմէ Խոտորջուր (թէ՛ գինի եւ թէ՛ աւելի քաղցու՝ ինքնին գինի շինելու համար): Սակայն ընդհանուր առմամբ այլեւս չեն արժեր այն հիացողական գովութիւնը՝ զոր կու տայ Յակոբ Կարնեցի (էջ 7) Թորթումի երբեմնի գինւոյն համար՝ «գինի այնչափ հոլով եւ քաղցրահամ, որ մինչեւ Ի. տարին այնպէս անա-

*առ վտակօք՝ որք հոսին ի ձորոխ գետ*. բնակիչք նոցա առհասարակ էին յազգէս Հայոց, *այլ* ապա ըստ մեծի մասին դարձան ի տաճկութիւն. *եւ* սակաւ մնացին ի քրիստոնէից»: — *Բնականապէս ամէնէն աւելի ազդուած ըլլալու էր կենդրոնը, որուն մասին կը գրէ*. «Բերդագրակ գիւղաքաղաք[288] *համօրէն գաւառին առ ձորոխ գետով եւ առ լերամբ*. բնակիչք նորա տաճիկք (=*մահմետականացածներ*). *կան ի նմա* տակաւին առաջին

---

պակաս է, *որ թուի թէ այսօր հարեւալ է ի հնձանէ, որ ոչ սրտի դողումն կամ գլխացաւութիւն բերէ, այլ ախորժէ ըմպողացն»: Երկրին մահմետականացմանէ ետքը գինեգործութիւնը միշտ անկման դատապարտուած է: Նշանաւոր է այսօր ալ այս ամէն կողմանց այգեաց բերքը. բայց ամենամեծ մասը կը գործածուի իբր պարզ խաղող, «հաւանք» (չորցուած), չամիչ, եւ այլեւայլ պաստեղներ շինելու: — Կարնոյ մէջ տիրող գինին Խարբերդէն է, ո՛չ այս կողմերէն:*

[288] *«Գիւղաքաղաք» անյատուկ մօտ ըլլալու է: Գիւղս երկարաձիգ է՝ բաժնուած այլեւայլ թաղերու կամ գիւղամասերու, ինչպէս արդէն նախընթաց ծանօթութեան մէջ նշանակուեցաւ: Նոյնպէս կը նկարագրէ Քոխ, որ ձորը նեղ ալ կ'ըսէ, «եւ տեղ մը, նոյնիսկ ամենաչնչին դաշտ մը չկայ», բայց լեռներու նոյնիսկ սեպ կողերը մշակութեան հող ունին. «Զոր մտնելէն ետքը տեսանք դարձեալ սիրուն մարգեր, մասամբ ծառերով հովանաւորեալ եւ հաճոյական թփերով շրջապատուած. պտղատու պարտէզներ ամէն կողմ կային եւ տեղ տեղ ա՛յնպէս կ'երեւար թէ անտառանման կը շարունակէին» եւն (էջ 73): Գաւառատիրոջ բնակարանը «նեղ կողմնակի ձորի մը մէջ 1½ ժամ վերն» էր. տները՝ «առանձին կամ խումբ խումբ քովէ քով կեցած» կ'ըսէ (էջ 76), եւն:*

եկեղեցիք։ Երեւի եւ աւերակ բերդի սորա՝ որ է տեղի ամուր։ Ի գլուխ խոտաւէտ լերին է ջուր ինչ, որ ի ծագել արեգական սկսանի հոսիլ մինչեւ ցերեկոյ եւ ի մուտս արեգական դադարի»։

Անցողակի նշանակենք որ այս վերջին նորանշան տեղեկութիւնն այսօր ալ տարածուած աւանդութիւն մըն է, որ՝ գոնէ որչափ մեզի պատմեցին, աւելի մերձակայ Տէօրթ-Բիլխէի կը վերաբերի. ուստի Ինճիճեանի յիշած «խոտաւէտ լեռն» Բերդագրակի եւ Տէօրթ-Բիլխէի միջեւ եղածն ըլլալու է։ Թէ ի՛նչ հիմ կամ մեկնութիւն ունի աւանդութիւնս, որ պէսպէս կերպարանօք ալ կը պատմուի, չենք գիտեր. քանի որ անձամբ տեսնել չկրցանք նոյն գիւղն, ոչ ա՛լ բերդն ու եկեղեցին[289]։ Այս՝ կարեւոր

---

289 Ուղեւորք, որ սակէ կ'անցնին այս եկեղեցին իբրեւ նշանաւոր կը գովեն եւ նաեւ մեծ։ Բայց կ'երեւայ շատ մեծ ըլլալու չէ։ Յիշեալ Ուղեգրութիւնը (Murray's Handbook, etc., p. 213) կ'ըսէ. «(Բերդագրակէ)» հեռանալով Ճորոխի ձախ ափին 1¾ ժամէ կը հասնինք Տէօրք–ֆիլիսէ (Արսիսէ՝ 4 ժամ), ուր բերդի մ'աւերակները եւ փոքր մատուռ մը, գահաւէժ ժայռի վրայ հովտին միւս կողմը, գրաւիչ տեսարաններ են այս չքնաղագեղ երկրիս մէջ»։ — Այսու հանդերձ նոյնիսկ «Տէօրք–քիլիսէ» (Չորս-Եկեղեցի) յորջորջանքը կը ցուցնէ թէ կողմնակի ձորերու մէջ գտնուելու են ուրիշներ ալ, թերեւս այն՝ մեծն ալ։ Այս Տէօրթ-քիլիսէ պէտք չէ շփոթել Կողայ այն «Տէօրթ-քիլիսէ» կոչուածին հետ, ուր Քոխ տակաւին երկու եկեղեցւոյ բաւական մնացած աւերակները կը գտնէր (էջ 230—31)։ — Դիմացի

չէ: Բայց երբ Ինճիճեանի օրով եկեղեցիք — զորոնք ըմբռնելու ենք ցրուած նոյն ձորի այլեւայլ գիւղամասերու մէջ, — տակաւին կանգուն էին, նշան է թէ հին չէր մահմետականացումը: Որովհետեւ սովորաբար շրջանէ մ՚ետքը՝ որեւէ մոլեռանդի մ՚առաջնորդութեամբ՝ կը սկսի այս քանդումն այն եկեղեցեաց, որոնք թէեւ լքուած՝ սակայն տակաւին իբր ուխտատեղի յարգուած կը մնան կրօնափոխներէն ալ: Դիտելի կէտ մըն է որ Քոխ, թէեւ կը նշանակէ Բերդագրակի հին բերդն, երբեմնի նիստ գաւառատերանց, որեւէ եկեղեցւոյ յիշատակութիւն չ՚ըներ, թէեւ ձորի մինչեւ վերին ծայրն եղած է, բայց յոգնած ու աճապարանօք[290]: Միւս կողմանէ կը յիշէ եւ կը նկարագրէ իսկ Որջնհաղի եկեղեցին. «Թէպէտեւ, կ՚ըսէ, բուն եկեղեցին տակաւին ամբողջ մնացած

---

կողմը ձորոխ՝ աջ ափին վրայ է «Օճիկ» (Ojik, «Կոճէկ» Kodjek՝ Կիպերտի) եւ «շատ վերը, Թիկանց լերան վրայ՝ կան վիմափոր բնակարաններ, գունագոյն աւազաքարին մէջ» եւն: Քոխ այս գիծը չէ ըրած, ուստի որեւէ նկարագրութիւն չունի, բայց գիւղը կը յիշէ Jodschek ձեւով (էջ 76): — Հին անունը կարծենք Որջիկ ըլլալու էր (հմմտ. Որջնհաղ՝ Օջնաղ, Օշնաղ եւն):

290 Քոխ, էջ 73 եւն: Տես վերի ծանօթութիւնը: Արդեօք արդէն՝ կէս դար ետքը՝ քակուա՞ծ էին: Նշանակութիւն չունի «Բնաշ. Բառ.» (Ա, էջ 415) գրելը. «Տակաւին կը մնան Բերդագրակի հին եկեղեցիները, որոնք քննութեան կը կարօտին»: Այս կրկնութիւն է պարզապէս Ինճիճեանի տեղեկութեան: Աւերակներ թերեւս գտնուին այսօր ալ:

էր, բայց ամայի թողուած էր, եւ մահմետականք ալ, որոնք հոս մինակ կը բնակին, չունէին սեպհական աղօթատեղի մը, ուր իրենց աղօթքները կատարէին[291]»: Այսպիսի հանդամանքներ սովորական են այն առաջին շրջանին, զոր նկարագրեցինք՝ երբ խօսք եղաւ կէսկէսներու մասին (§ 19):

Արդէն Բերդագրակի մահմետականացման մասին քիչ մ'այլազգ պատմուած է Քոխի, եւ այն՝ նոյն իսկ գաւառիս այն ժամանակի տիրոջ կողմանէ: Գաւառիս «բնակիչները, կ'ըսէ, տակաւին անցեալ դարու (— ԺԸ. դար) վերջը դեռեւս քրիստոնեայ եղեր են. բայց մեծաւ մասամբ խուժումեան դանալու բռնադատուեցան թուրքական ոճով: Այս բռնութեան մանրամասն պարագայք ինձի ծանօթ չեն. միայն տեղեկացուց որ արդի միւսէլլեմի (գաւառատեառն) Դուրաղ-Ալի-բէկի հայրը, որ Ձըլտըրի տերանց դերդաստանէն էր, իւր հաւատոց համար (մղուած) կռուին մէջ ինկած էր. իսկ որդին, այն ատեն իւր առաջին մանկութեան մէջ, իբր մահմետական կըրթուած էր բռնաւորներէն, եւ միայն աով յետոյ կրցած էր իւր օրինաւոր սեպհականութիւնը (գաւառն) պահել: Բնակչութեան մեծագոյն մասին դարձին սկզբնաւորութիւնն եղած էր կոտորած, ինչպէս ամէն ուրիշ

---

291 Քոխ, էջ 66: Եկեղեցւոյս նկարագրութիւնը յետոյ յառաջ կը բերենք:

*տեղ ալ, ուր Մահմետի վարդապետութիւնը պիտի ներմուծուէր», եւն*[292]:

*Այս տեղեկութիւնը յամենայն դէպս կարեւոր է, եւ ասով կը լրանայ Ինճիճեանի պատմածը, որ դարձը կը նշանակէ՝ առանց որեւէ պատճառ մ'ակնարկելու: Առանց այս կամ այն ձեւի բռնադատութեան արդէն անկարելի է մտածել ամբողջ գաւառի մը գրեթէ միահաղոյն մահմետականացումը: Իրերն ուստի հոս ալ եղած ըլլալու են այնպէս՝ ինչպէս եղած են ի Սեւ Գետ ու Համշէն:*

*Գիւղերու մասին մանրամասնութիւնք աւելի նուազ ծանօթ են. Ինճիճեան գիւղերը կը յիշէ՝ «քիչ մը խառնակ կերպով՝ Ճորոխի այս ու այն կողմն այսպէս.* «Կուտրաշէն, Ծետկունց. *գիւղօրէք բնակեալք ի Հայոց:* — Աղտըվանց, *որոյ բնակիչք* նորոգ տաճկացան: — Քարէկարմունջ. Վերի եւ Վարի Մոխրկուտ. *որք են երկու գիւղօրէք Հայոց՝* — Իցաձոր. Սալորջուր՝ *առ մեծ վտակաւ Ճորոխայ, որ նոյնպէս* Սալուրջուր *անուանի:* — Հունուտ. Հունգամէզ. Տէօրտ քիլիսէ. Արսիս. Օշնախ, *յորում են մժեխ բազում.* Ջորկանց, *եւն»: Յետոյ կու գայ ուրոյն* խոտորջուր, *աւելի մանրամասնութեամբ, զոր յետոյ առիթ կ'ունենանք յիշելու: Նոյնպէս Կիսկիմ հոս չէ յիշուած շարքին մէջ, ուրոյն յիշուած ըլլալով* (§ 29):

---

292 Քոխ, էջ 75:

Այս շարքին մէջ «երկու գիւղօրէք Հայոց» միայն Մոխրկուտի համար չէ, այլ Քարակամուրջն ալ ի միասին առեալ է, որ ուրեմն ըստ այսմ տեղեկութեան տակաւին քրիստոնեայ էր: Ոչ միայն այս պարագան, այլ նաեւ Քոխի նկարագրածը կը ցուցնեն թէ հոս իրերն աւելի վատթարացած ալ էին: Որովհետեւ Քոխ քիչ մը վերը յառաջբերուած տեղեկութիւնը կը շարունակէ այսպէս. «Այսօր տակաւին միայն երկու գիւղեր (Կարմիրք եւ Խտորջուր) հայ-կաթուղիկեայ քրիստոնեաներէ մինակ բնակեալ են. մինչդեռ չորս ուրիշ գիւղերու մէջ (Կուտրաչէն, Նիխաղ, Մոխրկուտ եւ Խեւակ) յոյն եւ հայ քրիստոնեաներ մահմետականաց մէջ կը բնակին»: Ըստ Քոխի ուրեմն բոլոր միւս գիւղերը — զորոնք յանուանէ կը յիշատակէ, ինչպէս յետոյ պիտի յիշենք, — մահմետական էին, ի հարկէ այս ամէնն ընդհանուր միայն առնելու է: Քոխ չի յիշեր քրիստոնեայ ի Կիսկիմ. բայց արդ՝ ինչպէս տեսանք (§ 28) հոն քրիստոնէութիւնը այնպէս բոլորովին անհետ չէր եղած: Յոյներ այսօր գոյութիւն չունին ո՛չ ի Մոխրկուտ, եւ ո՛չ ի Կուտրաչէն: Ճորոխի աջ ափի վրայ Նիխաղ ի հարկէ տկար թիւ մը քրիստոնեայ մնացած ըլլալու էր. եւ մինչեւ անգամ այժմ Ա—Դ·Օ միայն 7 տուն կը դնէ[293]: Սակայն որչափ ալ այս եւ միւս թուերը (Կիսկիմի

---

293 Ա—Դ·Օ («Վանի, Բիթլիսի եւ Էրզրումի վիլայէթները» եւն) էջ 199:

գաւառի մասին) քաղուած ըլլան «Կարինի առաջնորդարանից», այս թիւն, եւ ընդհանրապէս միւսներն ալ՝ շատ ճիշդ չեն յամենայն դէպս։ Կիսկիմէ գրող տեղացի մը՝ Նիխաղի մէջ 30 տուն քրիստոնեայ կը դնէ[294]։ Ա.—Դ.Օ ամենեւին՝ չի յիշեր զՄոխրկուտ, մինչ իրաւամբ կը յիշէ Փրթիկներ, որուն սակայն միայն 30 տուն հայ կ՚ընծայէ. իսկ յիշեալ Թղթակիցն զայս չի յիշեր։ Այս գիւղն, զոր — շատ մը ուրիշներու հետ — իբր երկրորդական չեն յիշած նաեւ Ինճիճեան եւ Քոխ, բաւական մեծ գիւղ մըն է այսօր, բաղմաթիւ Թաղերով, բազմած Հարկեւորի բարձր սարոտը, այնպէս որ անկէ դէպ ի Որջնհաղ իջնալու առեն աջ կը մնայ եւ լիովին տեսանելի է գրեթէ ամբողջ երկարութեամբն։ Այլեւայլ Թաղերու բաւական կոկ չէնքերով — յատկապէս քրիստոնեայ մասով — գիւղս շատ աւելի մեծ թուով քրիստոնեայ ունենալու է, եւ իրապէս բարձր թիւ մ՚ալ ըսին։ Սակայն այս ընդհանուր թուերու ծանրակշռութիւն չենք տար։ Թէ ի՛նչ վիճակի մէջ են նաեւ հոս այս մասին իրերը, կը ցուցնեն Կուտրաշէնի մասին տրուած թուերը։ Նոյն Քոխ, որ զԿուտրաշէն վերը խառն գիւղերու մէջ կը դնէր եւ այն՝ այնպիսի կերպով, որ կարծես մեծամասնութիւնը մահմետական ըլլար գիւղե-

---

294 Լ. Մրայօն, «Կրթական տխուր վիճակ»՝ ի թերթին Կարնոյ «Յառաջ» 1913, թիւ 3, էջ 2 (գրուած ի Կիսկիմ, նոյն տարւոյ 10 Դեկտ.)։

րու, (— որ ճիշդ չէր Մոխուրկուտի եւ Կուտրաչէնի համար —) ուրիշ տեղ մը կը գրէ թէ հասած է «գեղեցիկ, մեծ, 100 տնէ բաղկացեալ Կուտրաչէն գիւղն, որ բնակուած է ի Հայոց[295]»: Կուտրաչէն ուրեմն Քոխի օրով 100 տուն էր: Ա—Դ·Օ այժմ միայն 40 տուն կը դնէ. մինչ վերոյիշեալ Թղթակիցը Լ. Մրայօն ստորոգրութեամբ՝ կրկին 100 տուն կը դնէ: Հարիւր տարուան մէջ ուրեմն նոյն թիւը կը կրկնուի, աւելի պակաս ալ Կուտրաչէնի եւ մաս մ'ուրիշ գիւղերու մասին ալ անշուշտ առանց ազդեցութեան չէ մնացած 1828—30ի գաղթը, թէեւ ո՛չ այնպէս՝ ինչպէս ի Թորթում, աւելի եւս զուտ հայ երկիրները՝ Սպեր եւն: Ծորոխի նոյն ափին վրայ ի վերջոյ նաեւ Որջնհաղ, որ ա՛յնպէս լիովին մահմետականացած էր եւ իբր գիւղ բնականապէս մնացած է նոյնպէս, կրկին քրիստոնեայ բնակիչ ստացած է եւ եկեղեցի ալ: Այս ի հարկէ արդիւնք է գլխաւորաբար Կարմիրքցւոց, որոնք այն տեղ այգիներ եւն ստացած են, շինած բնակարաններ (գոնէ 42 տուն) ու եկեղեցին, եւ ուր մանաւանդ այգեկութքի շրջանին կ'իջնան մեծ բազմութեամբ, յետոյ ի հարկէ մեծաւ մասամբ դառնալով վերն իրենց գիւղը: Ամառն արդէն տեղացիք ալ ընդհանրապէս գիւղը կը թողուն՝ ամարանոցներն ելլելու: Բորէ, ի Կարին 1838 գրած թղթակցութեան մէջ, Կիսկիմ գաւառի մէջ հինգ հայ-կթղ.

295 Քոխ, էջ 59:

գիւղ կը յիշէ եկեղեցիով ու քահանայիւք՝ իբր 3000 անձ: Այս տեղեկութիւնը մաս ըլլալով նկարագրութեան այն վիճակին, զոր յառաջ բերած էր 1830ի գաղթականութիւնը, լիակատար կը յիշենք քիչ մ'ետքը: Նախ պէտք է դիտողութիւններ մ'ընել այլեայլ ուրիշ կէտերու մասին:

§ 33. Մոխուրկուտ, Կարմիրք, Հունուտ: — *Մահմետականացման հոսանքն եկած հասած էր Խոտորջրոյ դուռը, նոյն իսկ ներս մտնել փորձած է: Խոտորջրոյ համար (— նոյնպէս Կարմիրք —) կ'արժէ ինչ որ գրած էր արդէն Ինճիճեան. «բայց ի Հայոց օտար ազգ ոչ գտանի ի Խոտորջուր «ո՛չ օսմանեանք, ո՛չ քուրդք, եւ ո՛չ լազք*[296]*»: Տուն մը սակայն կար հոս ալ, որ այժմ չկայ: Եւ այս մէկ տունը նիւթ տուած է մինչեւ անգամ զրոյցի: Այս զրոյցը կը ներկայացնէ Գ. Ս. Հետեւեալ կերպով: Յիշելով Խոտորջրեցւոց իբր թէ Անւոյ գաղթական ըլլալը, ուսկից «փախստական եկած են 7 տներ», կը յաւելու ուրիշ՝ «կը պատմեն թէ» աւանդութիւն մ'ալ, որուն համաձայն ԺԵ. եւ ԺԶ. դարուն «Մուշից եւ Վանից մէկ 3 տնւոր փախստական եկած են եւ մնացած այստեղ»: «Աւանդութեան ասելով դոյն այդ* գաղթականութեան ժամանակ իրենց հետ եկել է նաեւ 1 տնւոր տաճիկ, *որ այժմ եւս 1 տուն է մնացել, մինդեռ 7 տնւոր Հայերն հիմայ 800 տուն են եղել եւ եօթ թաղի բաժ-*

---

[296] Ինճիճեան, *էջ* 133:

նուած, են[297]: Ջրուցի համաձայն է 7 տնէ 7 գիւղ ընել· բայց ի՞նչպէս «1 տնւոր տաճիկ» իրապէս 1 տուն միացած էր այսչափ դարու մէջ, այն՝ ի հարկէ կը մեկնուի կրօնից եւ բարոյից տարբերութեամբ: Էական կէտն այս աւանդութեան մէջ ա՛յն է թէ որոշ չէր գիտցուեր այդ մէկ տան ծագումն, եւ թէ հին կը համարուէր, բայց գաղթական, եւ ո՛չ բնիկ: Այս կէտերն աչքի առջեւ ունենալու է նաեւ Մոխուրկուտի խնդրոյն համար:

Մոխրկուտ ամէն կողմանէ Խոտորջրոյ կը վերաբերի, թէեւ անկէ բաժնուած բարձր Երանայող լեռնով եւ ուրոյն ձոր մը կազմելով: Ոչ միայն նոյն ժողովուրդն է ու լեզու, այլ նաեւ կրօնական տեսակէտով: Ասոնք՝ հանդիպակաց, Ճորոխի միւս ափն բարձունքի վրայ գտնուող Կարմիրքի հետ՝ երեք քովէ քով հայ-կթղ· գիւղեր են: Քոխ մինչեւ անգամ երկրախօսօրէն կողմնակի ձոր մը միայն կը համարի զՄոխրկուտ այն յաղթ կրային հրուանդանաձեւ լեռան, «որ Իցաձորի եւ Խոտորջրոյ ջրերուն միջեւ նստած

297 Գ. Ս. «Խոտորջուր», ի Թերթին «Նոր-Դար», 1890, թիւ 67 եւ 73 (առթիւ կողոպտման Կաղմխուտ գիւղի, երբ ժողովուրդն հաւաքուած էր եկեղեցին՝ նոյն տարւոյ 22 ապր. յարձակում կրելով Լազ աւազակախմբէ մը): — Հմմտ. այս առթիւ՝ Շամիրամ, «Խոտորջուրցիների մասին»՝ անդ, թիւ 66 (ինչպէս նման յօդուածներ թերթերու մէջ՝ այլեւայլ առիթներով):

է [298]». ուստի մէկ լեռնաբազուկ կը համարի այն ամէնը, որ ունէր իւր կողմնական ձորերը: Ջիարդ եւ իջէ հոս կարեւոր այս կէտը չէ. այլ այն՝ որ հոս կրցած էր ոտք կոխել՝ թէեւ փոքր՝ բայց վերջապէս սահմետական բնակչութիւն մը: Մոխրկուտ՝ չհաշուելով իւր գիւղակերպ շինուած ամառանոցները եւ Նուռանա շատ փոքրիկ գիւղիկը կամ թաղիկը, երեք գլխաւոր թաղ կամ գիւղ ունի. Վերի Մոխրկուտ, Գորգանց («Գէորգեանց» ձեւէ) եւ Վարի Մոխրկուտ: Խնդրական է թէ գլխաւոր հին նիստը վերինը թէ վարինն ըլլայ: Այնու որ Վերին Մոխրկուտ կը կրէ ոմանցմէ նաեւ Աղարակ յորջորջանքը, կրնար գուշակուիլ թէ երբեմն աւելի ամարանոց էր: Սակայն այս յորջորջանքը կ'երեւայ բուն Ագրամ յորջորջանաց մեկնութիւն մը միայն է: Իսկ այս ուրոյն անունը տեղւոյն հնութեան նշան է ընդհակառակն: Վերինէս աւելի գիւրին է ելքն այն երբեմնի հզօր ժայռաբերդին, որ այսօր հռչակաւոր Աստուածամայր ուխտատեղին է: Ջիարդ եւ իջէ Վարի Մոխրկուտէ քիչ հեռու, ձորիս վտակին երկայնքը աւելի ցած դրից մէջ կայ գիւղ մը՝ մահմետական բնակիչներով (իբր 30 տուն):

Ե՞րբ ծագած է այս, կամ ի՞նչպէս ոտք

---

[298] Քոխ, էջ 79—80: Ուստի Երանայողն (Կիպերտի «Խոտորջուր-լեռը»՝ Chodutschur-Dagh եւ Աստուածամօր լեռը՝ Կիպերտի «Մոխուրկուտի-լեռը» Maghurgur-Dagh) իբր մէկ լեռնագիծ կը նկատէ:

կոխած է այս գիւղին մէջ մահմետական բնակչութիւն մը։ Դժբախտաբար այս ծագման ճիշդ ժամանակն ու մանրամասն պարագաները մեզի անծանօթ մնացին։ Անշուշտ Ինճիճեան, ինչպէս տեսանք, կը գրէ «Քարէկարմունջ. Վերի եւ Վարի Մոխրկուտ, որք են երկու գիւղօրէք Հայոց», առանց նշանակելու որեւէ մահմետական թաղ մը։ Եւ կրնար մտածուիլ թէ ի՛նչպէս իրերը յետոյ փոխուած են Քարակամուրջի մասին, փոփոխութիւն մը կրած է նաեւ Մոխրկուտ։ Այս կրնայ ըլլալ։ Բայց թերեւս նաեւ Ինճիճեանի տեղեկատուն ծանրակշռութիւն տուած չէ, քանի որ բուն Մոխրկուտ հայ էր հապէս, այն քանի մը տուներու, որոնք հոն կրնային գտնուած ըլլալ։ Բնական է որ այն միջոցին, շատ աւելի աննշան թուով ըլլալու էր մահմետական՝ գիւղս։ Ասոր հակառակ Քոխ՝ կէս դար ետքն՝ իրերն այնպէս կը ներկայացնէ, որ կարծես հոս մահմետականք իւր օրով գերիշխող ըլլային։ «Մոխրկուտ (— կը գրէ Mogurgut) մեծ գիւղն իբր 200 տուն ունենալու է 1000—1200 անձով եւ բնակեալ է մահմետականներէ, Հայերէ եւ քանի մը Յոյներէ[299]»։ Ի հարկէ մոռնալու չէ Քոխի նման խօսքը Կուտրաշէնի մասին ալ։ Երկու հեղինակացս միջեւ եղած տարբերութիւնը սակայն մեծ է՝ կէս դարու մէջ։ Բայց այս կէս դարը շատ ծանրակշիռ շրջան մ՚ունեցաւ ամէն այս կողմանց քրիստոնէու-

[299] Քոխ, էջ 81։

թեան համար, այսպէս կոչուած Կարնոյ մեծ գաղթը: Բայց ի մանր կամ անհատական գաղթերէն Խոտորջուր չէ մասնակցած այս գաղթին: Որչափ գիտենք նոյնն ըսելու ենք ընդհանրապէս Մոխրկուտի համար: Ի հարկէ մտածել կու տայ այն պարագան՝ որ Քոխի ժամանակի 200 տունն այսօր իսկ՝ դար մ'ետքը — չունի Մոխրկուտ: Բայց յամենայն դէպս Բորէի յիշած հինգ հայ–կթղ. գիւղերէն մին էր այս, «իրենց եկեղեցումն ու քահանայիւք» մնացած (1838ին): Սակայն այն գաղթային շրջանն ունեցած է ուրիշ արդիւնք մը, մեծ ներգաղթ մահմետական տարրի մը (Կովկասէ եւն), եւ այս միջոցին մահմետականք ոտք կրնան դրած ըլլալ — եւ յաճախ դրած են — ո՛չ միայն Հայոց լքած վայրերն, այլ ուրիշ տեղեր ալ՝ ուր կռուան մը գտած են սպրդելու: Տեղական աւանդութիւնը մասամբ համաձայն է Քոխի, այսինքն՝ աւանդելով որ մահմետականք տարածուած էին յառաջ ամբողջ ձորին մէջ, այսինքն յատկապէս կային Վերի Մոխրկուտ ալ: Եւ միայն հետզհետէ յաջողած են քրիստոնեայք գնելով անոնց տներն ու հողերը՝ ստիպել որ թողուն Մոխրկուտն ու երթան այլուր. մաս մ'անշուշտ իջած է այն ատեն այս վարի թաղը: Ի հարկէ չենք ուզեր ըսել թէ այս մահմետականները միայն նոր գաղթականներ են, եւ որեւէ բնիկ տարր չկար. բայց՝ ինչպէս ըսինք մանրամասնութիւնք կը պակսին մեզի: Մոխրկուտ՝ Խոտոր–

ջրոյ պէս այս մահմետականացման շրջանին կաթուղիկեայ էին արդէն (սկսեալ ԺԷ. դարու վերջերէ)։ Մեր Մատ. թիւ 980 ձեռագիրը, զոր Եղիա Աստուածատրեան Բռատենց գրել սկսած է ի Կրման 1746ի, որոշ կ'իմացնէ որ նոյն իսկ Կրման գիւղն, — որ աւանդութեամբ՝ ամէնէն ուշ կաթուղիկեայ եղած է, այս միջոցին կաթողիկեայ էր արդէն (Թղ. 107, եւն)։ Ինչպէս որ ամբողջ գիրքը կը ցուցնէ՝ նաեւ այն ատեն ի միջի այլոց Կարին լի էր Խոտորջուրցի հայ-կթղ. գաղթականներով, ինչպէս մեր օրով, որոնց մէջ իւր հայրենական տունն ալ. այնպէս որ գրեթէ գրքին սկիզբը կրնար գրել. «Ըստ օրինի՛ եւ կանոնիւ Հայոց մինչ յուսայ կարդալն ի կօշկակար Մանուկի որդի տիրացու Մինասէն, որ էր ի սերնդոցն Խոտրջրոյ եւ ի ցեղէն Պալճոնց, որ բնակէր ի Էրզրում» եւն (Թղ. 6ա.) թողլով բազմաթիւ նման տեղեկութիւններ։ Այս պարագան մասամբ նպաստաւոր էր բնի մահմետականացման շրջանին այնու որ հայ-կաթուղիկեայք քիչ շատ եւրոպական պաշտպանութիւն մը կը վայելէին. միւս կողմանէ սակայն մոռնալու չէ ճիշդ ԺԸ. դարու վերջերն եւ մանաւանդ ԺԹ. դարու սկիզբն յարուցուած սաստիկ հալածանքները կաթուղիկէից դէմ, որոնց արձագանգը, ինչպէս յաջորդիւ անցողակի նշանակելու առիթ կ'ըլլայ, հասած է մինչեւ այս խորին ձորերը։ Ինչպէս «քանի մը Ցոյներ»՝ կրնային գտնուիլ հոս ալ քանի մը

վրահայ կամ վրացածէս Հայեր, եւ ընդհանրապէս այս մահմետականացման մաս մը կրնայ ընդհանուր կերպով կապ ունենալ առհասարակ Բերդագրակի մահմետականացման հետ։

Միւս կողմանէ այս տեղւոյ մահմեդականք բաւական տարբեր են իրենց զուտ Թուրք կրօնակիցներէն ուրիշ տեղերու։ Շատերը, եթէ ոչ ամէնքը, գիտեն հայերէն. գոնէ կը հասկնան։ Խիստ մահմետական սովորութեանց շարք մը չունին, եւ հանդէպ քրիստոնէից լիովին բարեկամական աղերս ունին ընդհանրապէս, մասնակից ուրախութեանց եւ նոյն իսկ երկսեռ պարուց՝ իրենց իգական սեռն իսկ, եւն։ Ասոնք իրենց կղզիացեալ դրիւք անշուշտ շատ զօրեղ ազդեցութեան ներքեւ էին քրիստոնեայ ծովի մը մէջ, եւ քրիստոնէից հետ անձուկ աղերս եւ կախում պէտք է որ ունենային՝ նոյն իսկ տնտեսական տեսակէտով։ Բայց կան կէտեր՝ զորոնք երբեմնի «կէսկէս» վիճակ մ'աւելի լաւ կը բացատրէ։ Անոր համար տակաւին մութ կը մնայ մեզի այս մահմետական գիւղին ծագումը։

Կարմիրք մնացած է քրիստոնեայ լիովին, եւ հայ-կթղ. գիւղ մըն է Ճորոխի աջ ափին։ Ասոր դրից՝ այն է Բերդագրակի վերաբերելու մասին տարակարծիք է Ինճիճեան, անոր համար չի դներ գաւառիս շարքին մէջ։ Իբր գաւառի մը վերջին գիւղ կրնար ըստ ժամանակին գաւառաց սահման-

ներու փոփոխութեանց ենթակայ ըլլալ։ Միջոց մը Սպերի վերաբերած կ'երեւայ, եւ այնպէս գտած ըլլալու է Ինճիճեան, որ Սպեր գաւառի ներքեւ իբր ուրոյն բաժին կը դնէ նոյնը գրելով. «Կարմիրf. գիւղ յարեւելս կոյս Ճորոխ գետոյն բնակեալ ի Հայոց, ի յարեւմուտս Թորթումայ (— որուն հետ կապ մը չունի —) եւ ի յարեւելս Խոտորջրոյ. եւ է վերջին սահման Սպերոյ ի հիւսիսոյ[300]» ի հարկէ բուն «ի հիւսիսոյ» չէր կրնար ըլլալ, այլ հիւսիս-արեւելքն, ո՛չ ալ Խոտորջրոյ լոկ «յելս», այլ հարաւ-արեւելքն, ինչպէս Սպերի հանդէպ՝ աւելի արեւելեան ուղղութիւնը, Խոտորջրոյ հանդէպ՝ հարաւն ըլլալով գլխաւորը։ Կէս դար ետքը Քոխ բացորոշ Բերդագրակի մէջ կը դնէ, ինչպէս արդէն տեսանք «Կիւրճիստան» գաւառի խնդրոյ առթիւ (§ 30) Քոխ Ծաղկոցէ կ'ելլէր «Firengsներէ, այսինքն եւրոպացիներէ բնակեալ» գիւղը կամ «փրանկ գիւղն Կարմենիկ» (fränkisch), եւ հոն կ'իմանայ որ այս կարծեցեալ Firengiները հայ-կաթողիկեայք են, որ առիթ կու տայ իրեն արեւելից մէջ կրօնից եւ ազգութեանց աղերսին եւ անուանց փոփոխութեան վրայ խօսելու[301]։ Քոխ կը կրկնէ այլուստ՝ Բերդագրակի գիւղերու

300 Ինճիճեան, էջ 95։

301 Քոխ, էջ 55—58։ Քոխ կը յիշէ «ընտիր ոգին»՝ զոր հոս բնակիչք կը պատրաստէին, եւ որ իր թուրք ուղեկցաց շատ սիրելի էր, եւն։

մէջ[302] դնելով զԿարմիրք, ինչպէս արդէն յիշեցինք տեղ մը (§ 32)[302]: Ճիշդ խօսելով Ինճիճեանի տուած այս տեղեկութեան բոլորովին համաձայն չէ այն միւս տեղեկութիւնն, որ Բերդագրակի գիւղերու շարքը կը սկսէր, ինչպէս տեսանք, գիւղերով՝ «Կուտրաշէն. Ծետկունց. գիւղօրէք բնակեալք ի Հայոց»: Կուտրաշէն՝ Կարմիրքի դրացին է Ճորոխի գծի վրայ: Այս խնդրէս դուրս է: Բայց արդ անմիջական դրացին է նաեւ Ծետկունց փոքր գիւղն, զոր Ինճիճեան ալ Բերդագրակի մէջ կը դնէ, Կարմիրքի թիկունքը, շատ մօտ, միայն ձորով մը բաժնուած, այնպէս որ — ինչպէս անձամբ տեսանք — Կարմիրք սարահարթի այն ծայրէն յատուկ ոճով մը դէպ ի Ծետկունց ձայն կը դրուէր եւ անկէ կ'իմացուէր: Կարմիրք եւ Ծետկունց ըստ դրից անբաժան են, եւ եթէ մին Բերդագրակի կը վերաբերէր, հարկ էր որ միւսն ալ այն գաւառին մէջն ըլլար: Ըստ այսմ Սպերի ներքեւ ըլլալն ըստ պատահման անցաւոր վիճակ մ'եղած ըլլալու է միայն: Ծետկունց ունի իբր 15 տուն հայկթղ., եւ թէեւ կայ եկեղեցի, բայց սեպհական քահանայ չըլլալով՝ մերձակայ Կարմիրքէ կը հոգացուի: Բնակիչքն ալ բնականապէս կապուած են վերջնոյն հետ խնամութեամբք:

Հետաքրքրական է անուանս Քոխի քով միշտ Karmenik գրուիլը, ձեւ մ'որ անցած

302 Անդ, էջ 75, 76:

է այնուհետեւ քարտէսներուն: Կիպերտ՝ որ հին քարտէսներու վրայ այս ձեւին քով կը դնէր նաեւ արդի հայ ձեւը (Karmirkh), իր նորագոյն քարտէսին վրայ կը գրէ միայն Karmenik, իսկ Ճորոխափին մօտ եղող «Պախչէ» բաժինը մինչեւ անգամ «Կարամենեակ» ձեւով (Bachtsche Karamenjak) նշանակած է: Զարմանալի կերպով նաեւ ազգայինք այլաձեւ կը գրեն գիւղիս անունը: Այսպէս Ա–Դօ կը գրէ Կարմրակ, եւ 150 տուն կ՚ըսէ[303]: Կիսկիմի Թղթակիցը՝ կ՚ըսէ Կարմրիկ, եւ այն՝ 110 տուն[304]: Անցողակի ըսենք որ վերջին թիւն ունի Կարնոյ Հայկթղ. Թեմի Իրական Վիճակացոյց մը, զոր յետոյ պիտի հրատարակենք, կազմուած 1892ի:

Հունճուտ: Վերն առիթ եղաւ ակնարկելու ձորիս մասին ալ, որ Խոտորջրոյ անմիջական արեւմտեան դրացին է՝ դէպ ի Սպեր, այսօր անոր այս կողման վերջին ձորը: Արդ. Ինճիճեան, ինչպէս տեսանք, Բերդագրակի գիւղերու շարքը դրած էր «Հունճուտ» յիշելով Հունդամեկէ յառաջ: Միւս կողմանէ Սպեր գաւառի մէջ, որուն գիւղերը չի մանրամասներ յանուանէ, իբրեւ գաւառին տիտղոս կը նշանակէ «Սպեր կամ Իսփիր. տճ. կոչի նաեւ Հունճուտ[305]: Ուստի ո՛չ միայն Սպերի կը վերաբերէր ձորս, այլ

---

303 Ա—Դօ, անդ, էջ 199:

304 Լ. Մրայօն, ի «Յառաջ» 1913, թիւ 3:

305 Ինճիճեան, էջ 94:

նաեւ կենդրոնի մը նման անունն իսկ տուած էր գաւառին։ Այսպիսիք ցանցառ եղած չեն երեւար օսմանեան հնագոյն շրջանի մէջ, որով շատոնց երկրորդական տեղ մ'իբր կենդրոն համարուած ըլլայ։ Նոյնպէս Կարնոյ «Գարարգ կամ Խարարգ» անուն գիւղի մասին կը գրէ՝ «ի հրովարտակս արքայի եւ ի յետկարս ղատաւորաց նախնի քաղաք այսր վիճակի եւ իբր նախնի Էրզեռում՝ այս համարի, եւ նախադահ դասի քան զԷրզեռում» են[306]։ Գարարգ հին Արծնի տեղն

[306] Անդ, էջ 77 մեկնելով անունս «Գար Արգ. Երկիր Կարնոյ Թարգմանի։ Մերձ ի Գարարգ երեւին եւ քայքայեալ աւերակք ինչ։ Աւանդութիւնն ի հարկէ հոս կը դնէ հին Արծնի քաղաքի տեղն, որուն աւերումն այսպէս նկարագրած է Լաստիվերտացի (տպ. Վենետիկ 1901, էջ 64—69, գլ. ժբ. «վասն Արծնին անողորմ կոտորածին»՝ 1048ի Թուականի արշաւանքի պատմութեան ընթացքին մէջ)։ Եւ այս աւանդութիւնն ու աւերակաց տեղիք են կը յիշեն այնուհետեւ շատերը, օրինակ՝ Յովհ. Եպ. Վաղարշակերտցի, էջ 13—15 («Ղարարգ» արդի հնչմամբ անուան, դնելով 60 տուն հայ եւ 20 մահմետական). — Միրախորեան, Գ, էջ 161—62 (նոյնպէս 60 տուն հայ, բայց 30 տաճիկ) «Բնաշ. Բառ.» Բ, 300 բնակիչք կ'ըսէ 682 հայ եւ 138 մահմ. եւ ուրիշներ։ Հողի երեսն այսօր իրական կամ կանգուն աւերակ այլ եւս չկայ, եւ բոլորն իսկ տեղացիք կարծես անհետացնելու վրայ են՝ իբր պարարտացուցիչ հող գործածելով ընդարձակ արտորէից, որոնց ներքեւ աւերակաց հետքերը թաղուած կ'ըսուին, եւ ուր կը գտնուին երբեմն բիւզանդեան դրամներ են։ — Ջահմանց գիւղի իբր 1034—1044 «յԱրծինս մեծ աւանի» գրուած Աւետարանը քիչ մը վարը յիշելու առիթ պիտի ըլլայ։ Այն խնդիրը՝ զոր կը յուզէ նաեւ Ստ. Կանայեանց («Արգնարգին»՝

կոնայ ըլլալ, բայց Օսմանեանց ոտք կոխած ատեն այլեւս ո՛չ միայն հին Արծն գոյութիւն չունէր, այլ ոչ որեւէ քաղաք մը, միայն գիւղ մըն էր: Նման բան մըն է Ախալցխայ փաշայութեան՝ երկար ատեն Զըլտըրի անուամբ անուանակոչիլը, համանուն չէնէն որչափ ալ երբեմն «չէն» եղած ըլլայ, որ նոյն իսկ լճին անունը տուած է, որուն արդի իրական տեղն իսկ շատ որոշ չէ, ա՛յնպէս ամայացած է շատոնց[307]: Այս գոնէ կը մեկնուի այն նշանաւոր ճակատամարտով, որով Օսմանեանք տէր եղան աթաբեկութեան երկիրներուն (1578): Ասոնց նմաններ բազմաթիւ են ուրիշ կողմեր ալ: Ինչպէս ակնարկեցինք՝ Հունուտ իր աշխարհագրական դիրքը եւ լեռնագծին ուղղութեան համեմատ Խոտորջրոյ հետ Տայոց վերաբերելու էր, ուստի Բերդագրակի մաս (§ 25): Բայց ինչպէս նոյն իսկ Կարմիրքի մասին փոփոխութիւն մ՚եղած է, հոս նոյնն եղած կ՚երեւայ շատոնց՝ մինչեւ իր անունն իսկ տալ գաւառին: Քոխ՝ Բերդագրակի գաւառիս գիւղերու մէջ չի յիշեր «Հունուտ» մը, ո՛չ այս եւ ո՛չ ուրիշ որեւէ համանուն մը:

Հունուտ իր անունն առած է հոյն պըտղէն, որով ուղիղ ձեւն է «Հունուտն», միայն թէ քանի որ բառս այլեւայլ բարբառներու

---

Աղձնիք, ԱՐՐՏ, 1913, էջ 376—387) «Արզրում» եւ Արծն անուանց են մասին (անդ էջ 387 ծն. 1) հոս մեր նպատակէն դուրս կը մնայ:

307 Ինճիճեան, էջ 123, Ալիշան, «Տեղագիր», էջ 25, եւն: Յետոյ առիթ կ՚ունենանք խօսելու:

մէջ, ինչպէս յատկապէս Խոտորջրոյ բարբառին մէջ, հուն կը հնչուի, կրնայ ի վերջոյ ըլլալ «Հնուտ» ալ, ձեւ մը՝ զոր ոմանք կը գրեն, երբ խօսք կ'ըլլայ Հնուտցի Կարապետ արքեպիսկոպոսի մասին՝ որ այս գիւղէն էր, եւ որ առաջնորդ եղաւ Կարնոյ մեծ գաղթին. իսկ «Հնտուցի» (գրչէի) վրիպակ է[308]: Մահմետականացածներուն քով սովորական գործածական ձեւը միայն «Հունուտ» է: Եւ այնպէս կը գրէ Արծնեան Վարժարանի ձեռագիր Աւետարանին յիշատակագիրը. «Դարձեալ նորոգեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Սահակ սարկաւագիս, որ է գեղջէն Հունուտայ. ապա իմ Հախէն կէս ղուռուշ թողի իմ հոգոյն. ով կարդաք՝ ողորմի ասէք. ամէն. թվ. ՌՃԼԳ (= 1684) մայիսի ԻԳ, օր ուրբաթ»[309]:

---

[308] «Հնուտցի» կը գրէ օրինակի համար Միրախորեան, Գ, 140 եւն. «Հնտուցի»՝ «Բնաշ. Բառ.» Բ, 319:

[309] Աւետ. Կարնոյ Արծնեան Վարժարանի Ձեռագրաց՝ թիւ 824 (Հ. Յակ. Վ. Քօսեանի, «Ցուցակ», թիւ 21, էջ 25). Յիշատակ է սուրբ աւետարանս Տէր Յեսային եւ հօրն Գասպարին եւ մօրն Մարգրտին կողակցին Մարիամին: Դարձեալ Տէր Յեսային, որ քահանայ եղեւ թվ. ՌՃԼԲ (= 1683) դեկտեմբերի ամսոյ Գ: Դարձեալ նորոգեցաւ» եւն: — Յիշատակարանս գրուած եւ նորոգութիւն եղած է անշուշտ ի Կարին, ուր այն ժամանակ ծաղկած էր գրչութիւնը: Հմմտ. Յակոբ Կարնեցի, էջ 36 «եւ եմք երեսուն քահանայք եղբարք սիրով առ իրարս, ամենեքեան գրագիրք եւ ծաղկարարք, ժամասացք եւ ճարտասանք, հմուտք հին եւ նոր Կտակարանաց» եւն:

Ասոնք միայն խոկ կը ցուցնէին, եթէ չգիտնայինք նաեւ այլուստ, որ Հունուտ տակաւին հայ ձոր մըն էր՝ Սպերու բոլոր միւս մասերուն մէջ, ուր մահմետականացմունք փոքր չափերով միայն տեղի ունեցած էին. բայց այսօր օրինակի համար ըստ Ա—Դ-Օի հազիւ 40 տուն հայ կայ հոն՝ հանդէպ 300 մահմետական տանց[310]: Այս՝ ինչպէս ամբողջ Սպերի վիճակը «Կարնոյ» գաղթին արդիւնք է, որ լրացուց ի վերջոյ՝ ինչ որ բռնի մահմետականացումն այնպէս հիմնովին սկսած էր: Վերջինս հեղեղի մը նման յորդած հասած էր Խոտորջրոյ դռները. բայց Մոխրկուտ–Կուտրաշէն գծէն անդին եւ Բերդագրակի Թիկունքը Սպեր տակաւին հայ էր լիովին, թէ այնպէս մնար՝ ինչպէս նաեւ Թորթումի ալ տակաւին ստուար մասի մը քրիստոնէութիւնը, ԺԹ. դարու ընթացքին մէջ այլազգ կ'ըլլար քրիստոնէութեան վիճակը Ճորոխի այս ափերուն վրայ: Մահմետականացման չափ փաստաբեր այս գաղթին մասին այժմ քանի մը խօսք ըսելու է:

**§ 34. Սպեր ու Բաբերդ ԺԸ. դարու վերջերը:*** — *Այս տեղ ի նկատի չենք առնուր գաւառներուս հին անցեալը: Ինչպէս*

---

[310] Ա—Դ-Օ. անդ էջ 199—200:

* Այս հատածէն սկսեալ բնագրին մէջ դրուած են ծանօթութեան թուեր, սակայն առանց համապատասխան ծանօթութիւններու, որոնք գրուած չեն: Աշխատեցանք բնագրէն դատելով համապատասխան ծանօթութիւններու տեղիքները նշանակել:

Հրատարակիչ

առիթ ունեցանք արդէն այս նկատմամբ յիշելու այլեւայլ կէտեր (տ. § 28 եւ 29), նոյնպէս յաճախ առիթ պիտի ներկայանայ յընթացս մեր գրութեան շօշափելու այս գաւառներու վերաբերեալ այլեւայլ կէտեր, զորչափ մեր նպատակին համար պէտք են։ Գաւառներս — կամ հնութեան համար՝ գաւառս — Տայոց աշխարհէն դուրս էր, բայց իբր սահմանակից եւ կարեւոր կեդրոններով՝ ի հարկէ յաճախ խառնուած է անոր պատմութեան հետ, գլխաւորաբար Ճորոխի գծով։ Հոս կը թողունք նոյնպէս այն խնդիրը թէ ինչպէս նախնաբար Բարձր Հայոց Սպեր գաւառի վերաբերող Բաբերդ ըմբըռնուած է յետոյ իբր կէս մը բնիկ Հայաստանէ դուրս «Խաղտեաց» կեդրոն մը, — հետեւութիւն հին բիւզանդեան համանուն բանակաթեմին, որուն նպաստեց յետոյ Բաբերդի էմիրութիւնն ու կարեւորագոյն դիրքն առնուլը՝ իւր նպաստաւոր դիրքն ալ՝ քան հին Սպերը։ Մեզի համար այստեղ կարեւոր շրջանին երկու ուրոյն գաւառներ էին այլեւս, երկուքն ալ Կարնոյ կուսակալութեան վերաբերող, եւ Բաբերդ շատ աւելի ընդարձակ էր եւ է՝ քան Սպեր։ Եւ մեր յիշատակագիրք շատոնց «Խաղտեաց գաւառ»ի կեդրոն կը նշանակեն նոյնը՝ Բաբերդ։ — Կրկին գաւառներս տակաւին հայաշատ էին Կարնոյ մեծ գաղթէն յառաջ։ Ի հարկէ հոս ալ իրերը միացած չէին այնպէս՝ ինչպէս էին ժէ. դարուն վերջերը, Յակոբայ Կար-

նեցող օրով: Ան կրնար տակաւին գրել Բաբերդի գաւառի համար թէ «է սա քաղցր եւ համեղ երկիր, եւ Հայոց բնակարան»[311]. — եւ Սպերի համար՝ «բնակիչք երկրին բովանդակ Հայք», ի հարկէ յաւելլով թէ ունէր «այլ եկեղեցիք բազում, որ այժմ աւերեալ եւ ամայի կան ի ձեռս Տաճկաց»[312]: Վերջինս համեմատ է սովորեալ դրութեան, որով վանքեր ու եկեղեցիներ աւերելով՝ կը գրաւէին հողերը, տալով զանոնք իբր «զիամէթ» ու «թիմար», որով հիմ ալ կը դրուէր մահմետական գաղութներու եւ ազատ ասպարէզ կը թողուէր այն մեծ ու փոքր բռնաւորաց իրենց ուզածն ընելու, եւ պատճառ՝ բռնի մահմետականացմանց: Գլխաւորաբար կեդրոններն են որ նախ մահմետական մեծ բնակչութիւն կը ստանան, եւ ասոր պատճառներն ինքնին յայտնի են: Իրերը յամենայն դէպս քիչ մը փոխուած էին Ինճիճեանի գրած ատեն[313]: Գաւառի մասին որոշ թուեր չի տար, ինչպէս միւս գաւառաց համար ալ. այլ միայն կը նշանակէ՝ «Ունի բազում աւանս եւ գիւղօրէս, որոց բնակիչք Հայք, տաճիկք եւ յոյնք». — ուստի արդէն խառն բնակչութիւն մը, թէեւ մեծամասնութիւնը հայ էր: Այլեւայլ գիւղերու զորոնք կը յիշէ, բնակչութեան մասին բան մը չի նշանակուիր. միայն Բալախորի համար կը գրուի,

---

311 Յակ. Կարնեցի, էջ 15:

312 Անդ էջ 16:

313 Ինճիճեան, էջ 95:

«գեօղ մեծ» եւ «բնակիչք նորա խառն ի Տաճկաց եւ յազգէս Հայոց»։ Գիւղիս մասին յետոյ կը խօսինք։

Այլազգ է Ինճիճեանի բսածը քաղաքին մասին, զոր «բերդաքաղաք վայելուչ» կը կոչէ, ինչ որ թերեւս այն ատեն ըլլար՝ ի հարկէ արեւելեան իմաստով, քան այսօր, երբ Բաբերդ թէեւ աւելի զարգացած՝ տարբեր չէ արեւելեան շատ մը քաղաքներէ ի մասին «վայելչութեան»։ Զիարդ եւ իցէ. «բնակիչք նորա, կ՚ըսէ, առ հասարակ տունք իբր 2000, ըստ մեծի մասին տաճիկք, արուեստաւորք մետաքսեայ եւ ոսկեթել գործոյ, այսինքն Սետճատէի, որ եւ է մեծ վաճառ քաղաքիս։ Թաղք Հայոց բաժանին ի չորս ըստ չորից եկեղեցեաց՝ որք կոչին Հրեշտակապետ, Աստուածածին, Ս. Յոհան, Ս. Յոհաննէս. ունին եւ առաջնորդս չորս՝ որք բնակին ի զանազան տեղիս. յորոց թաղն սրբոյն Յոհաննու է ընդ առաջնորդաւն Սպերու. այնպէս եւ գիւղօրէք սորա բաժանին ի չորեսին առաջնորդս»։ Հետաքրքրական պարագայ մըն է որ Բաբերդի եկեղեցիք պահած են հնագոյն արձանագրութեանց գոնէ մաս մը, որոնք ուրեմն աւելի հնագոյն են քան օրինակի համար ի Կարին գտնուածները[314]։ Բաբերդի բնակչաց այս թիւը թերեւս բարձր ըլլայ։ Ա. Վ. Իսրայէլեան կը յիշէ

---

[314] Յ. Դարբինեան, էջ մը Բաբերդի Կրթական անցեալէն, «Արեւելք» 1907, թիւ 6605, 6607 եւ 6628։

տեղական աւանդութիւնը, որուն համաձայն գաղթէն յառաջ «կ'ըսեն 900 տուն հայ կար քաղաքը եւ 300 տուն Թուրք այն ատեն[315]»: Այս իբր 900 տունը թերեւս լաւագոյն թիւն էր հայ բնակչութեան, բայց թէ Հայք երեք-պատիկ աւելի էին ուղղակի կը հակասէ Ինճիճեանի տեղեկութեանց, եւ ինքնին անհաւանական է կեդրոնի մը համար եւ բերդի մը՝ որ պահակազօր ունէր: Եւ թէ այս կարգի աւանդութիւնք որչափ կրնան իրերը չափազանցել, յայտնի է այն աւանդութենէն, զոր նոյնպէս կը յիշէ, իբր թէ Բաբերդ բազմամարդ քաղաք եղած է ի հնումն»՝ ունենալով 10—12.000 տուն. բայց Սուլթան Մուրատ երբ գրաւեց քաղաքը, կ'ըսուի, «ամբողջ բնակչութիւնը սրէ անցուցած է[316]»: Եւ թէ «179 մինչեւ 190 տարի յառաջ» յարձակած են Լազք եւ սոսկալի կոտորած ըրած, հարիւրաւոր գիւղեր քանդած եւ բնակիչները սրէ անցուցած: Բաբերդ 12.000 տուն բնակիչ ունեցած ըլլայ, դժուարաւ հաւատալի է: ԺԵ. դարու ուղեւոր մը 1500 տուն միայն կը նշանակէր, այս ի հարկէ տարւոյ մը համար (1474), երբ Բաբերդ նոր անցուցած էր յամենայն դէպս մեծ աղէտ մը: Բաբերդ ալ եղած է զոհերէն միայն այն պատերազմին, զոր մղեցին Ուզուն-Հասան եւ Օսմանեանց նոյն ինքն Մուհամէտ Բ, երկու

---

315 Բաբերդ քաղաքը. Հայրենիք 1913, թիւ 2 (716), էջ 4—5:

316 Անդ էջ 5:

հզօր թագաւորներ։ Առաջինը փեսայացած Տրապիզոնի Կոմնենեանց՝ չէր կրնար արգելուլ Տրապիզոնի կայսրութեան ջնջումը (1461), քանի որ տակաւին անզօր էր, ինչպէս նաեւ ոչ՝ Գարամանի անկախ իշխանութեան ալ գրաւումը (1466), որմէ ետքը միահեծան եղաւ՝ իր եղբօր Ջիհանշահի մահուանէ ետքը (1467)։ Իրեն քով ապաստանած էին Գարամանի իշխանազունք, որոնց հետ սկսաւ իր մեծ արշաւանքն այն ժամանակի օսմ. սահմաններէն ներս, եւ յարձակմամբ առնելով Եւդոկիա (1472), հրձիգ ըրաւ եւ բնակիչներն այնպէս անողորմ կոտորեց եւ այնպիսի կերպերով, ինչպէս ըրած էր Լանկթիմուր՝ Սեբաստիոյ։ Այս համեմատութիւնը կ'ընէ նոյն իսկ օսմ. պատմութիւնը։ Յաջորդ տարւոյ գարնան Սուլթանն ինքնին դէմ գնաց Ուզուն-Հասանի, եւ իր բանակը հաւաքուեցաւ ի Սեբաստիա։ Թէեւ բանակին մէկ մասը Ուզուն-Հասանի լարած ծուղակն ինկաւ Եփրատի ափանց վրայ, եւ գերիները ուղարկուեցան ի Բաբերդ. բայց օսմանեան բուն բանակը «արդէն վեց աւուր օթեւան անցած էր թշնամի երկրին մէջ՝ Բաբերդի ուղղութեամբ», եւ եօթներորդ օրը «Դերջանի մօտերը»՝ հասած էր տեղ մը, զոր Օսմանցիք տեղւոյ անուններն ըստ դիպաց անուանելու իրենց սովորութեան համեմատ՝ կը կոչեն «Իւչպըպլը» (Երեք-բերան) Ուզուն-Հասանի բանակը տեսնուեցաւ հոս բարձանց վրայ,

զոր անուանեցին «Արոտալեռ» («Օթլուքպէլի»): Հոս չարաչար յաղթուեցաւ Ուզուն-Հասան (26 յուլ. 1473), եւ անկելոց մէջ էր իւր որդին ալ, Թողուց բանակետղն ու փախաւ: Երեք օր կեցաւ սուլթանը՝ ռազմադաշտին վրայ՝ «գերիները կոտորելու»: Երեքհազար ուրիշ գերեալ Թուրքմաններ ալ կոտորուեցան այնպէս որ ի դարձին ամէն մէկ օթեւանին 400 հոգի կը մորթուէին ի գոհացում անգթութեան: Այսպէս տեւեց եօթը օր, երբ հասաւ (Շապին-) Գարահիսարի առջեւ, որ սաստիկ ամուր էր եւ զոր կոնակը թողուցած էր օսմ. բանակը: Բերդն անձնատուր եղաւ, եւ պարսիկ հրամատարը՝ Դարաբբէկ՝ ի վարձ այս մատնութեան ընդունեցաւ Ադրիանուպոլսոյ մօտ Ձիմէնի սանճակը: Անկէ Կ. Պոլիս դարձաւ սուլթանը: Բաբերդի առումն ու աւերումն այս առթիւ որոշ չի պատմեր օսմ. պատմութիւնը, բայց ինքնին կը հասկցուի: Եւ այս թերին կը լրացնէ նշանաւոր Ամիրտովլաթի գրել տուած ձեռագրին այն հետաքրքրական յիշատակարանը՝ զոր հրատարակած է Վ. Յ. Թորգոմեան[317]: Սաղմոսարանիս գրիչը՝ Մարտիրոս աբեղայ գրած է ի Կ. Պոլիս «ի խնդրոյ «Ամիրտովլաթ մեծ գիտնականի» եւ կը գովէ իւր գաղափար-օրինակը, որու մասին կը պատմէ. «Յորժամ գնաց մեծ խօնդ-

317 Ամիրտովլաթայ Սաղմոսը. ՀԱ. 1895, էջ 246—249:

*քարն Սուլտան Մուհամատն ի վերայ Ուզուն Հասանայ եւ կոտորեաց զնա, արար փախստական, բաին զերծեալ գնաց ի Թավրէժ. եւ սա դարձաւ* եմուտ ի խախթեաճ (= խաղտեաց) գաւառ ի քաղաքճ Բաբերդ կոչեցեալ, այրեաց եւ աւերեաց, *եւ* գերի երեր *Ըստըմպօլ* Սաղմոսարաճ լաւ եւ ընտիր աւրինակ [318], *հանդիպեցաւ Ամիրտովլաթ բժշկիշքս եւ ազատեաց զսուրբ գիրքն զայն ի գերութենէ.* այս եղեւ ի թվ. ՋԻԲ (= 1473). *ամէն*: *Դարձեալ ի Թուականիս Հայոց ՋԻԸ* (= 1479) սուրկուճ արար խօճտճարճ զՂաբամաճիճ աշխարհիճ զհայազգս, *եւ զիս զանպիտան հօղս զՄարտիրոս հետ բերին ի Կոստանդնուպօլիս, առ ոտս սուրբ վարդապետին մերոյ Տէր Մաթէոսի Սեբաստացւոյ եւ Աբրահամ վարդապետի Տրապիզոնեցոյ, որ եւ զորքայ ալ խօնտքարն բերել էր վասն պատրիարգութեան համար, եւ սոքա ոչ առին յանձն» եւն*: *Կը խնդրէ յիշել «զմեր համշիրակ եղբայրքս զՂազար աբեղայս եւ զՍտեփաննոս մալազս եւ զիս զանպիտան գրիչս» եւն, ինչպէս ուրիշները*: *Գրուած է «ի Թվ. ՋԻԹ* (= 1480) *ի յամսեան յուլիս Ը»*:

*Բաբերդ ունեցած է ուրեմն իւր աւերն այս Թուին*: *Բայց ըստ երեւութին դոնէ չափազանց եղած ըլլալու չէր վնասը, երբ յաջորդ տարին հոն* 1500 *տուն կար, ինչպէս*

---

318 *Անդ էջ* 247։

յիշուեցաւ։ Բերդն էապէս անաղարտ մնացած էր եւ բնակեալ անկէ շատ ետքն ալ, մինչեւ ԺԹ. դարու սկիզբը։ Հոս արդի քարակոյտներու մէջ ալ տեղացիք այցելուաց կը ցուցնեն եկեղեցւոյ մը եւ վանքի մը տեղը, որ էր՝ ինչպէս արդէն անունն իսկ հաւանական կ'ընէ, ձեռագրաց յիշած Բերդակայ վանքը։ Այս անունն արդէն բաւական հին ատենէ յիշուած է, զոր սակայն բնականապէս շփոթելու չէ համանուն ուրիշ վանաց հետ[319]։ Մինչդեռ 1396ի Բարսեղ քահանայ կը գրէ իւր աւետարանն «ի դղեակս անառիկ որ կոչի Բաբերդ[320]», ուստի Լէնկթիմուրի արշաւանքէն քիչ յառաջ, անկէ ետքն ալ 1430ի գրուած է Սպերի ձեռագրաց մին «ի հրեշտակաբնակ մենաստանս որ կոչի Բերդակայ վանք», «Բաբերդոյ եւ Դերջանայ» եպիսկոպոսի Տէր Աւետիքի օրով[321]։ Ճիշդ նոյն տարին գրուած ուրիշ ձեռագիր մ'որ այժմ ի Զմիւռնիա է, գծուած կ'ըսուի «ի քաղաքս Բաբերդ», եւ այն Ս. Հրեշտակապետաց եւն եկեղեցին, բերդի ստորոտն եղած քաղաքամասին մէջ։ Վերոյիշեալ 1473ի առման մասին կարեւոր էր Սպերի Մաթու-

319 Տրդ. Եպ. Պալեան, Հայ Վանորայք։ Բիւզանդիոն 1900, Թիւ 1083։

320 Համամճեան, Ցուցակ Գաղատ. Թիւ 9 (Աւետարան)։ Տես այժմ Բարգէն Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ Կարմիր վանուց եւ Շրջակայից. Անթիլիաս 1957, էջ 927։

321 Մ. Սանոսեան, Գաստապան գիւղ Սպերի։ Աւետարան (Ղարիպ)։ «Արեւելք» 1904, Թիւ 5579։

ռանց գիւղի աւետարանը՝ գրուած նոյնպէս «ի Բերդակայ վանքն»: Դժբախտաբար ձեռագրիս գրչութեան տարին չի նշանակուիր, եւ նոյնը կրնանք միայն հետեւցնել «ի Հայրապետութեան Տեառն Սարգսի» ասութենէն, բայց նաեւ գրողին անունն եւ վանաց առաջնորդ Տէր Ղազար եպիսկոպոսի յիշատակութենէն: Այս Սարգիս կաթուղիկոս ըլլալու է Սարգիս Բ (1467—1475)՝ Արիստակէսի Բ. աթոռակիցը: Ի հարկէ կայ՝ ըստ Առաքելի՝ Դաւրիժեցւոյ՝ Սարգիս Գ. ալ (1477—1507) միջոցի մ՚երբ բազմաթիւ ուրիշներ ալ կաթուղիկոս էին[322]: Յամենայն դէպս Սարգիս Դ (իբր 1521—24), ըլլալու չէ, որովհետեւ սա անագանագոյն կ՚ըլլար, քանի որ ի վերջոյ ծանօթ է ձեռագրիս գրիչը՝ «Մովսէս աբեղայ» նոյն ինքն է Մովսէս Համչէնցի, զոր արդէն յիշեցինք ալ: Եւ այս՝ նոյնպէս Տէր Ղազար եպիսկոպոսի առաջնորդութեան օրով՝ գրած է ուրիշ ձեռագիր մ՚ալ որոշ թուականաւ, այսինքն՝ ՋԼԹ (= 1489): Այս ձեռագրիս մասին նախ տեղեկութիւն տուած է Գ. Թ. ստորագրող թղթակից մ՚ի Կիրասոնէ, նշանակելով թէ լուսազարդերով եւ նաեւ սրբոց պատկերներով ծաղկեալ Յայսմաւուրքն այն պահուն «Թրիպոլիի եկեղեցին կը գտնուի», բայց «պիտի վաճառուի»՝ նոյն իսկ տեղւոյն թաղական խորհրդի կողմանէ: Վաճառումն

---

322 Առաքել Դաւրիժեցի, Պատմութիւն, Վաղարշապատ 1884, էջ 337:

*տեղի ունեցած է, եւ նոյն ձեռագիրը ցուցակագրուած կը գտնենք Կոնիբիրի ցուցակին մէջ՝ իբրեւ Բրիտ. Թանգարանի հաւաքման Թանկագին կտորներէն մին*[323]*: Ցուցակին մէջ ընդարձակօրէն հրատարակուած գլխաւոր յիշատակարանէն, որուն մէկ մասը միայն դրած էր Գ. Թ., կը տեսնուի թէ սխալ հասկացողութիւն մըն է վերջնոյս գրելը՝ իբր թէ «Յայսմաւուրքս գրուել սկսած է Վիրապեցի Կիրակոս Ա. կաթողիկոսի օրով* (1441—43) *եւ աւարտած* 1489*ին»: Յիշատակարանին մէջ յիշուած Կիրակոս* «հարպետ» (= *հայրպետ) է Բերդակայ վանքին, ոչ թէ կաթուղիկոս մը: Ասոր փոխարէն Գ. Թ. դրած է կրկին նորոգմանց յիշատակարանները, զորոնք Կոնիբիր միայն յիշատակած է կամ համառօտած, եւ ասոնք ունին իրենց կարեւորութիւնը: Առաջինը նորոգութիւնն եղած կ'ըսուի՝ դար մ'ետքը ՌԼԸ* (= 1589) *թուին Գորեցի Բարսեղ եպիսկոպոսի ձեռօք, բայց տէրն էր Մելիտոն քահանայ որ զայն ունէր «ի* պապանց[324]»*: Թողլով երկրորդ նորոգութիւնը՝ որ եղած է* 1702*ին*[325]*, այս առաջինն իսկ կը ցուցնէ թէ շատոնց ելած էր Բերդակայ վանքէն: Յամենայն դէպս առանց ազդեցութեան չէր կրնար*

---

323 Conybeare F. C., A Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum. London 1913, *Յայսմաւուրք*, *թիւ* 66, *էջ* 165:

324 *Անդ էջ* 166:

325 *Անդ էջ* 166:

մնալ Բաբերդի երկար պաշարումն ու այս անգամ իրական առումն 1514ին, ինչպէս յիշեցինք, նոյնպէս 1548ի Շահթահմասպէ առնուիլը, որմէ ետքը միայն քաղաքս տեւականապէս օսմանեանց ձեռքը մնաց (հմմտ. § 28). Եպիսկոպոսանիստ վանքս այս առթիւ անշքացած կ'երեւայ, եւ գոնէ մեզի ծանօթ չէ ասկէ փոքր ձեռագիր յիշատակարան Բերդակայ անուամբ: Ի հարկէ՝ ինչպէս ուրիշ առթիւ ալ ըսինք, ասկէ դժուար է միշտ որոշ եզրակացութիւն հանել, քանի որ նոյն իսկ մեծամեծ հաւաքմանց բոլոր յիշատակարանք չեն հրատարակուած:

Յաջորդ ժամանակի մէջ ձեռագիրք կը յիշեն «Ս. Աստուածածին» եկեղեցի, որուն հովանւոյ ներքեւ գրած են, բայց այլեւս «Բերդակայ վանք» չեն յիշեր: Այսպէս արդէն առիթ եղաւ յառաջ բերելու այժմ Ճանչղա (ի Ջաւախս) գիւղը գտնուող Մաշտոցի յիշատակարանը՝ 1694 թուին, որ այն ժամանակի հարկերու փոփոխութեանց եւ ծանրաբեռնութեան մասին հետաքրքրական տեղեկութիւններ կու տայ (տես § 23): Յիշատակարանս կ'աւարտի այսպէս. «Եղեւ կատարումն սուրբ տառիս ի թվաբերութեանս Հայոց ՌՃԽԳ (=1694), ունիս ամսոյ ԻԶ օր Գշբթի, ի գաւառս Խախթեաց՝ որ այժմ կոչի Բաբերդ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի որ է մեզի եկեղեցի, ձեռամբ մեղսասէր եւ անարհեստ փանաքի սուտ անուն Գրի-

գործ»[326] են։ Ուրիշ օրինակ մը բերելու համար միեւնոյն դարէն՝ նորերս Էջմիածնի մատենադարանը մտած բոլորգիր աւետարանն ալ ունի յիշատակարան մը՝ ՌՃԻԲ թուին (= 1673), նոյնպէս «ի գաւառս Խաղտեաց, որ այժմ ասի Բաբերդ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին» գրուած Պետրոս երիցուէ[327]։ Ասոնք կրնանք իբր օրինակ ծառայել ուրիշներուն ալ, որ նոյնն եկեղեցին միայն կը յիշեն։ Վերը յառաջ բերած բոլոր յիշատակարանք Բերդակայ վանքին յիշատակութեան կը կապէին միապէս «ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի եւ Ս. Լուսաւորչի», այս երկու անունները՝ միշտ անբաժան։ Ի հարկէ գլխաւոր տաճարը «Ս. Աստուածածին» կրնայ առանձինն յիշուիլ յիշատակարանաց մէջ, եւ անշուշտ այս անուամբ գրուած ձեռագրաց գոնէ մաս մը տակաւին հոս գրուած է, բերդին այն եկեղեցին զոր Ա. Իսրայէլեանի յիշած արդի աւանդութիւնն այժմ «Ս. Թադէոս» ալ կը կոչէ, չենք գիտեր՝ ինչու։ Սակայն խնդիր

---

[326] Լալայեան, Ջաւախք, 314—15 = Ազգագրական Հանդէս 290—91։

[327] Մեսրոպ Եպ., Նոր ստացուած Ձեռագիր. Արարատ 1910, էջ 623։ Այստեղ Հայոց Թուին ՌՃԻԲ = համապատասխան տպուած է 1773 եւ իբրեւ այսպիսի անփոփոխ Տաշեան ալ առաջ բերած է, որ սակայն յայտնապէս անուշադրութեան արդիւնք է, կը համապատասխանէ 1673ի, երբ նաեւ կաթողիկոս էր Յակոբ Ջուղայեցին, որ եւ Յիշատակարանին մէջ կը յիշուի։

չկայ թէ «Ս. Աստուածածին» անուամբ ձեռագրաց մեծագոյն մասը կ'ակնարկէ ուրիշ եկեղեցի մը, այն՝ որ այսօր ալ միակ նոյն անունը կը կրէ, Ճիկրաչէն թաղի — զոր Արծնեան վարժարանի ձեռագիր մը կը յիշէ Ջկրաչէն ձեւով 1538ի[328] Ս. Աստուածածին որ՝ ինչպէս Յ. Դարբինեան ալ կը նշանակէ «Բաբերդի ամէնէն հին եկեղեցիներէն մէկն է», մինչ արդի մայր եկեղեցին «Աստուածամայր» նոր շինութիւն մըն է, թէեւ հնագոյնի մը տեղը՝ որուն հին անունը չէ յիշուած, եւ որուն համար կարելի է կասկածիլ թէ Ինճիճեանի միւս «Ս. Յոհան» ըլլայ:

Ինճիճեան, ինչպէս տեսանք, չորս թաղի չորս եկեղեցի կը յիշէր՝ «Հրեշտակապետ, Աստուածածին, Ս. Յոհան, Ս. Յոհաննէս» եւ վերջնոյս թաղը «ընդ առաջնորդաւն Սպերու», որով նաեւ «գիւղօրէք սորա բաժանին ի չորեսին առաջնորդս»: Այս վիճակը յամենայն դէպս հին է. եւ կարծենք այսպէս մեկնելու է Խաղճանեաց վանքի 1395 թուականի յիշատակարանին համաժամանակեայ երեք եպիսկոպոսաց անուանց յիշատակութիւնը, թէեւ «Բաբերդոյ վիճակի» միակ եպիսկոպոս կը նշանակուի: Այս հետաքըր-

---

328 Քոսեան, Ցուցակ, Վիեննա 1964, թիւ 32, էջ 33: «Ի Թուականութեան ՋՁէ. Ես Հեղին դուստր... եղի ի Ըսպերի Վարդուկ գիւղ, ի ձեռն Մարտիրոս քահանային յիշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց Մաշտոցս եւ Սաղմոսարան վկայութեամբ Ջկրաչէնցի Աստուածատուր քահանային»:

*քրական յիշատակարանս քիչ մ՚ետքը կը տեսնենք: Դառնալով եկեղեցեաց՝ Ինճիճեանի «Ս. Յոհան» ըլլալու է անշուշտ Ոսկերբերանի անուամբ, մինչ «Ս. Յովհաննէս» Աւետարանիչ է, որ այժմ ալ գոյութիւն ունի: Նոր գրող՝ բացի «Ուլի ճամի»է, որ երբեմն եկեղեցի եղած կ՚ըսուի, նոյնպէս չորս եկեղեցի կը դնէն՝ «Հրեշտակապետ, Աստուածածին, Աստուածամայր եւ Ս. Յոհան» (Աւետարանիչ): Ինչպէս կը տեսնուի՝ նորաշէն «Աստուածամայր» մայր եկեղեցին է որ «Ս. Յոհան» Ոսկերբերանի տեղը կը բռնէ: Յ. Դարբինեան ընդարձակ խօսած է Բաբերդի եկեղեցեաց վրայ եւ իբր տեղի վրայ գրող իր տեղեկութիւնք թանկագին են*[329]*: Եկեղեցեաց անցեալին մասին յառաջ կը բերէ հատածներ Պօղոս Վ. Պետրոսեանի, առաջնորդի, «մէկ կարեւոր յիշատակագրութիւնն», որ՝ ինչպէս այն հատածներէն կը տեսնուի, արժանի էր ամբողջովին հրատարակուելու: Արդ, կ՚ըսէ Դարբինեան, այժմ Բաբերդի վեց թաղերը հայաբնակ են, այսինքն՝ Շնկախ (կամ «Շինկեահ»), Ղալի-Ջամէ, Թաշ, Ճիկրաշէն, Կալեր (կամ «Թուզճի-Ջամէ») եւ Նոր-Թաղ (կամ «Համիտիյէ»): Նախ Շնկախ թաղի մէջ են երկու հին եկեղեցիները,* «Ս. Յովհան» (Աւետարանիչ)*, զոր կը նկարագրէ «դարաւոր,*

329 *Յ. Դարբինեան, էջ մը Բաբերդի կրթական անցեալէն. «Արեւելք»* 1907, *թիւ* 6605, 6607, 6610, 6611 *եւ* 6628:

խարխուլ, ընդերկրեայ ըսելու չափ խոր ու փոս եկեղեցի»: Այս՝ որչափ ալ նոր ժամանակ վերանորոգուած ըլլայ, ստուգիւ հին եկեղեցին, ուր անգամ խճանկարի հետքեր կան, կ'ըսուի երբեմն «աթոռանիստ» եւ «մայր եկեղեցի» եղած: Զարմանալի էր որ եթէ ձեռագիր յիշատակարան մը չգտնուէր այսպիսի երբեմնի «մայր» եկեղեցւոյ եւ գոնէ Դարբինեան չի յիշեր ձեռագիր մը: Սակայն կարծենք այս տեղ գրուած է Ծիպեռնի Յայսմաւուրքը 1689ին «ի գաւառս Խաղտեաց, որ այժմ ասի Բաբերդ, ընդ հովանեաւ Ս. Յովհաննու Անտառանչին եւ Ս. Վկային Օգսէնտի»[330]: Քանի որ այս յիշատակարանի պարունակութեան մասին այլազգ մեկնութիւն ալ կը գրուի, նոյնը յետոյ պիտի տեսնենք: Հոս կը բաւէ մատնել ընել այն կէտին թէ եկեղեցիս «Ս. Օգսէնտի» ալ խորան մ'ունենալու էր: — Նոյն Շնկախ Թաղի մէջ է Ս. Հրեշտակապետ եկեղեցին: Վերը յառաջ բերինք այս տեղ գրուած 1430ի յիշատակարանը, որ բաց աստի կը յիշէ յարակից «Ս. Սարգիս» եւ «Ս. Մինաս» տաճարները կամ մատուռները: Ասոր համար զարմանալի կ'երեւայ թէ «այս ի հնումն մատուռ մը եղած է», զոր Դարբինեան կը գրէ ըստ տեղեկութեան Պօղոս Վ. Պետրոսեանի: Վերջնոյս տեղեկագրութեան այս մասն է. «Սոյն եկեղեցի կամ յառաջն լեալ է մատուռն

330 Աւետիս Տէր-Սահակեան, Հետաքրքրական Յիշատակարան մը, «Բիւզանդիոն» 1901, թիւ 1362:

ինչ կամ յոյժ փոքր, որ եւ չէ բաւական
ղտեալ գիւր ժողովուրդ պարփակելոյ, որ-
պէս գրէ հնագիր յիշատակարան իւր՝ զոր
տեսաք եւ ընթերցաք[331]... ամս 18 միայ
ամայի, որով եւ քայքայի մինչեւ ցամն ՌՁ»
(= 1631) : Այս թուին Մահտեսի Մկրտիչ կը
դիմէ առ «ծանօթ Սանոս Չէլէպի Բերխայի»,
որ մաքսապետ էր ի Կարին — որուն զովու-
թիւնը կ՚ընէ Յակոբ Կարնեցի[332], — եւ
անոր աջակցութեամբ կ՚ընդունուի արքունի
հրամանագիրը, եւ շինութիւնը կամ աւելի
ճիշդ՝ վերանորոգութիւնը կը սկսի ՌՁԱ
(1632) թուին, եւ «ի սակաւ աւուրս
աւարտ առնու շինութիւնն», եւ նոյեմբեր
ամսոյ կ՚օծուի։ Այս առթիւ կը յիշուի «ի
յետնագիր յիշատակարանի միոյ Ս. Աւետա-
րանի» շինութեանս մասին տեղեկութիւնը,
որ կը ցուցնէ թէ աւելի նորոգութիւն էր[333]:
Արդի շէնքը նոր է, 1868ի շինուած մեծա-
ծախս՝ պարզ թաղական նախանձոու-
թեամբ, քանի որ ուղղակի կից է արդի Աս-
տուածածնայր մայր եկեղեցւոյ: — Վեր-
ջինս ալ, որ «Ղափ-Զափէ թաղի մէջն է»,
«յառաջն եկեղեցի լեալ է փոքրադիր, դեղ-
ջաչէն, բայց երեքխորանեայ՝ ի յիշատակա-
րանս գրոց նորա, — կ՚ըսէ Պօղոս Վ. Պետ-
րոսեան —, ո՛չ մի ինչ տեսի վասն շինու-
թեան նորա», բայց պատմած էին իրեն թէ

331 Տես Դարբինեան «Արեւելք» 1907, թիւ 6607:
332 Անդ էջ 32, 34:
333 Դարբինեան, «Արեւելք» 1907, թիւ 6607:

*կար յիշատակարան շինութեան* ՉԾ (=1301) *տարիէն: Դարբինեան կը դիտէ թէ այս եկեղեցին շփոթելու չէ գրչագիրներու մէջ նշանակուած* «Քաղաքամիջի Ս. Աստուածածին» *եկեղեցիին հետ: Մենք ալ դիտենք թէ յամենայն դէպս նաեւ այս եկեղեցւոյ արդի «Աստուածամայր» յորջորջումը բոլորովին նոր չէ. եւ թէ նոյնը ստուգիւ* «Ս. Աստուածածին» *էր: Այս որոշ կը տեսնուի մեր Մատ. թիւ* 124 *ձեռագրի յիշատակարանէն, ուր նշանաւոր Գրիգոր Վրդ. Կամախեցի՝ մականուամբ՝ «Բուք»՝ կը գրէր* 1603*ի «ի դրունս* Ս. Աստուածածնի եկեղեցւոյն, ուր հուպ է Հրեշտակապետին» *եւ ուր վարդապետութեան գաւազան առած էր Վահանաշինոյ առաջնորդ Սրապիոն Օձտեղցի վարդապետէն: Այս յիշատակարանը քիչ մ'ետքը յառաջ կը բերենք: — Քաղաքին կենդրոնն եւ առաջնորդարանի կից՝ մայր եկեղեցի եղած է* 1848*ի շինութեամբ: Այս տարին «հիմէն վերաշինուած է Կիւրինցի Կարապետ Ծ. վարդապետի առաջնորդութեան օրով, որ «եկեղեցաշէն» կոչուած է իրաւամբ, եւ ջանիւք գլխաւորաբար Եսայեան Տէր Յովհ. քահանայի, եւ աջակցութեամբ ժողովրդեան, ինչպէս կը նշանակեն շինութեան նոր արձանագրութիւնք ալ: Ասոնց մէջ հետաքրքրական է հետեւեալ արձանագրութիւնը. «Եկեղեցւոյս լրումն եղեւ չորս հարիւր քսակի. վարդապետաց (վարպետ) օրական*

*հնգական ղրշ․, մշակաց՝ հարիւրական փարայ, եւ* քարինք սորա գերեզմա(նա)տունէն բերինք, *արք եւ կանայք մեծաց մինչեւ ցփոքունս անգամ բազում աշխատեցան»։ Կրնանք դուշակել թէ որչափ հին գերեզմանաքարեր եւ անոնց հին արձանագրութիւնք որոնց մէջ կային շատ հնագոյնք ալ, հատ մը՝ թէեւ խնդրական աւելի հնագոյն, փճացած են հոս, դժբախտաբար նաեւ այլուր, օրինակի համար ի Կարին՝ չեն խնայուած տապանագիրք նման եւ այլ շինութեանց ատեն։ Շինութիւնը աւարտած է* 1855*ին։ — Թոզլով Թաշ Թաղի Ս․ Ստեփանոս մատուռն եւ Կալի Թաղի Ս․ Նշանն որ նոր է, կը մնայ* Ծիկրաշէն *Թաղի Ս․ Աստուածածինը, որուն մասին կը գրուի․ «տօնին օրն է Վերափոխման Բշ․ օրը։ Բաբերդի ամէնէն հին եկեղեցիներէն մէկն է,* ինչպէս կ'երեւի հին ձեռագիրներէ։ *Վերանորոգուած է հիմէն* 1855*ին։ Հիանալի են եկեղեցիին մէջ մատուռին գեղաքանդակ ընկուզենիէ զոյգ մը դուռները, որոնց վրայ գրուած է․ «Յիշատակ է Ամիրէտիէն ՋԺ* (= 1461) *։ Հին խաչքար մըն ալ կայ ՋՂԲ* (= 1543) *թուականով»։ Թաղս ինքնուրոյն դիրք մ'ունի նաեւ վարժարանաց մասին, ունենալով ուրոյն վարժարան, մինչ միւս միացեալ թաղք՝ բաց ի մանունց՝ ունին հասարակաց վարժարան մը, որոնց մասին Դարբինեանի տուած տեղեկութիւնք մեզի*

համար հոս կարեւոր չեն[334]: — Ինչպէս կը տեսնուի այսօր ալ, որչափ վերաշինուած, այն չորս հին եկեղեցիքն են, ըստ ինքեան Բաբերդի համար, որչափ ալ երբեմն բազմամարդ ընդունինք, Թուով շատ, մինչ Կարին վերջին դարերուս մէջ, յամենայն դէպս Բաբերդէ շատ աւելի բազմամարդ, ստիպուած է դոհանալ կամ դոհացած է նոյն իսկ միակ եկեղեցւով մը:

Դարբինեանի տուած տեղեկութիւնք կը ցուցնեն որ այսօր ալ Բաբերդ կը գտնուին յիշատակարաններ եւ «գրչագիրներ», որոնք այս եկեղեցեաց եւ քաղաքին պատմութեան համար կարեւոր են: Սակայն քանի որ Բաբերդցիք գաղթած են՝ շատ աւելի գտնուելու է դուրսը. եւ արդէն մեր յիշած եւ տակաւին յիշելի ալ ձեռագրաց մեծագոյն մասը Բաբերդ չի գտնուիր: Նոյն Դարբինեան հրատարակած է ուրիշ տեղ մը Բաբերդի ձեռագիրները, Թուով միայն 7, ուստի մաս մը միայն[335]: Ասոնք Աւետարաններ են, որոնց «վեց գրչագիր աւետարանները կը պատկանին Բաբերդի Ճիկրաշէն Թաղի Ս. Աստուածածին եկեղեցիին»: Դժբախտաբար ասոնց ալ մէկ մասն այժմ անարժէք է քաղաքիս պատմութեան համար: Որովհետեւ Դարբինեանի Թիւ 2+3 եւ 4 Աւետարանք Թերի են, մանաւանդ վերջը եւ յիշատակարան չունին, որով յայտնի չեն գրչութեանց

---

334 Դարբինեան անդ. 6610—11:

335 «Բիւզանդիոն» 1906, Թիւ 2897:

տեղը, Թուականը եւ այլ պարագայք։ Թերեւս նաեւ ասոնք՝ ինչպէս ո՛չ նաեւ միւսները՝ Բաբերդ ալ գրուած չըլլան, եւ Թիւ 2 արդէն Կարին գտնուած է, 1806ի Մուտուրկայի վանքը նուիրուած ըլլալով, որմէ Թէ ինչպէս Բաբերդ ինկած է, յայտնի չէ։ Մնացեալք, որոնց գրութեան տեղն ու Թիւն որոշ է, նոյնպէս Բաբերդ չեն գրուած, Թերեւս մին միայն ի բաց առեալ, որուն տեղն անորոշ է նոյնպէս։ Այս վերջինս, որուն յիշատակարանն ալ ամբողջ չէ հրատարակած Դարբինեան (Թիւ 5), գրուած է ՌԽԶ (= 1597) Թուին Թորոս գրչէ, որ կը յիշէ իւր ծնողքն ալ, բայց գրութեան տեղը չի յիշուիր։ Ցետոյ — այս անգամ ալ առոր Թուականը չկայ — տրուած յիշատակ «ի դուռն Ս․Դաւթայ ի գիւղն որ կոչի Հալւա», որ Բաբերդի գիւղերէն մին է։ Ցաջորդը (Թիւ 6) Բաբերդ չէ գրուած, այլ Կարնոյ Օձնի գիւղը, որ հոս գրուած է «Աւձգնի» ձեւով, Խաչատուր գրչէ․ բայց առոր ալ յիշատակարանքը Թերի ըլլալով՝ յայտնի չէ Թուականը եւ Թէ ինչպէս Բաբերդ եկած է։ Կը մնան երկու կարեւոր ձեռագիրք (Թիւ 1 եւ 7), որոնց մասին կ՚արժէ քիչ մը խօսիլ, որոնք գոնէ Բաբերդի շրջակայից կը վերաբերին։

Ասոնց առաջինը (Թիւ 1) նոյնպէս բուն Բաբերդ չէ գրուած․ գրիչը Թէոդորոս կրօնաւոր գրած է նոյնը 1313ի ի Խորձեան «ընդ հովանեաւ Ս․ Հռիփսիմի»։ Սակայն կանուխէն

եկած էր ի Դերջան, եւ արդէն 1375ի «Նիկուլ դրագիր կաթուղիկոսի», որ նուիրակ եկած էր, կը գրէ Խաչատուր տանուտեան համար յիշատակարանը «յեպիսկոպոսութեան Տէր Մելքիսեդեկի Դերջանայ»։ Ինչպէս վերը յաճախ տեսանք «Բաբերդ եւ Դերջան մէկ թեմ կը կազմէին»։ Դժբախտաբար Դարբինեան չէ հրատարակած 1399 թուականի «Նորագիր յիշատակարան մը», զոր «յիշատակարան անցից» նոյն գաւառին կ'ըսէ։ Մեզի համար կարեւորն է վերջին յիշատակարանը, որ այսպէս է. «Ես տառապեալ ծառայս Աստուծոյ Սայմելիքս ընեցի զաւետարանս ի բաւշայ Մարտիրոս երեցվէն ի հալալ ընչիւքն եւ նոր կապել տվի յիշատակ իմ... եւ ետու զսայ իմ կամաւ բոլոր եկեղեցւոյ զդեստով ի Վաղընդացի Սարգիս սարկաւագն որ քանի ժամ չինէ եւ զաւետարանն կարդայ՝ նայ ինձ ողորմիս ասէ։ Գրեցաւ գիրս ձեռամբ նուաստ Սարգիս վարդապետի ի թվին Ջ եւ Ի (= 1471)»։ Հոս լուսանցքի վրայ աւելցուած է տրամադրութիւնն ալ. «Եւ այս իմ յիշատակին ոչ իմ ազգականքն ծախող լինին եւ ոչ Սարգիս սարկաւագն. Աստուած ի քահանայութեան հասցնէ զինքն. եւ թէ ի նորայ ազգն ուսումնական չլինայ՝ նայ յիշատակս այսօքիկ Վէիրճշինու վանացն եղիցի. խնամով պահողքն աւրհնին յԱստուծոյ. ամէն»։ Յիշատակարանս — գրաբար ձեւի տակ ալ նմոյշ մը ԺԵ. դարու Բաբերդի բարբառին, — կը

յիշէ կրկին անուններ: Ըստ Դարբինեանի «Վաղընդա կամ Վաղընթա գիւղ մ'է Բաբերդէ 4 ժամ հեռու»: Կարեւոր է «Վէհէն-շինու վանք»: Դարբինեան կը գրէ. «Վէհէն-շէն Բաբերդի գիւղերէն է եւ քաղաքէն 3$^1/_2$ ժամ հեռաւորութեամբ. յիշուած վանքն է Ս. Լուսաւորիչ որ կիսաւեր է այժմ»: Ըստ երեւոյթին աւուր չորսի կը բարձրանայ Բաբերդի շրջակայքն եղող «Ս. Լուսաւորիչ» վանքերու թիւն, որոնց երեքը կը յիշէր Տ. եպ. Պալեան եւ երկուքն ինքն իսկ Դարբինեան: Այսու հանդերձ կ'երեւայ թէ «Ս. Լուսաւորիչ» յորջորջանքս այս վանքին համար նորագոյն աւանդութիւն մըն է: Վասն զի գոնէ անունը կը ցուցնէ թէ նոյն վանքն ըլլալու է «Վահան շինու վանք», որ 1521ի տակաւին ծաղկեալ էր բայց էր յանուն Ս. Ստեփաննոսի: Բրիտ. Թանգարանի մէկ Գանձարանն այստեղ գրուած է, եւ գրիչն է Մաղաքիա վրդ., որ անուամբ տեսանք Յով. Համշէնցւոյ աշակերտներէն մին Մաղաքիա Բաբերդցի, որ նշանաւոր գրիչ մ'եղած է[336]. բայց թէ նոյն անձն է հոս՝ որ Կոյնիփոսի վանքէն յետոյ հոս եկած ըլլայ, սոր ի հարկէ ապացոյց մը չունինք: Ձիարդ եւ իցէ յիշատակարանը, որ վանաց լծովին ծաղկեալ վիճակին ապացոյց է, այսպէս է.

---

336 Կարապետ եպ. «Մահմետական լուծը եւ նրա բռնութեան ներքոյ ծաղկող վարդապետարաններ», Արարատ 1913, էջ 586—604, յատկապէս էջ 395—96, 599—600:

«Արդ գրեցաւ աստուածային մատեանս որ կոչի Գանձարան ի Թուաբերութեանս Հայկազուն տոմարի ՋՀ (= 1521) յուլիսի ժէ եղեւ աւարտ գրոց ձեռամբ... Մաղաքիա անուամբ վարդապետի, ի գաւառս Խախտեաց որ կոչի Բաքերդ, ի սուրբ յանապատս որ կոչի Վահանշինու վանք, ի դուռն Ս. Ստեփաննոսի նախավկային եւ Ս. Յակոբայ եւ Ս. Գէորգեա. եւ այլ սրբոցն: Եւ առաջնորդութեան սուրբ ուխտիս Աստուածատուր հարպետին եւ բոլոր միաբանիցս եւ միեղէն եղբարցս, նախ Տէր Խաչատրին եւ Տէր Մկրտչին, եւ Տէր Աստուածատրին, եւ Տէր Յուսկանն, եւ Տէր Ղուկասին, եւ Տէր Առաքելին եւ երկրորդ՝ (գր. «բ.») Սարգիս աբեղին եւ Ղազար մալազին եւ Աւետիք միայնակեցին, եւ քուեր որդւոյն իմոյ Մուրատ սարկաւագին, եւ Ամիրաղային, եւ Տիրատրին (գր. «տէրտէրին»). եւ Գալստին եւ Խուպիարին եւ Բարունակին եւ այլեւս է. սարկաւագաց եւ ի. գործաւորաց եւ տնեցին: Արդ աղաչեմ... եւ հուսք յետոյ գիս զանարժան դծողս որ մեծաւ տանջանաւք գրեցի զգիրքս» եւն: Գանձարանիս բովանդակութիւնն ալ հետաքրքրական է, եւ անոր համար Կոնիբիր շատ մանրամասն ցուցակագրած է[337], Կոնիբիր կը նշանակէ անագանագոյն դըչէ յիշատակարանիկս (Թղ. 283ա) «Ես մեղաւոր եւ անարժանի ծառայ

---

[337] Անդ էշ (124—140), 139:

Աստուծոյ ես դպիր տիրացու Աւագ գրեցի թվին ՌՄԽԵին (=1796) փետըրվարի ժէին»։ Եթէ նոյն վանքը գրուած է այս՝ տակաւին չէն էր ուրեմն այս թուին. (Համմտ. վարը՝ Ինճիճեանի «Ս. Լուսաւորիչն» Օձտեղին)։ Արդ Տրդատ եպ. Պալեան կը նշանակէ վանքս «Վաղշէնի վանք Ս. Աստուածածին», որ կ՚ըսէ Բաբերդէ 5 ժամ հեռու դէպ ի արեւմուտք, Օձտեղ գիւղի հիւսիսային հովիտներէն միոյն կողին վրայ, ի վաղուց աւերակ եւ եկեղեցւոյ կիսափուլ աւերակները կ՚երեւան. գիւղը կ՚ըսէ գեղեցիկ, շրջակայքը ջրաւէտ եւ պտղաբեր»։ Արդ գոնէ «Ս. Աստուածածին» ճիշդ ըլլալու չէ, ինչպէս կը ցուցնէ Պալեանի յառաջ բերած յիշատակարանն ալ։ Այս՝ այստեղ գրուած Աստուածաշունչի մըն է, եւ այն՝ տակաւին 1610ի, ուր Օձտեղցի Սրապիոն վարդապետ կը պատմէ վանքին ամայացած ըլլալը եւ իւր ձեռօք վերաշինուիլը, բայց որ կարեւորն է՝ տաճարը կը նշանակուի յանուն Ս. Ստեփաննոսի, ուստի նոյն՝ Վահանշինու հետ։ Պալեան յիշատակարանս յառաջ կը բերէ այսպէս. «Թվին ՌԾԹ (=1610) ես Սրապիոն վարդապետ Օձտեղցի, որ բազում տենչանս ունելով առ այս... գդորա ճապաղութիւն ժողովեցի... ետու կազմել՝ յիշատակ հօրն իմոյ Յովհաննիսի եւ մօրն իմոյ Խեր խաթունին եւ հօրեղբօրն իմոյ Մակար եպիսկոպոսին... ի դուռն Ս. Ստեփաննոսի։ Այս վանքս աւերակ եւ անմարդաբնակ է(ր)

դարձեր. *բազում աւերակի եղեալ եւ բազում պարտուց ներքոյ գրաւեալ* թէ՛ զգեստ, թէ՛ Աստուածաշունչ, թէ Աւետարան, թէ՛ Ճաշոց, թէ՛ Յայսմաւուրք, թէ՛ Սաղմոսարան, թէ՛ Հայր Մաշտոց, թէ՛ Գանձատետր, թէ՛ Շարակնոց, թէ՛ արտ եւ ջաղաց՝ զամենեսեան պատանդ գոլով, վերստին ազատեցի եւ զվանքն վերստին նորոգեցի մինչեւ ցերիս հազարաց մարչելս ծախսելով...»: *Կը յաւելու Պալեան, առանց յիշատակարանն ամբողջ յառաջ բերելու թէ այս 1610ին առաջնորդ էր Սրապիոն վարդապետ, իսկ միաբանք՝ Ալեքսիանոս, Անտոն, Կիրակոս, Պետրոս, Գրիգոր, Նահապետ, Գասպար, Թորոս եւ Խաչատուր վարդապետք*[338]: *Վանքս ուրեմն կրկին լաւ շէնցած էր, եւ ունէր պաշտաման ամէն կարեւոր ձեռագիրները, որոնց մէջ հնագոյնք կրնային գըտնուիլ: Ո՞ւր են արդեօք այսօր այս ձեռագիրք, եթէ չեն փճացած: Սակայն կարեւորն այն է որ Պալեան կը յաւելու, առանց նոյնպէս յիշատակարանը յառաջ բերելու, թէ այս վանքիս 1518 տարւոյ առաջնորդն էր* Աստուածատուր վրդ. *եւ միաբանք էին՝* Մաղաքիա, Աստուածատուր, խաչատուր, Յուսիկ, Սարգիս, Առաքել եւ Սիմէոն վարդապետք: *Արդ այս ճշդիւ նոյն է Վահանաշինու* *այն յիշատակարանին հետ, զոր յա-*

---

338 *Տ. եպ. Պալեան, «Հայ վանօրայք», Բիւզանդիոն* 1901, *թիւ* 1502:

տաչ բերլինք, այսինքն Բրիտ. Թանգարանի Գանձարանի յիշատակարանին հետ, որուն թուականը սակայն է 1521։ Ցամենայն դէպս ուրեմն Պալեանի «Վաղչէնի Ս. Աստուածածին»ը նոյն է Վահանաշինու Ս. Ստեփանոս վանքին հետ։ Արդէն «Ս. Աստուածածին» յորջորջանքը կա՛մ անմտադրութեան արդիւնք է կամ նորայոյն անուանակոչութիւն մը՝ զոր թղթակից մը հաղորդած ըլլայ։ Ինքն իսկ Պալեան ուրիշ տեղ մը Ս. Ստեփաննոս անուամբ կը յիշէ, երբ խնդիր կ՚ընէ հին վանքի մը մասին, որ կը յիշուի 1183ի գրուած Աւետարանի մը յիշատակարանին մէջ, որ գրուած է «ի Կարին գաւառի, յանապատիս որ կոչի Խանդամալուց, ընդ հովանեաւ Սրբոյն Ստեփաննոսի» եւն։ Որչափ ալ Խանդամալուց վանքին տեղն այժմ անյայտ է, դժուարաւ որեւէ կապ ունենայ Բաբերդի այս «Վաղչէն»ի վանքին հետ։ «Վաղչէն» անուանս մասին ալ քիչ մ՚եաքը դիտողութիւն պիտի ըլլայ. հոս կարեւորն է որ Սրապիոն Օձնեցի Վահանաշինու վանքին առաջնորդ եւ վերանորոգիչն է։ Այս անձն նշանաւոր էր այնչափ՝ որ նաեւ Գրիգոր Դարանաղեցի կու տար իրմէ ծայրագոյն վարդապետութեան աստիճան անոր, եւ անով է որ վերջինս ժամանակագրութեան մէջ յիշուած է մեծ գովութեամբ։

Գրիգոր Կամախեցի կամ Դարանաղեցի, «Բուք» յորջորջուած, նշանաւոր անձ մըն է, ծնած 1576ի որ խառնուած է իր ժամանակի

ազգային ամէն գործոց, ինչպէս էջմիածնի կաթողիկոսական, նոյնպէս Կ. Պոլսոյ պատրիարքական խնդրոց, ապրած է նաեւ յԵրուսաղէմ, կատարած բազմաթիւ ճանապարհորդութիւններ, եւ ի վերջոյ վախճանած է ի Ռոտոսթոյ 1643ի՝ իբր առաջնորդ տեղւոյն հայ գաղթականութեան: Տեղւոյս չէ նշանաւոր անձինս կենսագրութեան եւ նաեւ իւր գրաւոր գործոց, յատկապէս ժամանակագրութեան վրայ խօսիլ[339], զոր գրած է ի Թէքիրտաղ կամ Ռոտոսթոյ եւ արդէն միայն հատակոտորք ծանօթացած են ցայժմ այս կարեւոր գործոյն որ կը պարունակէ 1596—

---

339 Այդ գործը կատարած է Մեսրոպ Վ. Նշանեան իր հրատարակութեան մէջ «Ժամանակագրութիւն Գրիգորի Վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ», Երուսաղէմ 1915, էջ ՀԳ + 667: Հ. Տաշեան երբ այս տողերը կը գրէր, ի ձեռին չունէր այս հրատարակութիւնը: Ստիպուած էր օգտուիլ այլեւայլ հատակոտորներէ, որոնք արդէն այլեւայլ անձերէ հրատարակուած էին: Այսպէս Գ. Ցովսէփեան, Христианский Восток, 1912, էջ 349—352, Ալպօյաճեան, Ռումելիի Հայերը, Գրիգոր Վ. Դարանաղեցի, Վ. Ե. Մ., Գրիգոր Վ. Դարանաղեցի, Բիւզանդիոն, 1907, թիւ 3424: Հ. Գ. Գալէմքեարեան, Ցովհաննէս Խուլ, ՀԱ. 1911, էջ 1—25. Ազգ. Մատ. 78. 1915, էջ 6—41: Եւ որովհետեւ այդ քաղուածները, իրենց աղբիւր ունենալով Երուսաղէմ պահուած միակ բնագիրը, սխալաշատ էին, Տաշեան այստեղ բանասիրական քննութենէ անցնելով ուղղումներ եւ լրացումներ կը կատարէ, որոնք համեմատելով հրատարակուած «Նշանեան» բնագրին հետ ճշդիւ համապատասխան կը գտնուին:

1640 տարիներու դէպքերը որոնց ժամանակակից, մասամբ ականատես եւ նոյն իսկ մասնակից է: Յամենայն դէպս հրատարակուած քաղուածքները շատ յաճախ սխալաշատ են, եւ որով արդէն Կամախեցի երբեմն խառնակ գրած կ'երեւայ՝ իւր գրաբար-ռամկական լեզուաւ, շփոթուած են իրեր ու թուեր, որոնք այնպէս չեն կրնար ըլլալ բուն ձեռագրին մէջ: Այսպէս կը գրուի մեզի համար կարեւոր մէկ հատածը՝ «Եւ ի Թվ. ՌՁ եւ Բ (= 1633) էր յորժամ գնացաք մեք ի Խախտեաց երկրէն, որ այժմ Ռահթիփոս (°) ասի եւ Երեւան, եւ բնակութիւն արարաք անդ ի վանս լուսազարդ Սաղմոսավանին եւ Նորին ամենազով անապատին եւ կացաք երիս ժամանակս» եւն: Հոս անպատճառ նախ «ՌԾԲ» (= 1603) պիտի ըլլայ, եւ «Խախտեաց» անունէն ետքն ինկած է Արարատեան երկրի անունը, զոր «Սահաթիփոս կոչեն եւ այժմ Երեւան ասեն» եւն, ինչպէս կ'ուղղէ մեր Մատ. Թիւ 124 ձեռագրի յիշատակարանը, որ նաեւ որոշ կը ցուցնէ թէ երեք տարի Սաղմոսավանք մնալը 1603է յառաջ էր: Կարեւոր անուն մը պակաս է, եւ այն՝ ճիշդ Վահանաշինու վանացս անունը. այն քաղուածքին մէջ, զոր յառաջ կը բերէ Ալպօյաճեան, այս տեղ ուղիղ 1603 թուականաւ, «Ես Գրիգոր Դարանաղեցի սպասաւոր զտայ ի վերջին խնդրողաց բանին», եկի ի յերկիրն Խախտեաց որ այժմ Բաքերդ ասի, առ ոտս

Երջանիկ հօրն մերոյ հոգեւորի Սրապիոն քաջ հռետորի (= *Օձաեղցի*) որ յայնժամ էր ի վանս (= *Վահանաշինու*) եւ առաջնորդ էր սուրբ ուխտին *ի յանբարի եւ դառն ժամանակի»*[340]: *Հոս վանքի անունն անպատճառ դանուելու է, այլապէս «լոկ» ի վանս եւ «սուրբ ուխտ» իմաստ չէր ունենար: Այդ անունն յամենայն դէպս կայ ձեռագրին մէջ, որովհետեւ Նշանեան որոշ կը նշանակէ թէ «Անցողակի յիշենք թէ ժամանակագրութեանս Հեղինակն աշակերտած է ժամանակին* «քաջ հռետոր» Սրապիոն վարդապետին, որ առաջնորդ էր Բաբերդի Վահանաշէն վանքին, *եւ անկէ առած է վարդապետական իշխանութիւնը»: Նշանեան իրաւամբ մատդիր կ'ընէ որ այս* (*Օձաեղցի*) *Սրապիոնը չփոթելու չէ Սրապիոն Եդեսացւոյ հետ՝ որ միջոց մը կաթուղիկոս եղաւ՝ Գրիգոր ԺԳ. անուամբ*): *Այս շփոթութիւնն ըրած էր Ալպօյաճեան, դարձեալ Կամախեցւոյ գրութեան ոճէն պատրած, գրելով թէ «Կամախեցի նոյն տարին* (1603) *մայիսի 28ին Պենտեկոստէին օրը* նոյն Սրապիոն եպիսկոպոսէ Բաբերդի Հրեշտակապետաց *եկեղեց-*

340 «*Նշանեան*» *ընագիրը՝ «Ցայս վերոյ գրեալ թուին ՌԾԲ* (= 1603) *ես Գրիգոր Դարանաղցի սպասաւոր գրոց ի վերջին խնդրողաց բանին եկի ի յԱյրարատեան (Ձեռ. = յարատեան) երկրէն ի յերկիրն Խախտեաց, որ այժմ Բաբերդ ասի, առ տէր Երջանիկ հօրն մերոյ հոգեւորի՝ Սրապիոն քաջ հռետորի, որ յայնժամ էր ի վանս* Վահանշինու *եւ առաջնորդ էր ս. ուխտին», էջ* 39:

ւոյն մէջ կը ստանայ ծայրագոյն վարդապետութեան իշխանութիւնը», յաւելլով ի ծանօթութեան թէ «Այդ Սրապիոն եպիսկոպոսն է Ուռհայեցին որ Գրիգոր ԺԳ. անուան տակ պահ մը կաթուղիկոսութեան պաշտօն կը վարէ եւն: Բարերախտաբար Վ. Ե. Մ. հրատարակած է այս մասին հատակոտոր մը, որ իրերը կը բացայայտէ: Յօդուածագիրս ալ կ'ըսէ Դարանաղեցի մի ուրիշ Սրապիոն եպիսկոպոսի խաղտեաց-Բաբերդի առաջնորդի աշակերտեր է, վարդապետական գաւազանի իշխանութիւն է առեր Բաբերդի Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն մէջ», եւ թէ պէտք չէ շփոթել Սրապիոնի Եդեսացւոյ հետ. Կամախեցւոյ այս կտորը կը սկսի «Դարձեալ դարձոյց ի նոյն ոճ որ թէ զՍրապիոն վրդն. Ուռփայեցին ո՞նց (տպ. «անց») բերին ի սոյն ամի, եւ թվ. որ ՌԾԲ (= 1603) էր որ այս բանքերս գործեցաւ» եւն: Թողլով մեզի համար հոս անկարեւորքն՝ յառաջ բերենք հետեւեալը. «...վաղվաղակի վարձեցին զոմն սրագնաց եւ ուղարկեցին յՈւրփայ («զՍրապիոն Ուռփայեցի» հրաւիրելու ի կաթուղիկոսութիւն եւն): Եւ ես ելեալ գնացի ի Սամսոնավանքն, մինչեւ ի մեծպահոց Խանորդաց (= Բառամնորդաց) աւուրցն, թողեալ զվանսն, եւ ելի (տպ. «ել») գնացի մօտ առ վարժապետն մեր Սրապիոն Բաբերդացին: Եւ մինչի հասանք անդէն ի տեղի, Բ ամսէն յետոյ լսեցաք որ եկեալ Ուռփայեցին Սրապիոն Վրդն.

(յ)էջմիածին եւ ամենայն վարդապետացն կոչնական նամակ ուղարկելով, եւ մեզ ալ երեկ նա ոմանք գնացին եւ ոմանք ընդունելութեան նամակ ուղարկեցին ի կոչն. լսեցաք որ յայժմ մեծահանդիսիւ ձեռնադրութիւն են արարեալ եւ զանուն Գրիգոր են եդեալ իւր նորոգելով վերստին զաթոռ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, ի տօնի Հոգւոյն գալստեան, որ մեք ի նոյն աւուրս առնելով զաւազան»: Դժբախտաբար հատածիս շարունակութիւնը չէ հրատարակուած. բայց այսչափն ալ կը ցուցնէ թէ ինչպէս դիւրաւ կրնան սխալ հասկցուիլ Դարանաղեցւոյս խօսքերը, որ ընդհանուր դէպքերն ու իւր անձին պարագայք խառնելով պատմած էր: Զիարդ եւ իցէ. թողլով միւս կէտերը, հարկ է յիշել մեր Մատ. թիւ 124ի յիշատակարանը, զոր գրած է Դարանաղեցի: Կիրակոսի Պատմագրութիւնը 1603ի աւարտելով ի Բաբերդ, կը գրէ յիշատակարանս, որուն ծայրը յետոյ աւելցուցած է համառօտ պատմուածք մը յաջորդ ժամանակի մինչեւ 1638: Հոս կ'ըսէ Դարանաղեցի. «Արդ շնորհիւ Տեառն սկսաք եւ ողորմութեամբ նորին աւարտեցաք զվիպասանագիր պատմութիւնս ...ի թվաբերութեանս հայկազնոյ տումարի կրկին հնգից հարիւրից, յոբելեան եւ երկ թվոց (= ՌԾԲ = 1603, ի լուս. վրիպակաւ «1652») ի մայիսի աւարտին («օարտին») եւ ի մուտն յունիսին, ի գաւառին Խախտեաց, ի

*քաղաքին զոր այժմ* Բաբերդ *ասի*, *ի* դրունս Սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն, որ հուպ է Հրեշտակապետին, առ ոտս երջանիկ վարժապետին իմոյ Սրապիոն րաբունւոյն՝ որ էր ի նոյն գաւառէն ի գեղջէն Օձտեղայ, եւ *ի հայրապետութեան Տեառն տէր Դօթին, եւ ի թագաւորութեան Տաճկաց սուլթան Ահմատին որդի սուլթան Մուհամատին, որ ի սոյն ամի մեռաւ, եւ թագաւորեաց այս Ահմատս մանուկ տիօք, յոյժ խեղացի եւ բարէբարոյ, ի դառն եւ յանբարի ժամանակի, որ կրկին սկիզբն եղեւ յարուցման Ջալալոցն եւ խառն աւերման աշխարհիս Հայոց: Արդ գրեցաւ տառս ձեռամբ անիմաստ եւ փծուն գրչի միայն անուամբ* վարդապետի Գրիգորի Կամախեցոյ՝ զոր մականուամբ Բուֆ վերաձայնեն. *եւ յայսմ թուոյս՝ զոր վերոյ գրեցի, որ էր ՌԾԲին* (= 1603) *որ* յայսմ ամի *եկի* յերկրէն Արարատեան զոր Սահաթփոս կոչեն եւ այժմ Երեւան ասեն, *որ զետեղեցայ անդ ի լուսազարդ եւ ամենագով վանս եւ անապատս* Սաղմոսայ, *բնակելով անդ ամս երիս եւ հաճեցայ անդ բնակութիւն առնել եւ* ելեալ եկաֆ (= *ի Բաբերդ*) գաւազան առնելոյ աղագաւ», որ եղեւ իսկ. *եւ* դարձեալ գնալոց էաֆ *անդրէն*, *նա թագաւորն Պարսից Շահապազն երեկ էառ զԵրեւան եւ զամենայն գաւառքն մինչեւ Բասէն եւ զամենայն աշխարհնին հրձիգ եւ աւերակ արար, եւ զամենայն բնակիչքն թէ Հայք եւ թէ Տաճիկ՝ միահամուռն սուրկուն*

արար, եւ տարաւ («տարօ») ի Սոս քաղաքն, որ է Իսպահէն։ Եւ մեք այլ ոչ կարացաք գնալ, այլ եկաք մերայնովքն ի Բիւզանդեան եւ ի Թրակացւոց աշխարհիս՝ մինչեւ ցայժմ որ է թվն. ՌՁԷ (= 1638)։ Արդ որք հանդիպիք» են[341]։ Այս յիշատակարանս այլեւայլ կողմանէ կարեւոր էր՝ ճշգրտելով այլեւայլ կէտեր, զոր վերը նշանակեցինք։ Կէտ մ՚ալ կայ՝ զոր կը թողունք, մինչեւ որ ժամանակագրութիւնն ամբողջովին հրատարակուի, որպէս զի կարելի ըլլայ ճշդել։ Հոս Դարանաղեցի որոշ կ՚ըսէ թէ 1603ին զաւազան առնլէն ետքը՝ կ՚ուզէր դառնալ Սաղմոսավանք. բայց դէպքերն արգելք եղան, «եւ մեք այլ ո՛չ կարացաք գնալ... մինչեւ ցայժմ որ է թվ. ՌՁԷ»։ Ի՞նչպէս միաբանելու է ասոր հետ, երբ Ալպօյաճեան կ՚ըսէ — իբր ժամանակագրութենէ առեալ — թէ «1605ի երբ ետքը Սաղմոսավանքի անապատը կը բնակէր, միւռոնի օրհնութեան առթիւ Էջմիածին կը հրաւիրուի» են։ Քանի որ երեք կաթուղիկոսաց հրամանաւ եւ Սրապիոնի Ուռհայեցւոց ընտրուելու հետ կապ ունի այս տեղեկութիւնը, «1605» ճիշդ ըլլալու չէ։ Սաղմոսավանք էր Կամախեցի մինչեւ 1603, եւ այն տարին է Ուռհայեցւոյ կաթողիկոսանալը, ինչպէս տեսանք։ Այս ուրեմն ուղիղ չի կրնար ըլլալ։ Զենք գիտեր՝ ո՛րչափ ուղիղ է երբ կ՚ըսուի

341 Տաշեան, Ցուցակ, էջ 409—410։

թէ 1610ին կ՚անցնի Սաղմոսավանք, «ուր կը գտնենք զինքը նոյն թուականին»: Արդեօք շփոթութիւն մը չէ՞ այս ալ: Կ՚աւելցնէ թէ այս միջոցին հարկ է որ Կամախ ալ անցած ըլլայ, ուսկից 1612ին կը դառնար Տրապիզոնի վրայէն ի Կ. Պոլիս, եւն: Այս վերջինը տարբեր կէտ է: Կամախեցի իւր հայրենիքը գացած կրնայ ըլլալ եւ գացած է անշուշտ 1610ի, ինչպէս կ՚ըսուի՝ իւր հայրենակցաց տաղջնորդելով: Երկրորդ անգամ մ՚ալ գացած է Հայրենիք. եւ 1627/28ի դարձած: Այս միջոցներուն կ՚երեւայ բերած է նաեւ, ինչպէս «կ՚ըսուի», «Դերջանի Սըրբին, Ս. Թադէոս (= Ս. Թորոս) վանքէն, բերած է Ս. Թադէոսի եկեղեցւոյ ամէնէն նշանաւոր փառքը, Ս. Բեւեռը, եւն: Սակայն այս ամէնը կը թողունք հոս, քանի որ մեր նպատակին համար կարեւոր չեն: Խականն էր ցուցնել թէ Սրապիոն Օձտեղցի վերանորոգած էր Վահանաշինու վանքը՝ Ս. Ստեփանոս անուամբ, եւ թէ նոյն է Պալեանի «Վաղշինոյ վանքը», որ «Ս. Աստուածածին» չէ, այլ «Ս. Ստեփաննոս»:

Կան սակայն կէտեր՝ զորոնք տեղացիք միայն կրնան ճշդրտել: Ուսկի՞ց է Պալեանի «Վաղշէն» անունը: Իրօք այսպէ՞ս կը հնչուի գիւղի անունը թէ այլազգ մեկնելու է: «Վահանաշէն» անունէ «Վէհէնշէն», ինչպէս Դարբինեան կը գրէ, դիւրաւ կը ծագի, մանաւանդ որ այս կ՚երեւայ Թրքախօս ձեւըն է, քանի որ գիւղս ա՛յլեւս հայաբնակ

գիւղերու շուրջին մէջ չի յիշուիր։ Աւելի պարզուելով կրնար Վանշէն ըլլալ, եւ այս անուամբ քարտէսները կը նշանակեն Օձատեղի տեղը։ Եթէ իրական անուն է «Վաղշէն»՝ ուրիշ ձեւ մ'ըլլալու է թերեւս լոկ վանքի տեղւոյն։ Մտադիր կ'ընենք որ Վաղշէն անուամբ ուրիշ գիւղ մ'ալ կը յիշէ Գալեան եւ վանք մը «Վաղշէնի Ս. Թորոս», որուն համար կ'ըսէ թէ «եթէ Վանքշէն ըսուէր, կարծես աւելի յարմար անուն մը տրուած կ'ըլլար» են[342]։ Աւելի կարեւոր կէտն է որ Դարբինեան Վէհէնշինու վանքը Ս. Լուսաւորիչ կ'ըսէ։ Այս կրնար նոր յորջորջանք մ'ըլլալ երբ Վահանաշինու Ս. Ստեփաննոսը մոռցուած էր այլեւս։ Սակայն այս «Ս. Լուսաւորիչ» գիտէ նաեւ Ինճիճեան՝ իբր Օձտեղի վանք։ Գիւղիս մասին եւ անշուշտ անունէս ծագած զրուցի նկատմամբ կը գրէ Ինճիճեան. «Օձտեղ, զոր աղաւաղանօք կոչեն Օստեղ. գիւղ ի դաշտավայրի, յորում լի են աղբիւրք քարաշէնք, յորոց բղխէ ջուր քաղցր յորդառատ, անցանէ առ Նովաւ եւ գետ ինչ արագահոս։ Եկեղեցին եւ մենաստան ազգիս Հայոց՝ Ս. Լուսաւորիչ է ի բարաժայռ տեղւոջ. յորմունս եկեղեցւոյն արտաքուստ, նաեւ ի վերայ ապառաժին ուրեք ուրեք ուր շատ եւ ուր սակաւ կան օձք խիտ առ խիտ զմիմեամբք պատատեալք, բայց առհասարակ քարացեալք։ Աւեն ընա–

---

342 Բիւզանդիոն, 1901, թիւ 1501։

կ՚ըսէ թէ յառաջագոյն բազմութիւն օձից կային յայս տեղի, եւ ոչ սպառէին. յայն սակս կոչեցաւ Օձտեղ, բայց ապա յաղօթից առն սրբոյ ճգնաւորի ուրուք բարձան, եւ ի նշան սքանչելեաց դարձան առ հասարակ ի քար[343]»: Թողլով քարացեալ օձերու խնդիրն, որ ուրիշ տեղ ալ կայ եւ ժողովրդենէ նոյնպէս մեկնուած, էականն է որ այս Լուսաւորիչ վանքն ու եկեղեցին «ի քարաժայռ տեղւոջ է», եւ չի յարմարիր Պալեանի նկարագրութեան հետ Վաղշինոյ վանաց դրից: Արդեօք երկու վանքե՞ր են ուրեմն՝ որչափ ալ մերձաւոր, ինչպէս տեսանք շատ ուրիշներ ալ միեւնոյն գիւղի քովերը: Տեղեաց դիրքերն ալ տարբեր կը նշանակուին, ոչ միայն հեռաւորութեամբն Բաբերդէ, որ կրնայ թերեւս մեկնուիլ, այլ նոյն իսկ քարտէսներու վրայ: Հ. Ներսէս Սարգսեան[344] հրատարակած է քարտէս մը Բաբերդի գիւղերուն՝ բայց միայն «մասն գաւառին Բաբերդոյ»: Հոս ամէնէն հիւսիսայինը նշանակուած է Օձտեղ, ասոր հարաւը՝ Վաճշէն գիւղ՝ որուն արեւմտեան հիւսիսն է Արմուտլու: Կիպերտի նորագոյն քարտէսը (Թերթ՝ Կարին) աւելի համեմատ է Պալեանի տուած դրից, այսինքն՝ Բաբերդի արեւմ. հիւսիսը, Պալախորի արմուտքն ու մօտ, բայց լեռնագծով բաժնուած, Ճորոխի այս կողման բազմաթիւ օժանդակաց միոյն

343 Ինճիճեան, անդ. էջ 96:

344 Տեղագրութիւնք, էջ 68:

վրայ նշանակուած է Ustuk, որ Օձտեղ ըլլալու է, քանի որ արդէն «Օստեղ» կը հընչուէր Ինճիճեանի օրով ալ: Օձտեղէ հիւսիս արեւելք նշանակուած է Vanshen, որուն հիւսիսակողման լեռը 1470 մետր բարձր կը գրուի, եւ անկէ վեր ի հիւսիս՝ Armutlu, ոչ շատ հեռու Ergenisէ, որ Արմուտլուի հիւսիս արեւելքն է: Սարգսեան «Էրկէնիգ» կը դնէ Արմուտլուի հարաւը, Վանշէնի հարաւ-արեւելքն: Այս ամէնը կը մնայ տեղացի հետազօտողաց ճշդրտելու, ինչպէս նաեւ վանքին կամ վանաց տեղը:

Ջահմանց: Դարբինեանի հրատարակած աւետարանաց վերջինը (թիւ 7) ստուգիւ ամէնէն «հնագոյն եւ արժէքաւոր է, Ջահմանց գիւղի եկեղեցւոյ աւետարանը», խնամով պահուած, «լաչակներու մէջ պալուլուած եւ ուխտաւորութեան առարկայ է»: Մագաղաթեայ երկաթագիր եւ մեծագիր Աւետարանս ի հարկէ չունի պատկեր, ծաղկագիր են: Այս ալ Բարբերդի կողմերը չէ գրուած. եւ թէեւ չունի որոշ թուական, ժամանակը մերձաւորապէս յայտնի է: Քանի որ երբեմնի նշանաւոր Արծնի վերջին յիշատակներէն է, բախտէ ազատած, կ՚արժէ հոս յառաջ բերել Յիշատակարանը. «ի թուականութեանս... (բաց ձգուած) աւարտեցաւ սուրբ եւ տիեզերափայլ աւետ. ճեռամբ իմ մեղապարտ եւ յետին գծագրի: Շնորհիւն Աստուծոյ սկսա եւ ողորմութեամբն նորին կատարեցի զլուսափայլ փըր-

կունս աշխարհի: Արդ աղաչեմ զամենայն սուրբ (տպ. «որ.») քահանայսդ եւ զընթերցողսդ եւ զլսողսդ յիշեսջիք զիս զանարժանս եւ զիմ ծնողսն աղաչեմ վասն աստուծոյ ամենին: Գրեցաւ յԱրծինս մեծ աւանի, ի Կարին գաւառի, ի հայրապետութեան Տ. Տ. Պետրոսի վերադիտողի, եւ յեպիսկոպոսութեանն Յովհաննէսի սբ. վերադիտողի եւ ուղղափառ ա[ռա]ջնորդի, եւ ի [թագաւորութեան] ի Հոռոմց Միխայլի: — Այլ եւ Դաւիթ հաւատարիմ ծառայ Աստուծոյ եղեւ արդիւնատու ըստ իւր կարի մակագրդ, լուսագրդ, աստուածախաւս ոսկեգրիս (եղծեալ) յորդորեալ զանձինս աստուածասիրաց առ (եղծուած) յոյսն յաւիտենից: Արդ տացէ Աստուած տեղի եւ բնակութիւն Դաւթի եւ ծնողաց իւրոց, որդւոց եւ կենակցի ի կեանսդ յաւիտենից զոր խոստացեալ է Աստուած սիրելեաց իւրոց: — Բայց ստացաւ զաստուածախաւս մատեանս Գրիգոր սրբասէր եւ աստուածարեալ քահանայ, յիշատակ հոգւոյ իւրոյ, աւգնութեամբ սբ. խաչին, առ որ ապաւինեալ կան որդւովք իւրովք, ամրացեալ ընդ հովանեաւ աստուածընկալ սբ. Նշանիս, զոր ունի սեպհական յերկրէն իւրոյ: Այլ ի ձեռն սբ. խաչիս եւ ոսկեգրաքարող աւետարանի պայծառանան եկեղեցիք, զարդարին քահանայք, լուսաւորին մանկունք եկեղեցւոյ, պահպանին համատարած ամենայն հաւատացեալք սրբոյ Երրորդութեանն: Որք ընթանայք եւ լուսաւորիք եւ

զիս զԳրիգոր քահանայ եւ զիմ ծնողսն յիշեսջիք ի Քրիստոս եւ զիմ զեղբարսն. եւ Տէր Քրիստոսի Յիսուսի ողորմեսցի ամէն: Այլ տացէ տէր Աստուած ողորմութիւն Դաւթի եւ ծնողաց իւրոց յիւրադէմ դատաստանին եւ հարիւրապատիկ հատուսցէ նմա զարդիւնս սրբոց Աւետարանիս ամէն»:

Այս երկար յիշատակարանիս այլեւայլ ընթերցուածք կարծենք թէ ճշգրտուելու պէտք ունին: Թողունք այն խնդիրը թէ ինչ մտօք ըմբռնելու ենք երկրորդ մասին ընդարձակօրէն յիշատակուած «Ս. Խաչ» եւ «աստուածընկալ ս. Նշան»ն, զոր Դաւիթ ունէր «սեպհական երկրէն իւրոյ». որմէ կը հետեւի թէ այս Դաւիթ բնիկ Արծնեցի մը չէր: Կարծենք սկիզբն ալ ամբողջովին հրատարակուած ըլլալու չէ, որով յիշատակարանը դժուարաւ կը սկսէր «ի Թուականութեանս» բառով: Ներկայ կերպարանքին մէջ զարմանալի է որ հոս կայ գրութեան ստացողը կամ նպաստողը՝ «արդիւնատու» Դաւիթ, կայ տէրը կամ ստացիչը՝ Գրիգոր քհ., բայց չկայ բուն գրչին անունը: Եւ աւելի զարմանալի է որ «ի Թուականութեան» գրելէն ետքը թիւը չկայ, եւ այն՝ ո՛չ թէ եղծուած է ժամանակաւ, այլ՝ ինչպէս Դարբինեան կը նշանակէ՝ պարապ թողուած է, իբր յետոյ լրացնելու, որ անսովոր երեւոյթ մըն է: Զիարդ եւ իցէ, այս խնդիրք հոս մեզի պէտք չեն: Ժամանակը գոնէ մերձաւորապէս որոշ է. Պետրոս հայրապետ է

բնականապէս Գետադարձը (1019—1057, ըստ ոմանց քիչ մ'աւելի կանուխ մեռած), որով եւ «Հոռոմց Միխայիլ» կայսրն ըլլալու է աւելի Միքայէլ Դ. Պափղագոնացի (1034—1042), զոր Զոյէ կայսրուհին կայսր ըրած էր, ինչպէս ըրաւ անկէ ետքը զՄիքայէլ Ե. Կալափատէ (1042), որուն դէմ ապստամբութիւն ծագելով «Զոյէ այս անգամ ամուսնացաւ Կոստանդին Թ. Մոնոմաքոսի հետ, որ կայսր եղաւ (1042—1054), եւ ասոր օրով եղաւ՝ ինչպէս Անւոյ առումն Յունաց ձեռօք, նոյնպէս սելճուկեանց առաջին այրացաւերութիւնն եւ Արծնի կործանումը (1048): Անւոյ համար դժուարաւ կրնայ ըլլալ Միքայէլ Ստրատիոտիկոս (1056—57), զոր Թէոդորա կայսրուհին (1054—56) կայսր ըրաւ, եւ որուն դէմ անմիջապէս ծագեցան զինուորական յեղափոխութիւնք, այնպէս որ ի վերջոյ կայսր հռչակուեցաւ Իսահակ Կոմնենոս ծեր զօրավարը (1057—59), որուն հրաժարելէն ետքը՝ կայսր եղաւ Կոստանդին Ժ. Դուկաս (1059—1067): Մեր ձեռագրին համար կը մնան ուրեմն 1034—1042 տարիները, շատ շատ՝ նաեւ 1056—57, եթէ Պետրոս Գետադարձ տակաւին կենդանի էր, որ հաւանական է: Կրնար մինչեւ անգամ վերջին Թուականիս նպաստաւոր նկատուիլ յիշատակարանիս գրելը «յԱրծինս մեծ աւանի», զոր ուրեմն կրնայինք առնուլ կործանմանէս ետքը նորէն բնակեալ աւանի մտօք: Առ այս կրնայինք համեմատել նաեւ

Լաստիվերտացւոյն գրածը: Սա՝ որ այնպիսի մեծ տիտղոսներով կը յիշէր, յետոյ իրօք «աւան» կը կոչէ, եւ այն՝ ճշդիւ 1057 տարւոյ համար: Պատմելով թէ այս «ի հինգ հարիւր վեց թուականիս մերոյ. Թագաւորեց «Կոմիանոս» (= Իս. Կոմնենոս), որուն թագաւորութեան ուրոյն գլուխ մ'ալ նուիրած է[345], երկար կը նկարագրէ «յաշխարհաւեր տարւոյն» գործուած Պարսից (սելճուկեան) արշաւանքը, եւ առանձնապէս Բլուրի կոտորածը: Անօրէնք, կ'ըսէ, «հասեալք ի գաւառս Կարնոյ մերձ ի գիւղն որ կոչի Բլուրս», եւ այն՝ «զօրէն յորդեռանդն հեղեղի»: Տեղը ամուր կ'երեւար («բնակիչք տեղւոյն շրջապատեալ պարսպաւ զԲլուրն»), եւ անոր համար հոն ապաստանած էին, «որ յայս կոյս գետոյն Եփրատայ (= Կարնոյ Սեւջուր բազկին) գեօղք եւ կրօնաստանք, ամենեքեան անդ էին հաւաքեալք, այլեւ յԱրծինն աւանէ բազումք»: Բլուրս առնուեցաւ եւ կոտորածին նկարագրութիւնը քստմնեցուցիչ է, «զթիւ համարոյ անկելոցն եւ գերեացն՝ եօթն հազար ասացին, եւ կրօնաւորս վաթսուն[346]»: Կարծենք այս պատմութիւնն ինքնին կը ցուցնէ 1056/57 տարիներն ալ դժուար, եթէ ոչ անհնարին էր այսպիսի բազմածախ մագաղաթեայ երկաթագիր աւետարանի մը գրուիլը յԱրծն, եւ

---

345 Արիստակէս Լաստ., Վենետիկ 1901, էջ 103. գլ. Ի. Թագաւորութիւն Կոմիանոսի:

346 Լաստ. անդ էջ 99:

գրեթէ անհնարին՝ յիշատակարանին այնպէս գրուիլը՝ իբր թէ խորին խաղաղութեան ատեն ըլլար, առանց որեւէ յիշատակութեան աղետից տեղւոյն, ուր կը գրուէր։ Անոր համար այս կրնայ գրուած ըլլալ միայն Արծնի կործանմանէն (1048ի) յառաջ, ուստի Միքայէլի Դ. օրով։ Այլուստ ալ Լաստիվերտացւոյ նկարագրութիւնն կործանման Արծնի ա՛յնպէս է, որ հոն երկար ատեն այսպիսի գրչութեան մասին չէր կրնար մտածուիլ եւ Լաստիվերտացին կործանմանէ յառաջ ալ՝ «աւան» կը կոչէ զԱրծն, բայց նաեւ շատ մեծ «քաղաք»։ Մատենագիրս, որ ինքնին յԱրծն գտնուած է, կը պատմէ նախ թէ ինչպէս յոյն զօրավարն Կամենաս (որ «ի տէրութեանն Հայոց» փոխանակած էր «ի չորս հարիւր իննսուն եւ երեք թուականիս մերոյ» = 1044), գալով յԱնի՝ կ՚ամբաստանէ առ կայսր եւ ի վերջոյ զՊետրոս Գետադարձ «խաբանօք հանէ» Անիէն, ըսելով թէ «հրամայեալ է քեզ թագաւորն տեղի բնակութեան ի Կարին գաւառի, յԱրծին աւանի։ Եւ եկեալ հայրապետին գայ (ի մեծանիստ եւ ի շահաստան քաղաքս մեր, եւ մեծաւ ուրախութեամբ լցոյց զանձինս տեսողացն որ ցանկանային նմա»։ Ուրեմն միեւնոյն տեղը՝ «աւան» եւ «մեծանիստ» ու «շահաստան քաղաքս մեր», հեղինակի մը կողմէ, որ հոն էր։ Թողունք յաջորդող պատմութիւնը, Աստուածայայտնութեան օրով տաճկի մը մկրտուիլն եւ մեռոնի շշին կոտ-

րիլը, հայրապետին բանտարկուիլն «ի բերդն որ կոչի Խաղտոյ-Առինճ» (արդի՝ Խաղտաառիճ կամ Գաղտառիճ), յետոյ Կ. Պոլիս տարուիլը (1045)[347]: Յաջորդ գլուխը կը պատմէ «ի Թուրքաստանէ» եկած առաջին հեղեղը, եւ թէ Սելճուկեանք Վասպուրական մտնելէ ետքը՝ հեղեղեցին նախ «մինչեւ ի գաւառն Բասեան եւ մինչեւ ի դաստակերտն մեծ որ կոչի Վաղարշաւան, քանդեալ ապականեցին գաւառս քան եւ չորս՝ սրով եւ հրով եւ գերութեամբ», յաջորդ տարին «յամի չորեքհարիւրորդի իններորդի եօթներորդի թուականութեանս մերոյ» (= 1048), որ էր երկրորդ ամ գերութեանն մերոյ, շարժեալ միւսանգամ մրուր դառնութեան լի բարկութեամբ ի տանէն Պարսից՝ ահագին ծփանօք, եւ եկեալ հեղաւ յընդարձակ դաշտն Բասենոյ եւ Կարնոյ, եւ ցայտուկս հեղեղատին կալաւ զչորս անկիւնս երկրին. յարեւմուտս՝ մինչեւ ի Խաղտեաց գաւառն (— ուստի՝ Բաբերդ —) իսկ ի հիւսիսի՝ մինչեւ ի Սպեր եւ մինչեւ յամուրս Տայոց եւ Արշարունեաց. իսկ ի հարաւ մինչեւ ի Տարօն եւ մինչեւ ի գաւառն Հաշտենից մինչեւ յանտառն Խորձենոյ[348]»: Այս արշաւանքին է Արծնի կործանումն, որուն ուրոյն գլուխ մը նուիրած է[349]. եւ հոս է որ չի

---

[347] Անդ էջ 53—54:

[348] Անդ էջ 57:

[349] Անդ էջ 64—69 գլ. ԺԲ. Վասն Արծնին անողորմ կոտորածին:

կրնար կարծես բաւականաչափ գովել Արծնի փարթամութիւնը, «քաղաքի այսպիսում, որ հոյակապ եւ ականաւոր էր ամենայն աշխարհաց», «իբրեւ ակն մի պատուական լուսագեղ պայծառութեամբ փայլէր քաղաքս մեր ի մէջ ամենայն քաղաքաց, ամենեւին գեղեցիկ, բոլորովին զարդարուն» եւն: Կործանումն եւ աղէտն ալ ըստ այնմ են, եւ «վասն Արծինն տխրական պատմութեանս» կը փակէ ըսելով թէ «զամենայն անցս չարեացն ոչ կարացաք ընդ գրով արկանել, այլ զթողեալն ի մէջ՝ յաւերակացն աւանի խընդրողն», եւ ի վերջոյ թէ «զոր աչօք մերովք տեսաք եւ ընդ փոքր չարեացն անցաք, զայն միայն գրեցաք» եւն: Լաստիվերտացի ուրեմն յԱրծն էր 1045—48 տարիները: Ուրիշ տեղ մը կ՚ակնարկէ Արծնի այրիլը[350]: Այս «աւերակաց» մէջ, եւ անկէ ետքն երկար ատեն այսպիսի Աւետարան մը չէր կրնար հոն գրուիլ: — Համաժամանակեայ շարք մը ձեռագիրներ ծանօթացան հետզհետէ: Ասոնց մէջ անոնք՝ որ յունական իշխանութեան ներքեւ գրուած էին, ի հարկէ պիտի յիշէին կայսեր անունն ալ՝ կաթողիկոսի անուան հետ. եւ անոր համար՝ ուր այս կը պակսի, կրնանք նշան համարել թէ չէր գրուած տեղ մը, որ այսպէս կամ այնպէս կայսերական իշխանութեան ենթարկուած էր: Այսպէս

350 Անդ էջ 74. Ի դալ տարւոյն էր Թուականիս մերոյ ամք հինգ հարիւր երեք (=1054)... ուր զառաջինն աշխարհս գերի տարան, զԱրծն այրեցին:

Մալաթիոյ վիճակի Ղունղալու կամ Խանկալ գիւղի աւետարանը գրած է Սամուէլ ՆՀԶ (= 1041) տարին «ի կաթողիկոսութեան Տեառն Պետրոսի վարդապետողի (= վերադիտողի), յորժամ Յովհաննէս թագաւորն Հայոց վախճանեցաւ» եւ յաջորդեց Գագիկ, եւն[351]: Այսպէս նաեւ Կանայ ձեռագիրը՝ զոր յիշեցինք, գրուած ՆՂԴ (= 1045) թուին Յուսկանէ, կը յիշէ միայն «ի կաթողիկոսութեան Տեառն Պետրոս Հայոց վերադիտողի», առանց կայսեր անուան[352]. ուստի այս ալ տակաւին Յունական իշխանութենէ դուրս գրուած ըլլալու է: Արդէն տարբեր է խնդիրը, եթէ նաեւ յԱնի գրուած ըլլար, ինչպէս Յովսէփեան հաւանական կը կարծէ, այն ճառընտիրն՝ զոր ստացեր է նոյն ինքն Պետրոս Գետադարձ, ինչպէս իւր յիշատակարանը կը ցուցնէ: Գէորգ դրիչ կը գրէր անոր համար միայն «Գրեցաւ աստուածազիծ պատգամս այս ի թուականիս Հայոց յորում ՆՂԵ էր (= 1046) ինդիքտիոնին Հռոմոց յերեքտասաներորդ ամին, ի թագաւորութեան Մոնոմախոս կայսեր, իսկ մեր լուսաւորութեան եւթն հարիւրեւքառասուն եւ Դ եւ կուսածին ծագմանէն հազար եւ քառասուն եւ Ե[353]»: Թողլով հաշուոյս

---

351 Գ. Վարդ. Ասլանեան, «Դաշինք» (Զմիւռնիա), 1909, թիւ 123:

352 Հմմտ. Գ. Յովսէփեան, Յիշատակարանք Ձեռագրաց, էջ 225—226:

353 Յովսէփեան. անդ 220—230:

ճշգրտումն, Անի այս տարին Յունաց ձեռքն էր: Բայց ի հարկէ բացառութիւնք ալ կըրնային ըլլալ, եւ անշուշտ եղած են: Ոչ ամէն դպիր հարկ կը տեսնէր յիշել կայսեր անունը, մանաւանդ հալածանաց շրջանին: Այսպէս մեկնելու է կարծենք Մելտինոյ ձեռագիրն 1057 թուին, Խաչկայ կաթողիկոսութեան օրով, եթէ ամբողջական հրատարակուած է յիշատակարանս, որուն մէջ խառնակութիւնք մտած են[354]. իսկ Էջմ. Գ. 363 ձեռագրէ 1053 տարւոյ երկտող մը միայն ծանօթ է[355]: Ձիարդ եւ իցէ, Ջահմանց աւետարանի իրական ժամանակակից եւ նոյն կայսեր օրով է Շխնոցի հոչակաւոր աւետարանը, — որուն «Ս. Դաւիթ» կոչուիլն ալ չենք գիտեր ինչու կը յիշեցնէ Ջահմանց աւետարանի արդիւնատու Դաւիթն՝ իւր «Ս. Խաչ»ով: — Եւագրէս դպրի գրած այս ձեռագիրը ՆՁէ (= 1038) թուին, կարեւոր է այնու որ Պետրոս Գետադարձի հետ կը յիշէ հակաթոռ Դիոսկորոս հայրապետը, գրուած «ի թագաւորութեան Յունաց Միխայէլի բարեպաշտի[356]»: Յամենայն դէպս այս «Միխայելի» Դ.ի օրով է Ջահմանց աւետարանը: — Թէ Արծնի քիչ մ'ետքն եղած աւերածէն ինչպէս ազատած եւ երբ Բաբերդի գիւղն եկած է, յայտնի չէ բայց այն տեղն էր 1577ին, երբ կը նորոգուի: Նորո-

---

354 Յովսէփեան, անդ էջ 235—36:

355 Հմմտ. Յովսէփեան, անդ էջ 233—34:

356 Յովսէփեան, Յիշատ. էջ 219—20:

գուլթեանս յիշատակարանն է ըստ Դարբինեանի. «ի թվականիս ՌԻԶ (= 1577) երետ նորոգել զԱւետարանս Ջահմացի Պապան, եւ յիշեցէք ո՛վ սբ. քահանայք ի սուրբ աղաւթս ձեր ամէն. եւ զիս զանպիտանս եւ զմեղաւք լցեալս զԱստուածատուր երէցս Տանձուտցի յիշեցէք ի Քրիստոս եւ դուք յիշեալ լինիք»: Տանձուտ, կ'ըսէ Դարբինեան, Բաբերդէն դրեթէ 1 ժամ հեռու գիւղ մըն է (Կիպերտ ալ նշանակած է Dansut ձեւով). բայց Աստուածատուր երէց ի Ջահմանց նորոգած է՝ ինչպէս խօսքը կը բերէ: Ջահմանց զոր Կիպերտ (Թերթ՝ Կարին) նշանակած է Tshachmas ձեւով նաեւ այսօր հայաբնակ է, մինչ Տանձուտ չի նշանակուիր հայաբնակ գիւղերու շարքին մէջ[357]: Ջահմանց գիւղիս եկեղեցին Ս. Յովհաննէս կը յիշուի ուրիշ յիշատակարանի մը մէջ: Սանասարեանի հաւաքման թիւ 7 Մաշտոցը գրուած է Սեբաստիոյ Կովտուն գիւղը 1656ի եւ յետոյ յիշատակ գրուած Սեբաստիոյ Խանձառ գիւղը: Բայց վերջէն նորոգուած է Ջահմանց գիւղը. որուն մասին յիշատակարանն է. «Վերստին նորոգեցին սբ. Մաշտոցս Ջահմացի Թուման եւ Ջիհան ի յարդար վաստկց. իւրեանց եւ եդին յիշատակ ի գիւղն Ջահմանց, ի դուռն Ս. Յովհաննու (գրուած ի դռն. սբ. Յվննու») ի ձեռն Տր. Թաթէոսին»: Թուական չկայ. սակայն ան-

---

357 Դարբինեան Յ., Ձեռագիրներ ի Բաբերդ, Բիւզանդիոն 1906, թիւ 2897:

*շուշտ ասոր հետ կապ ունի յաջորդ յիշատակագրութիւնը թէ* «կազմեցաւ *ձեռամբ* Ներսէս *սարկաւագին թվն. ՌՀԸ* (= 1629) *մայիսի ԺԸ» են:*

*Բաբերդի յիշատակարանաց նշանաւոր վանաց կարգին մոռնալու չէ երկու վանքեր ալ, որոնց միայն մանաւանդ ծաղկումն ու գրեթէ համաժամանակեայ անկումը կրնանք տեսնել այն իսկ մեր ձեռքն եղած սակաւաթիւ յիշատակարաններէ: Այս՝* Խաղճանեաց *վանքն, զոր առիթ ունեցանք յիշելու, երբ խնդիր էր* Ս. Թորոս *գիւղի մասին թէ արդեօք յիշատակարանի մը մէջ յիշուածը Բաբերդի՞ գիւղն է (— զոր Կիպերտ կը նշանակէ* Siptoros *աղաւաղ ձեւով —) թէ Սեւ Գետոյ «Թորոսլի» գիւղը: Վանքիս մասին կը գրէ Տրդատ եպ. Պալեան.* «Խաղճանեաց վանք Ս. Թորոսի *Բաբերդի մէջ. քաղաքին հիւսիսային կողմն 2 ժամ հեռու Թօմնայ*[358] *անուն գիւղի յենարան եղած լերան մը ստորոտն է* Ս. Թէոդորոսի *վանքը եւ լերան վերի կողմն է* Ս. Աստուածածնայ *վանքը, որոնց երկուքն ի միասին կ'ըսուի* Խաղճանեաց *կամ* Խաղճեանեաց[359] վանք. Ս. Աստուածածնի եւ Ս. Թէոդորոսի: *Թէեւ ժամանակին չէն վանքեր, բայց ներկայիս երկուքն ալ ամայի եւ*

---

358 *Պալեան Տրդատ եպ., Հայ վանորայք. Բիւզանդիոն, Խաղճանեանց վանք Ս. Թորոսի,* 1900, *թիւ* 1043:

359 *Պալեան, Անդ թիւ* 1043:

փլած»։ Ծանօթ երկու մատենից մին ստուգիւ «ի դուռն Ս. Աստուածածնի եւ Ս. Թէոդորոսին» կը կոչէ, եւ այս այն յիշատակարանն է՝ զոր քաղուածօրէն յառաջ բերած է Պալեան. իսկ միւսը՝ Գաղատիոյ ձեռագրաց մին «ս. Աստուածածնին եւ Յովհաննու Կարապետին» կը յորջորջէ. Պալեան կը յիշէ 1382ի գրուած Աստուածաշունչ մը, ուրկէ կը քաղէ յիշատակարանս «Յիշեսջիք զքաջ հովիւն ...զՏէր Յովհաննէս որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց եւ եդ ի վանս իւր որոյ անուն կոչի Խաղճան, ի դուռն Ս. Աստուածածնին եւ Ս. Թէոդորոսին... Թիւ տոմարական ՊԼԱ (=1382)»։ Կը յաւելու թէ այս տարին վանքիս միաբանքն էին՝ նոյն Յովհ. եպ. վանահայր, Տէր Խաչատուր վրդ. եւ Ղազար, Մարտիրոս, Սարգիս ու Մկրտիչ աբեղայք։ Երկոտասանեակ մը տարի ետքը՝ եպիսկոպոսին մահուամբ՝ ժառանգական խնդիրներ ծագած են եւ վանքը քայքայած, բայց եպիսկոպոսին քոյրը Յուստիանէ խաթուն՝ որ վանքիս բարերարն եղած է, ջանացած է նոյնը փրկել ամայութենէ։ Նոյն Աստուածաշնչէ այս երկրորդ յիշատակարանն է. «ի Թուաբերութեանս ՊԽԴ ի հայրապետութեան տեառն Թէոդորոսի... եւ յառաջնորդութեան մերոյ Նահանգիս Խաղտեաց Տէր Յովհաննիսի արքեպիսկոպոսի, եղեւ հրաման ի Տեառնէ Աստուծոյ մերոյ վերափոխել ի Տէր Յիսուս սրբասնունդ եւ երանաշնորհ եպիսկոպոսին

մերայ Տէր Յովհաննու, *եղեւ պակասութիւն ամենայնի մեզ ամենեցուն, եւս առաւել հրեշտակաբնակ* մենաստանիս խաղճանեաց, *զոր եւ ի սադրելոյ չարին՝* յարեան ոմանք ի մէնջ ի մեր ազգականաց *եւ հակառակեցան վանիցն եւ* ցրուեցին զուխտ եւ զամենայն որ ինչ կայր ի նմա. *զոր Տէր Յովհաննէս հանցէ զպատիժ պատուհասին ի գլուխ հակառակողին ամէն: Եւ նուաստ ոգի* քոյր *Տէր Յովհան եպիսկոպոսի՝* վերստին հաստատեցի զսուրբ ուխտն խաղճանեաց, Ուստիանէ խաթունն եւ պարոն Թորոս որդի իմ, *եւ* ժողովեցաք զաթոռ (*Նօտարք*, «զգահ» *ուղիղ՝* զկահ) եւ զանօթ սուրբ եկեղեցեաց եւ եդաք ընդ ձեռամբ իմով. *յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց պարոն Աստուածածուտրին եւ մօրն իմոյ Խաժիկ խաթունին, եւ կենակցին իմոյ Աւագ պարոնին եւ զաւերաց Մասիա խաթունին, Գայիանէ խաթուն եւ Դոլլաթ խաթունին եւ դեռաբոյս զաւակին մերոյ Մելիքին...»: Այս երկրորդ յիշատակարանը դրած է նաեւ Փիրղալէմեան, զոր Պալեան ալ իբր աղբիւր կը յիշէ. բայց հոս «Խաժիկ խաթունին» բառերով կ'աւարտի եւ մնացեալ անուանք չկան*[360]*: Քանի որ Բաբերդի հին եպիսկոպոսանիստ վանքի մը վրայ է խնդիրը, աւելորդ չէ յիշել ուրիշ յիշատակարան մ'ալ, որ՝ որչափ ալ կրկնութիւն է նոյն խնդրոյ, աւելի լուսաւորութիւն կու տայ, եւ յիշատակարանս ալ անտիպ է: Գրել*

360 *Պալեան, Անդ. թիւ* 1043:

տուած է այն Յուստխանէ խաթուն եւ նոյն 1395 թուին: Ձեռագիրը Գաղատիոյ հաւաքման մէջ է, Իգնատիոսի՝ Մեկնութիւն Ղուկայ, եւ է այսպէս[361]. «Աւրհնեալ... Յամի ՊԽԴ-երորդի (= 1395) ի հայրապետութեան Տեառն Թէոդորոսի եւ մերոյ եպիսկոպոսութեան Տէր Յովհաննիսի Բաբերբթւոյ վիճակի ի սուրբ անապատիս որ կոչի Խախջան, առ ոտս սրբուհւոյ Աստուածածնիս եւ Յովհաննու Կարապետիս, որ էր յոյժ հռչակաւոր եւ երկնանման գեղեցկաշէն յարմարեալ եւ ամենայնիւ զարդարեալ: Եւ էին ի սմա բնակեալ յոլով եղբայրութեանս համակամ եւ միեղէն եղբայրութիւն. եւ անխափան կատարէր ի ձեռն սուրբ կրաւնաւորացն աղաւթքն եւ պատարագքն ի բարեխաւսութիւն ամենայն հաւատացեալ քրիստոնէից: Արդ ի յետ այսմ գեղեցկազոյն եւ ցանկալի շինութեան սուրբ անապատիս, եղեւ կէտ կոչման յաստուածային հրամանէն, զի հրաւիրեաց Տէրն մեր եւ արարիչ Քրիստոս յիւր երկնային առագաստին զբազմաձգնող եւ զաստուածահաճոյ երանաշնորհ եպիսկոպոսունսն՝ զՏէր Յովհաննէսն եւ զՏէր Մարտիրոս եւ զՏէր Ղազարն, որոց յիշատակք նոցա աւրհնութեամբ եղիցին եւ աղաւթք նոցա հանապազ եղիցի ի վերայ ամենայն աշխարհի ամէն: Արդ ի յայսմ ղառն եւ ի չար ժամանակիս տրտմու-

---

361 Համամճեան, Ցուցակ Զ. Գաղատիոյ թիւ 85, թղ. 32բ—33ա:

թեանց՝ զոր եհաս ի վերայ մեր, ես նուաստ յամենայնի քոյր Տէր Յովհաննէսին եւ բարեկամ սուրբ անապատին խախնանեաց եւ հարազատ սիրելի եղբօրն իմոյ, անուն կոչեցեալ Ուստիանէ խաթուն, հանապազ ցաւակցաբար խոկայի, ի տուէ եւ ի գիշերի, զշինութենէ սուրբ ուխտին եւ զնորին սպասաւորայն: Իսկ ի սադրելոյ չարին, որ ոչ կամի զարդարութիւն ճշմարտութեան, յարեան ոմանք ի մէնջ ի մեր ազգականաց եւ թիւրեցին զմիտս եւ զսիրտն իմ սիրելի եղբօրն՝ զառաքելաշնորհ եպիսկոպոսին Տէր Յովանիսին. եւ վիճաբանեցին զմեզ՝ բանսարկութեամբ իւրեանց, զոր Տէր Յիսուս նկուն եւ հալածական արասցէ զհակառակողն զայնոսիկ եւ սատակեսցէ զնոսա սաստուածային բանիւ բերանոյն ամէն: Յետ այսր ամենայնի անցիցս եւ աղէտից տրտմութեանց, դուզանել տուին զմեզ Ժ Դ., որպէս այլազգեաց, կատաղի եւ մարդադէմ գազանքն այնոքիկ: Բայց ես ոչ խախտեցայ ի զօրովարութ սիրոյ եղբաւրն իմոյ, ոչ նուազեցի զկահ եւ կամ զպաս տանարին երկնանման. այլ եւ յաջողութեամբն Աստուծոյ, ողորմութեամբ նորին, կանգնեցայ եւ ժողովեցի զհայրենատուր ժառանգութիւնն ի պայծառութիւն սուրբ անապատին, յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց՝ պարոն Աստուածատրին եւ մաւրն իմոյ Խաժիկ խաթունին, եւ եղբարցն իմոց պարոն Աւգին եւ պարոն Ամիրին եւ Աշապրին, եւ կենակցին իմոյ

Սուադ պարոնին»: — Ինչպէս կը տեսնուի, հոս պարագայք քիչ մը տարբեր են, բայց ի վերջոյ նոյն դէպքն է, որով վանքն իւր պայծառութիւնը կորսնցուց: Ըստ երեւութին մեծազգի եւ հարուստ գերդաստան մըն էր, որուն կը վերաբերէին Յովհ. եպ. եւ Ուստիանէ խաթուն, եւ վանքի հողն ալ «հայրենատուր ժառանգութիւն էր», զոր Յովհ. եպ. «ի վանս իւր» կրնար կոչել: Զիարդ եւ իցէ եպիսկոպոսանիստ վանքս դժուարաւ թէ այնուհետեւ վերստին ծաղկած ըլլայ, բայց թէ երբ աւերած է՝ չենք գիտեր:

Այս վերջին տեսակէտով լուսաւորութիւն մը չէր տար նաեւ մեր Մատ. թիւ 260 ձեռագիրը, եթէ նոյն իսկ այս Խաղձանեաց վանքի վերաբերի, քանի որ 1420 թուէն շատ յառաջ գրուած է յամենայն դէպս, այս թուին նորոգուած ըլլալով: Սակայն միւս կողմանէ շատ հետաքրքրական պարունակութիւն ունին բազմաթիւ յիշատակարանները եւ մանաւանդ գլխաւորն, որ դժբախտաբար պատռտած ու վնասուած է, որով բուն թուականն ալ չկայ: Յիշատակարանքս որ լի են անուններով, ընդարձակօրէն հրատարակած ենք[362], ուստի պէտք չկայ ամբողջովին յառաջ բերելու: Գրողն է Հայրապետ աբեղայ եւ գրած Վարդ սարկաւագի համար, որուն բազմաթիւ ազգականք կը յիշուին. յետոյ անցած է ուրիշներու ձեռքը: Էական մասը

362 Տաշեան, Ցուց. Ձեռագրաց, թիւ 260, էջ 665—666:

վանքին եւ բազմաթիւ բարեբարաց վերաբերեալն է։ Յիշատակագիրը շարունակութեան մէջ կը գրէ․ «Ով քահանայք եւ ժողովուրդք որք միաբան եւ պաղատու էք սուրբ ուխտիս որ կոչի Ս․ Թորոս եւ ի հալալ վաստակոց ձերոց հանապազ զմեզ կերակրէք եւ մեք պարտեմք ի հոգեւոր...» (գրի)։ Կը յիշուին երկարօրէն բարերարներ, ի միջի այլոց «զՎահրամշահն որ գդէզ մի բողն երետ հանց ատեն ժամն որ ոչ հայրն որդւոյն տայ եւ ոչ եղբայրն ի եղբաւրն... եւ եղբայր նորա զՖռ... (թերի = «զՎռանդն»՝ այլուր) որ զիւր կանն ի վանքն երետ..., զՖերոն՝ որ զիւր կովուկն ի վանքն երետ», եւ դարձեալ կը յաջորդեն բազմաթիւ անուններ՝ «զայլ երախտաւորք մեր», որոնց մին «զՏաւնային փեսային որ ի վանքս պսակեցաւ» (գրուած՝ «պակսեցաւ»), եւն։ Անուններն առ հասարակ հետաքրքրական են (Վարդերես, Վարդիշխան, Գայլուկ, Ասլետ, Արկաթ, Պատրիկ եւն, կանանց՝ Գինոյ, Ոսկեհատ, Խնձոր, Ճաւր տիկին, Աւտար տիկին, եւն եւն)։ Յետոյ ՊԿԹ (= 1420) թուին նորոգուած է գիրքս «ի գաւառիս Տաքխոյ ի գեւղն որ կոչի Ծըդկունք», ուստի եւ «գիրքս Ս․ Կարապետին է»՝ Տարօնոյ, եւ կազմողն է Աբրահամ աբեղայ։ ՌԻԱ (= 1572)։ Սարխաւչ եւ պարոն Սարգիս Նորէն նորոգել տուեր են «զայս հին գիրքս քանզի փտեալ էր եւ թափեալ» եւն․ բայց տեղ մը չի յիշուիր։ Յիշատակարանը կը ցուցնէ թէ

վանքը յամենայն դէպս կարօտ վիճակ մ'ունէր որով պէտք ունէր գոմի մը եւ կովուկի ալ, բայց անպակաս էին բարերարք։ Այս պարագան անշուշտ արգելք մը չէ որ Խաղճանեաց ալ վանքի հին վիճակը ցուցնէ, ուստի Յովհաննէս եպիսկոպոսի եւ Ուստիանէ խաթունի օրերէն յառաջ։ Սակայն որեւէ ապահովութիւն չունինք թէ «սուրբ ուխտին որ կոչի Սուրբ Թորոս» այս վանքն ըլլայ, եւ ո՛չ որեւէ ուրիշ մը։ Ձեռագրաց տեղէ տեղ փոխուիլը սովորական է. բայց քանի որ արդէն հնագոյն (1420ի) նորոգութիւն կ'ըլլայ Շատախ եւ գիրքը Ս. Կարապետի կը վերաբերի, կրնար թերեւս մատնանշել թէ գրուած ալ է այն կողմերը, որչափ ալ մեզի անձնապէս ծանօթ չէ Ս. Թորոս մը Տարօնի մէջ կամ շրջակայքը։

Քանի որ Բարբերդ ու Տարօն հոս աղերս մ'ունեցան՝ յիշենք յիշատակարան մ'ալ, այս անգամ հնագոյն, ուր նոյն աղերսն ստուգիւ եղած կ'երեւայ։ Մշոյ Ս. Առաքելոց կամ Ղազարու վանաց նշանաւոր ճառընտրին յիշատակարանը շատ ընդարձակ է եւ լի պատմականօք, բայց մեզի համար կարեւոր է առաջին մասը[363]։ Կ'ըսուի թէ «զայս աս-

---

[363] Ալիշան Հ. Ղ., Հայապատում, Վենետիկ 1901. Գրութիւն, Գերութիւն եւ վերագնութիւն Մեծ Տօնական Գրոց, էջ 448—451։ Հմմտ. նոյնպէս. 1. Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ հտ. Բ. 435—78. 2. Գարեգին Կաթող. Յովսէփեան, Յիշատակարանք, Անթիլիաս 1951, էջ 699—726։

տուածային ղանձս ստացաւ այր մի պատուաւոր ռայիս (=պետ, գլխաւոր ազգանոց) Բայբերդոյ, որոյ անուն յորջորջի Աստուածատուր, յոյժ աղքատասէր մանաւանդ թէ աստուածասէր եւ սա իսկ ցանկացող եղեալ այսմ սուրբ մատենիս... եւ ապա հոգ տանելով թէ ո՞վ արդեօք կարող իցէ հասուցանել զիս ի փափագ բաղձանացս... Եւ ապա խնդիր արարեալ յոգնախմաստ գրչի եւ գտեալ քահանայ մի ի գաւառէն Կարնոյ, որում Վարդան կոչեցեալ, հմուտ եւ վարժ ամենայն արհեստի գրչութեան, եւ նա յանձին կալեալ եւ օգնականութեամբն Աստուծոյ սկիզբն արարեալ, եւ ապա զկնի երից ամաց եհաս յաւարտ բանիս: Եւ ի կատարման գրոցս սուլտանն Սեւաստոյ ժողով արարեալ անհուն բազմութեամբ, նմանեալ ամբարիշտին Յուլիանեայ, փքացեալ լեռնացեալ եհաս ի Թիոդուպաւղիս, եւ անտի կամեցեալ անցանել յաշխարհս Հայոց եւ Վրաց, եւ ամենեւին մոռացաւ զԱստուած եւ յուսացաւ ի նանրութիւն իւր, կամէր յաւարի առնուլ զաշխարհս ամենայն: Իսկ օգնականութեամբն Աստուծոյ՝ եկին հասին զօրքն Վրաց եւ մեծն Զաքարէ հանդերձ Իւանէիւ հարազատաւն իւր եւ այլ աստուածասէր իշխանօք եւ նախարարօք եւ յոգնախումբ խառնիճաղանճ բազմութեամբ հասին ի վերայ անաւրէն զաւրացն եւ յանխնայ կոտորեցին զնոսա, զոմանս ձերբակալ արարին եւ ոմանք ի փախուստ դարձան, բայց

սուլտանն անվրէպ մնաց: Սակայն զաւա-
րոյն զթիւ ո՞ կարէ գիտել՝ զոսկւոյ եւ զար-
ծաթոյ եւ զմետաքսի, զերամակս ուղտուց,
ձիոց եւ ջորւոց: Եւ յայսմ ամի ի սադրելոյ
չարին ըմբռնեցաւ այրս Աստուածատուր ի
ձեռն ամիրային Ալադին կոչեցեալ, որ եւ ի
ձեռն այնմ գազանի Աստուածատուրն այն
ընկալաւ զվախճան, եւ յափշտակեցին զստա-
ցուածս նորա, եւ ո՛չ մնաց եւ ո՛չ մի ինչ՝
բայց այս գիրքս: Ապա դատաւոր քաղաքին
ձեռն յառաջ տարեալ՝ զուր պատճառանօք
բանս ի վերայ եդեալ թէ հինգհարիւր պա-
տատ մնաց ինձ առ Աստուածատուրն: Եւ
իբրեւ այս այսպէս եղեւ, ապա այնուհետեւ
չու արարեալ դատաւորին եկն՝ բնակեցաւ ի
հռչակաւոր քաղաքն Խլաթ, եւ երկու ամ
կայր (գիրքս) ի պահեստի, եւ ոչ ոք գի-
տաց, եւ ապա կամեցաւ վաճառել, եւ ոչ ոք
կարէր զամագիւտ լինել, զի բազմագին կա-
մէր վաճառել» եւն: Մնացեալը՝ նոյնպէս
շատ հետաքրքրական այս գնման եւ անոր
գնող ժողովարարութեան եւն կը վերա-
բերին: «Երեք քահանայք գեղջն Դանջան կո-
չեցեալ... ազդ արարին մեզ, զի էին միա-
բանք Ս. Առաքելոցս, նամակ արձակելով թէ
զանձ կայ ի քաղաքին» եւն: «Եպիսկոպոսա-
պետս մեր Տէր Եսայի» կ'երթայ, բայց չի յա-
ջողիր. նաեւ «սպասաւորք սուրբ ուխտին որ
կոչի Արծկէոյ վանք» կ'ուզեն գնել: «Մի ամ
այլ մնաց գիրքս այս առ բոծոյն այն. ապա
ի գալ միւս ամին» ի վերջոյ քահանայ մը

Յովհաննէս, որ «ի Միջնաբերդ էր, կը յորդորէ եւ խոստանայ սատարել, եւ «Սարգիս վարդապետն հինգ փիլիսոփայիւքն» (Յուսիկ եւ Ոստաղէս, Աւետիս եւ Ստեփաննոս եւ Ներսէս) կ'երթայ Խլաթ եւ նաեւ օգնութեամբ «քահանայիցն Խլաթայ եւ Դանձնայ», կը գնեն գիրքս եւ «դարձուցաք յերկնադումար եղբայրանոցս մեր, որ կոչի Ղազարու վանս»: Գնել անկարելի էր, որովհետեւ «ԵՌ դրամ խնդրէր բոծորն այն՝ որ է տաճիկ, եւ դարձեալ մեծաւ... հազիւ կարացաք գնել ի ԴՌ դրամ» են: Այսպիսի մեծ գումար մը ժողովարարութեամբ միայն կրնար հոգացուիլ, եւ անոր համար Յիշատակարանն երկարօրէն կը յիշէ նուիրատուքն, որոնց մէջ յիշալ «Յովհաննէս Միջնաբերդցի եա ի գինս գրոցս ՌԾ դրամ., Աւետիս Յրոնցի՝ «Ն» դրամ, ուրիշներն «ի քաղաքաւանս Մուշ», ի «գիւղն անուանի Մոկունք», «ի մեծ քաղաքին Խլաթ պարոնայք» են են: Գնումն եւ կազմելն եղած է «ի Թուաբերութեան արարչութեանն՝ որ լինի յիսկզբան լինելութեան մինչեւ ցայժմ ամք վեցհազարերորդ վեցհարիւրերորդ երեսներորդ. եւ ի ծննդենէ Բանին Աստուծոյ ամք ՌՄԴ (= 1204) եւ ըստ հայկազեան տոմարի որ լինի վեցհարիւրերորդ յիսներորդ եւ չորրորդ (= 1205). սկսայ կազմել գրագմերանեան չտեմարանս աստուածային գանձուց, ի նահանգիս որ կոչի Ղազարու վանս, ընդ հովանեաւ Ս. Առա-

քեղոցս» են: Կազմողս իւր անունը չի յիշեր, բայց «զեղբայրիկն իմ զՍտեփաննոս յիշեսջիք» են[364]: Յիշատակարանս միանգամայն պատկեր մըն է Բաբերդի անցեալին, որ ինչպէս կը տեսնուի՝ տարբեր չէր կրնար ըլլալ այն օրերէն ի վեր, երբ Սելջուկեանք ոտք կոխեցին այս երկիրները:

Ալիշան յիշատակարանիս «Բայբերդոյ» համար կը դիտէ թէ «թերեւս ո՛չ Բաբերդ-քաղաքն՝ այլ գիւղ մի[365]»: Թերեւս յիշուած պատմական պարագայքն ըլլան առ այս յորդորող, այլազգ դժուար է ըմբռնել այսպիսի մեկնութեան մը պատճառը: Դժուարութիւն մը չէ որ Բաբերդոյ Աստուածատուր այսպիսի մեծ գրչութիւն մ'ընել տալու համար փնտռած ու գտած է յարմար գրիչ մը Կարնոյ գաւառին մէջ, որով գիրքն իրօք այս գաւառը գրուած է, եւ դիւրին է ըմբռնել թէ Տօնական-ճառընտիր մը գրելու 3 տարի պէտք եղած է: Դժուարութիւն չէ կարծենք նաեւ «Սեւաստիոյ» սուլտանին արշաւանքը Կարնոյ վրայ: Բայց արդ պատմութեանս կենդրոնն է այս «սուլտանն Սեւաստոյ», որուն մասին կը դիտէ Ալիշան թէ է «Սելջուկեան սուլտանաց յաջորդներէն, որոնք յԻկոնիոն եւ ի Սեբաստիա ինքնագլուխ կ'իշխէին: Իսկ քիչ մ'ետքը կ'ըսուի թէ Աստուածատուր բռնուեցաւ եւ սպաննուեցաւ «ի ձեռն ամիրային իւրոյ Ալադին կոչեցեալ»,

364 Ալիշան, Անդ էջ 450:

365 Ալիշան, Անդ էջ 448, ծնթ. 3:

որուն մասին կը գրէ նոյնպէս Ալիշան թէ է «վերոյիշեալ սուլտանաց մին, Սեբաստիոյ կողման իշխողն[366]»: Արդ քանի որ պատմութեան կեդրոնը Սեբաստիա է, դժուարութիւն երեւցած ըլլալու է որ նոյն Աստուածատուր «բայխ» է «Բաբերդոյ», որով յարմար երեւցած ըլլալու է նոյնն այն կողման որեւէ գիւղ մը համարելու: Սակայն — եթէ այս է պատճառը — հարկ մը չկայ Բաբերդ այլազգ հասկնալու, ոչ ալ ասով «բայխ» բառն «գիւղապետ մտօք առնելու: Ալիշան կը մեկնէ բառս «գիւղապետ կամ գլխաւորն ազգայնոց տեղւոյն, յայտնի է բառն արաբացի»· որ գործածական է ցայսօր ալ (նաեւ թրք. բէյիգ, ար. բէյյիս, գլուխ. գլխաւոր, առաջնորդ, պետ. նաւապետ, եւն): Թէ ինչ էր Աստուածատրոյ, որ նկարագրութեան համաձայն մեծատուն մըն էր, «Բաբերդոյ» այս բայխութեան պաշտօնը, չենք գիտեր. բայց կարծենք մեր խնդրոյ համար անհրաժեշտ ալ չէ: Նոյն իսկ խնդիր չընենք թէ ստուգիւ նո՞յն անձն է «սուլտանն Սեւաստիոյ» եւ Աստուածատրոյ «ամիրայ»ն Ալադին կոչեցեալ»: «Ալադին (= Ալա–էդ–դին) բաւական յաճախադէպ անուն մըն է. Իկոնիոնի սուլտաններէն այս ԺԳ. դարուս մէջ մինչեւ անգամ երեք հոգի նոյն անունը կը կրեն, թողլով բազմաթիւ ուրիշ «ամիրայ»ները: Անշուշտ նաեւ «սուլտան» բաւական սովորական եղած էր քիչ

[366] Ալիշան, Անդ էջ 448, ծնթ. 8:

չատ նաեւ կէսանկախ իշխողաց համար ճշդիւ այս խառնակ շրջանին · բայց յամենայն դէպս աւելի բարձրադիր իշխող մ'այն անունը կրնար կրել · իսկ «ամիրայ» կամ Էմիր արդէն սովորական տիտղոս էր իշխանաւորաց սուլտանի մը ներքեւ, որոնք ի հարկէ իբր տէր այս կամ այն քաղաքին ու գաւառին յաճախ կէսանկախ դրութիւն մ'ունէին կամ կը ձգտէին ունենալ: Ճիշդ յիշատակարանիս միջոցին Խլիճ-Ասլան Բ. իւր տէրութիւնն որդւոց բաժնելով, ասոնք «սուլտան» ալ կրնային յորջորջուիլ, եւ անոր համար նաեւ «սուլտանն Սեբաստիոյ, յարմար է, թէեւ բուն «սուլտան» էր Իկոնիոյ իշխանը, եւ նոյն իսկ նոյն տնէ Տուղրիլ Բաբերդի արձանագրութեանց մէջ լոկ «մելիք» կը կոչէ ինք զինք՝ ի յարգանս Իկոնիոյ սուլտանին: Անոր համար Բաբերդոյ ամիրայն կրնայ զատ անձ մ'ըլլալ՝ թէեւ Ալադին անուամբ, լոկ էմիր Բաբերդի, որուն ներքեւ «րայիս» էր Աստուածատուր: Յամենայն դէպս թէ «Բաբերդոյ» հոս իրօք արդի Բաբերդ քաղաքին կը վերաբերի, յայտնի է անկէ որ Աստուածատրոյ ընչից յափշտակութեան մէջ դեր կ'ունենայ նաեւ «զատաւոր քաղաքին», որ «ձեռն յառաջ տարեալ» զուր կը պատճառէ թէ Աստուածատուր իրեն 500 «պաւտասա» (անծանօթ դրամ մը) պարտական էր, եւ անոր համար կ'առնու գիրքս եւ հետը Խլաթ կը տանի, ուր կ'երթայ բնակելու, եւն: Վերջապէս եթէ Բաբերդոյ ամիրայն եւ Սեբաս-

ալիոյ սուլտանն նոյն անձն ալ ըլլայ, պատմական դժուարութիւն մը չկայ։ Սեբաստիա ինչպէս Բաբերդ այս միջոցին պաշտօնապէս Իկոնիոյ սուլտաններուն էին, թէեւ ի հարկէ այս խառնակութեան շրջանին ինքնագլուխ «սուլտան»ներ չէին պակսիր։

Կանուխէն Սեբաստիա բոլորովին ինքնուրոյն հարստութիւն մ'ունեցաւ, գրեթէ Ղոնիոյ կամ «Րում»ի (= Հռոմ) սուլտանութեան համաժամանակից։ Իկոնիոնի հարստութեան հիմնադրութեան փորձերը զոր ըրաւ՝ Տուղրիլ Ա.ի (1037—1069) եւ Ալփասլանի (1063—1072) աշխարհակալութեանց շրջանին, յատկապէս վերջնոյն ատեն, Կուտուլմիշ՝ Իսրայելի որդին, Սելճուկի թոռը, անյաջող էր։ Նոյնպէս անբախտ էր աւագ որդին Մանսուր, որ Ալփասլանի եւ անոր յաջորդին Մալիք-Շահի (1072—1092) հարկատու էր, բայց ի վերջոյ Մելիք-շահի «Էմիր Պուրսակ» զօրավարէն յաղթուեցաւ եւ սպանուեցաւ։ Կրտսեր որդին Սուլէյման Ա. (1077—1085) կը համարուի բուն հիմնադիր Իկոնիոնի սուլտանութեան, որ Մելիք-Շահի հրամանաւ տէր եղաւ Արեւելից այս ընդարձակ նահանգաց, զօրավար եղած Սելճուկեանց ի «Րում», մահացու հարուած տուաւ Յունական կայսրութեան, եւ նոյն իսկ դաշնադրութեամբ Բիւզանդիոնի հետ (1074) թէեւ այս ալ ի վերջոյ յաղթուեցաւ Դուդուշէ, որ Մելիք-շահի նախ կուսակալ էմիրն էր Ասորւոց, եւ յետոյ հիմնադիր եղաւ Դա-

մասկոսի Սելճուկեան հարստութեան: Ցաջորդ անիշխանական անջրպետութեան (1085—1092) միջոցին էր որ Դանիշմէնդ սելճուկեան հարստութիւնը հիմնուեցաւ ի Սեբաստիա եւ շատ ընդարձակեցաւ, տիրելով ինչպէս Սեբաստիոյ, Մալաթիոյ, Նիկսարի ու Ամասիոյ, նոյնպէս Կաստամունիոյ եւ ընդհանրապէս հին Պափղագոնիոյ, Կապադովկիոյ եւ Պոնտոսի մէկ մասին: Այս տունը («Բէնոն Դանիշմէնտ», որդիք Գիտնոյն») մելիք տիտղոսը կը կրէ, իսկ մեր պատմիչք գրեթէ միշտ ամիրայ տիտղոսը կու տան, բայց նաեւ «մեծ ամիրայ» եւ «տէր Սեւաստոյ», բայց նաեւ «աշխարհին Հոռոմոց»: Սակայն «սուլտան» տիտղոսը պահելով Իկոնիոնի իշխողաց: Այսպէս երբ Մատթէոս Ուռհայեցի կը գրէ թէ «յայնժամ սուլտանն արեւմտից Խլիճ-Ասլանն լուեալ զգալ զօրացն Փռանգաց, գրեաց ի Նիկիսարն յամիրայն Դամիշման եւ յայլ ամիրայսն» եւն: «Դամիշման» ձեւը Ուռհայեցւոյն սովորական է. «Դանիշման»՝ Վարդանայ. եւ զարմանալի կերպով երկուքն ալ հարստութեան հիմնադիրս «յազգէն Հայոց» կ'ըսեն[367]: Բայց նոյն Մատ. Ուռհայեցի ուրիշ տեղ մը կը գրէ (ՇԽԹ թուին ներքեւ) «յայսմ ամի

---

[367] Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Երուսաղէմ 1869, էջ 368. Բ. տպ. Վաղարշապատ 1898, էջ 297: Երուսաղէմեան հրատարակութիւնն ունի՝ անունս Դանիշման, իսկ Բ. տպ.ը Դամիշման: Վարդան, Պատմ. Վենետիկ 1862, էջ 112:

*գայր բազում զօրօք* ամիրայն Պարսից, *որ* ասէին Դանիշմանն, *որ էր տէր Սեւաստոյ եւ ամենայն Հոռոմոց աշխարհին, եւ խաղացեալ բազմութեամբ հեծելոց եւ եկեալ ի վերայ քաղաքին Մելտինոյ» եւն*[368]*: Իսկ Ուռհայեցի Դանիշմանայ մահուան թուին* (ՇԾԳ = 1104) *շատ մեծ գովութիւն իսկ կը գրէ թէ «յայսմ ամի մեռաւ Դանիշմանն մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին, որ լեալ էր յազգէն Հայոց, այր բարի եւ շինող եւ էր յոյժ ողորմած ի վերայ հաւատացելոցն Քրիստոսի, եւ եղեւ սուգ մեծ ի վերայ հաւատացելոցն որք էին ընդ ձեռամբ նորա. եւ մնաց իւր երկոտասան որդի, եւ կալաւ զաշխարհն աւագ որդին որ կոչէր* Խազի. *եւ զայլ եղբարսն իւր սպանանէր գաղտաբար*[369]*»: Այս «Խազի» ի հարկէ «Ղազի» է, ինչպէս կը գրէ Վարդան*[370]*, բայց բուն տիտղոս մըն է* (*«յաղթող»*) *զոր կը կրեն հարստութեան իշխանաց ոմանք, նոյն իսկ այն «Դանիշման», որուն յորջորջանքն են* «Մելիք Ղազի Ահմէտ Կիւմիւշթէքեն» (1086—1104), *իսկ յաջորդն արդէն շատ երկար յորջորջանք մը կը կրէ «Մելիք էլ-Ալիմ էլ-Ադիլ Նասր-էդ-Դունիա Վ՛էդ-դին Աբուլ-Մուզաֆֆէր* Մելիք Ղազի Մոհամէտ» (1104—1142)*: Իսկ երրորդը՝ զոր Ուռհայեցի կը կոչէ «մեծ ամիրայն*

---

368 *Ժամանակագրութիւն Ա. տպ. էջ* 333, *Բ. տպ.* 272:

369 *Անդ. Վաղարշապատ Բ. տպ. էջ* 297—298:

370 *Պատմ. էջ* 113:

Աղուպ-Ասլաճ որ էր որդի Ամիր Խազէ(ի) եւ տէր Սեբաստիոյ եւ աշխարհին Գամրաց», կը կրէ տիտղոսներս «Մելիք էլ-Ալիմ էլ-Ատիլ Նիզամ-էդ-Դունիա Վ'էդդին Աբուլ-Մուզաֆ-ֆէր Եաղի Պասան» (1142—1166)։ Տակաւին չորս ուրիշ իշխողներ ալ կան՝ նոյն իշխանութեան, բայց այս տան ճոխութիւնը, որ երբեմն հզօր էր, բայց կանուխէն ստիպուած էր Իկոնիոյ սուլտանաց գերիշխանութիւնը ճանչնալ, այլեւս տկարացած էր ասկէ ետքը, իշխելով կարճ միջոց մը մինչեւ բարձումը (1167—1174)։ Որովհետեւ Սուլէյմանի որդիքը Դաւիթ (Տաւուտ) եւ ի Ղլիճ-Ասլան, մեծցած Մելիք-Շահի արքունիքը, ատոր մահուանէ ետքը կրցան Իկոնիոնի գահն անկախ ընել եւ մեծ զօրութեան հասցնել։ Մեծ իշխող եղած է Ղլիճ-Ասլան Ա. (1092—1107) որ Դանիշմանէ առաւ Մալաթիան ու Գարամանը, մէկ կողմանէ յաղթեց Խաչակրաց[371], միւս կողմանէ դրաւեց Մուսուլն իսկ, բայց Խաբուրոս գետի մէջ խեղդուեցաւ։ Իր որդիներէն իշխեց նախ Մելիք Ա. Սայսան (1107—1116), եւ յետոյ Մասուտ Ա. (1116—1156) շինարար մը, որ թաղուած է Ամասիոյ մօտ իւր շինած Սամարայի շիրմին մէջ։ Որդին Ազէդին (Ազլ-էդ-Դին) Ղլիճ-Ասլան Բ. (1156—1188) մեծ վէճեր ունեցաւ Դանիշմանայց հետ, առաւ նորէն Մալաթիան, եւ

371 Սմբատ սպարապետի Տարեգիրք, Վենետիկ 1956, էջ 118։

թէեւ ետ տուաւ դարձեալ Նուրէդդին սորական մեծ աթաբեկին միջնորդութեամբ, բայց սոր մահուանէ վերջը՝ գրաւեց ոչ միայն Մալաթիան, այլ նաեւ Սեբաստիան ու Կեսարիա (1172) եւ առհասարակ վերջ տուաւ Դանիշմանաց իշխանութեան՝ թունաւորելով այն տան վերջին իշխանը, եւ ընդարձակ աշխարհները կցելով իւր տէրութեան (1174)։ Այսպէս ետքն այլ եւս նոյն տնէ կամ Իկոնիոնէ անկախ «սուլտան» չկար Սեբաստիոյ. բայց ճիշդ Բարեբրդոյ յիշատակարանիս օրերուն կային տակաւին այլեւայլ «ապստամբութիւններ»՝ ստեղծուած նոյնիսկ Ղլիճ–Ասլանի որդիներէ, եւ այս խառնակութեան շրջանին համար կարեւոր են թէ յիշատակարանս եւ թէ Բարեբրդի արձանագրութիւնքն, որոնց լուսաւորութեան համար ամփոփեցինք այս պատմական կէտերը, եւ յաջորդ քանի մը կէտ ալ պիտի ստիպուինք յիշել, որչափ ալ սամ չեղում ընել պէտք ըլլայ։

Բարեբրդ հասած է նոյն իսկ առաջին Տուղրիլի արշաւանքը, բայց չէ առնուած տակաւին։ Այս կէտը գիտենք Լաստիվերտացիէ, որ նոյն արշաւանքն ալ Սպերի գծով կը նշանակէ, երբ «էր թուականիս մերոյ ամք հինգ հարիւր երեք» (= 1054) բուն Մանազկերտի պաշարումն էր գլխաւոր գործը, բայց բնականապէս «արձակեաց ասպատակս... ի հիւսիս մինչեւ յամուրն Ափխազաց եւ մինչեւ ի լեառն Պարխար եւ

մինչեւ ցատորոտն Կովկասու եւ յարեւմուտս մինչեւ յանտառն Ճանեթոյ» են: Այս ասպատակաց մէջ «իսկ որ ի Տայսն մտին, առեալ զերկիրն եւ հասեալք մինչեւ ի գետն մեծ որ կոչի Ծորոխ (= Ճորոխ) եւ զկնի գետոյն դարձեալ իջին յաշխարհն Խաղտեաց եւ առեալ զառ եւ զգերի գաւառին՝ դարձան, եւ եկեալ մինչեւ ի բերդաքաղաքն որ կոչի Բաբերդ. հանդիպի եւ անդ գունդ մի ի զօրացն Հոռոմոց որ կոչին փռանկք, որք յանդէտս միմեանց ի դիմի հարեալք ճակատեցան. եւ յողորմութենէն Աստուծոյ զօրացն գունդն Հոռոմոց եւ յաղթեալ թշնամեացն՝ զգլուխ զօրուն սպանին եւ զբազումս ընդ նմա, եւ զայլսն ի փախուստ դարձուցեալ, զառ եւ զգերի զամենայն թափեցին. բայց փախստէիցն զհետ ոչ իշխեցին յերկարել, քանզի երկեան թէ գուցէ ծանր զօրու հանդիպեսցին[372]»: Ա. Իսրայէլեան որ ստորագրած է Բաբերդի բերդը եւ անոր մասին այլեւայլ աւանդութիւնները[373], կը կարծէ թէ Տուղրիլ յետոյ առած ըլլայ զԲաբերդ եւ ինչպէս արձանագրութիւնք կը ցուցնեն, որոնց կարեւորքն ինքն ալ յառաջ կը բերէ, «իշխանութեան աթոռը» հոն հաստատած[374]: Սակայն այս ստոյգ չէ եւ առ-

---

372 Արիստակէս Լաստիվերտացւոյ Պատմ. Վենետիկ 1901, էջ 78:

373 Արշակ Իսրայէլեան, Բաբերդի բերդը. «Աւետաբեր» 1914, Թիւ 47, էջ 1123—25:

374 Իսրայէլեան, Անդ էջ 1123—25 Ա. «Արձանա-

հասարակ Յունական կայսրութեան բոլոր այս արեւելեան մասանց վերջնական կորուստը Մանազկերտի որոշիչ ճակատամարտէն (1071) ետքն է, երբ Ալփասլան գերի իսկ բռնեց զՌոմանոս. եւ այնուհետեւ Հայաստան ու Գամիրք եւ շրջակայք ալ վերջնականապէս կորած էին. եւ որուն արդիւնքներէն Իկոնիոնի սուլտանութիւնն արդէն յիշեցինք: Տուղրիլ Ա. չէ մտած Բաբերդ. իսկ արձանագրութեանց յիշած Տուղրիլն, ինչպէս արդէն Թուականը կը ցուցնէ՝ մէկուկէս դար ետքը, «Թագաւոր Հոռոմոց եւ Հայոց» բոլորովին ուրիշ անձ է, վերոյիշեալ Ղլըճ-Ասլան Բ.ի որդին:

Արդ այս սուլտանն, որ տէրութիւնն

---

գրութիւն Սելճուգեան Մալիք-Մուազզամի Տուղրիլի, յամին 610» (1213):

«Այս օրհնեալ եւ երջանկաբեր շինութիւնը կատարուեցաւ Մալիք-Մուազզամի իշխանութեան ժամանակ, եռանդուն, արդար, որուն Ալլահ օգնած է, յաղթող, պատերազմող յառաջադէմ Մուգիթ-էտ-Տունիա-էտ-տին, հզօրացուցիչ Իսլամի եւ մուսլիմի, տէր Թագաւորաց եւ սուլթանաց կատարեալ Սելճուքեանց մէջ, Թագաւոր Փոքր Ասիոյ եւ Հայոց, Ապուհարիթ Տուղրիլ, որդի Ղլըճ Ասլանի, որդւոյ Մասուտայ, որդւոյ Ղլըճ Ասլանի, որդւոյ Սուլէյմանւոյ, օգնական իշխանին հաւատացելոց: Այս կատարուեցաւ ի ձեռն անպիտան ծառայի եւ Ալլահի շնորհաց կարօտ Լուլուի, որ է մերձաւոր Մալիք-Մուազզամ Մուգիթի, յամի 610 եւ 15 ռապի երկրորդի = 3 սեպտ. 1213»: Նման բովանդակութիւն ունի Բ. արձանագրութիւնը, որուն առաջբերութիւնն աւելորդ կը նկատենք:

այնպէս մեծցուցած է, զայն ուղղակի տկարացուց եւ խռովութեանց առիթ ստեղծեց, իր կենդանութեան իսկ բաժնելով իր մետասան որդւոց (1190/91), կենդրոնը մնալով բնականապէս Գոնիա, եւ երկրորդ գլխաւորն ըլլալով Կեսարիա։ Արեւելեան գաւառին՝ Եփրատի սահմանագծին՝ գլխաւոր քաղաքն էր Մալաթիա. միւս կենդրոններն էին Սեբաստիա, Նիկսար, Թոխաթ, Ամասիա, Անկիւրիա. եւ չորք մ'ալ հարաւակողմը՝ որոնց մէջ յիշենք «Աբուլաստան» արդի Էլպիստանը, զոր Կապադովկիոյ այն մասով, ընդունեցաւ ճշդիւ իր Տուղրիլ որդին, որ յետոյ Բաբերդի արձանագրութեանց մէջ կը յիշուի։ Միւս ամէն կենդրոն ալ անոր վերաբերեալ երկրամասով տրուեցաւ միւս որդւոց իւրաքանչիւրին, Ղլըճ-Ասլան տեսաւ ասոր սխալն, եւ ուզեց ուղղել՝ տէրութիւնը միացնելով իր Քութպ-էդ-Դին Մելէք Բ. (1188—1192) որդւոյն ներքեւ։ Այս միջոցին է, որ Խաչակիրք՝ Փրեդերիկոս Կարմրամօրուսի առաջնորդութեամբ՝ անցան Գոնիայէ իսկ (1190) դէպ ի հայկական Կիլիկիա՝ Տարսոն ու Մսիս, եւն։ Բայց Ղլըճ-Ասլանի բոլոր միւս որդիք ապստամբեցան այս կարգադրութեան դէմ, եւ արիւնալից գահակալական կռիւներու դուռ բացուեցաւ, այն միջոցին մեռաւ հայրը (1193)։ Ի միջի այլոց Քութպէդինի մեռնելէն ետքը՝ միապետութեան համար կռուող էին Ղիյաս-էդ-Դին Կայխոսրով Ա. (1192—1199) եւ

1203—1210) Իկոնիոնի տէրը եւ Ռոքն–էդ–Դին Սուլէյմանի Բ. (1199—1203) Թոխաթի տէրը: Սա առաւ Սեբաստիան ու Կեսարիան, զԿայխոսրով մերժեց Ղոնիայէ, տալով անոր Ալպիստանն, ուսկից Կայխոսրով մերժած էր իւր եղբայրը զՄուղիս–էդ–Դին Տուղրիլը, եւ ի վերջոյ միացուց պետութիւնը: Կայխոսրով փախաւ մեր Լեւոնի քով, անկէ անցաւ Կ. Պոլիս, իւր երկու որդւովք, որոնք յետոյ սուլտան եղան: Ռոքնէդդին Սուլէյման Բ. իւր եղբօրը Տուղրիլի տուաւ Կարնոյ ամիրայութիւնը, գրաւելով զԿարին զահազուրկ ընելով տեղւոյն վերջին ամիրայն, որ իրեն գործակից իսկ եղած էր եւ ծառայութիւններ մատուցած եւ ի փոխարէն վարձատրութեան Կարնէ վռնդուեցաւ. Կարնոյ այս ամիրայք՝ Սալդուխի տնէ, սերած կ՚ըսէին Որդուքէ, եւ հոն կը տիրէին գոնէ կէս դարէ վեր, ըստ ոմանց միայն հիճրայի 556 (= 1161) թուէն ի վեր, զՈրդուք եւ զՍալդուխ կը յիշեն բնականականապէս հայ աղբերք[375], ինչպէս նաեւ Վրական Տարեգիրք, որոնք կը յիշեն նոյն տան այլեւայլ անդամներ ալ,

375 Սելճուկեան արշաւանքներու եւ զանազան իսլամական ամիրայութիւններու հաստատութեան եւ այլեւայլ հարստութիւններու մասին տեղեկութիւններ կը հաղորդեն Մատթէոս Ուռհայեցի, Արիստակէս Լաստիվերացի, Սամուէլ Անեցի, Սմբատ Գունդստապլ, Միքայէլ Ասորի, Վարդան Արեւելցի, Կիրակոս Գանձակեցի, Գրիգոր Երէց եւ Ստեփանոս Օրպէլեան են, իսկ այժմ գլխաւոր աղբիւրներ են նաեւ Յիշատակարաններ:

այնպէս որ Բրոսէ կրնար ճիւղագրութիւն մը կազմել վրական ազգերաց համեմատ[376]: Ասոնք «մելեք» տիտղոս կը կրէին. եւ վերջինս էր՝ ըստ Աբուլֆեդայի «Մալէք Մոհամէտ, որդի Սալկակի (=Սալդուխի) սերուած հին դերդաստանէ, զոր մերժեց Ռոքնէդդին Սուլէյման՝ գրաւելով զկարին յամի 596 (= 1199/1200). Թէ նոյն է Վրական Տարեգրոց «Նասր-էդ-Դին», որդի Սալդուխի, հաւանական կը դառնէ Բրոսէ[377]: Զիարդ եւ իցէ՝ որչափ ալ կան Թուականի այլեւայլ տարբերութիւններ, մանաւանդ նաեւ վրական յաղթութեան մասին՝ որ կայ ունէր իրերուս հետ եւ որ կը յիշուի մասնաւորապէս Բաբերդի մեր յիշատակարանին մէջ[378], ապահով է որ Սուլէյմանայ Բ. զկարին գրաւելն որ եւ Տուղրիլ-շահի հոն դահ ելլելը կա՛մ վերյիշեալ 1099/1200 տարին է կամ

---

376 Brosset, M., Histoire de la Géorgie, St. Pétersbourg 1858, p. 457, ծնթ. 2 ճիւղագրութիւնը կը կազմէ այսպէս.

Orthok
|
Saldoukh
|

| | |
|---|---|
| Couz Nasr-ed-Din, peut-être le même que Malek-Mohammed ci-dessous nommé. | Moutaphradin ou Modhaffer-ed-Din, petit-fils de Saldoukh. |

377 Brosset, անդ էջ 457, ծնթ. 2:

378 Գ. Յովսէփեան, Յիշատակարանք, էջ 712. տես սառ էջ 353:

յաջորդ տարին ըստ Իբն ալ–Աթիրի՝ հիճր. 597 (= 1200/1). զոր կը նախընտրէ Բերխեմ գիտնականը[379]: Կրնանք ուստի մերձաւորապէս 1200/1 տարին ընել. եւ այս կը հաստատէ Բաբերդի յիշատակարանն ալ, որուն ամբողջ հանգամանքներն այս միջոցի դիպաց հետ ճշդիւ նոյն են: Յիշատակարանիս մէջ ի հարկէ չկայ այժմ «Սեւաստիոյ» սուլտանին Կարնոյ վրայ յարձակման որոշ տարին: Բայց արդ նոյն տարին («յայսմ ամի») կը բռնուի եւ կը սպանուի Աստուածատուր: Ընչից գրաւման ատեն, որ ի հարկէ անմիջապէս եղած է, պահանջող կը կանգնի նաեւ «դատաւոր քաղաքին» որ նոյն տարին կամ շատ շատ՝ յաջորդ տարին Խլաթ կ՚անցնի (հմմտ. «իբրեւ այսպէս եղեւ, ապա այնուհետեւ չու արարեալ» եւն): Ցամենայն դէպս շատ ետքը չի կրնար ըլլալ. որովհետեւ գիրքն ի Խլաթ անծանօթ կը մնայ նախ 2 տարի, գնելու փորձերը նախ չեն յաջողիր, որով «մի ամ այլ մնաց գիրքս». եւ միայն «ի գալ միւս ամին»՝ ուստի չորրորդ տարին գնուեցաւ: Արդ այս տարին է փրկչական «ՌՄԴ» (= 1204). որ՝ Հաշուի Քրիստոսի Թուականի

---

379 M. v. Berchem, ի գիրս Lehmann-Haupt C. Fr., Materialien zur alten Geschichte Armeniens und Mesopotamiens. Mit einem Beitrage: Arabische Inschriften aus Armenien und Diyarbekr von Max van Berchem. Berlin 1907, p. 183. Հմմտ. Թարգմ. Հ. Ց. Աստուրեան, Բազմավէպ 1909, էջ 241—245:

ծանօթ հաշուի տարբերութեամբ տարուով մը պակաս է Հայկական թուականէն ՈԾԴ (= 1205)։ Ինչ ալ ըլլայ՝ դատաւորին ի Խլաթ գալը այս 1205 (կամ 1204) տարիէն 3 1/2 կամ ընդհանրապէս 4 տարի յառաջ է, ուստի կ'ունենանք 1201/2 տարին, եւ հետեւաբար Աստուածատրոյ մահուան, սուլտանին արշաւանքին, «Թէոդուպաւղիս» քաղաքին առման եւ ի վերջոյ Վրաց ալ յաղթութեան համար կա՛մ նոյն տարին կա՛մ իրր 1200/1 տարին։ Այս՝ կարեւոր վկայութիւն մըն է, եւ որոշ է ուրեմն որ Ցիշատակարանիս «սուլտանն Սեւաստիոյ» ուրիշ մէկը չի կրնար ըլլալ՝ բայց ինքն իսկ Ռոքնէդին Սուլէյման Բ. եւ արդէն այս տարին այլեւս ուրիշ «սուլտան» չկար ի Սեբաստիա, զոր՝ ինչպէս տեսանք, գրաւած էր Սուլէյման, ինչպէս բոլոր միւս իր եղբարց բաժինները։ Այս միջոցին իրաւազուրկ կամ գահազուրկ ըրած էր բոլոր եղբարքը, եւ կը դիմադրէր միայն իւր Մուհեյէդդին եղբօր որդին, Անկիւրիոյ տէրը, որ այն ամուր բերդին մէջ երեք տարի դիմադրեց, եւ յետոյ երբ ազատ երթալու խոստմամբ անձնատուր եղաւ՝ խոստմնադրժութեամբ սպաննուեցաւ ամբողջ ընտանեօք, որմէ հինգ օր վերջ մեռաւ ինքն Սուլէյման ալ, իսկ իւր մեռասանամեայ որդին՝ Ազզ-էդ-Դին Խլիճ-Արսլան Բ. միայն հինգամիս թագաւորեց (1203ին)։

*Որոշ է ուրեմն նաեւ որ Յիշատակարանիս պատմած* Ալադին *ամիրայն որ Աստուածատուրը սպաննել տուաւ չի կրնար ըլլալ «սուլտանն Սեւաստիոյ»: Այս՝ ուրեմն միայն* Բաբերդի, *ուր էր Աստուածատուր* («բայիս Բաբերդոյ») ամիրայն *կրնայ ըլլալ, որուն ի հարկէ հպատակն է Աստուածատուր* (*«ըմբռնեցաւ ի ձեռն* ամիրային իւրոյ Ալադին *կոչեցեալ*)»․ *ուստի Ալադին անունը պէտք չէ որ կասկածի առիթ տայ: Բաբերդի ամիրայս ալ երկար տեւած պիտի չըլլայ այնուհետեւ․ գոնէ ա՛յլ եւս Կարնոյ տէր Տուղրիլ-շահ արդէն շատոնց գրաւած ըլլալու էր զԲաբերդ ալ, երբ հոն իւր ազգականին՝ Լուլու հազարապետին ձեռօք բերդը վերաշինելով գրել կու տար իւր արձանագրութիւնները* 1213*ին: Այս արձանագրութիւնքն այժմ հրատարակուած են: Լէմանի «Նիւթեր Հնագոյն Պատմութեան Հայաստանի եւ Միջագետաց» գործոյն երրորդ բաժինը նուիրուած է արաբական արձանագրութեանց, ուր Մաքս Բերխեմ գիտնականը հրատարակած է արաբական կարեւոր արձանագրութիւններ մանաւանդ Նփրկերտի, բայց նաեւ Խարբերդի, Ամդայ, եւ* Բա-բերդի, *չհաշուելով Սղերտի հատակոտոր մը եւ Սալմաստի աշտարակակերպ շիրմին արձանագիրը*[380]: *Բերխեմ արաբա-*

---

[380] Lehmann-Haupt, Materialien, *էջ* 151—157, *Բազմավէպ* 1909, *էջ* 241—245:

կան ընագիրները քննադատօրէն հրատարակած է, թարգմանութեամբ եւ պատմական ամէն կարեւոր լուսաբանութեամբք, եւ օրինակի համար կազմած է Նփրկերտի ամիրայից ցանկը, որոնց հնագոյնք Արղուքի անէն են։ Բաբերդի արձանագրութիւնք չորս հատ են, զորոնք հրատարակած է Լէմանի եւ ուղեկցին (Բէլք) նմանապատճէններու եւ Լ. Ցավրի լուսանկարներու համեմատ[381]։ Զանոնք ծանօթացուց նաեւ հայ հասարակութեան Հ. Յ. Ասատուրեան[382], եւ ինչպէս ըսինք՝ երկու կարեւորքը յառաջ բերած է Ա. Իսրայէլեան ալ Բաբերդի բերդին նկարագրութեան մէջ[383]։ Արձանագրութիւնքս կը վերաբերին բերդին պարսպին շինութեան կամ աւելի ճիշդ վերաշինութեան, եւ լաւ վիճակի մէջ են միայն երկուքը, որոնք գրեթէ նոյն բառերով են՝ քիչ տարբերութեամբ կրկնուած։ Առաջինը բերդին հարաւային պարսպին երկու չորեքկուսի քարերու վրայ է՝ այսպէս. ըստ Բերխեմի. «Եղեւ շինութիւնս այս օրհնեալ եւ երջանկաբեր յաւուրս իշխանութեան ալ-Մալիք ալ-Մուազզամի (= Մեծապատիւ արքային հզօրի), իմաստնոյն, արդարի, աստուածազօրի («օգնեալ»... այսինքն՝

[381] Անդ. էջ 151—157։

[382] Ասատուրեան, Բազմավէպ 1909, էջ 241—245։

[383] Տես ծնթ. 374։

*յԱստուծոյ), յաղթողի, յաղթականի, պատերազմողի (վասն հաւատոյ), յառաջապահի (սահմանաց, տեսչի)*. Մուղիս ալ-Դունիա վալ-Դին (= *Օգնական աշխարհի եւ հաւատոյ*), *հզօրացուցչի Իսլամի եւ մահմետականաց, տէր («սայյիտ»՝ իշխան են) թագաւորաց («մալիք», յք. մլուք) եւ սուլտանաց, կատարեաց ի Սելճուկս*, թագաւորի յաշխարհս Հռոմոց եւ Հայոց (Մալիf *բիլադ* էր-Րում *վալ*-Արմէն, *Փոքր-Ասիոյ եւ Հայաստանի*), Աբու-լ-Հարիս Տուղրիլի, որդւոյ խլիճ-Արսլանայ, որդւոյ Մասուդի, որդւոյ խլիճ-Արսլանայ, որդւոյ Սուլէյմանայ, *օգնականի իշխանին հաւատացելոց*: Որ է Մեծապատիւ Արfայի («Մալաfի Մուղիսի») *ի ձեռն ծառայի տկարի, կարօտի ողորմութեան Աստուծոյ*, Լուլուի (Եղեւ), *ի ժԸ երկրորդ Ռաբի (ամսոյ)*, յամի տասն (եւ) վեցհարիւր» (= 3 *Սեպտ*. 1213): — *Երկրորդ քարին վրայ սկսող «մալիքի Մուղիսի» ածականը, ինչպէս Բերխեմ կը ցուցնէ, անսովոր կերպով յառաջ դրուած է, նոյնպէս երկրորդ արձանագրութեան մէջ ալ, բայց՝ ինչպէս վերջինս կը ցուցնէ՝ Լուլու չինապետի կը վերաբերի, ցուցնելով թէ «Մուղիսի կը վերաբերէր», ուստի թարգմանելու է «(Եղեւ այս) ի ձեռն տկար ծառայի, կարօտի շնորհաց (ողորմութեան) Աստուծոյ Լուլուի, որ է Մալիքի (Մուազզամի) Մուղիսի (ալ-*

Դունիա վալ-Դին)[384]» են: Այս երկրորդ արձանագրութիւնս ալ նոյնպէս կրկին քարի վրայ՝ հարաւային պարսպի միւս կողմն է, եւ գրեթէ նոյն բառերով է. «եղեւ սկիզբն եւ շինութիւն օրհնեալ բերդի («բուրջ») յաւուրս իմաստնոյ, արդարի, աստուածազօրի, յաղթողի, պատերազմողի, յառաջապահի Մուղիս ալ-Դունիա վալ-Դին, հզօրացուցչի Իսլամի եւ մահմետականաց, նուաճողի անհաւատից եւ կռապաշտից («բազմաստուածեանց») Արքայի յաշխարհս Հոռոմոց եւ Հայոց («էր-Րում» եւ «ալ-Արմէն») Աբու-լ-Հարիս Տուղրիլի, որդւոյ Խլիճ-Արսլանայ, որդւոյ Մասուդի, որդւոյ Խլիճ-Արսլանայ, օգնականի Իշխանին հաւատացելոց: Որ է (հպատակ, գրանիկ են) Մալաքի (Մուազզամի) Մուղիսի (ալ-Դունիա վալ-Դին) շինող այսր շինութեան տկար ծառայ հազաբայետ (արքունի տան) Լուլու»: — Լուլուի տիտղոսը հոս չեշտուած է, մինչ Տուղրիլի բուն արքայական տիտղոսը «ալ-Մալիք ալ-Մուազզամ» չկայ, ինչպէս նաեւ եւ «տէր արքայից եւ սուլտանաց», կատարեալ ի Սելճուկեանս»: Ծննդաբանութեան մէջ ալ թէեւ կը յիշուին նախնիք «Խլիճ-Ասլան (Բ.), Մասուդ (Ա.) Խլիճ-Ասլան (Ա.), բայց չի յիշուիր բուն նախնին Սուլէյման (Ա.), որ կար առաջին արձանագրութեան մէջ: Նոյնպէս չկայ Թուականը: — Դժբախտաբար լիովին թերակատար է եւ մասամբ եղծուած

384 Աստուրեան, Բազմավէպ անդ էջ 245:

երրորդ արձանագրութիւնը, պարսպին կործանած մէկ աշտարակին եւ յառաջակարկառ մասի մը վրայ, նոյնպէս երկու քարով, հետաքրքրական անով որ հոս Տուղրիլ սուլտան տիտղոսը կրած կ'երեւայ որ թէեւ բոլորովին ապահով չէ, բայց «բաւական որոշ» կը կարդացուի: Բերխեմ այս թերակատար բնագիրը թարգմանել աւելորդ տեսած է, բայց ապահով Տուղրիլէ է, որովհետեւ բաւական որոշ կ'երեւան բառերս «...Սուլտան ալ-Մուազզամ Մուղիս ալ-Դունիա վալ-Դին, հզօրացուցիչ Իսլամի եւ մահմետականաց, Աբու-լ-Հարիս Տուղրիլ..., որդի Քլիճ-Ասլանայ, որդւոյ Մասուդի օգնականի իշխանին հաւատացելոց»...: Ցաւալի է վերջին մասին կորուստը, որովհետեւ հոս ուրիշ անձ մը չինող է, ո՛չ Լուլու. որովհետեւ դոնէ կը կարդացուին «ի ձե[ռն]... դատաւորի («հալ-հաքիմ») լոյս-կրօնից («Ղիյասէդ-դին»), մնացեալքն անընթեռնլի:

Կայ վերջապէս չորրորդ արձանագրութիւն մ'ալ, բայց ա՛յլ եւս Տուղրիլի չէ, եւ ո՛չ ալ իր տան, որ երկար չտեւեց, այլ թէեւ նոյն դարուն՝ բայց յաջորդող տան մը: Որովհետեւ Տուղրիլ, որ ըստ արձանագրութեանս տիրած է Բաբերդի անշուշտ աւելի անդին ալ տարածած էր իւր իշխանութիւնը, «յետոյ վէճի բռնուեցաւ Ղոնիոյ սուլտանական գահուն իսկ թեկնածու ըլլալով, եւ թերեւս այս առթիւ է «սուլտան» տիտղոսն

երրորդ արձանագրութեան մէջ: Առաջին արձանագրութիւն մէջ պարզ «մալիք» տիտղոսը կը կրէ, որովհետեւ՝ ինչպէս կը դիտէ Բերխեմ, Տուղրիլ ւասսալու (vassal) կամ հպատակեալ էր այն ժամանակի (1203) բուն սուլտանին Ղոնիոյ որ էր Ազզ-էդ-Դին Կայկաւուս Ա. (1210—19)· «բայց յետոյ, կ'ըսէ, երբ սուլտանական տիտղոսը սովորական եղաւ» նոյնը կը կրէ իւր որդին Ջահան-շահ իւր դրամներուն վրայ, եւ անշուշտ նոյն իսկ ինքն Տուղրիլ» յիշեալ երրորդ արձանագրութեան մէջ»: Վերը յիշեցինք որ Կայխոսրով Ա. ստիպուած էր երկու որդւովքն (Ալաէդին Կայկոբադ եւ Ազէդին Կայկաւուս) ապաստանիլ ի Կ. Պոլիս: Լսելով Ռուքնէդդինի մահը՝ աճապարեց եւ կըրցաւ գահը ձեռք ձգել (1203—1210), յաղթելով իւր հակառակորդ եղբօրորդւոյն. իրեն կողմն եղան Այուբի տնէ (էյուպեան) մալիք Ափղալ (էֆդալ)՝ Շամշատի տէրը, եւ Նիղամէդդին՝ Խարբերդի տէրը, որուն պաշտպան ալ եղաւ՝ երբ ասոր դէմ ելած էին Ամդայ տէրը Նասրէդդին եւ նոյն ինք Աշրափ, եւ ստիպեց որ Խարբերդէ հեռանան: Իւր մահուանէ ետքը սուլտան եղաւ որդին Ազզ-էդդին Կայկաւուս Ա. (1210—1219) տակաւին երիտասարդ, եւ ասոր կողմն էին Ամդայ, Մարտինի, Խարբերդի, Շամշատի եւն տեարք՝ որ իւր անուամբ դրամ հատած են: Բայց հակառակութիւն կրեց ճիշդ Տուղրիլէ՝ Կարնոյ տէրէն, որ իւր հօրեղբայրն էր,

ինչպէս նաեւ իւր կրտսեր եղբօրէն Կայկոբատէ: Տուղրիլ մինչեւ անգամ զԿայկաւոս սուլտանը պաշարեց Սեբաստիոյ մէջ. եւ ետ քաշուեցաւ միայն՝ երբ Աշրաֆ Ասորիքէ օգնութեան եկաւ սուլտանին: Յետոյ՝ Տուղրիլ ինկաւ Կայկաւոսի ձեռքը եւ խեղդամահ եղաւ անկէ՝ իւր ամէն էմիրներով: Տուղրիլի մահն եղած է իբր հիճր. 622 տարին (= 1223), որչափ հօս ալ Թուականի տարբերութիւնք կան. իւր որդին ալ Ջահան-շահ մեռաւ հիճր. 627ի (= 1228) եւ սով վերջացաւ Կարնոյ այս Սելճուկեան հարստութիւնը: Իսկ զԿայկոբատ եղբայրը պաշարեց Կայկաւոս յԱնկիւրիա, առաւ քաղաքն ու եղբայրը բանտարգել ըրաւ ի Մալաթիա: Իւր ձեռնարկութիւններէն անյաջող էր ոչ միայն Հալէպի դէմ ըրած արշաւանքն, այլ նաեւ ընդդէմ Աշրաֆ Մուսայի՝ Նփրկերտի տիրոջ, որմէ դարձին մեռաւ ի Սեբաստիա: Հետաքրքրական էր այս Աշրաֆ Մուսա (1211—1220) իւր արձանագրութեան մէջ ինքզինք կը կոչէ «սուլտան Արաբաց եւ Պարսից. եւ թագաւոր Հայոց», վերջինս «Շահի-Արմէն» ձեւով, ինչպէս կը գրէին արդէն Խլաթայ տեարք, մինչ միւսները «մալիք» բառը կը գործածեն, այսպէս նաեւ Ամթայ տէրը՝ Որդուքի տնէ Մալիք Սալիհ Նասրէդդին Մահմուտ, որ հիճր. 605 (= 1208/9) տարւոյ իւր արձանագրութեան մէջ կը կոչէ ինք զինք «սուլտան Դիարբակրի եւ Հռոմոց ու Հայոց»

(«Էր-Րում վալ-Արմէն»)[385]: Ալադին (Ալա-Էդ-Դին) Կայկոբադ Ա. (1219—1236) բանտէն ելլելով՝ գահ ելաւ, եւ մեծագոյն իշխաններէն մին եղաւ, խաղաղութիւն ըրաւ Մալիք Աշրաֆի հետ, ասոր օգնութեամբ յաղթեց Ամդայ տիրոջ՝ Մեսուդի, որդւոյ Սալիհի որմէ այլեւայլ բերդեր առաւ (1226), ինչպէս տարի մը յառաջ գրաւած էր Մալիք Քամիլ Մուհամմէտէ Միջագետաց այլեւայլ ամուրներ: Այսուհետեւ այլեւս կարեւոր չէ մեզի համար մնացեալ պատմութիւնն, երբ արդէն այս միջոցին երեւան ելած էր Ճինկիզխան եւ նոր շրջան մը կը սկսէր որ ի վերջոյ պիտի կլանէր ամէն այս իշխանութիւնները: Այս օրերուն կը սկսի օսմանեան պատմութիւնն ալ, եւ Ղոնիայի հաստատութիւնն որ արդէն դարուս վերջերը եւ մանաւանդ յաջորդ դարուն սկիզբը քայքայուած էր մանր իշխանութեանց, կործանեցաւ Ալաէդ-դին Կայկոբատ Գ. վերջին սուլտանով (1294—1308) Մոնղոլներէ, իսկ այն մանր իշխանութիւնք հետզհետէ կլլուեցան նախնարար փոքրիկ օսմանեան իշխանութենէն:

Սակայն նախ քան այս հատածը փակելը՝ պէտք է տեսնել Բաբերդի չորրորդ արձանագրութիւնն ալ, որ կարեւոր է նաեւ այնու որ կին մըն է գրել տուողը: Բերդին հարաւային պարսպին վերջ, հարաւ-արեւմտեան անկեան մօտ, զարդարուն քիւին ներքեւ

---

385 Անդ էջ 244. Բերխեմ էջ 151—157 աւելի մանրամասն այս խնդիրներու մասին:

շատ մեծ գրերով արձանագրութիւն մը կայ՝ մէկ տողով երկզաձեւ երկարուած: Քանի մը բառեր անապահով են, թէեւ Բերխեմ անապահով կ'ըսէ միայն առաջին բառը. միւսները (փակագծեալք) զոր լրացուցած է, «ամէն տարակուսէ ազատ է» կ'ըսէ, թէեւ ամբողջն ուղղագրական անճշդութեամբք լի: Արձանագրութիւնս է. «(Հրամայեաց) դշխնութիւն այս բերդի («բուրջ») դշխոյն (բայց գրուած ար. «մալիք», յաջորդք՝ իգ. ձեւով) իմաստուն, արդար, Խալիսաթ ալ-Դունիա վալ-Դին (իգ. «փրկող աշխարհի եւ կրօնից»), փառք (տիկնանց), դուստր Մալիքի Ֆախր-ալ-Դին»: Որչափ ալ, կ'ըսէ Բերխեմ, «ալ-Մալիք» արական ձեւով գրուած է՝ «դշխոյ» մտօք է (= «ալ-Մալիքա»)., որովհետեւ բոլոր միւս ձեւերն իգական են, ինչպէս նաեւ «Խալիսաթ» յորջորջանքը: Ուստի խնդիր չկայ թէ կին մըն է արձանագրութիւնս գրել տուողը: Բայց բուն անունը չկայ հոս. եւ որովհետեւ չկայ «սուլտան»(ուհի) տիտղոս ալ՝ կը հետեւի թէ ո՛չ թէ Սելճուկեան տնէ, այլ հպատակեալ որեւէ փոքր ամիրայի տնէ ըլլալու է: Անոր համար ալ նախ, կ'ըսէ, կը մտածէր թէ արձանագրութիւնս վերաբերի Բաբերդի Սալտէնի տան, որ ԺԴ. դարու սկիզբը հոն կ'իշխէր Պարսկաստանի իշխաններու գերիշխանութեան ներքեւ: Բաբերդի այս իշխանք՝ դրամներէն դատելով՝ աւելի ուշ սկսան կրել նաեւ «սուլտան» տիտղոսը: Բայց արդէն դիրը, կ'ըսէ,

կը ցուցնէր թէ արձանագրութեանս հնագոյն է՝ ԺԳ. դարէ. եւ Ֆախր դինոյն լուսանկարը Ֆախր–ալ–դին անուան ընթերցումն ապահովցուց, եւ որովհետեւ անկէ յառաջ եղած բառին վերջին «ք» տառն որոշ է, միայն «Մալիք» կրնայ կարդացուիլ, ուստի անկէ յառաջ «դուստր» բառն ըլլալու է: Արդ այսպիսի դշխոյ մը ծանօթ է, Տիվրիկի շքեղ մզկիթին շինողը, որ անոր արձանագրութեանց մէջ կը կոչուի «արդար դշխոյ (ալ–Մալիքա ալ–ադիլա) Տուրանմալիք (Turān-malik), դուստր Մալիք Սայիտ Ֆախր–ալ–դին Բահրամ–շահի յամին հիճր. 626 (= 1229): Արդ այս Բահրամ Մանկուչակի տան (Banū Mangutschak) փոքր հարստութենէն է, որ ԺԳ. դարուն՝ Սելճուկեան սուլտանաց գերիշխանութեան ներքեւ՝ կ'իշխէր յԵրզնկայ եւ շրջակայ գաւառները: Արդ, կ'ըսէ, յարմար է արձանագրութիւնս ալ այն դշխոյին վերագրել թէ՛ նկատմամբ տառերու ոճին եւ թէ՛ յորջորջանաց: Ի հարկէ հոս միայն «Խալիսաթ–ալ–դին» կը կոչուի, եւ հոն՝ միայն «Տուրան–մալիք», որով ուղղակի համեմատել կարելի չէ. դարձեալ հոս իւր հայրը միայն «Ֆախր–ալ–դին» կը նշանակուի՝ առանց տիտղոսի: Բայց երկու արձանագրութեանց այս տարբերութիւնը, կ'ըսէ, թերեւս անո՛վ մեկնուի որ հոս ռազմական շինութեան մը մասին է խնդիրը, հոն՝ բարեպաշտ հիմնարկութեան մը: Վերջապէս Բաբերդ Երզնկայէ շատ հեռու չէ եւ

դիտենք որ Մանզուչակի տունը միջոց մը տէր էր շատ ընդարձակ երկրի մը։ Բայց թէ Տուրան-մալիք դշխոյն ի՞նչ հանգամանօք Բաբերդի բերդին վրայ շինութիւն ընել տուած է, անորոշ կը մնայ, ցորչափ մութ կը մնան իր պատմութիւնն եւ իր տան բախտի անդրադոյն պարագաները։ — Այսպէս Բերխեմ որ Բաբերդի պարսպի ալ քարերուն վրայ տեսնուած յունական երեւցող տառաձեւերն այլազգ կ՚ուզէ մեկնել[386]։

Մինչեւ այս ի նկատի չառինք Բաբերդի Յիշատակարանին այն մասն որ վրական-հայկական արշաւանքին եւ Վրաց ու Զաքարէի մեծ յաղթութեան կը հայի։ Յիշատակարանը Սեբաստիոյ սուլտանը կ՚ընէ «լեռնայեալ» բանակաւ Թէոդուպոլիս գալէն ետքը՝ «անտի կամեցեալ անցանել յաշխարհս Հայոց եւ Վրաց ...կամէր յաւարի առնուլ զաշխարհս ամենայն»։ Բայց «զօրքն Վրաց եւ մեծն Զաքարէ հանդերձ Իւանէիւ հարազատաւ» կը հասնի, կը յաղթեն «եւ յանխնայ կոտորեցին զնոսա», այնպէս որ թշնամիք «ի փախուստ դարձան բայց սուլտանն անվրէպ (= անվնաս) մնաց»։ Այս պատմութիւնը պէտք էր որ Վրական Տարեգրոց մէջ գտնուէր, եւ քանի որ Թամարայ դշխոյի (1184—1212) օրերուն կը հանդիպի, նաեւ շատ ընդարձակ ալ գտնուէր· քանի որ Տարեգրոց մասն՝ որ Թամարայ կը վերաբերի, ընդարձակօրէն գովասանական մըն է,

386 Բերխեմ անդ էջ 156—157։

ընական՝ վրական զօրութեան այս դաղաթնակէտին համար։ Կարնոյ դէմ արշաւանքներ դշխոյին օրով կը յիշուին քանի մ՚անգամ։ Այսպէս Թամարայ առաջին «Ռուս» ամուսնոյն օրով կը յիշուի նախ արշաւանքն «ի կողմն Կարուց եւ Կարնիփողայ» (— որ վերջինս ինչպէս պիտի տեսնենք՝ չէ Կարնոյ հովիտն, ինչպէս կը կարծուի)․ եւ անցեալ ընդ երկիրն մինչեւ ի Բասեան», յաղթութեամբ կը դառնայ։ Ըստ Բրոսէի՝ այս՝ Վարդանայ յիշած 1191 թուի արշաւանքն ըլլալու է[387]։ Անոր համար այս կամ մերձաւոր ժամանակի կը վերաբերի անկէ ետքը պատմուածն ալ թէ «ի նմին ժամանակի Ասորիք Կարնուքալաքի (= Կարնոյ քաղաքի) եւ Թուրքք Գարմիանի, հեծեալք եւ հետեւակք, եկին եւ լցին զաշխարհն Կլարջէթ․ բայց Գուգան, որդի Աբուլասանայ, արք Տայոց (Tao) եւ զօրք կողմանն, որպէս եւ Բոցոյ արքն ընդ հրամանաւ նորա եւ Մեսխաց աշխարհին, հասին ի դէպ ժամանակի՝ յարձակել ի վերայ աւարառուաց սփռելոց… յաղթեցին նոցա, դարձուցին ի փախուստ, կոտորեցին, եւ լցան բազում աւարաւ արանց եւ ձիոց» են։ «Յետ այսորիկ», կ՚ըսէ, «Մխարգրձելիձէ, որդի Սարգսի եւ Վահ-

---

[387] Brosset, Histoire de Géorgie, I, էջ 414․ ծնթ․ Vardan p. 109 indique la conquête du pays Chirac, par Zakaré et son frère, précisément en 1191, il me paraît que c'est l'expédition dont il s'agit.

րամայ, արք քաջասիրտք եւ յաջողակք ի պատերազմ, Զաքարէ՝ երիցագոյն եւ Զաքարէ, երկոքեան հռչակեալք, Սարգիս եւ Իւանէ, ոչ հռչակեալք[388], չոքան զօրու յաշխարհն Դունայ» են: Դուինի առումն Զաքարէի եւ Իւանէի ձեռօք ըստ Վարդանայ եղած է ՈԾԲ (= 1203) թուին: Ուստի այս կընար մեր փնտռած դիպաց յիշատակութիւնն ըլլալ: Սակայն չէ իրօք, այլ աւելի կանխագոյն դէպք մը, եւ արդէն պատմութեան շարունակութեան մէջ չի յիշուիր Դուինի առնուիլը, այլ թէ միայն թագաւորն «գնաց ի կողմն Դունոյ, աւերեաց զաշխարհն Պարթեւաց ձառ զքաղաքս, յաւարի ձառ զամբաւ մեծութիւնս որ էին ի նոսին» են[389]: Եւ արդէն ասկէ ետքը կը պատմուին տակաւին արշաւանքներ 1187—1192 տարեաց, թողունք այն խնդիրն ալ թէ «Կլարջէթ» ինչ միտք է հոս, ընդարձակագոյն եւ նորագոյն թէ յատուկ իմաստով: Արշաւանքս կընար կարնէն դէպ ի արդի Թորթումի ձորն եւ անկէ ալ անդին ըլլալ: Բաց աստի տակաւին ասկէ ետքը կը պատմուի, եւ այն՝ ընդարձակօրէն, թէ ինչպէս «Մուտափրադին՝ թոռն Սալդուխի, հրաժարեցաւ ի գզայական օրինաց Մահմէտի», եկաւ առ Թամար «բազմութեամբ աւագաց, խոջայից» եւ ներքինեաց, գերեաց եւ ծառայից եւ մեծամեծ

---

388 Brosset, անդ էջ 414 (իմա՛. որդի Սարգսի որդւոյ Վահրամայ):

389 Brosset, անդ էջ 415:

պարգեւներով: Կ՚ակնարկուի թէ կ՚ուզէր ամուսնանալ նոյն իսկ Թամարայ հետ, բայց մերժուեցաւ, եւ ի վերջոյ առաւ կնութեան «զդուստր հարճի միոջ, որ համարէր լինել յարքունի արենէ». եւ մեծ շքեղութեամբ հարսնիքը կատարուելով «առաքեցին ի կալուածս իւր Արզրումի»: Այս առթիւ կը յիշուի թէ «հաւ իւր (=Մուտափրադինի), Սալդուխ-Եգդին, անկեալ էր ի ձեռս մեծ արքային Դեմետրեայ»[390] եւն:

Մեր փնտռած պատմութիւնը պիտի գտնուի Թամարայ երկրորդ ամուսնոյն՝ օրով, որուն ճիշդ առաջին ժամանակը տեղի ունեցաւ մեծ ապստամբութիւնն՝ որ ընդարձակօրէն պատմուած է: Որովհետեւ առաջին ամուսինը «Թշուառական Ռուս» եկած էր Կ. Պոլսէն, «եւ եկն յաշխարհն Երզնկայ (Erzinga) եւ Կարնոյ–քաղաք (Carnou kałak) եւ անդ միաբանեցաւ ընդ նմա՝ ի սկզբանն իսկ՝ Գուզան, հրամատար Կլարջէթի եւ Շաւշէթի, հաստատեալ ի շնորհաց դշխոյին ի կայանս բնակութեան (նիստ) հինգ արքայից եւ իշխանաց («դիդեբուլ») Տայոց[391]»: Կը միաբանին նաեւ «Բոցոյ, զօրավար Սամցխեայ» եւ բազմաթիւ ուրիշները: Երկարապատում պատմութեանս մնացեալ մասը մեզի համար կարեւոր չէ հոս, թէեւ հետաքրքրական են գլխաւոր ճակատուն տեղեաց յիշատակութիւնքն ի Ջա-

390 Brosset, անդ էջ 419:

391 Brosset, անդ էջ 423—424:

ւախս, զորոնք ճշգրտել կը ջանայ Բրոսէ: Ուրիշ առթիւ յիշեցինք չարունակութեան մէջ պատմուածը թէ Այն ատեն «ապստամբեալ էր Գուզան, եւ ընդ նմա Տայոց-Կար (Դուռն), Վաշլովան եւ բազում այլ ամուրք, եւ գնացեալ էր յաշխարհն Շահի Արմէնի» էն[392]: — Տակաւին կանխագոյն է նաեւ ուրիշ արշաւանք մ'ընդդէմ Կարնոյ, որ նոյնպէս ընդարձակ պատմուած է: Թամարայ դստեր ծնանելու տարին (ըստ Բրոսէի՝ 1195) արշաւանք մը կ'ըլլայ «ընդդէմ մեծ եւ հին քաղաքին Պարտաւ (Barda) եւ «այրացաւեր արարին զԱռան (Ran) սաստիկ պատերազմօք տիրեցին կալուածոց Պարտոս (Bardos), որդւոյ Հայկայ (Hasr), որդւոյ հնոյ Ներբովթի», եւս հազիւ հանգստացեալք զամիս մի՝ աճապարեցին երթալ արշաւել ընդդէմ Կարնոյ («Արզրում»), ի դրունս Կարնոյ-քաղաքի[393]»: «Ի բազում մարտս, ի սաստիկ կռիւս, եւ ի գուպարածս՝ որ եղեն անդ, ունէին օգնականս զգլխաւորս Սուրմանայ, զԿարուց եւ զՍպերի: Ի քաղաքին էր Նասր-էդ-Դին, որդի Սալդուխի, որպէս եւ երկու որդիք նորա եւ բազմութիւն զօրաց, հետեւակ եւ հեծեալ» էն: Երկար նկարագրութեան արդիւնքն այն է որ՝ թշնամիք Կարին կ'ապաստանին, եւ վրացիք աւարաւ կը դառնան: Պատմութեանս բուն պատճառն ան-

392 Brosset, անդ էջ 431:

393 Brosset, անդ էջ 432:

որոշ էր։ Թերեւս Կարնոյ տէրը փորձ ըրած էր Թորթում գրաւել եւ թերեւս նաեւ զՍպեր, որով կը շեշտուի Սպերի մասնակցիլը Վրաց արշաւանքին։ — Կը յաջորդեն երկար մասեր՝ որ արեւելից կողմանց կը վերաբերին եւ որոնք կը հասնին մինչեւ 1202/3 տարիները, յատկապէս Գանձակի առումն, եւ այս առթիւ կը յիշուի Թամարայ ընծայաբերութիւնքն Խախուայ Աստուածամօր[394]։ Երկար են — եւ անճահ միջադէպերով, սրբապիղծ փորձով մ'իսկ Ս. Հաղորդութիւնը չան մը տալու — վրական եւ հայ եկեղեցեաց միութեան փորձեր եւ վիճմունքն, որոնց արդիւնքն էր որ «Իւանէ ընկալաւ զմկրտութիւն ըստ կրօնից մերոց», նոյնպէս «բազումք ի Հայոց». բայց «Զաքարէ մնաց ի հաւատս իւր[395]», յիշելով Վարձիայ՝ աւարումն[396], կու գայ ի վերջոյ այն մասն, որ ստուգիւ մեր փնտռած պատմութիւնն է։

Կանխաւ կը գրուի Կարսի առման պատմութիւնն, «զոր մինչեւ այն օր Թուրքերը գրաւած ունէին», զոր կու տայ Թամար Յովհաննու Ախալցխացւոյ՝ սահմանապահ եւ աթաբեկ անուանելով, «Թուրքերը կը դիմեն «խալիփայ»ին» որ զօնէ բարեխօսէ որ հարկ միայն տան, եւ այլեւս արշաւանքներ

394 Brosset, անդ էջ 446։
395 Brosset, անդ էջ 450—454։
396 Brosset, անդ էջ 455։

չընէ[397]։ Եւ կարծես իբր շարունակութիւն նախընթացին կը սկսի մեր արշաւանաց պատմութիւնը բառերովս։ «Այսպիսի էին նաեւ տրտունջք մեծի սելճուկեան սուլտանի», Նուքարդին, ևն։ Սակայն այս պարագան պէտք չէ որ պատրէ զմեզ։ Կարսի առումն ըստ Վարդանայ՝ էր ՈԾԵ (= 1206) թուին[398], եւ այս շատ ուշ է, ոչ միայն Ռուքնէդդինի (— այս է «Նուքարդին») որեւէ արշաւանքի մը համար, քանի որ մեռած է 1203ին, այլ նաեւ Բաբերդի Յիշատակարանին համեմատ, որ գրուած է 1204/5։ Ըստ դիպաց է ուրեմն որ Վրական Տարեգիրք Կարուց առմանէ ետքը կը պատմեն նոյն դէպքն, որ Վախուշտի հաշուին համեմատ եղած ըլլալու է 1196ի, (բայց ասոր ալ թուականներն այս շրջանին կը կանխեն քանի մը տարիով)։ Իսկ Բրոսէ կը դնէ իբր 1212ին[399]։ Ցամենայն դէպս Բաբերդի Յիշատակարանը, որ պատմած էր Վրաց այս յաղթութիւնը, նոյնպէս (— մէկ երկու բացատրութիւնք ճշդիւ այնպէս կան Տարեգրոց մէջ ալ —), նոյնը կը դնէր՝ ինչպէս վերը ի յիշեցինք, Սուլէյմանի դէպ ի Կարին արշաւելուն հետ, իբր 1200/1 տարին, համեմատ միւս հաշիւներուն։ Եւ արդէն Տարեգիրքն ալ նոյնը կ՚ըսէ ի վերջոյ։ «Նուրադինի» հետ է արշաւանքիս մէջ «բայց բռնադատեալ եւ առ

---

397 Brosset, անդ էջ 456։

398 Վարդան, Պատմ. Վենետիկ 1862, էջ 138։

399 Brosset, անդ էջ 456—57։

երկիւղի» նաեւ «որդի Սալդուխի, տէր Կարնոյ քաղաքի, որում հատոյց զփոխարէն վաստակոցն (ծառայութեան)՝ հանեալ ի նմանէ զքաղաքն եւ եդեալ անդ զեղբայր իւր հարազատ»: Քանի որ Տուղրիլ-շահի Կարնոյ տէր դրուիլն եղած է 1200/1ի, այս միջոցին է պատմութիւնս ալ:

Դառնալով պատմուածքին՝ այս չափազանց երկարաբան է. Բրոսէի մեծադիր գործոյն գրեթէ վեց էջերը կը բռնէ[400]: Բայց այս երկարութիւնն մասամբ ճարտարախօսական է, եւ էական կէտերը կրնանք ամփոփել հետեւեալ կերպով, դնելով նախ բառացի սկզբան մասը որ գաղափար մը կու տայ պատմութեան ոճին ալ: «Այսպիսի է, կ՚ըսէ, նաեւ տրտունջք մեծի սելճուկեան սուլտանի Հոռոմոց Նուկարդինն (= Ռուքն-էդդին), որդի Զարասլանայ (= Քլըճ-Արսլան), որ մեծագոյնն էր ի սուլտանս, իշխեալ ի Մեծ-Հոռոմս, յԱսիա եւ ի Գամիրս, մինչեւ ի Սեաւ Ծով: Կերպարանեալ զնենգութիւն իւր կերպարանօք բարեկամութեան, բազում անգամ առաքէր դեսպանս՝ խնդրել զխաղաղութիւն, եւ ընծայս բազումս եւ գեղեցիկս: Ըստ նմին օրինակի առնէր Թամար եւ առաքէր ընծայիւք զդեսպանս, որ այնպէս կոչէին, քանզի նա կեղծաւորէր թագուցանել զնենգութիւնս իւր եւ խորհէր միայն լրտեսել զաշխարհս մեր:

---

400 Brosset, անդ էջ 458—62:

*Վաղվաղակի ժողովէր զօրս բազումս, զումարէր ութսուն բիւրս արանց կամ* 800·000 *զօրականս. բացեալ զգանձս հաւր եւ հաւուն իւրոյ՝ եհան արծաթ եւ տռաքեաց արս հանդերձ ոսկւով՝ ժողովել զօրս, հրաման տուեալ հատուցանել կրկնապատիկ զվարձսն: Դիմեցին մարդիկ յամենայն աշխարհաց իւրոց, ի Միջագետաց, ի Կալոներոյ, ի Գաղատիայ, ի Գանդրոյ, յԱնկիւրիայ, յԻսաւրիայ, ի Կապպադովկիայ, ի Հայոց-Մեծաց, ի Բիւթանիայ, ի սահմանաց Պափղագոնեայ, եւ տուեալ զէնս ի ձեռս ամենայն մարդոյ՝ ոչ թողին յամենայն գեղջ բայց միայն զկանայս: Իսկ ինքն աճապարեալ երթայր յաշխարհն* Թուրքաց ուր[401], *որք հուչակաւորքն էին քաջութեամբ ի մարտս, եւ բազմութիւնք իբրեւ զմարախ կամ զմրջիւն: Տայր նոցա ոսկի այնչափ եւ դարձեալ ընծայս, մինչեւ էառ ի նոցանէ հեծեալս իբրեւ* 100·000 *կազմս եւ վառեալս: Ցուել իւր դարձեալ օգնականս*, բայց բռնադատեալ եւ առ Երկիւղի, եւ զարս Երզնկայ (Erzinga) *եւ* զԽարբերդի (Khalpherd), զորդին Սալդուխի զտէրն Կարնոյ-քաղաքի, *որում հատոյց զփոխարէնս* վաստակոց (*ծառայութեան*)՝ հանեալ ի նմանէ զքաղաքն զայն եւ եդեալ անդ զեղբայր իւր հարազատ»: *Ողնիի առակ մը յիշելէն ետքը՝ կը շարունակուի. «այսպէս արար Նուկարդին: Իբրեւ*

[401] Brosset, *անդ էջ* 457:

ետես զայնչափ բազմութիւն զօրաց ժողովե-
լոց, ամբարտաւանեալ ի սրտի իւրում իբրեւ
զՄենեքերիմ եւ յարեաւ ընդդէմ Աստուծոյ:
Առ ոտն կոխեալ զառաջին եւ զնենգաւոր երդ-
մունս իւր, զխոստմունս բարեկամութեան եւ
յետս դարձուցեալ զերեսս իւր՝ չոքաւ ի Սե-
բաստէ, եւ սկսանէր անդ կազմել զմենքե-
նայս պատերազմի: Ապա այնուհետեւ առաքէ
պատգամաւորութիւն առ Թամար, պատ-
գամս. «Ես Նուքարդին, մեծազոյնն ի սուլ-
տանս ընդ երկնիւք, նման հրեշտակաց» եւն:
Նամակս այնպէս անճահ դարձուածներ ունի,
որ դժուարաւ հարազատ ըլլայ, ինչպէս չէ
անշուշտ նաեւ Թամարայ պատասխանն. եւ
առհասարակ գրութեանս կերպը կը ցուցնէ
որ մանրամասնութեանց մէջ միշտ ապահով
չենք՝ պատմական ըլլալուն: Պատմակա՞ն է
օրինակի համար այն պարագան թէ երբ
դեսպանը Թագուհւոյն առջեւ յանդուգն խօսք
մ՚ըսաւ, «Զաքարիա սպարապետ ապտակեց
զայն եւ կիսամահ գետին տապալեց», եւն:
Զիարդ եւ իցէ Թամար «հրաման ետ ժողո-
վելոց զօրաց իւրոց յերկուց կողմանց լերին
Լիխ, ի Նիկոփսեայ մինչեւ ցԴարբանդ». եւ
«հասեալ ի Ջաւախս, չոքան առանց յապա-
ղելոյ յեկեղեցին Ամենասուրբ Աստուածա-
մօր ի Վարձիա, որում արտասուօք յանձն
արար դշխոյն զԴաւիթ-Սոսլան (իւր այրը)
եւ զզօրս իւր». անկէ կը մեկնին «մինչեւ ի
Բասեան», ուր «եւ հասեալ մերձ ի Կարս,
եկաց դշխոյն՝ հեռի միոյ աւուր գնաց ճանա-

պարհի» եւ անկէ ուղարկեց իւր պատասխանի նամակը: Դշխոյն կ'ելլէ «ի տեղի մի բարձր, ուստի կարէր տեսանել զամենայն» եւ «կոչեցեալ զամենայն աւագս եւ հրամայեալ իւրաքանչիւր յիշխանաց՝ երթալ երկիր պագանել եւ համբուրել զխաչն սուրբ, եկին նոքա մի ըստ միոջէ, աղօթս անել արտասուօք եւ երկիր պագանել նշանին փրկութեան, համբուրել, եւ եդել նաեւ ի ձեռն Թամարայ, եւ արարին զկտակս իւրեանց առաջի նորա, վասն տանց իւրոց, վասն որդւոց իւրոց եւ դստերաց իւրոց. զի զխաչն ունէր ի միոջէ կողմանէ դշխոյն եւ միւսմէ կողմանէ՝ երէց դրան Բասիլի եւ խաչակիրն: Իբրեւ կատարեցաւ երկրպագութիւնն հասարակաց, առ դշխոյն զսուրբ փայտն ի ձեռս իւր, եւ արար զնշան խաչի երիցս յամենայն կողմանս, մինչդեռ արքն հեծանէին ի ձիս» եւն: Ցամենայն դէպս հետաքրքրական նկարագրութիւն մըն է այս: «Ի յառաջապահս էին սպարապետն Զաքարիա «Մխարգրձէլ», եւ երկոքին եղբարք Շալուա եւ Իւանէ յԱխալ-Ցխայ, թէպէտ եւ առաջինն էր գլուխ հրամանատարաց, Ջիարեր եւ այլք ի Թորայցւոց, եւ չուեցին ի Բասեան»: Թագուհին կը դառնայ ի Սամցխէ եւ կ'երթայ յՕձըրխէ, ուր իւր քովն էին «Թեւդորէ կաթողիկոս Քարթլեաց» եւ Յովհաննէս Շաւթէլ կամ Շաւչէթցի[402]:

---

[402] Brosset, անդ էջ 460:

«Իբրեւ հասին Վիրք ի Բասեան, գտին
անդ զսուլտան, բանակեալ ի տեղւոջ որ
կոչի Բոլորսիտեկ (կամ Բոլորցի)․ իբրեւ
մերձեցան ի բանակն, տեսին առանց թուոյ
ձիս, ջորիս, ուղտս, վրանս եւ տապաստակս,
կարգեալ զամենայն այնպէս խառնիխուռն,
մինչեւ չկարէր գաշտն բաւական լինել վասն
վրանացն եւ սուլտանն էր առանց պահակաց:
Ի ճակատ կազմեցան Վիրք: Զաքարիա
Մխարգրձէլ, Շալուա եւ Իւանէ յԱխալ-
Ցիխեայ եւ այլ Թորացիք առին զյառաջա-
պահսն․ ի միում կողման կային Ափխազք եւ
Իմերացիք, ի միւսում՝ Քարթլացիք, Կախէ-
թացիք եւ Հերէթացիք: Իբրեւ նշմարեցին
զսուլտանն՝ խաղացին յառաջ՝ ճեպեալ սա-
կաւիկ մի զընթացս երիվարաց, զայս տե-
սեալ թշնամեաց՝ դղրդեցան, եռուն ածել
զերիվարս իւրեանց եւ հեծան ի ձիս: Թողեալ
զվրանս եւ զաղխս եւ ելեալ ի ճամբարէ՝ կար-
գեցան ի ճակատ, եւ յառաջապահք երկուց
կողմանց մերձ առ միմեանս լինէին: Իբրեւ
տեսին Պարսք եթէ յառաջ խաղան առանց
վարանելոյ՝ թողին զբանակետղն եւ չողան ի
տեղի ամրագոյն, զահի հարեալք երկիւղիւ՝
որ պաշարեաց զնոսա յերկնից: Տեսեալ
քրիստոնէից զընկրկել նոցա՝ յարձակեցան,
արգելին զնոսա ի խուսափելոյ, պատե-
ցին զնոքօք․ դղրդեցաւ մարտ խիստ եւ
սաստիկ, որ յերկարէր, եւ բազումք կորեան
յերկուց կողմանց, բայց առաւել յոյժ նոքին
էին՝ որ անկան ի կողմանէ սուլտանին: Այն-

չափ յերկարէին խառնուրդք ճակատուն, մինչեւ սպանան երիվարք Իւանեայ՝ գլխաւորի «մսախուր»աց, Զաքարեայ, Գրիգոլի (Grigol.) Շալուեայ եւ Իւանեայ յԱխալՑիխեայ, Թայէդինեայ Թորղացւոյ առն աներկիւղի, որպէս եւ բազմաց այլոց իշխանաց («Թաւատ»աց) եւ Վիրք մազկունչ մերձ էին ի դարձուցանել զԹիկունս: Այլ քաջքն այնոքիկ մնացին ի հետիոտս ի մէջ պատերազմողաց. բայց զօրականք, ի տեսանել զիշխանս իւրեանց ընկեցեալս յերիվարաց, զոգիս ի բուռն առեալ յանձն առին զմահ եւ իջեալք յերիվարաց՝ խմբեցան զնոքօք եւ ինքեանք ի հետիոտս, եւ սկսանէին խառնուրդք անհնարին դժնդակ: Զայս իբրեւ տեսանէր՝ քաջն Դաւիթ խոյս տայր յահեակ, եւ Զաքարիա Մխարգրձէլ նոյնպէս սա առնէր՝ յաջ: Հեռացան ի միմեանց Վիրք, զի մի որք ի հետիոտսն էին՝ խորտակեսցին յայրուձիոյն, եւ դիմեցին դէպուղիղ ի վերայ Պարսից: Վաղվաղակի յարձակէր Դաւիթ–Սոսլան ի միոջէ կողմանէ եւ Զաքարիա Մխարգըրձէլ՝ ի միւսմէ. անկան ի վերայ անհամար բանակի սուլտանին իբրեւ գգայլս ի վերայ ոչխարաց: Անդէն ի սկզբան իսկ յարձակելոյ ի բախել իսկ սուսերաց, անսպառ բարութիւն Աստուծոյ՝ հայեցեալ ի նոսա՝ որ յուսացին ի խաչն եւ յԱստուածամայրն Վարձիայ, կամեցաւ բարձրացուցանել զփառս Դաւիթի եւ զԹամարայ, յանկարծակի քակ-

տէր բազմութիւնն առանց թուոյ, պարտեալ լինէր եւ փախուցեալ ցրուէր. մարթ էր ասել՝ մայրի ամբաւ խլեալ հանդերձ հողով եւ կործանեալ: Որչափ աչք զօրէին ի տեսանել՝ ամենայն ուրեք տեսանէր անտառ զօրաց փախուցելոց»:

Միջանկեալ կը պատմուի տեսիլ մը զոր յաղթութեանս մասին ունեցած էր նոյն ժամուն «Եւլոգի Շուէթէլ», որ այնուհետեւ փախան եւ Արագանի լեռն անցան: Նշանակեցին, կ՚ըսէ, օրն ու ժամը եւ «կատարուեցաւ մարգարէութիւնը», եւն: Յաղթութեան նկարագրութիւնը կը շարունակուի եւ կը վերջանայ այսպէս. «բայց Վիրք, իբրեւ տեսին զթշնամիս ի փախուստ դարձեալ՝ նստան յերիվարս եւ սկսան հալածել զնոսին, կոտորել, տապաստ արկանել եւ գերել զնոսին: Սոքա ա՛յնչափ էին բազմութեամբ մինչեւ չկարէին սփռեալ ցրուել, այլ զմիմեանս առաթուր կոխէին: Իսկ ի յաղթողաց, որոց պաշտպանէր Աստուած յայտ յանդիման, ոչ մեռան եւ ո՛չ այր մի ի նշանաւորաց որ ծանօթական էին արքայի: Արդ այսչափ անհամար բազմութիւն թշնամեաց դարձուցեալ զթիկունս փախեան առաջի զօրաց Թամարայ, որոց պաշտպանէր աստուածեղէն բարութիւն ընդդէմ հարուածոց նոցին, որ եւ մատնեաց իսկ զՊարսս ի ձեռս նոցա: Աքանչելիք իմն էին տեսանել զբարբարոսս՝ որք զերծեալք ի սրոյ՝ օգնական լինէին ի կապել զընկերս իւրեանց: Աւագն իսկ ի նոցանէ

կապեալ գերէր ի Թշնամեաց միջէ. ականաւորն իսկ ի նոցանէ գնայր կապեալ ի գէսս երիվարի վրացւոյ միոյ. ողայ մի հերով խըրով կապէր զարս պատերազմողս: Վարէին զնոսա իբրեւ զուլս, ընդոստուցու- ցանէին յամենայն տեղիս. կոտորէին ի փախչել նոցա եւ զփախուցեալս ժողովէին իբրեւ զճագս հաւու. սակայն Թոյլ ետուն բազմաց յոյժ երԹալ, զի հազիւ գտանէր մի՝ ի վարել հարիւր գերիս»․ ...«Իբրեւ գործն այսպէս վճարէր, անկան ի վերայ աղխի Թշնամւոյն, եւ առանց հաշուելոյ էր մեծու- Թիւնս յանօԹս ոսկւոյ եւ արծաԹոյն՝ զտա- նէին անդէն անբաւ բազմուԹեամբ պաս- տառք, բաժակք յոսկւոյ, պնակք զարդա- զարեալք ակամբք պատուականօք եւ մար- գարտօք, տաշտք, չիշք, կաԹսայք, մեծու- Թիւն աւարի զժուարին ի հաւատալ: Իսկ զձիոց, զջորեաց, զուղտուց, զվրանաց, զօԹոցայ, զորս առին, ո՞ կարասցէ ասել զԹիւ համարոյ[403]. զի բանակն զեղոյր մե- ծուԹեամբք: Կալեալ զայսպիսի յաղԹու- Թիւն՝ դարձան Վիրք նստել ի վրանս Թշնա- մեաց, գոհացեալ զԱստուծոյ. յետ այնորիկ քաղաքացիք Տփղեաց զարդարեցին զքա- ղաքն, յոր մտին Թամար եւ ԴաւիԹ, փայլեալ իբրեւ զարեգակն: Զկնի զրօշու Նուքարդինի երԹայր նախ հրամատարն Երզնկայ, ապա այլք ի նշանաւոր արանց, յորոց զոմանս

[403] Brosset, անդ էջ 462:

ցուցանէր Թամար՝ երեւել առաջի իւր: Խօսեցաւ բանս մխիթարութեան առ ամենեսին, կոչեաց զնոսա ի մեծահաց խնճոյս եւ ետ պարգեւս իւրաքանչիւր ըստ աստիճանի, ապա այնուհետեւ բաժանեաց յայլեւայլ ամուրս, ի բաց առեալ զտէր Երզնկայ՝ զոր կալաւ բանտարգել ի Տփղիս, վասն հնոյ զօղի մեծարանաց եւ բարեկամութեան: Ապա ուրեմն զայս այր այսչափ մեծ եւ այսչափ ականաւոր վաճառէր դշխոյն ընդ միոյ երկաթի ձիոյ, զոր արար վասն փառաց եւ պատուոյ տան իւրոյ, որպիսի ինչ չէր լեալ յառաջին ժամանակաց իսկ հետէ, եւ որով կամեցաւ անմահ թողուլ զյիշատակ իւր»: Տակաւին քիչ մ'ալ կը շարունակուի այն ճոխութեան մասին՝ որ տիրեց արքունի գանձուն եւ տան, բայց նաեւ եկեղեցեաց ու առանձնականաց: Այս կտորն ալ կրնանք նկատել՝ գոնէ մասամբ՝ իբր արդիւնք նկարագրութեան աւարին. բայց նաեւ ընդհանրապէս Թամարայ օրով տիրած բարօրութեան[404]:

Այս պատմութիւնը յառաջ բերինք ընդարձակօրէն թէ՛ որովհետեւ անհրաժեշտ էր Յիշատակարանիս պատմածը վրական աղբիւրին համեմատ ալ տեսնել, եւ թէ նաեւ գաղափար մը տալու Տարեգրոց այլեւայլ (աւելի անաղանագոյն) մասանց խմբագրութեան մասին, քանի որ վերջինս յաճախ

404 Brosset, անդ. էջ 467:

առիթ պիտի ունենանք յառաջ բերելու: Զհաշուելով ճարտարախօսական մասերն ու չափազանցութիւնք, կարեւոր աղբիւր մըն է. եւ ցաւալի է որ հետաքրքրական մանրամասնութիւնք հարեւանցի միայն ակնարկուած են — վրական տեսակէտով անկարեւոր ըլլալով — օրինակի համար ճիշդ այն Երզնկայի ամիրային անունը, նոյնպէս վաճառման միւս պարագաները:

Բաբերդի այս չորրորդ արձանագրութիւնը քաղաքական տարբեր պարագաներ կը ցուցնէ քան նախընթացները, որ Կարնոյ տերանց կողմանէ արձանագրուած են: Իսկ Երզնկայ եւ շրջակայք մեծ դեր կը խաղան այս դարուս ընթացքին մէջ, ասպարէզ ըլլալով երկու որոշիչ ճակատամարտներու, որոնց երկրորդը մահացու հարուած էր Ղոնիոյ սուլտանութեան համար ալ: Ալադին, զոր յիշեցինք, Ղոնիոյ ամենամեծ սուլտանն էր, որուն օրով այն իշխանութիւնը գագաթնակէտին հասաւ: Բայց իւր օրն արդէն սկսած էր այն փոթորիկն, որ հիմնիվայր պիտի տապալէր ամէն ինչ եւ քարուքանդ պիտի ընէր զՀայաստան: Ճինկիզխանի (մեռած 1227) հրոսակներն արդէն սկսած էին տապալել միակ թումբը՝ որ մոնղոլական-թաթարական արշաւանքի դէմ կանգնած էր, Խորազմի իշխանութիւնը, որուն շահք դահազուրկ կրցած էին ընել Պարսկաստանի երբեմնի ահարկու Սելճուկեան հարստութիւնը (որոնց վերջինն էր Տուղրիլ Գ, 1175—

1192)։ Մոնղոլեան հեղեղն Պարսկաստանէ անցաւ Հայաստան ու արեւմուտք ալ, եւ անոր բախտն ալ այնուհետեւ միջոց մ'անոնց ձեռքն էր որ Պարսկաստանի տէր եղան «իլ-խան» յորջորջանօք, որոնց առաջին՝ բուն մեծ խանէ ալ՝ անկախ վեհապետը կրնանք ըսել զՀուլագու (1256—1265), մեր մատենագրաց «Հոլաւու», «Հուլաւու», «Հուլաղու» են։ Բնականապէս լի են մեր մատենագիրք ու յիշատակագիրք ալ այս աւերման շրջանի յիշատակօք։ Ալադինի օրով է ի վերջոյ որ Հայաստան ոտք կոխեցին նաեւ օսմանեանց նախահարք։ Սուլէյմանայ նախահաւուն հետ Խորասանէ եկողները յիսուն հազար կ'ըսուին, որոնք ճշդիւ Երզնկայի շրջակայքը բնակեցան, սփռելով նաեւ մինչեւ Խլաթու մօտերը։ Բայց Ճինկիզխանի մահուանէ եօթ տարի ետքը մեռնելով Սուլէյման, որ Խորասան կը դառնար, իւրայինք ցրուեցան մասամբ յԱսորիս, եւ մաս մը Հայաստան։ Իւր որդւոց ալ երիցագոյնք դարձան Խորասան. բայց Էրթօղրուլ բնակեցաւ նախ Բասենոյ դաշտն, եւ անկէ անցնելով Ղոնիոյ Ալայեդին սուլտանին ծառայութեան, ընդունեցաւ զԿարաճատաղ, եւ քիչ մ'ետքն տէր պիտի ըլլար փոքր երկրի մը զոր արդէն իւր Օսման որդին պիտի ընդարձակէր եւ հիմնէր ապագայ օսմանեան պետութիւնը։ Ալադին սակայն չտեսաւ այս օրերը, եւ ընդհակառակն իւր ճոխութիւնը կրցաւ մինչեւ ան-

կամ արդեւք ըլլալ այն հեղեղին առթած առաջին ալեաց։ Խորազմի վերջին շահը՝ Ջելալէդդին (մերոց Ջալալադին) Մինկ–բերնի ստիպուած էր ամբողջ զօրութեամբ դէպի արեւմուտք դիմել։ Այս հեղեղն ալ յաջորդող Թաթարականէն նուազ աւերիչ չէ եղած, եւ օրինակի համար այն նկարագրութիւնը, զոր կու տայ Կիրակոս Տփղեաց առման առթիւ, — փողոցի վրայ իսկ բռնի զամէնքը կը թլփատէին եւն — կը մեկնէ որ ուղղակի «չար» կը կոչուի[405]։ Ջալալադին ի մէջի այլոց առած է զԽլաթ, որուն այն ժամանակի տէրը «շահի–արմէն» տիտղոսով ալ՝ ազգական էր Ալադինի։ Խլաթ ինկած էր Նփրկերտի տերանց ձեռքը, որոնցմէ Մալիք Աւհատ Այուբի տնէ (1201—1210) տիրած էր Խլաթայ 1207ին, եւ «շահի արմէն» տիտղոսն առած, ասկէ ալ կայ արձանագրութիւն ի Նփրկերտ[406]։ Ասոր եղբայրը եւ յաջորդը՝ Մալիք Աշրաֆ Մուզա, զոր վերը յիշեցինք, նոյնպէս տէր էր Խլաթայ (1210/11ին) եւ «շահի արմէն», եւ ըստ ազգային պատմագրաց կին ունէր զԹամթա՝ Իւանէի դուստրը[407]։ Այս Աշրաֆէ առաւ Ջալա–

---

405 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, աշխատասիրութեամբ Կ. Մելիք–Օհանջանեանի, Երեւան 1961, էջ 226։

406 Բերխեմ, Արաբական Արձանագրութիւն, էջ 151—157։

407 Կիրակոս, անդ էջ 165, 228, 292. Վարդան, Պատմ. էջ 138։

լադին զԹլաթ, եւ «անկէ արշաւեց խակ աւելի անդին «երկիրները» սուլտանին Հոոմոց, զոր «Ալադինն կոչէին[408]»: Ալադին եւ իւր դաշնակիցք, սոոնց մէջ Աշրափ Մուսայ «տէր Միջագետաց եւ Հայաստանի», ամենամեծ ճակատը, «որ խալամական պատմութեան մէջ կը յիշուի», տուին Երզնկայի մօտ, տեղ մը որ «Նիսի Ջէմէն» կը կոչուի, եւ ամենամեծ յաղթութիւն մը տարին (1229): Ըստ մեր պատմչաց յաղթութիւնը բուն գործած էին զօրք «ի Հայոց եւ ի Փռանկաց», որ օգնական եկած էին. եւ այս առթիւ հետաքրքրական միջադէպ մը կը պատմուի Ալադինի կեսարիա դառնալու առեն՝ սիրալիր վարմունքը հանդէպ քրիստոնէից[409]: Յաջող էր նաեւ ընդդէմ Մելիք Քեամիլի (մերոնց «Քէմլ»), Եգիպտոսի տիրոջ իւր երբեմնի դաշնակցին, որ զէնքը դարձուց Ալադինի դէմ, եւ Համայի իշխանն որ մինչեւ Խարբերդ հասած էր՝ պաշարուեցաւ եւ անձնատուր եղաւ, եւ Ալադին առաւ նոյն խակ զԽառան եւն (1234): Կանխաւ գրաւած էր դարձեալ զԽլաթ (1233). ինչպէս առաւ զԵրզնկայ, զՔմշկածագ եւն: Իսկ իբրեւ շինարար իշխան եւ տածիչ գիտութեանց՝ բազմաթիւ մեծ շինութիւններ ըրած է, մանաւանդ Գոնիա, Սեբաստիա եւ Ամասիա: Իւր շինութեանց մէջ կը յիշուի յատկապէս իւր

---

[408] Կիրակոս անդ էջ 228:

[409] Կիրակոս, անդ էջ 228—29:

անունը կրող «Կոբատիյէ», որ «Երզնկայի մօտ» կ՚ըսուի, բայց նաեւ «Կարնոյ մօտ», որով ըստ երեւութին երկուքին միջեւ տեղ մըն էր. Հոս «մերձ ի Կարին» այն «Կոբատիյէ» պալատին մէջ մեռաւ Թունաւորուելով իր իսկ որդւոյն ձեռօք (1236): Ասոր՝ Ղայաս-էդ-Դին Կայխոսրով Բ.ի (1236—1245) օրով արդէն Մոնղոլական հեղեղը հասած էր սուլտանութեանս դռները: Բաչու (Բայչու) մեծ բանակաւ «զնաց յաշխարհն Հայոց, որ ընդ իշխանութեամբ սուլտանին Հոռոմոց եւ հասեալ ի Կարին քաղաք՝ պաշարեաց զնա (զքաղաքն) որ այժմ կոչի Թէոդուպօլիս[410]»: Քաղաքը պարսպաւոր եւ ամուր՝ դիմադրեց, եւ կը նկարագրուի Կիրակոսէ իբր շատ բազմամարդ, ուր ապաստանած էին նաեւ «ամենայն գաւառն»: Բայց առնուեցաւ, եւ «ոչ թէ միայն զքաղաքն Կարնոյ աւերեցին, այլ եւ զբազում գաւառս յիշխանութենէ սուլտանին»: Հետաքրքրական պարագայ մը կու տայ Կիրակոս: Քաղաքը լի էր «անթիւ» հայ ձեռագիրներով, եւ զանոնք Թաթար բանակին մէջ եղող հայ իշխանք գնեցին եւ ուղարկեցին իրենց գաւառները՝ բաշխելու եկեղեցիները[411]: Այս

410 Կիրակոս, անդ էջ 279:

411 Կիրակոս, անդ էջ 279—80. «Անթիւ գոյին անդ կտակարանք աստուածային գրոց՝ մեծամեծաց եւ փոքունց, զայն առեալ այլազգեացն՝ ծախէին քրիստոնէիցն, որ ի զօրուն էին, զյաճախագինն ընդ դոյզն գնոց: Եւ նոցա խնդութեամբ առեալ, սփռեցին յիս-

եղած է ՈՂԱ (= 1242) թուին։ Յաջորդ տարին է որոշիչ ճակատը, զոր ի մերոց նկարագրած է նոյն Կիրակոս պատմիչ։ Երզնկայի քով մղուած այս ճակատն, ուր Ղոնիոյ սուլտանի բանակը ջախջախիչ պարտութիւն կրեց եւ սարսափահար փախաւ ու ցրուեցաւ, եղած կ՚ըսուի «հուպ ի քաղաքադիւղ մի՝ զոր Չման-Կատուկն անուանեն»[412]։ Կեսարիա պաշարուեցաւ, եւ առնուելով «ի սուր սուսերի մաշեցին զբնակիչսն», եւ «թողեալ ամայի զքաղաքն»։ Սեբաստիա անձնատուր ըլլալով՝ այս անգամ միայն աւարի առնուեցաւ, բայց «մարդոյ ինչ ոչ մեղան»։ Սաստիկ էր կոտորածն Երզնկայի, որ դիմադրեց, բայց խաբէութեամբ առնուելով, «կոտորեցին առհասարակ զարս եւ զկանայս, եւ սակաւ մանկունս եւ աղջկունս ապրեցուցեալ՝ վարեցին ի գերութիւն եւ ստրկութիւն»։ Վերջապէս «բազում գաւառս եւ աշխարհս աւերեալ եւ գերեալ եկին ի քաղաքն որ կոչի Տիւրիկէ», որ անձնատուր ըլլալով՝ միայն «առեալ ինչս բազումս թողին զքաղաքն առանց վնասու» (ՈՂԲ = 1243)։ Միւս տարին «ի մտանել ամին երկրորդի փախուցանելոյ զՂիաժատին սուլտանն», առնուեցաւ Խլաթ (— որ տրուեցաւ ըստ Կիրակոսի Նորէն Թամթայ տիկնոջ)․ ինչպէս Ամիթ եւն, եւ «տան հրաման վասն շինութեան

---

րաքանչիւր գաւառ, բաշխելով յեկեղեցիս եւ ի վանորայս»։

412 Կիրակոս, անդ էջ 282։

կարնոյ[413]»: Հետեւութիւնն ինքնին կրնայ գուշակուիլ: Մոնղոլք տէր եղան Հայաստանի, բայց նաեւ իրական տէր Ղոնիոյ սուլտանութեան, որչափ ալ սուլտանութեան ստուերը շարունակուեցաւ նոյն դարուն: Ղիաթէդդին ստիպուած էր հպատակութիւն յայտնել, որուն վրայ իր ամիրաները բարկանալով խեղդամահ ըրին, դահ հանելով իր երեք անչափահաս որդիները Ազզէդդին Կայկաւուս Բ. (1245—1266), Ալա-էդ-դին Կայկոբատ Բ. (1245—1254) եւ Ռոքնէդդին Ղլըճ-Ասլան Դ. (1245—1267): Ներքին խռովութիւններ ի հարկէ անպակաս էին: Եւ երբ Հուլաղու առնելով զԲաղդատ» վերջ տուաւ խալիֆայութեան (1258)[414], ստիպուած էին Ազզէդին եւ Ռոքնէդին Հուլաղուի երթալ՝ իր արեւելից իրական տիրոջ՝ առնելու անոր հրամանները: Հուլաղու թէեւ իրենց դահը դարձուց զանոնք, բայց նաեւ հազարապետ տնտես դրաւ սուլտանութեան իր վեզիրը՝ Սուլէյման Պերվանէ: Երկու եղբարքս ալ անմիաբան եղան, եւ Ազզէդին ստիպուած էր ապաստանիլ նախ ի Կ. Պոլիս եւ անկէ Ղրիմի Բէրկէ-խանի քով, ուր մեռաւ: Ռոքնէդդին ալ Հուլաղուի յաջորդին Աբաղայի (1265—1281) հրամանաւ խեղդամահ եղաւ Պերվանէի ձեռօք, եւ դահ հանուեցաւ չորեքամեայ որդին Ղիաթէդդին Կայխոսրով Գ.

---

413 Կիրակոս, անդ էջ 292—293:

414 Կիրակոս, անդ էջ 377—384. Վարդան, Պատմութիւն, էջ 150:

(1267—1283) որ ի հարկէ սուտեր մըն էր իշխանութեան: Ներքին քայքայումն այնչափ էր որ Մոհամմէդ բէկ, Կարամանի որդին եւ նոյն տան իշխանութեան հիմնադիրը, կրնար հասարակ Թուրք մը, Ճէմրի անուն, պատրուակել իբր Թէ ի Խրիմ մեռնող Ազզէդինի որդին ըլլայ եւ անոր անուամբ գրաւել մայրաքաղաքն ու իշխանութիւնը: Կայխոսրով Գ. եւ իւր հօրեղբօրորդին Ղիաթէդդին Մասուդ Բ. (1283—1294) դիմեցին Աբաղայի, որ ի հարկէ մերժեց կեղծ Թեկնածուն եւ զՄուհամմէդ բէկ Կարաման ալ սպաննեց, բայց նաեւ իշխանութիւնը բաժնեց երկուքի, Կայխոսրով ընդունեցաւ Ղոնիա եւ արեւմտեան մասը, Մասուդ՝ արեւելեան մասը՝ Երզնկայ, Մալաթիա ու Սեբաստիա: Արղուն իշխանը (1284—1291) գլխատել տուաւ զԿայխոսրով, որովհետեւ իրեն կասկածելի կ՚երեւար իբրեւ բարեկամ Խրիմի Թաթարաց, եւ Մասուդ ալ միայն անուանաբար միահեծան էր: Ամէն կողմ կուսակալներ ապստամբ էին եւ նոր Թեկածուներ ալ երեւան կու գային, այնպէս որ արդէն սկսած էին եւ իրօք ըլովին յաջորդին առեն երեւան եկան այն բազմաթիւ մանրապետութիւնք, (Կարաման, Կերմիան, Մենթէշէ, Կաստամունի, Թէքքէ եւն), որ սուլտանութեանս կործանմանէ եաքն անոր աւերակաց վրայ կանգնեցան: Յաջորդը՝ վերջին Ալայէդդին Կայկոբատ Գ. (1294—1308) ջանաց նոր հոգի տալ քայքայեալ տէրութեան, բայց այլեւս ի զուր էր,

այն մանրապետութիւնք առ երեսս միայն հպատակ էին իրեն, իրականին՝ տէր դարձած էին իւրաքանչիւր երկիրներու: Ալադին ստիպուած էր ճշդիւ օգնութեամբ Օսմանի, որ օսմանեան իրական սուլտանն եղաւ (1297—1326) փորձել նուաճելու ապստամբ Թուրքմանները եւ դիմադրել մոնղոլեան բանակաց: Բայց արդիւնքն այն եղաւ որ Ղազան Մահմուտ իշխան (1295—1314) վերջ տուաւ Ալայէդդինի կենաց հետ նաեւ Ղոնիոյ սուլտանութեան (1308): Իւր Ղիաթէդդին որդին ալ խեղդամահ եղաւ քիչ մ՚ետքը. միայն Մասուդի որդին՝ Ղազի Չէլէպի՝ միջոց մը տակաւին տէր էր Կաստամունեայ եւ Սինոպի: Այս տեղ ալ սակայն արդէն հիմնուած էր հարստութիւն մը Իսֆենտիարի տան կողմանէ, որ «Գըզըլ-Ահմէտլի» ալ կը կոչուէր, որմէ յետոյ Օսմանցիք դրաւեցին (վերջնականապէս 1459ի): Ինչպէս այս՝ նոյնպէս իբր տասը մանր պետութիւնք կանգնած էին Ղոնիոյ սուլտանութեան աւերակաց վրայ: Ասոնց գլխաւորն էր Ղոնիոյ տէրութիւնն որ տիրող տան անուամբ այնուհետեւ Կարաման (Գարաման) կը կոչուէր: Ասոնցմէ էր նաեւ Աբուլուստանի իշխանութիւնը, զոր իբր երկրի անուն արդէն տեսանք: Հոս իշխանութիւնն առած էր Զուլկատր տունը, որու անունը յետոյ յաճախ կը յիշուի օսմանեան պատմութեան մէջ, եւ որ իւր գլխաւոր գծէ դուրս դրից պատճառաւ երկարատեւ ալ եղաւ վասն զի

օսմանեան տիրապետութեան տեղի տուաւ վերջին Արդէլ–Բազղաք իշխանը 1521ի։ Ի վերջոյ՝ թէեւ բուն այս շրջանակէն դուրս՝ կրնանք յաւելուլ Ատանայի մանրապետութիւնը, որ մեր դժբախտ Կիլիկիոյ օրհասականին հիմնուած էր Ռամադան կամ Ռամադան տան կողմանէ (հիմնադիր՝ Ահմէտ իբն Ռամադան՝ 1378ի)· ու նոյնպէս իւր դրից պատճառաւ աւելի երկարակեաց եղաւ, եւ միայն 1562ի վերջին Փերի իշխանը տեղի տալ ստիպուած էր օսմանեան տիրապետութեան։ Բոլոր միւսները աւելի կամ նուազ կանուխ կլլուեցան ճշդիւ նախնաբար ամէնափոքր իշխանութենէն, ինչպիսի էր Օսմանի բաժինն, երբ նոյն միջոցին հիմնուեցաւ այս ալ։

Օսմանեան պատմութիւնը ծանօթ է եւ պէտք չկայ երկրորդել։ Կը բաւէ դիտել թէ Օսմանցիք ԺԴ. դարուն իսկ աւարտած կ՚ըլլային այս բոլոր մանրապետութեանց կցումն, եթէ հզօրագոյն մը չմիջամտէր ԺԵ. դարու ճիշդ սկիզբը այն է՝ Լէնկթիմուր, Օսմանցիք կանուխէն կցած էին Կարասի կամ Գարէսի մանրապետութիւնը, եւ գնած էին Համիտ իշխանութիւնը։ Իրենց յառաջխաղացութեան նպաստաւոր էր նաեւ մահմետական եւ կամայ ու բռնի մահմետականացած ժողովրդեան գոնէ մէկ մասին համակրութիւնն եւ իրենց աւելի լաւ կազմակերպութիւնն եւ այս միջոցին արդէն ունեցած մեծ զօրութիւնը՝ եւ ձեռք բերած յաջողու–

թիւնքն եւրոպական հողի վրայ: Այնպէս որ Բայազիտ Ա. կարճ միջոցի մէջ (1390—93) գրաւած էր մնացեալ բոլոր մանրապետութիւնքն ալ, այնպէս որ ասոնց պատմութեան մէջ կայ օսմանեան գրաւման անջրպետ մը՝ որ տեւած է 1392—1402 տարիները: Բոլոր այս իշխանք ստիպուած էին կարգաւ ապաստանիլ նախ դրացի իշխանաց, նաեւ այս՝ պատրուակ կ'ըլլար ի վերջոյ գրաւելու նոյնը, — եւ վերջապէս Թիմուրի: Այսպէս նաեւ Կաստամունեայ տէրը՝ Իսֆէնտիար Քէօթիւրում Բայազիտի, որուն քով ապաստանած էին Սարուխանի եւ Մէնթէշէի իշխանք, ստիպուած էր թողուլ նախ «իւր գլխաւոր քաղաքները՝ Սամսոն, Ճանիկ եւ Օսմանճըկ». եւ Սինոպ քաղաքը: Բայց ասկից ալ ստիպուեցաւ փախչիլ Թիմուրի քով, ուր ապաստանած էին միւսները: Կաստամունի նահանգ եղաւ Օսմանեանց այն միջոցին (1393). բայց յետոյ՝ միւս չարք մը մանր պետութեանց պէս միջոց մը վերականգնեցաւ: Հետաքրքրական է մեզի համար Կարամանի կամ ինչպէս մեր յիշատակագիրք երբեմն կը գրեն «Ղարամանի» պատմութիւնը, որուն հիմնադիրը հայ կ'ըսեն նոյն իսկ արեւելեան եւ օսմանեան աղբերք:

Վերը յիշուեցաւ արդէն այս տան հիմնադիրը՝ Մոհամմէտ բէգ Կարաման կամ Ղարաման: Ասոր հայը կ'ըսուի Սոֆի անուն, ի ծնէ հայ մը, որ Բաբա Իլյաս չէխի վար-

դաշնութեան հետեւորդներէն էր, եւ Ղոնիոյ Ալայէդդին Կայկոբադ Ա. սուլտանի օրով Ղոնիա եկած էր: Իր որդին Ղարաման այնպէս սիրելի եղաւ Ալայէդդինի որ անոր վերին ախոռապետն եղաւ եւ քոյրն ալ կնութեան առաւ, իսկ հայրը հաստատուեցաւ ի Վարսակ, այսինքն Կիլիկիոյ հիւսիս-արեւմուտքը տարածուող Տաւրոսի լեռնամասը: Ասոնք տիրեցին նաեւ Սէլէֆկէի (Սելեւկիա՝ Կիլիկիոյ) եւ բերդին, եւ Ալայէդդին՝ անոր Կարաման որդին տէր հռչակեց Սելեւկիոյ եւ Լարանտայի ոչ հեռի արդի Գարաման քաղաքէ: Վերջապէս խաբէութեամբ տիրեց այս Գարաման իշխանը (1223—1245) նաեւ Արմենակի («Էրմէնակ», արդի՝ Էրմէնէք): Գարամանի որդին էր այն Շէմսէդդին Մոհամմէտ˙ բէկ, Արմենակի տէրը (1245—1279) որ իւր իշխանութիւնը տարածեց հետզհետէ, եւ որ՝ ինչպէս ըսինք Ճէմրի անուամբ Թուրք մը իբր Ազզէդինի որդի թեկնածու հանեց, եւ իրականին ինքը կառավարեց ի Ղոնիա: Այս՝ արդիւնք մ'ալ ունի ըստ օսմանեան պատմութեան: Մինչեւ այն ատեն բոլոր սելջուկեան պետութեանց մէջ հարկաց տոմարները պարսկերէն էին. իսկ սա Թուրքերէնն ալ խառնեց եւ յառաջ եկաւ այն երկու լեզուով խառն համարակալութիւնը, որ յատուկ գրով ու լեզուով գործածութեան մէջ մտաւ եւ մնաց նաեւ Օսմանեանց քով: Երբ Ապաղա վերահաստատեց Ղոնիոյ իշխանութիւնը, մերժելով անկէ

Թուրքն ու իր պաշտպանն, որոնց երկուքն ալ սպաննուեցան, ինչպէս նաեւ վերջնոյս եղբարքն, Գարամանի տունը սպառելու վրայ էր։ Մնացած էր միայն սանդեայ որդին Մահմուտ, որ սակայն յետոյ՝ իբրեւ տէր էրմէնակի, նորէն ձեռք ձգեց հայրենի իշխանութիւնը եւ Բէտրէտտին անունն առաւ (1279—1319), երբ՝ Ղոնիոյ սուլտանութեան կործանմանէ ետքն անկախ տէր ու իշխան եղաւ Ղարամանի։ Իւր երկու որդիներէն՝ Եախշիբէկ եւ Սուլէյմանբէգ՝ յաջորդեց Եախշի (1319—1349)։ Ասոր որդին ու յաջորդն է Ալայէտտին Ալի (1349—1392), որ այս միջոցին կ'երեւայ իբր հակառակորդ Բայազիդի։ Օսմանեանց եւ Գարամանեանց հակառակութիւնն ու կռիւները գրեթէ մէկուկէս դար տեւեցին եւ սկիզբն եղած էր արդէն Մուրատ Ա. սուլտանի օրով եւ Ալայէտտին էր որ գրգռեց Գաղատիոյ Ախիլէր բռնակալ կալուածատէարքը, որ տէր էին Անկիւրիոյ, ինչպէս նաեւ Վարսակացիքն։ Արդիւնքն եղաւ այն որ Մուրատ տիրեց Անկիւրիոյ (1360)․ բայց Գարամանի հետ բարեկամութիւն եղաւ մինչեւ անգամ Մուրատի դուստրը կնութեան տալով Ալայէտտինի։ Վերջինս սակայն ակամայ կը կրէր այս վիճակն, եւ պատեհ առիթ գտնելով հաւաքել կրցաւ իւր դրօշի ներքեւ Վարսակ եւ Թորղուտ տոհմերը, «Բաքերդի վաչկատուններըը» եւ բազմաթիւ ուրիշ Թուրքման ու Թաթար վաչկատուններ որ ի Փոքր-Ասիա կը թափա-

ռէին, եւ դրաւեց անոնց բէգերու սիրտը, եւ յարձակելով աւերեց Համիտ երկիրը: Մուրատ նախ ուղարկեց իւր Դիմուրթաշ զօրավարն եւ ինքն ալ եկաւ ի Կուտինէ բանակը քննելու. Գարամանի իշխանը խաղաղութիւն խնդրեց, բայց ի զուր: Մուրատ, եւ իւր որդին Բայազիտ, երեւցան Ղոնիոյ դաշտը, ուր տրուեցաւ մեծ ճակատ մը (1386), եւ Ղարամանի բանակը յաղթուեցաւ, եւ Ղոնիա ալ պաշարուեցաւ: Սակայն այս անգամ ալ Մուրատի դուստրը բարեխօս եղաւ եւ իրերը վերջացան խաղաղութեամբ եւ Ալայէդդին պահեց իւր իշխանութիւնը: Բոլորովին տարբեր դիտաւորութիւն ունէր Բայազիտ Ա. որ Կերմիան ու Թէքքէ մանր պետութիւնը դրաւելէն ետքն ուղղակի դիմեց ի Ղարաման: Ալայէդդին ստիպուած էր փախչիլ ապառաժուտ Կիլիկիոյ ամուր տեղերը: Բայազիտ պաշարեց Ղոնիան, եւ անձնատուր եղան Գարամանեան քաղաքները. Ակշեհիր, Նիկդէ եւ Ակսէրայ: Ղարամանի իշխանն ամբողջ չկորսնցնելու համար պահեց երկրին մէկ մասը եւ խաղաղութիւն եղաւ՝ Զարչամպայ գետը սահման դրուեցաւ երկու աշխարհաց (1390): Ալայէդդին չէր կրնար մնալ, եւ երբ Բայազիտ Եւրոպա զբաղած էր, յանկարծակի յարձակմամբ հասաւ մինչեւ Անկիւրիա եւ նոյն իսկ Պրուսա, եւ զԴիմուրթաշ զօրավարն ալ գերի բռնեց: Իւր առաջարկն այնուհետեւ խաղաղութիւն կնքելու՝ մերժեց Բայազիտ, եւ Կերմիանի երկրին

Անկչայի մեծ դաշտին մէջ տրուած ճակատը բախտն որոշեց: Ղարամանի իշխանն իւր երկու որդիքն՝ Ալի եւ Մուհամէտ՝ դերի ինկան Բայազիդի ձեռքը. եւ այն Դիմուրթաշ, զոր Ալայէդդին ազատ արձակած էր, իրր թէ յանդէտս Բայազիդի մինչեւ անգամ կախեց զԱլայէդդին: Ղոնիոյ հետ Ղարամանի բոլոր քաղաքներն ու երկիրները կցուեցան օսմանեան պետութեան (1392), մինչեւ որ Լէնկթիմուր կրկին հաստատեց (1402), եւ իրր երեք քառորդ դար տակաւին տեւեց:

Կը մնայ տեսնել ասոր հիւսիսակողմը՝ Սեբաստիոյ երկիրը: Սեբաստիոյ եւ Կեսարիոյ միջեւ եղած երկրամասը փոքր իշխանութիւն մը կազմած էր: Կեսարիոյ տիրոջ մահուանէ ետքն անոր իշխանութեան հողերն իրենց մէջ բաժնած կ՚ըսուին իւր էմիրները. Հաճի Կէլտի տէր եղած էր Թոխաթի, շէխ Մէճիկ՝ Ամասիոյ, իսկ Կեսարիոյ դատաւորը (դադը) Ահմէտ Բուրհանէդդին տէր եղած էր Սեբաստիոյ եւ հետզհետէ մեծցուցած իւր ճոխութիւնը: Ասոր եւ իւր որդւոյն Աբուլ-Աբբասի քով ապաստանած էին միջոց մը Կերմիանի եւ Մէնթէշէի դահազուրկ իշխանք. եւ այս բաւական էր Բայազիդ սուլտանի՝ նոյն երկիրները գրաւելու ձեռնարկել: Դժբախտաբար ասոնց թշնամի եղած էր նաեւ Գարագուլակ Եւսուֆ՝ «Սպիտակ Ոչխարի» հարստութեան ապագայ հիմնադիրը, որ իւր շահուն համար յետոյ կուսակից եղաւ Թիմուրի: Բայազիդ, կ՚ըսուի,

կ՚ուզէր նախ՝ մերժելով զԲուրհանէդդին՝ այն երկիրները տալ անոր ուրիշ մէկ որդւոյն. բայց երկրին աւագներն այն երիտասարդ իշխանը ուղարկեցին դրացի եւ ազգական ալ Զուլկատրի Նասրէդդին իշխանին, եւ հրաւիրեցին զԲայազիդ տիրանալու երկրին, որ ընականապէս կատարեց ասով իւր ուզածն եւ ուղարկելով Սուլէյման որդին՝ տիրեց երկրին, եւ Սեբաստիա, Կեսարիա ու Թոխաթ անցան Օսմանեանց ձեռքը (1392): Աբուլ-Աբբաս յետոյ իյնալով իւր Թշնամւոյն Գարաղուլակ Օթմանի ձեռքը՝ սպանուեցաւ:

Այս նուաճումն եւ յառաջխաղացութիւնը դէպի արեւելք շարունակեց Դիմուրթաշ զօրավարը: Օսմանեան պատմութիւնը վերապահած է այն տարին (1396), երբ Բայազիդ կը խորտակէր Եւրոպա Սիկիզմոնդի եւ դաշնակից եւրոպական Նիկոլեայ մեծ յաղթութիւնը, պատմելու նաեւ Դիմուրթաշի գրաւումները: Սա գրաւեց մէկ կողմանէ Գանդրա՝ հին Պափղագոնիոյ գլխաւոր քաղաքը, եւ Սեբաստիոյ արեւելեան հարաւը Տիվրիկը, անկէ հարաւ Տարէնտէ, եւ դէպ արեւելք նշանաւոր Մալաթիա՝ Սեբաստիոյ Դանիշմանց երբեմնի գլխաւոր կայանը, եւ շատ աւելի վարը՝ նոյն իսկ զՊէհէսնի: Ասով արդէն Եփրատի գիծը հասած էին Օսմանցիք, որ յառաջ հին պատմութեան մէջ ալ դարերով սահմանագիծ եղած էր: Վերը՝ գրաւեց նոյն իսկ զՆիկոպոլիս, Փոքր Հայոց. եր-

բեմնի այս քաղաքի անուամբ օսմանեան պատմութիւնը կը հասկնայ արդի (Շապին–) Գարահիսար․ թէեւ վերջինս հին Կողոնիա է, իսկ Նիկոպոլսոյ տեղն է արդի Էնդէրէսի մօտ Բուրդ գիւղը[415]: Վերջապէս Օսմանցիք դրաւեցին այս ատեն արդէն նաեւ զԿամախ, զոր «Կումախ» կը գրեն, նշանաւոր ամուրն Եփրատայ վրայ: Օսմանցիք ասով հասած էին Բաբերդի եւ Երզնկայի դռները: Եւ այս առթիւ, ինչպէս իբրեւ դար մ՚ետքը վերջ–նական դրաւման ատեն, կը կրկնուի այն առածը թէ Կամախ նշանաւոր էր ոչ միայն իր ամէնէն ամուր ամրավայր օսմանեան պետութեան, այլ նաեւ հռչակաւոր այնտեղ գործուած կտաւով, ինչպէս դրացի Երզն–կայ՝ նշանաւոր իւր ոչխարներով եւ Բա–բերդ՝ անուանի իւր աղջիկներով[416]:

Մինչեւ անգամ Բայազիտ այնպէս փքա–ցած էր իւր այս յաղթութեամբքն եւ վստահ իւր զօրութեան վրայ, որ Լէնկ–Թիմուրի իբրեւ պատասխան՝ բացի թշնա–մական գրութենէ մը՝ դրաւեց նաեւ զԵրզն–կայ, անոր յառաջխաղացութիւնն արգիլելու համար (1400), որուն տէրը՝ Թիմուրէ պաշ–տօնապէս հաստատուած՝ անոր հաւատարիմ

---

415 Տաշեան Հ. Յ., Պոնտական Ուսումնասիրու–թիւնք. Վիեննա 1919, Ազգ. Մատ. ՀԹ, էջ 311, ծան. 1:

416 Hammer Josef, Geschichte des Osmanischen Reiches, Pesth 1834, I. Band, S. 204.

ծառայողներէն էր։ Երզնկայի այս տէրը յաճախ կը յիշուի պատմութեան այս շրջանին, եւ կը յորջորջուի «Թահէրթէն» կամ նաեւ «Թուհարթէն», մեր յիշատակագրաց մէջ օրինակի համար Թովմաս Մեծոփեցի կ'անուանէ «Թախրաթան պարոն» եւ ուրիշ տեղ մը «Դարխրատ» իսկ, երբ պատմելով ասոր մահը՝ կը դրէ ուղղակի «սատակեցաւ»[417], նկատելով իւր վերաբերմունքը հանդէպ քրիստոնէութեան եւ Հայոց։ Այս ալ ստիպուած էր ի վերջոյ ապաստանիլ Թիմուրի քով, որ Երզնկայի գրաւումն արդէն նկատեց պատերազմի յայտարարութիւն Բայազիտի կողմանէ իրեն դէմ։

Օսմանեանց այս աշխարհակալութիւնք դիւրաւ յաջողեցան նաեւ այնու որ այն մանր պետութիւնք հաւաքական ոյժ մը չէին կազմեր եւ իւրաքանչիւրն ինքնին տկար էր Օսմանեան արդէն շատ զօրացած պետութեան դէմ. իսկ իրենց թիկունք այլ եւս չկար։ Ճինկիզխանի տունը՝ որ խորտակեց Ղոնիոյ սելճուկեան հսկայ սուլտանութիւնը, ինքնին ուժասպառ եղած էր քիչ մ'ետքը, Աբուսայիդ Բեհադրի (1316—1335) մահուանէ ետքը բաժնուած ըլլալով հինգ պետութեանց։ Արդ Քոթբ-էդդին Թիմուր Գուրգան Սահիբկիրան, սովորաբար Լանկթիմուր՝ Կաղ Թիմուր (1369—1404), որ

417 Թովմայ Մեծոփեցւոյ, Պատմութիւն Լանկ Թիմուրայ. Փարիզ 1860, էջ 45, 72։

աթոռը փոխադրած էր Սամրղանդ, խորտակեց բոլոր այն մեծ ու փոքր բազմաթիւ պետութիւնքն որ կանգնած էին իշխանաց իշխանութեան աւերակաց վրայ, եւ հիմնեց մոնղոլեան երկրորդ մեծ հարստութիւնը։ Մեր նպատակէն դուրս է պատմել սոր գործերը, որ հզօրագոյն աշխարհակալ մըն էր՝ տիրելով բազմաթիւ աշխարհաց ալ, Գանգէսէ մինչեւ Միջերկրական ու Պոնտոս, մինչեւ Վոլկա եւ աւելի անդին ալ որ միանգամայն անլուր անգթութեանց, կոտորածի ու աւերածի շղթայ մըն է, իսկ ի Հայս գործուած աւերմունքն ու անգթութիւնք պատմած են արդէն մեր յիշատակագիրք։ Ցարմար համեմատութիւն մըն է երբ ձեռագրի մը յիշատակարանը[418] կը գրէ թէ «Թամուրցիքն ու մարախն հետ իրաց (իրարու հետ) հասան յերկիրս մեր»։ Բացի տեղւոյ մ'ամբողջ ժողովուրդը գերելէ, իւր սիրած վրէժխնդրութիւնն էր ընդդիմադարձ տեղւոյ մը ընդհանուրի կոտորած ընել այնչափ որ իւրաքանչիւր զինուոր որոշ թուով գլուխ բերելու էր բուրգ կազմելու համար։ Եւ զարմանալի չէ որ երբ այս՝ օրինակի համար Բաղդատի երկրորդ բռնի առման ժամանակ (1401) իւր բանակն որ հոն 90.000 հազար կ'ըսուի, նոյնչափ գլուխ բերելու հրաման առաւ,

---

418 Փիրղալէմեան Ղեւոնդ վրդ., Նօտարք Հայոց. Կ. Պոլիս 1888, էջ 15։

նոյնիսկ ժամանակակից աւանդութիւնը նոյն՝ Թիմուրի ընդհանուր բանակի թուոյն համեմատ՝ մինչեւ 700.000[419] կը հանէ: Բարձր ժայռաբերդերու գագաթէն զինուոր ու ժողովուրդ անդունդ գահավիժել՝ այս ալ ուրիշ բարբարոսութիւն մըն էր, որուն փորձն առաւ Վան, ուր գահավիժելոց թիւն այնչափ էր որ «վերջին անկեալքն ոչ մեռանէին»՝[420] որչափ ալ չափազանցութիւն ըլլայ այսպիսի նկարագրութեանց մէջ: Ասոր քով խաղալիկ էր երբ Բասենոյ Անիկ գրեթէ անառիկ բերդին առմամբ միայն «100 հոգի»[421] բերդէն գահավէժ եղան: Այս իրերը կատարուած են երբ Թիմուր Հայաստան ու Վրաստան ոտք կոխեց նախ 1386ի, եւ երբ Թաւրէժ գրաւած՝ Ջուղայի մօտ անցաւ Երասխն, որուն քարեայ կամուրջը կը յիշուի՝ իբր թէ 50—60 կանգուն բարձր կամարներով, երկու ափերուն ալ դռներով ամրացած[422]: Նախիջեւան առաւ, եւ Կարս անձնատուր եղաւ (— մեր պատմագիրք չեն յիշեր Կարուց առումը): Ինչպէս նաեւ Տփղիս, եւ բնական է ամբողջ գաւառներ այրացուեր եղած եղան, իսկ գերին «անթիւ եւ անհամար»[423]:

---

419 Թովմայ Մեծ. անդ., էջ 63:

420 Թովմայ Մեծ. անդ էջ 30:

421 Թովմայ Մեծ. անդ էջ 45—46:

422 Cherefeddin I. էջ 392. Հմմտ. Hammer, Gesch. էջ 218:

423 Թովմայ Մեծ. անդ էջ 19:

«Ղարաբաղի գեղեցիկ դաշտավայրը ձմերելով»՝ շրջակայ իշխանք եկան հպատակութիւն յայտնելու: Բայց Ամթայ եւ Միջագետաց տէրը, այն որ յաճախ կը յիշուի պատմութեան մէջ, «Սեւ Ոչխարի» (Գարադոյունլու) հարստութեան հիմնադիրը՝ Գարա Եուսուֆ, զոր մեր յիշատակագիրք պարզ «Յուսուփ կ'անուանեն, յանձնառու չեղաւ: Փոխարէն այրացուեր եղան Մուշ, Խլաթ, Արճէշ ու ի վերջոյ Վան, որուն կրածը յիշեցինք, Բաղէշ ու Արծկէ անձնատուր եղած էին: Մեծոփեցի աւարտելով այս բաժնի նկարագրութիւնը (յամի ՊԼԶ = 1387) կ'ըսէ[424] ուղղակի «ջնջեցաւ մարդկութիւնս, մանաւանդ հայկազեան գաւառիս»: Երզնկայի տէրը՝ յիշեալ Թախրաթան կամ Թահրթան յայտնեց հպատակութիւնը Վանայ առման հետեւութեամբ, եւ Թիմուր հաստատեց զինքն իբր տէր Երզնկայ եւ երկրին՝ հրովարտակաւ իբր իւր աւատառուն: Թիմուր այնուհետեւ այլեւայլ անգամ ի Հայս էր, եւ սիրած Ղարաբաղի ձմերոցը, երբ հեռու երկիրները չէր գտնուեր. եւ ասկէ սկսած է այլեւայլ նաեւ մեծ արշաւանքները: Իւր բացակայութեան՝ մերժեալ իշխանք իրենց երկիրները ձեռք ձգելու կ'աշխատէին, եւ ապստամբութիւնք անպակաս էին, որով կրկին արշաւանաց ու աւերածու-

---

[424] Թովմայ Մեծ. անդ էջ 32:

թեանց առիթ կ'ունենար։ Գաղտատի առաջին անջան առումէն ետքը (1394)՝ մտաւ Միջագետք, զոր չկրցաւ նոյնպէս դիւրաւ նուաճել. Տակրիթ եւ Ուռհա առնուեցան, բայց Մարտին, ուր կ'իշխէր Որդոքի տնէ Իսա Թահէր կամ Սահէր, անառիկ մնաց, (հակառակ Մեծոփեցւոյ ըսածին[425])։ Առնուեցաւ նաեւ Ամիթ կամ Տիարպէքիր, յիշեալ Յուսուփի մայրաքաղաքն, որուն պարսպաց հիմնովին քակտման հրաման տրուեցաւ, բայց անհնարին հաստաբեստ չինութեան պատճառաւ դոհ եղան վերին մասերը միայն քակելով։ Հոս մինչեւ անգամ հրամայեց շիրիմ մը կանգնել «Ս. Սարգսի» գերեզմանին վրայ։ Ի Խլաթ հպատակութեան եկաւ Արճէշի իշխանը, եւ կրկին՝ Թախրաթան Երզնկայի տէրը, որուն՝ իբրեւ անկախ իշխանութեան՝ հրովարտակ տրուեցաւ՝ ստորագրութիւնն ըլլալով կարմիր թանաքի մէջ թաթաւեալ ձեռաց դրոշմը։ Այս մարդախոշոշը մինչեւ անգամ չքեղ հանդէսներ սարքեց Սրմանց լերան, արդի Բինգէօլի բարձրադիր մարգերուն վրայ՝ երեք շաբաթ։ Այս առթիւ է Անիկի առումն՝ ըստ Մեծոփեցւոյ, որ ՊԽԴ (= 1395) թուին կը դնէ եւ զԹիմուր Երզնկայ եկած[426] իսկ կ'ըսէ։ Յուսուփ արշաւանքիս ստիպուած էր կրկին փախչիլ։

---

425 Թովմայ Մեծ. անդ էջ 45. «Եկն Մերդին աւերեաց զքաղաքն եւ հնդետասան գիւղ ուղղափառ եւ ճշմարիտ քրիստոնեայս գերեաց 3000 տուն»։

426 Թովմայ Մեծ. անդ էջ 45։

Հնդկական արշաւանքէն ետքը, որ 1398 տարւոյ աշնան սկսաւ եւ տարի մը տեւեց, լսելով Սեբաստիոյ տիրոջ Բուրհանէդդինի մահը՝ զոր յիշեցինք (1399) եւ այլեւայլ անկարգութիւնքն՝ որ արեւմտեան իւր նուաճած երկիրները արդ ծագած էին, նոր աշխարհակալութեանց ծրագիրներով եկաւ ձմերելու կրկին Կասպեան ծովու արեւմտեան ափունքը, «Ղարաբաղի դաշտավայրը»: Հոս նորէն ներկայացաւ Երզնկայի անբաժան տէրն եւ ի նշան պաշտօնական հաստատութեան իբր տէր Երզնկայի ստացաւ ծանօթ ձիոյ ագի նշանն ու երկու թմբուկ: Անկէ սկսաւ արշաւանքն ի Վիրս, երբ Բաղդատի մերժեալ սուլտանին Ահմէտ Ջելայիրի որդին որ հոն ապաստանած էր, իրեն չյանձնուեցաւ: Ծանր եւ աւերիչ էր Վրաց աշխարհի այս անգամուան արշաւանքն (1400ի), Տփղիս առնուեցաւ, նոյնպէս իբր 20 բերդեր, որոնք հիմնայատակ եղան եւ բնակիչք սպաննուեցան ու գերեցան: Բնականաբէս հայ ժողովրդեան ալ հոս վնաս նոյնպիսի է այս ամբողջ տարածութեան վրայ, ինչպէս այլուր՝ որոնք ապարէզ կ՚ըլլային թաթարական-մոնղոլեան որեւէ արշաւանաց: Այսպէս նաեւ Սեբաստիոյ արշաւանքին պատրուակն էր վրէժ առնուլ Բուրհանէդդինի մահուան, բայց վրէժն առնուեցաւ ժողովրդենէ եւ այնպիսի կերպով՝ որ իբր անլուր անգթութեան օրինակ հանրածանօթ

է պատմութեան մէջ: Բուն պատճառն ի հարկէ այլ էր, եւ Բայազիտի զԵրզնկայ առնուլն եղաւ նշան յայտարարութեան արշաւանքին. եւ Երզնկայ տէրը Թախրաթան ստիպուած էր այս անգամ իբր բողոքարկու ապաստանիլ Թիմուրի, ինչպէս ապաստանած էին Օսմանցւոց զահազուրկ ըրած միւս իշխանները: Թահրաթանի զանձն ու կանայք Բայազիտի ձեռքն անցած էին, որուն քով ապաստանեցան ի վերջոյ Բաղդատի սուլտանը Ահմէտ Ջելայիր եւ Ամթայ տէրը Սեւ Յուսուփ, երբ առոնք նախ Ասորիք փախչիլ ստիպուած Եգիպտոսի հրամանատարն ի Հալէպ զէնքով իսկ արգիլեց այն կողմերը ապաստանիլ: Բայազիտի անոնց շնորհած ասպնջականութիւնն ալ էր գլխաւոր պատճառներէն մին: Թիմուր աւելի կատղեցաւ երբ Բայազիտ իւր դեսպանը մինչեւ անգամ սպաննել ուզեց, բայց շատացաւ չարչարելով եւ Թշնամանիչ պատասխան յղեց:

Հիճրայի ութհարիւր եւ երեք Թուի առաջին օրը (22 Օգ. 1400) անցաւ Թիմուր այն ժամանակի օսմանեան սահմանը դէպ ի Սեբաստիա: Սեբաստիա նոր շինուած էր Ալայէդդին Ա. Կայկոբադ սելճուկեան մեծ սուլտանէն, չորեքկուսի քարերով բարձր պարիսպներ ունէր եւ պարկէն—փոսեր, եւ բազմամարդ քաղաք մ՚եղած էր՝ իբր 120.000 բնակչով: Պարսպի քարերը կ՚ըսուին երեք

կանգուն երկայն եւ կանգուն մը՝ թանձրութեամբ. պարիսպը 20 կանգուն բարձր էր, եւ վարը՝ 10 կանգուն հաստութեամբ կամ լայնութեամբ, վերը՝ 6 կանգուն. իսր եօթը քաղաքադռներն երկաթի էին։ Երեք կողմանէ ջրով լի քարերով պատուած ըլլալով, մէկ կողմանէ միայն կարելի էր յարձակիլ խարխալելով պարիսպն ականներով, 8000 ականահատք փորեցին պարսպին հիմանց ներքեւ, վեր բռնելով փայտերով, որոնց կրակ տուին, եւ փլաւ պարիսպն աշտարակներով, 18 օրուան պաշարմանէ ետքը, եւ պաշտպանք, որչափ ալ ամենամեծ քաջութեամբ կռուեցան, չկրցան ազատել քաղաքը, որ ստիպուած էր անձնատուր ըլլալ եւ խնդրել խնայել։ Թիմուր շնորհեց թողութիւն միայն մահմետականաց. իսկ քրիստոնէից մասին ըրածները, ինչպէս կ'ըսէ նոյն իսկ օսմանեան պատմութիւնը, գերազանցեց բարբարոսութեամբ ամէն այն անգթութիւնքն՝ զոր ըրած էին նոյն ինքն Թիմուր եւ յառաջ Ճինկիզխան ուրիշ տեղեր։ Ցատկապէս 4000 հայ հեծեալք, որոնք այնպէս քաջութեամբ պաշտպանած էին քաղաքը՝ ողջ ողջ թաղուեցան, գլուխները սրունքներու մէջ կապած՝ տաս տաս հոգի մէկ գբի մէջ, իրարու կապած «ողնւոյ նման իրարու վրայ գլտորած». եւ որոնք աւելի չարչարելու համար՝ գբերը տախտակներով ծածկեցին նախ եւ ապա հողով, որպէս զի այնպէս կա-

մաց խեղդամահ ըլլան։ Կանայք ու տղայք անգամ չխնայուեցան[427]։ Նոյն իսկ Բայազիդի Երթողրուլ որդին որ պաշտպաններու մէջն էր Սեբաստիա, գերի ընկած՝ քանի մ'օր վերջը գլխատուեցաւ։ Բայազիդ կատղած Եւրոպայէ Ասիա անցաւ, բայց այս անգամ չեղաւ արշաւանքին շարունակութիւնը։ Որովհետեւ Թիմուր զէնքը դարձուց Եգիպտոսի սուլտանի դէմ, եւ անոր համար դէպ ի Հալէպ ուղղեց քայլերը։ Ճամբուն վրայ մէկ օրուան մէջ առաւ Մալաթիան, սուղ պաշարմանէ ետքն առաւ Պէհէսնի, որչափ ալ սեպ ժայռի վրայ էր բերդը («ամուր բերդ Պահեսնոյ»)․ բայց չկրցաւ առնուլ զՀռոմկլայ (Կալաա-էր-Րում»)։ Իսկ Այնթափ անձնատուր եղաւ։ Հալէպի քով ջախջախեցաւ եգիպտական (Ասորիքի ամէն կողմերէ հաւաքուած) բանակը, եւ քաղաքն առնլով (1400 Հոկտ․) բանի մը չխնայուեցաւ։ Որոշիչ ճակատն էր Դամասկոսի առջեւ[428] (Յունուար 1401)․ եւ թէեւ մեծ գումարի մը փոխարէն խոստացուած էր խնայել քաղաքին, զօրքը հրով ու սրով լուվին այրացուեր ըրաւ եւ քանի որ փայտակերտ էր քաղաքն՝ ամբողջովին այրեցաւ։ Ինքը Համայի վրայէ դիմեց դէպ ի Մարտին, որուն առջեւ Հասանքէֆի եւ Արզնի տեարք եկան հպատակու-

---

[427] Թովմայ Մեծ․ անդ էջ 65։

[428] Hammer, անդ էջ 240։

թիւն յայտնելու, բայց Մարտինի տէրը վստահ իւր քաղաքին ամրութեան վրայ՝ մերժեց հպատակիլ, եւ Թիմուր թողուց նոյնը եւ դիմեց Բաղդատ, զոր այս անգամ այնպէս չարաչար պատժեց (Յուլիս 1401), ինչպէս վերը յիշեցինք: Անկէ անցաւ ի Նախջուան, նուաճեց Երնջակայ բերդը («Ալանճիկ»), որ անգամ մ'առնուած էր արդէն (1394), եւ ուսկից փախած էր անոր ալ տէրը՝ յիշեալ Սեւ Յուսուփը: Այս ասորական արշաւանքի ժամանակ ապստամբած՝ երկրորդ անգամ նուաճուեցաւ ոչ այնպէս դիւրութեամբ: Անկէ անցաւ Գանձակ ու Պարտաւ եւ նոյն տարւոյ դեկտեմբերին սկսաւ ձմերել «Ղարաբաղի դաշտավայրը»:

Յաջորդ տարին ապրիլէ ետքը ելած ձմերոցէ հասաւ Բասենոյ Աւնիկ բերդն, ուր երկու ամիս սպասեց դեսպանաց դարձին: Իւր պահանջներէն մին էր նաեւ Սեւ Յուսուփի գլխատութիւնը կամ գոնէ օսմանեան հողէ վտարուիլը, Կամախի եւն ետ տրուիլը: Վերջապէս սկսաւ արշաւանքին, ու զԿամախ տասնօրեայ պաշարմանէ ետքն առաւ յարձակմամբ՝ յատուկ ժայռեր մագլցող գնդերով: Հանելով Երզնկայ՝ նոյնը տուաւ բնականապէս իւր պաշտպանելոյն՝ Թախրաթանի: Ի Սեբաստիա ընդունեցաւ Բայազիդի թշնամանալից պատասխանը, եւ որովհետեւ Բայազիդի բանակը Թոխաթ հասած էր, եւ

Սեբաստիոյ եւ Թոխաթի միջեւ ճամբան
«թանձր անտառներէ կ՚անցնէր», դարձաւ
դէպ ի Կեսարիա, եւ անկէ ուղղուեցաւ դէպ
ի Գըրշէհիր եւ Անկիւրիա, ամբողջ այս ճամ-
բան ինն օրուան մէջ ընելով։ Պատմութեան
մէջ նշանաւոր է Անկիւրիոյ քով, Չիպուգա-
պատ գետոյ երկու ափանց վրայ տրուած ճա-
կատն, որ լիովին որոշիչ եղաւ։ Իբր մէկ
միլիոն հոգի էին պատերազմողք, Թիմուրի
բանակն իբր եօթ պատիկ աւելի ըլլալով։ Թի-
մուրի հետ էին իբր հրամանատար բանակի
մասանց իւր եօթ որդւոց չորսն ու հինգ թոռ-
ները։ Բնականապէս չէին պակսեր իրեն միւս
դաշնակից, յատկապէս Երզնկայի տէրը, եւ
Պայանտըրի տնէ այն Գարագուլակ Օթմանը,
որ տէր եղած էր Տիարպէքիրի, քանի Թի-
մուր զայն Մալաթիոյ կուսակալ անուանած
էր 1400ի արշաւանքին, եւ որով հիմ դրուած
էր «Սպիտակ Ոչխարի» հարստութեան։
Նոյնպէս Բայազիդի հետ էին իւր հինգ որ-
դիք, եւ բնականապէս իւր եւրոպական
(սերբ եւն) գնդերը եւ եէնիչէրիները։ Բայա-
զիդի պարտութիւնը ջախջախիչ եղաւ, եւ
օսմանեան պատմութիւնը կը չքմեղէ այնու
թէ Այտընի, Կերմիանի եւն գնդերը տես-
նելով իրենց իշխանները Թիմուրի բա-
նակի մէջ՝ այն կողմն անցան։ Ամբողջ օրը
տեւող պատերազմէն ետքը Բայազիդ ուզեց
փախուստ տալ, բայց չկրցաւ, եւ գերի ին-
կաւ իւր մէկ որդւովն, եւ բազմաթիւ զօրա-

պետներով, որոնց մէջ էր Դիմուրթաշ (20 յուլիս 1402)։ Թիմուրի բանակը հասաւ մինչեւ Պրուսա, զոր կողոպտեց ու այրեց, մինչեւ Նիկիա, եւ միւս կողմը մինչեւ Զմիւռնիա իսկ, զոր առաւ Հռոդոսի ասպետներէն։

Ճակատիս արդիւնքը օսմանեան պետութեան բեկումը կը սպառնար։ Ոչ միայն Թիմուր բնականապէս վերահաստատեց բոլոր այն մանր պետութիւնները, եւ յատկապէս Ղարամանը, այլ նաեւ օսմանեան մնացեալ պետութիւնը բաժնուած էր Բայազիդի փախչիլ կրցող որդւոց միջեւ։ Եթէ երկարատեւ ըլլար Թիմուրի իշխանութիւնը, կամ գոնէ յաջորդք նոյն զօրութիւնն ունենային, պատմութեան ընթացքն այլապէս կ'ըլլար։ Բայց նախ Թիմուր երկարակեաց չեղաւ։ Սա՝ դարձած ի Սամարղանդ՝ իւր թոռներու հարսանիքը կատարելէն ետքն (1404), երբ ճամբայ ելած էր արշաւելու դէպ ի Չինաց աշխարհը՝ մեռաւ 71 տարեկան յՕթրար (բուն 19 յունուար 1405)․ թողլով իւր անհուն երկիրները 36 կենդանի որդւոց եւ թոռանց [429]։ Ասով ծագած դահակալութեանց կռիւները քայքայեցին Թիմուրի կանգնած պետութեան ոյժն, որ այն ընդարձակութեամբ չէր կրնար մնալ։ Մեր պատմութեան

---

[429] Hammer, անդ էջ 266։

համար կարեւոր են միայն Պարսկաստանի տերը, որու մէջ Թիմուրի տունը Թէեւ նոյնպէս բաժնուեցաւ այլեւայլ մանր մասերու (ի Փարս, Սպահան, Համատան եւն), բայց ասոնք երկարատեւ չեղան։ Գլխաւոր՝ յատկապէս Խորասանի տերանց գծի մէջ՝ մեր պատմութեան մէջ ամէնէն շատ յիշուողն է Շահրուխ Պէհատէր (1404—1447), Թիմուրի յաջորդը։ Ասոր յաջորդք, բացի ներքին խնդիրներէ, երկարակեաց չեղան, իսկ Աբուսայիդի (1458—67) մահուանէ ետքը գերիշխանութիւնն անցաւ բոլորովին ուրիշ տան մը, «Սպիտակ Ոչխարի», որ տան անդամ Ուզուն-Հասան ուզեց խաղալ Թիմուրի դերը։ Եւ որովհետեւ մեր պատմութեան մէջ իբրեւ տէր Թաւրիզու, հարաւային Հայաստանի եւ դեր խաղացող են ճշդիւ այս «Սեւ» Թէ «Սպիտակ» տղրուկները, պէտք է զանոնք ալ տեսնել։

Երկու հակառակորդ հարստութեանց ալ հիմնադիրքն արդէն տեսանք։ Ամէնէն յանդուգն էր «Սեւ Ոչխարի» յիշեալ Գարա-Եուսուֆը կամ Յուսուփը (1396—1420)։ Ամթայ եւն տէրը, որ՝ Թիմուրէ մերժուած, ապաստանած էր Բայազիդի քով։ Անկիւրիոյ ճակատամարտէն յաջողեցաւ փախչիլ դէպի Կեսարիա, եւ անկէ իւր նախկին երկիրները դարձած Թիմուրի մահուանէ ետքն, ըստ Թովմայ Արծրունւոյ՝ (իմա. Թ. Մեծոփեցի) Դամասկոսէ գալով ուղղակի Բա-

ղէշ, որուն Շամշադին ամիրայն՝ իւր փեսան անմիջապէս իւր կողմն ելաւ[430]։ Փախչիլ կրցած էր նաեւ Բաղդատի սուլտանը Ահմէտ, որ նորէն կրցաւ իւր գահը ձեռք ձգել։ Այս Թուրքման Յուսուփը բնականապէս ջանաց ձեռք ձգել իւր բոլոր երկիրները, եւ աւելին ալ, եւ զօրացաւ այնչափ որ «եկն ի Թաւրէզ եւ մարտեաւ ընդ ամիր Միրան–շահի Զաղաթայի՝ որդի Թիմուրին», եւ հասաւ մինչեւ Սուլտանիէ։ Մեր յիշատակագիրք արդէն կանուխէն կը գրեն անոր համար «ի դանութեան Ղարայ Ուսուփի Թուրքի» (ՊԾԶ = 1407) կամ «ի պարոնութեան Ղարայ Ուսուփին» (ՊԾԸ = 1409) եւ վերջապէս «ի թագաւորութեան թաղթին (Թաւրիժու՝ Պարսից) Ղարայ Ուսուփին եւ ի կողմնապետութեան մերոյ աշխարհիս ամիր Էզդնին եւ որդւոյն իւրոյ Մելիքին, որ էր յոյժ խնամածու բարեկամ քրիստոնէից»[431] (ՊԿԱ = 1412)։ Վերջինքս, այսինքն փոքր ամիրայք ալ նոյնպէս յաճախ կը յիշուին եւ սոնք աւելի չինարար եղած են, քան անոնց գերիշխող մեծիշխանքն, բնականապէս ըստ գրողի գաւառին եւ ըստ հանդամանաց տարբեր անուններով եւ պարագայիւք։ Այսպէս յիշատակագիր մը կը գրէ «ի դանութեան Ղարայ Ուսուփին եւ ի պարոնութեան Իսպա–

---

430 Թովմայ Մեծ. անդ էջ 70։

431 Փիրղալէմեան, Նօտարք, էջ 41։

ՆիՆ» (ՊԾԸ=1409)[432], որ անշուշտ Յուսուփի Ասպահան որդին է, որ պատմութեան մէջ ալ դեր կը խաղայ: Բնականապէս չեն պակսիր բացատրութիւնքս «յաշխարհակալութեան» կամ «ի բռնապետութեան» եւ նաեւ «ի հարկապահանջութեան» Ղարայ Ուսուֆին, որ նաեւ «ՂաՆ Ուսուֆ» (Յուսուֆ եւն) կը յորջորջուի, քիչ շատ ամէն տարիէ մինչեւ ՊԿԹ (= 1420)[433]: Բնականապէս պատմական պարագայիւք ալ: Յուսուփի այսպէս Թաւրիժու տիրապետութեամբ տէր դառնալն Ատրպատականի, արեւմտեան Պարսկաստանի եւ արեւելեան Հայաստանի բնականապէս առանց հակառակութեան չէր կրնար ըլլալ: Առաջին հակառակորդն եղաւ նոյն իւր երբեմնի բարեկամն եւ բախտակիցն Ղիաս-էդ-Դին Ահմէտ սուլտան Բաղդատի, որ առաւ ալ զԹաւրէժ. բայց երկար չտեւեց, Յուսուփ վրան հասնելով յաղթեց, ձերբակալ ալ ըրաւ եւ զինքն ու որդիքն խեղդամահ: Եւ նաեւ զԲաղդատ առնլով՝ հոն իշխան դրաւ իր Սքանդար որդին, այսպէս իրականին ջնջելով Բաղդատի հզօր սուլտանութիւնը, զոր հիմնած էր Հուլակու՝ զԲաղդատ առնլով (1258ի): Թէեւ Բաղդատի այս վերջին հարստութեան (Ջելայիրեանց) կամ սուլտանութեան հիմնադիրն էր Հասան Բո-

---

432 Փիրղալէմեան, Նոտարք, էջ 30—31:

433 Փիրղալէմեան, Նոտարք, էջ 62:

գորգ (1336—1356), այն առաջին ընդարձակագոյն Ճինկիզխանեան հարստութեան մանր մասանց բաժնուելէն ետքը: Նաեւ ասկէ ետքը բոլորովին չվերցաւ այն վերջին հարստութիւնը, բայց այն քանի մը սակաւամեայ իշխանք ստիպուած էին իշխել ի Խուժաստան, եւ այն՝ ոչ երկար: Յուսուփ բնական է որ փորձէր տիրել Միջագետաց եւ Հայաստանի միւս մասին, ուր տէր եղած էր հակառակորդ տունը՝ Սպիտակ Ոչխարի Օթմանը: Յուսուփ տիրեց Մերտինի, եւ նաեւ Երզնկայի՝ բայց «խաղաղութեամբ»· որովհետեւ Թահրաթանի «սատակելէն» ետքը՝ անոր տէրը Փիր-Օմար հպատակեցաւ իրեն[434]: Բայց յաջող չէր փորձը Օթմանայ բուն նիստը՝ յԱմիթ առնլու. եւ թէեւ պաշարեց զԱմիթ ու զԱրղնի, գոհացաւ հաշտուելով՝ միջնորդութեամբ նոյն Փիր–Օմարի: Սեւ-Ոչխարեանք բացի Թաւրիժու «թախտ»էն՝ գլխաւոր նիստ ունէին զԵրզնջակ, ուր էին յաճախ արքունիքն, եւ ամառը՝ կը սիրէին յաճախ ըլլալ ի Վաղարշակերտ (Ալաշկերտ): Ասկէ ձեռնարկած է Յուսուփն իր արշաւն դէպի Ախալցխա, զոր առաւ մատնութեամբ տեղացի Պարսից ոմանց, եւ այրացաւեր ըրաւ ու գերեց (ՊԿԷ = 1416), Իւանէի աթաբեկի օրով որ էր որդի Աղբուղայի (Մեծոփեցի «Արղբուղ»)[435]:

---

[434] Թովմայ Մեծ. անդ էջ 72:

[435] Թովմայ Մեծ. անդ էջ 72:

Բաբերդի Ս. Թորոսի եւ առհասարակ Բաբերդի մասին խօսելէ յետոյ կ'արժէ մի քանի խօսք ալ ընել Պալախոռի վանքի մասին: Պալախոռի վանքը Ս. Գէորգայ անուամբ է: Եթէ Խաղճանեաց վանքի յիշատակարանները ԺԴ. դարու կը վերաբերին, ասոր ալ՝ ԺԵ. դարու վերջերուն: Փիրղալէմեան հրատարակած էր արդէն յիշատակարան մը, զոր օրինակած էր ի Կարին. այս՝ Արծնեան վարժարանի հաւաքման մէկ Աւետարանն է, զոր Կարապետ գրիչ գրած է ՋԺ (= 1461) թուին, «ի գաւառս Խաղտեաց, ի ս. անապատս որ Ս. Գէորգ կոչի, որ Պալախորու վանք ասի», ժամանակ մ'երբ քրիստոնեայք կը նեղուէին «Երեքալեան թշուառութեամբ, սովով եւ գերութեամբ եւ հարկապահանջութեամբ[436]»: Կիւմիւշխանէի մէկ աւետարանին ալ հեռու տեղ մը գրուած է, այսինքն՝ Հայրապետ Տաթեւացի վարդապետէ ՊՂէ (= 1448) թուին «Ծառիկու ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին» եւ կը յիշուին վանաց այն ժամանակի միաբանքը[437]: Բայց յետոյ ՋԻԵ թուին (= 1476) Մկրտիչ երէց եւ իւր հարսը Մելիքխաթուն գնած են զայն եւ

---

436 Փիրղալէմեան, Նօտարք, էջ 206. Հմմտ. նաեւ՝ Քօսեան Հ. Յ., Ցուցակ Արծնեան Վարժարանի. Վիեննա 1964, էջ 15:

437 Սրուանձտեանց Գ., Աւետարան Կիւմիւշխանէի. Արարատ 1905, էջ 732:

*դրած «յիշատակ* ի վանս Պալախա[ւ]ոյ *ի դուռն Ս. Գէորգայ Զաւրավարին» են:* *Նոյն ձեռագրին ուրիշ յիշատակարան մը կը ցուցնէ թէ* 1669*ին, երբ Պետրոս երէց նոյնը կը նորոգէր, արդէն ի Կարին էր: Անկէ դժուար է ի հարկէ հետեւցնել թէ վանքս արդէն այս թուին անչքացած էր լիովին: Ձեռագրաց՝ նաեւ չէն վանքերէ՝ այս կամ այն կերպով անհետացումը յաճախադէպ էր: Սանասարեան հաւաքման մագաղաթեայ բոլորգիր Սաղմոսարանը գրուած է* 1495*ին Աւետիք աբեղայէ՝ որ վանացս առաջնորդներէն էր, եւ* 78 *տարեկան հասակին մէջ կը գրէր: Երկար յիշատակարանին կարեւոր մասն է*[438]: ...*«Արդ ես Աւետիք աբղ· գրեցի զսա ըստ իմում կարի, թէպէտ եւ* ծեր էի եւ ՀԸ տարոյ եւ վաղուց թողեալ զարուեստս: *Եւ արդ գրեցաւ սա ի Թուականութեանս Հայոց ՋԽԴ* (= 1495), ի ստորոտս լերինն հիւսիսոյ, *ի դրունս* սրբոյն Գէորգորիա (*այսպէս*) *քաջ եւ արի զինուորին եւ այլ սրբութեանցս որ աստ կան· եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս* Յուսիկ վարդապետի եւ մեղուցելոցս Աւետիք աբեղի, *եւ միաբան եղբարցս՝ Մարտիրոս աբեղին, եւ Յովհաննէս աբեղին եւ Խաչատուր մալազին: Եւ զայլ միաբան սուրբ ուխտիս* զու–

---

438 *Աճառեան Հ., Ցուցակ Սանասարեան Վարժարանի Վիեննա*, 1900, *էջ* 23—24:

սումնակիցս յիշեսջիք...: Այլ աղաչեմ անձեղադիր լինել սխալանաց եւ խոշորութեան գրիս. զի յոյժ ծերացեալ էի եւ բազում ամ հեռացեալ էի ի յարուեստէս: Այլ ի միտս եկեալ գրեցի յիշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց, հաւր իմոյ Վահան երից. եւ մաւր իմոյ Եմինմելիքին եւ եղբարց իմոց Սիմաւոնին եւ Սիրպարոնին... եւ եդի յիշատակ ի դուռն Սրբոյն Գէորգեա Զաւրավարին» են: Նոյնը կը կրկնէ ժամակարգութեան ծայրն եղած յիշատակարանին մէջ՝ թէ «...գրեցաւ ձեռամբ Անտիք արղի. ի վանս Պալախսարոյ, ի դուրս Սուրբ Գէորգեայ զաւր... ի թվին ՋԽԴ, յիշատակ ինձ եւ ամենայն մերձաւորաց իմոց» են: Իսկ թէ ծեր էր՝ կը կրկնէ նաեւ այլուր, տեղ մը 77, ուրիշ տեղ մը 78 տարեկան ըսելով:

Սակէ ետքն ալ վանքս գրչութիւններ եղած ըլլալու են՝ կ՚ենթադրենք, թէեւ մեզի ցայժմ չեն ծանօթացած: Այլեւայլ յիշատակութիւնք, որոնք լոկ «Ս. Գէորգ» Զօրավար» կը յիշեն՝ կրնան մասամբ ասոր վերաբերիլ: Բայց, ինչպէս արդէն առիթ եղաւ յիշելու, «Ս. Գէորգ» եկեղեցիք ու վանաց տաճարք շատ բազմաթիւ էին ամէն կողմ. որով միայն այս անուան յիշատակութիւնը չի բաւեր տեղն որոշելու: Անոր համար հարկ չկայ այս տեղ փնտռել, երբ Ներսէս եպիսկոպոս Կայփոսի վանքը գրել կու տար ՋԽԵ (= 1496) թուին արղի Արծնեան

վարժարանի թիւ 21 (= թիւ 816) Մաշտոցը, զոր «եղ յիշատակ ի դուռն Ս. Գէորգայ Ջի-նուորին» էին։ Չայս ի ի հարկէ աւելի կա-պոսի, այսինքն՝ Երզնկայի շրջանին մէջ փնտռելու է քան հոս։ Ինչպէս քիչ մ'առջը կը յիշատակուի՝ Ս. Գէորգ էր նաեւ Բա-բերդի մեծ գիւղերէն միոյն՝ Թարավարակի՝ եկեղեցին։ Յամենայն դէպս Պալախոռի վանքն, որչափ ալ անշքացած ըլլար, տա-կաւին կանգուն էր Ինճիճեանի օրով, որ գիւղին մասին կը գրէր. «Բալախոռ կամ Պալախօռ. գեօղ մեծ կառուցեալ ի դաշտա-վայրի մօտ ի Բաբերդ, յորում լի են աղբե-րակունք ջուրց. բնակիչք նորա խառն ի տաճկաց եւ յազգէս Հայոց. յորում է եւ մենաստանն Սբ. Գէորգ[439]»։ Իսկ արդի վի-ճակին մասին կը գրէ Տրդատ եպ. Պալեան «Բաբերդէ 5 ժամ դէպ արեւմ. կողմ, Կիւ-միւշխանէի եւ Սիւրմէնէի սահմանագիծ եւ Պալախոռ անուն գիւղի մօտերն եղած լեռ-նաշղթաներու մէկ խորշը, բլուրի մը արեւմ. կողին վրայ. հին վանքերէն, այժմ մա-տուռի կամ ուխտատեղիի մը ձեւն առած է եւ մնացած է նաեւ անտէր[440]»։ Այս լքումին անշքացումն ըստ երեւոյթին կապ ունի 1829ի այս կողմերն ալ մղուած պատերազմին,

---

[439] Ինճիճեան Հ. Ղ., Աշխարհագրութիւն, էջ 96։

[440] Պալեան Տ., Հայ վանորայք, Բիւզանդիոն, 1901, թիւ 1500 յջ.։

եւ յաջորդող գաղթին հետ։ Պալախոռ իր դիրքն իսկ ապարէգ պիտի ըլլար այս պատերազմին, երբ Ռուսք յառաջացան մինչեւ Բաբերդ եւ միջոց մը մինչեւ Կիւմիւշխանէ։ Ինչպէս յետոյ համառօտիւ պիտի յիշենք, Բաբերդէ ետքը գլխաւորաբար Պալախոռ եւ Խարդ գիւղերն են որ այս միջոցին կը յիշուին։ Պալախոռ նաեւ հնուց կարեւոր հանգրուան մըն էր, կարաւանաց իջեւան մը, կեցած ըլլալով Բաբերդէ դէպ ի ծովեզր ուղղուող այն կէտին վրայ, ուսկից ուղին կ'երկճղէր, մին՝ անցնելով դէպ ի Կիւմիւշխանէ, միւսը՝ Պարխարի շղթան անցնելով դէպի Սեւ-Գետ ու Սիւրմէնէ։ Արդի Բաբերդէ Տրապիզոն տանող խճուղին Վարզուհաննն անցնելէ ետքը Պալախոռէ ուղղակի այլեւս չ'անցնիր, այլ զայն կողմնակի կը թողու քիչ մ'անդին. բայց նաեւ այսօր իր դիրքը կարեւոր կը մնայ։ Իսկ թէ հին ատեն, երբ ճիշդ այս կողման ճանապարհք լիովին անապահով էին, որչափ կարեւորութիւն ունէր հանգրուանս, յայտնի է ինքնին։ Ինճիճեան այս մասին քանի մը հետաքրքրական կէտեր կ'ընծայէ, որ լաւ կը պատկերացնեն իրաց վիճակը։ Յիշելով «Ուրդան քէօփրիւ»՝ որոյ գետոյ մասին սակայն շփոթութիւն մ'ըլլալու է իր առած տեղեկութեան մէջ[441], կը յաւելու «Տեղին յոր չի-

[441] Ինճիճեան, անդ էջ 96։

նեալ կայ այս կամուրջ, է ընդ մէջ Բաբերդու եւ Բալախոռ գեղջ, վտանգաւոր յոյժ առ ահի աւազակաց. քանզի գոլով չինեալ ընդ բերան չորից ճանապարհաց՝ յանկարծուստ ի միոյ ճանապարհաց անդի յանդէտս ի վերայ յարձակին ի վերայ անցաւորաց անդ գտելոց: Թէ «միով ժամաւ հեռի ի Բալախոռայ» դէպ ի Կիւմիւշխանէ «Ղավուխ» (այժմ՝ «Վավուգ») լեռնանցքն այն ժամանակ շատ աւելի դժուարանցանելի էր դիւրին է ըմբռնել. հիւսի վտանգը նոյնպէս է բնականաբար: Այս գոնէ բնական դժուարութիւն մըն էր. բայց առնունք նաեւ «Խըլըճլի» գիւղի մասին տեղեկութիւնը. «Գեօղ վտանգաւոր յոյժ ճանապարհորդաց, քանզի աստի եւ անդր սկսանի սահմանն Լազիկիոյ[442] որք ի վերայ յարձակեալ կողոպտեն զանցաւորս. ուստի բազումք գիշերայն անցանեն ընդ այն»: Այս կարծենք բաւական է. իսկ թէ Պոնտական լեռնադծէն անդին՝ Տրապիզոնէ Համշէն երթեւեկ ցամաքէ կարելի չէր՝ «առ ահի աւազակաց Օֆայ եւ Սիւրմէնէի»՝ տեսանք արդէն Տրապիզոնի նահանգի այս ամբողջ մահմետականացած ժողովուրդն է որ «Լազ» անուամբ կը յիշուի այսպիսի պարագայից մէջ: Ձիարդ եւ իցէ, Պալախոռ օսմանեան բանակին ձեռքն էր, երբ Ադրիանուպոլսոյ դաշնադրութիւնն

[442] Ինճիճեան, անդ էջ 97:

եղաւ։ Այն տեղւոյ ժողովուրդն, ինչպէս այն կողման միւս գեղերունը, ցորչափ յառաջագոյն չէր հետեւած Ռուսաց բանակին, այլեւս հնարաւորութիւն չունէր գիւղովին գաղթելու։ Բայց թէ այս պատերազմին ու յաջորդող գաղթին արդիւնքն որչափ քայքայիչ եղած էր նաեւ հոս եւ ի մասնաւորի տնտեսապէս նաեւ մնացողներուն, կը ցուցնէ օրինակի համար Համիլտըն ուղեւորի դիտողութիւնն, որ անկէ անցած էր 1842ին։ Այս գիւղս կիւմիւշխանէէ 28 եւ Բաբերդէ 10 մղոն կ'ըսէ, եւ «բնակեալ մասամբ ի Հայոց ու մասամբ ի Թրքաց, որոնք աղքատ երեւցան ու թշուառ, եւ որոնցմէ դժուարաւ կրցանք ստանալ նոյն իսկ քանի մը ձու[443]»։ Ուրիշ ուղեւոր մը այն միջոցին ուղղակի «փոքր գիւղ» կ'անուանէ՝ հայ տներու յատուկ երդիքներով։ Բաբերբր հողի վրայ կառուցուած գիւղս այսօր ալ մեծ գիւղ մըն է, 100 տուն հայ բնակչով, բայց նաեւ 140 տուն մահմետական բնակչութեամբ, ըստ Ա-Դօի[444], ըստ այլ տեղեկութեան[445] Հայք 90

---

443 Hamilton W. J., Researches in Asia Minor, Pontus and Armenia, London 1842, էջ 171· տես նաեւ նոյնին գերմաներէն թարգմանութիւնը՝ Reisen in Kleinasien, Pontus und Armenien, Leipzig 1843, էջ 165։

444 Ա.—Դ0. անդ էջ 201։

445 Էփրիկեան Հ. Ա., Բնաշխարհիկ Բառարան, էջ 353։

տուն կ'ըսուին, բայց ունին երկու եկեղեցի՝ «Ս. Կարապետ եւ Ս. Լուսաւորիչ»։

Բաբերդի ուրիշ մեծ հայ գիւղ մ'ալ՝ Քարավարակ՝ ունէր նոյնպէս Ս. Գէորգ եկեղեցի։ Այս կը յիշուի ըստ դիպաց այն տեղ գտնուող Աւետարանի մը փոքրիկ յիշատակարանին մէջ։ Աւետարանս ի Քարավարակ չէ գրուած, այլ Բաստնի Սպիտակ վանքը Մովսէս աբեղայէ ՋԴ (= 1455) թուին[446]։ Ետոյ ստացած է «պարոն Յակոբ մելիք Բասենոյ գաւառին», թէ ե՞րբ՝ յայտնի չէ[446]։ Դժբախտաբար առանց թուականի է նաեւ այնուհետեւ կցուող համառօտ յիշատակագրութիւնս՝ թէ «ես Ղուրաթս որդի Ղուրասարին գնեցի զԱւետարանս եւ եդի ի գիւղս որ կոչի Քարավարակ, ի դուռն Ս. Գէորգայ»։ Արսէն վրդ. Թոխմախեան օրինակած էր «ի գիւղն Քարավարակ» այս յիշատակարանը, որմէ առած է Փիրղալէմեան։ Յիշատակարանս ալ անունը «Քարավարակ» կը գրէ, ինչպէս կը գրէ օրինակի համար նաեւ Ա-Դ-Օ, որ 185 տուն հայ կը դնէ, իր ցուցակին ամենամեծ չատ հայաբնակ գիւղը. մինչդեռ «Քարաւերակ» կը գրէ ինչպէս Ա. Վ. Իսրայէլեան՝ նոյնպէս միւս գիւղացանկին ի «Բնաշ. Բառ.» որ գիւղիս համար միայն 150 տուն կը նշանակէ, բայց միանգամայն երկու եկեղեցի։ — Տրդատ եպ. Պալ-

---

446 Փիրղալէմեան, Նօտարք, էջ 180—181։

եան[447] կը նշանակէ Բաբերդէ իբր 3 ժամ դէպի հարաւ-արեւմուտք «Բալավրակ» գիւղէ մինչեւ անգամ կրկին վանքերը, որոնք շատոնց աւերակ են, բայց ուխտատեղի մնացած գիւղացւոց։ Կիպերտ ասոր նման կամ մերձաւոր ձեւով կը նշանակէ Kale-verek, Հնտի եւ Սարաճիւղ հայաբնակ գիւղերու մօտ։ Բայց նոյն քարտէսին վրայ նշանակուած է Karavera», եւ այն՝ Բաբերդի արեւելքը, Մալասայի հարաւակողմն, այնպէս գծուած որ Գալեմնի յիշած Մալասայի վանաց շատ մօտ պիտի ըլլայ։

[447] Գալեան Տ., Հայ Վանորայք, Բիւզանդիոն, 1901, Թիւ 1500։

# ՑԱՆԿ ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐՈՒ

Ա

Գ

Դ

Ժ

Ի



Լ



Խ

Ծ

Կ

Հ

Ձ



Ղ

## Ճ



## Մ

Յ



Ն

Շ

Ո



Չ

Պ

Ս

Վ

S

## Ր



## Փ

Ք



Օ

Ֆ

# ՑԱՆԿ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐՈՒ

## Ա

Ծ



Զ



Է



Թ

Լ



Խ

Կ

Հ

Ղ

Յ

Ն

Շ



Ո



Չ



Պ

## Ջ

Ռ



Ս

Վ

Ր



Փ



Ք

## Օ



## Ֆ

